ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃԾԷ.

# Ս. ՄԱՇՏՈՑ ՎԱՐԴԱՊԵՏ

## ԿԵԱՆՔՆ ԵՒ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԻՒՆԸ

## ՀԱՆԴԵՐՁ ԿԵՆՍԱԳՐՈՒԹԵԱՄԲ

## Ս. ՍԱՀԱԿԱՅ

ԳՐԵՑ

**Հ. ՆԵՐՍԷՍ Վ. ԱԿԻՆԵԱՆ**

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷ





ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1949

# DER HL. MASCHTOTZ WARDAPET

## SEIN LEBEN UND SEIN WIRKEN

NEBST EINER BIOGRAPHIE DES

## HL. SAHAK

MIT EINER DEUTSCHEN ZUSAMMENFASSUNG

VON

P. NERSES AKINIAN

MECHITHARIST



WIEN

MECHITARISTEN-BUCHDRUCKEREI

1949



# Ս. ՄԱՇՏՈՑ ՎԱՐԴԱՊԵՏ

## ԿԵԱՆՔՆ ԵՒ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԻՒՆԸ

ՀԱՆԴԵՐՁ ԿԵՆՍԱԳՐՈՒԹԵԱՄԲ

## Ս. ՍԱՀԱԿԱՅ

ԳՐԵՑ

**Հ. ՆԵՐՍԷՍ Վ. ԱԿԻՆԵԱՆ**

Մխիթ. Ուխտէ



**ՎԻԵՆՆԱ**

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1949

Ի

ՅԻՇԱՏԱԿ

1500ԱՄԵԱՅ ՏԱՐԵԴԱՐՁԻ

ՄԱՀՈՒԱՆ

# ՄԵԾԻՆ ՄԱՇՏՈՑԻ

ՀՆԱՐՈՂԻՆ ՆՇԱՆԱԳՐԱՑ

ԵՐԻՑ ԱԶԳԱՑ

ՀԱՅՈՑ, ՎՐԱՑ ԵՒ ԳԹԱՑ

ԼՈՒՍԱՏՈՒԻՆ ՀԻՒՍԻՍԱԿԱՆԱՑ

† 440, ՓԵՏ. 17 — 1940

## ՅԱՌԱՋԱԲԱՆ

Աշխատութեանս 1—5, 7—8 գլուխները գրուած էին Աստուածաշունչի հայերէն թարգմանութեան ԺԵ. դարադարձի առիթով, որ տօնուեցաւ 1935ին, եւ լոյս տեսած «Հանդէս Ամսօրեայ»ի նոյն տարուոյ 10—12 միացեալ համարներու մէջ: Նպատակս էր Մաշտոցի գործունէութեան ամբողջական պատկերը գծելու համար նկատի առնել առանձին յօդուածներով Հայերէն, Վրացերէն եւ Աղուաներէն այբուբեններու գիւտի պատմութիւնն եւ ի վերջոյ Մաշտոցի Աշակերտները: 1938ին երեւցան «Հանդէս Ամսօրեայ»ի մէջ Հայոց եւ Վրաց նշանագիրներու հայող գլուխներն եւ «Մաշտոցի Աշակերտները»: Վերջին գլուխը, որ կը կարօտէր անդրագոյն ուսումնասիրութեան, պատրաստ էր արդէն առաջին սեւագրութեամբ, երբ ես գիտական ուղեւորութիւն մը կատարելու նպատակով մեկնեցայ Մերձաւոր Արեւելք (1939 ապրիլ): Պատերազմը հարկադրեց զիս մնալ Արեւելք երկարագոյն ժամանակով (1939—1946 սեպտ.): Վերադարձիս Վիեննա, այլ զբաղումներ թոյլ չտուին գլուխ հանել սկսուած աշխատութիւնս: Կրցայ միայն 1948ին վերադառնալ անոր:

Այն պարագան, որ վերջին 9—12 գլուխները հրապարակ հանուած էին իբրեւ ուրոյն ուրոյն յօդուածներ, պահանջած էր նիւթը, որ տեղ տեղ վերադառնայի նախորդ բաժիններուս եւ այսպէս կրկնութեանց մէջ իյնայի: Պիտի խնդրեմ ընթերցողներէս, որ ներողամիտ ըլլան ինծի այս կէտի մէջ:

Աշխատութիւն մը, որուն հրատարակութիւնը 13 տարիներու յապաղում կրած է, պիտի բովանդակէ բնականաբար կէտեր, որոնք ուղղումի պիտի կարօտին այսօր: Մանր փոփոխութիւններ կատարուած են տեղ տեղ, յատկապէս 1939էն: Ձուգեցի աւելին: 1943—1948 տարիներուն պարապեցայ Կորիւնի բնագրի վերակազմութեամբ եւ Փաւստոսի եւ Ագաթանգեղոսի ուսումնասիրութեամբ: Հասայ նոր եզրակացութեանց: Ինչ որ կը հայի Կորիւնի Բնագրին, կը յանձնարարեմ Ընթերցողներուս աչքի առաջ ունենալ վերակազմեալ Բնագիրը, որ լոյս պիտի տեսնէ «Հանդ. Ամս.» 1949 տարւոյ Յոբելինական թուին մէջ: Պիտի գտնեն հոն տեղիքներ, որոնք նոր ետեւառաջութիւններ կրած են, եւ դարձեալ կէտեր, որոնք յետամուտ կ'երեւան եւ կարգ մը բանասիրական սրբագրութիւններ, որոնք կը նպաստեն Կորիւնի ճշգրիտ իմացման:

Ուրախ եմ, որ էջ 96, ծան. 4 Մաշտոցի հօր Վարդանի մասին յայտնած տեսութեանս ձայնակից հանդիսացած է Ստեփանոս Մալխասեան, «Մեսրոպ Մաշտոցի ծագման մա–

սին», ի թերթին «Էջմիածին» 3 (1946), 55—58. ինքնաբերաբա՞ր, թէ «Հանդ. Ամս.» 1935ի ազդեցութեան տակ, կարեւոր չէ հետապնդել:

Թ. Նէօլդեկէի հետեւելով, ինչպէս ուրիշներ, նոյնպէս ես, Յազկերտ Բ.ի առաջին տարին համարած էի 438, օգոստոսէն սկսեալ: Վերջերս այս կէտի մասին անդրագոյն քննութիւնս բերին զիս այն համոզման, թէ Յազկերտի Ա. տարին հարկ է համարիլ 439 իբր մայիսէն սկսեալ: Ուստի այս հաշուով Ս. Սահակ վախճանած է 439ին եւ Ս. Մաշտոց 440ին:

Սրտագին փափագս էր երկասիրութիւնս հրապարակ դնել 1939/40ին, նուիրուած Մաշտոց Վարդապետի մահուան 1500ամեակին: Փափագս կ'իրագործեմ — բերմամբ պարագայից — 10 տարիներու յապաղմամբ: Լաւ է ուշ քան երբեք:

Վիեննա, 17 Յուլիս 1949:

ՀԵՂԻՆԱԿԸ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ


էջ

Յառաջաբան .......................... է

1. Ս. Գրքի հայերէն թարգմանութեան 1500ամեակը (ՀԱ 1935, էջ 449—454) .. 1—8

2. Պատմական աղբիւրները 380—450 շրջանի համար (ՀԱ 1935, էջ 454—460) .. 9—20

3. Հայաստանի քաղաքական հանգամանքները 380—450 (ՀԱ 1935, էջ 461—470) 21—36

4. Մեծն Սահակ Կաթողիկոս Հայոց (ՀԱ 1935, էջ 470—504) .................. 37—94

5. Մաշտոց վարդապետ Հացեկացի (ՀԱ 1935, էջ 505—550) .................. 95—173

6. Մաշտոցի աշակերտները (ՀԱ 1938, էջ 336—346) .......................... 175—198

7. Ս. Գրքի հայերէն թարգմանութիւնը (ՀԱ 1935, էջ 550—563) ............ 199—220

8. Եզնիկ Կողբացւոյ Թուղթն առ Մաշտոց վարդապետ (ՀԱ 1935, էջ 615—617) .. 221—225

9. Հայերէն Այբուբենի գիւտը (ՀԱ 1938, էջ 286—318) ...................... 227—270

10. Վրական Նշանագիրներու գիւտը (ՀԱ 1938, էջ 319—333) .................. 271—293

11. Աղուան-գոթական Այբուբենի գիւտը (ՀԱ 1948, էջ 321—341, 449—496) .... 295—408

12. Գոթական Այբուբենի վերապրումը Ռուն նշանագիրներու մէջ (ՀԱ 1948, էջ 497—508) ............................ 409—429

Resumé ............................ 431—473

# 1· Ս· ԳՐՔԻ ՀԱՅԵՐԷՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆ 1500ԱՄԵԱԿԸ

*Որչափ ալ ժամանակագրօրէն ճշդիւ չափուած եւ կշռուած Յոբելեան Տարի մը կարելի չըլլար նկատել* 1935 *տարին տօնելու համար Աստուածաշունչ Մատենին Հայերէն Թարգմանութեան* 1500*ամեակը, բայց եւ այնպէս անհունապէս գեղեցիկ էր խորհուրդը համազգային տօնախմբութեամբ նորոգելու յիշատակը այն տարիներու, երբ սկիզբ առաւ եւ պայծառացաւ Հայ դասական գրականութիւնը եւ ի գլուխ ելաւ աստուածեղէն Գրոց Թարգմանութիւնը. Թարգմանութիւն մը, որ իր գերազանց կատարելութեամբն իրաւամբ արժանի եղած է* Թագուհի թարգմանութեանց *յորջորջուելու:*

*Այս տօնախմբութիւնը ընծայեց Ազգին պատեհութիւնը կարդալու Հայ Մշակոյթի պատմութեան պանծալի էջերը եւ յուշարկելու առաքինի Նախնիները եւ անոնց հոյակապ գործերը, եւ միւսանգամ ցնծալու այն ուրախութեամբ, որով հրճուած էր երբեմն,* 1527 *տարիներ յառաջ, Հայ ժողովուրդը մայր հողին վրայ ի տես առաջին Հայերէնագիր Մատենին եւ ի լուր Հայերէնախօս աստուա–*

ծատուր պատգամներուն. «յայնմ ժամանակի երանելի եւ ցանկալի, անպայման սքանչելի լինէր աշխարհս Հայոց, յորում յանկարծ ուրեմն օրէնս ուսոյցն Մովսէս մարգարէական դասուն, եւ յառաջադէմն Պաւղոս բովանդակ առաքելական գնդովն՝ հանդերձ աշխարհակեցոյց Աւետարանաւն Քրիստոսի միանգամայն եկեալ հասեալ ի ձեռն երկուց Հաւասարելոցն՝ հայաբարբառք հայերէնախօսք գտան: Անդ էր այնուհետեւ սրտալիր ուրախութիւն եւ ակնավայել տեսիլ հայելոյ... անդ էր յիշելի եւ մարգարէականն, եթէ Եղիցի անդ աղբիւր բղխեալ ի տան Դաւթի»[1]:

Եւ այս հիացմունքը, այս գոհունակութիւնը մնաց հայ ժողովրդեան երիկամանց մէջ միշտ կենդանի եւ անթառամ: Եւ այսօրուան ցնծութիւնը արձագանգն է այդ զգացմանց:

Աստուածաշունչ Գրոց թարգմանութիւնը ռահվիրան եղաւ հայ գրականութեան, հիմը՝ որուն վրայ կանգնուեցաւ հայ գրականութեան սքանչելատեսիլ շէնքը, աղբիւրը՝ ուսկից ծծեց հիւթ հայ մատենագրութիւնը եւ ծլեցուց ծաղկեցուց իր ծոցէն բանաստեղծներ, աստուածաբաններ եւ պատմագիրներ: Աստուածաշունչ Մատեանը դասագիրքն եղաւ հայ մանկտւոյն անդէն ի սկզբան, յընթացս դարերու եւ այսօր իսկ՝ թոթովելու հայերէն լեզուն, ուսանելու զայն վճիտ ակնաղբիւրէն

---

[1] Կորիւն, 22—23:

եւ ընդարձակելու իր լեզուական հմտութիւնը ամէն դարու մէջ. որովհետեւ այդ Մատեանը թարգմանուած չէ իբրեւ լոկ կրօնական գրականութիւն, այլ հայացուած է այն այնպիսի ճարտարութեամբ եւ լեզուի այնպիսի դասական կատարելութեամբ, որ կարող է իրաւամբ զգացնել տալ հայ ընթերցողին թէ աստուածահրաման պատգամները հայաբարբառ հոսած են մարգարէներու եւ առաքեալներու բերնէն: Այդ բարբառը հնչած է դարերով հայ ականջներուն եւ մինչեւ այսօր իսկ ընտանի է նոյնը հայ ժողովրդեան:

Ոչ միայն գրականօրէն շահագործեց հայ ժողովուրդը Աստուածաշունչ Մատեանը, այլ եւ դրաւ հոն հոգեկան սնունդ իր երկար ճանապարհին համար: Հայ ժողովրդեան հաւատքը յեցած էր աստուածախօս պատգամներու անսխալականութեան վրայ. անոր վրայ յեցած էր հայը անցաւոր կեանքի տառապալից օրերուն եւ աստուածեղէն պատգամներու մէջ կը գտնէր իր սփոփանքն ու մխիթարութիւնը: Այս հաւատքը նեցուկն եղաւ իրեն ինքնապաշտպանութեան համար. անով դիմագրաւեց դարերու ընթացքին ամենազգի հրոսակախումբերու, օտարազգի խուժաններու եւ տիրապետող ժողովուրդներու: Հարուածեցաւ, հարստահարուեցաւ, կորսնցուց քաղաքական ազատութիւնը, բայց պահեց քրիստոնէական հաւատքը եւ չհամաձուլուեցաւ օտար ցեղերու հետ:

Եւ երբ կը յայտնենք մեր հիացմունքը

կատարուած գործի մը վրայ եւ անոր Ազգին տուած բարիքները կը թուենք, չենք կրնար աչքէ հեռացնել այն երկու Դիւցազները, որոնք խորհուրդն ունեցան թարգմանելու զայն եւ ի գլուխ հանեցին անմրցելի քաջութեամբ։ Երկու «հաւասարեալք» էին անոնք՝ Սահակ եւ Մաշտոց, երկուքն ալ զարգացած հելլենական դպրութեամբ, երկուքն ալ ծնունդ սակայն հայ հողին, ուր չկար տակաւին հայ դպրութիւն։ Իրենք եղան առաջինները, որոնք հայերէն նշանագիրներ ստեղծեցին, իրենք եղան առաջին աշակերտները այդ նորագիւտ նշանագիրներուն, եւ առաջին հեղինակները նորսկիզբն դպրութեան, եւ այն՝ ժամանակ մը, երբ ինկած էր Երկիրը օտար լուծին տակ։

Կը ստիպէ զմեզ այս երեւոյթը խորհրդածութեանց անձնատուր ըլլալ եւ ակամայ ուղղել հարցումներ։ Ինչո՞ւ արշակունի փառապանծ արքաները անհոգացած էին Մեծ Հայաստանի մեծ ժողովուրդին պարգեւել սեպհական նշանագիրներ եւ այսպէս զանիկա բարբարոս ժողովուրդներու գրկէն քաղաքակիրթ ազգերու թուին մէջ դասել։ Ինչո՞ւ առաջին սուրբ հայրապետները, որոնք քրիստոնէութեան քարոզիչներն եղած էին, արեւմտեան քաղաքակրթութեան առաջին ռահվիրաներն ի Հայս, անփոյթ գտնուած էին դրացի յոյն եւ ասորի աշխարհներէն ներածելու հայրենիք գրականութեան բարիքը։ Եւ վերջապէս Ներսէս Մեծ, որ սնած էր հելլենական կրթութիւն, ինչո՞ւ չփութաց գիտու–

թեան կայծը, հրդեհելու դրականութեան սիրով Հայաստան երկիրը:

Ամենայն ինչ դիւրին էր այն դարերուն, երբ ունէր երկիրը իւր անկախութիւնը սեպհական թագաւորներու տակ եւ Եկեղեցին անձուկ աղերսի մէջ էր Կեսարիայի եւ Եդեսիայի հետ: Անբացատրելի է այս անտարբերութիւնը, եթէ չուզենք չքմեղել ժամանակը՝ վերագրելով զայն երկրին քաղաքական պայմաններուն, երբ բովանդակ աշխարհը ստիպուած էր երկու ճակատի վրայ զէն ի ձեռին պահպանել սահմանները. եւ Եկեղեցին զբաղած էր կազմակերպչական հոգերով:

Շատ ուշ եկաւ հայր ինքնագիտակցութեան: Երբ կորսնցուցած էր Հայաստան իւր միասնականութիւնը (385) եւ զգալի էր օտարին լուծը հայ ժողովուրդին վրայ, տեսան աչքերը, թէ առանց դպրութեան է Ազգը:

Մաշտոց վարդապետի կ'իյնայ Ազգը ինքնագիտակցութեան բերելու պատիւը: Սա հելլենական դպրութեամբ զարգացած, զինուորական ասպարէզի վրայ ընթացած, կ'ելլէ հրապարակ միանձնաւորի սքեմի տակ քարոզելու աւետարանական վարդապետութիւնը Երկրին ծայրագաւառներու մէջ, որոնք կենդրոնէն հեռու եւ Պարսից դրացիութեան մէջ, ամէնէն աւելի կը կարօտէին Աւետարանի լոյսին: Բայց «վայրենամիտ եւ գազանաբարոյ» մարդկան հելլենական ճարտարախօսութեամբ նրբօրէն բացատրուած քրիստոնէական վարդապետութիւնը դժուարահաս կ'ըլլայ: Ան-

գրագէտ ժողովուրդը սաղմոսերգութեան ընտանեցնել՝ անհնարին։ Կը զգայ Մաշտոց առաջին անգամ, թէ անգրագէտ ժողովուրդի հետ է իր գործն եւ կը հոգայ դարման տանիլ նախ անգրագիտութեան եւ ապա մերձենալ աւետարանութեամբ։

Այսպէս նշանագիրներ հնարելու եւ ազգային գրականութեան հիմը դնելու խորհուրդն իւր ազդակն ունեցաւ քարոզչական ասպարէզի վրայ. եւ իր կարգին գրականութիւնն ի սպաս դրուեցաւ Աւետարանի վարդապետութեան ծաւալման։ Առաջին հայ գիրքը, գրուած նորագիւտ հայկական նշանագիրներով, Աստուածաշունչ Մատեանն եղաւ՝ Հին եւ Նոր Կտակարանի մասերով, որուն յաջորդեցին Ս. Հարց մեկնողական եւ ճառական գրութիւնները։ Չթարգմանուեցան հելլեն գրականութեան գլուխ գործոցներն, ոչ ալ Արիստոտելի եւ Պղատոնի փիլիսոփայական հատորները։ Հայ ժողովրդեան կրօնի ուսմամբ եւ հրահանգներով թեքուած պաշտօնեաներ պէտք էին եւ Եկեղեցին կը կարօտէր իւր պաշտամունքները հայերէն լեզուով մատակարարելու։

Քրիստոնէական կրօնի մէջ հաստահիմն ընելով ժողովուրդը պիտի կանգնուէր Թումբ մազդէական վարդապետութեան դէմ. Եկեղեցւոյն հայերէնախօս բարբառել տալով պիտի մերժուէին անկէ յոյն եւ ասորի ազդեցութիւնները. պիտի ստանար Եկեղեցին ազգային նկարագիր։ Եւ Վարդանանց պատերազմը

(451) ցոյց տուաւ թէ Մաշտոց չէր սխալած իւր հաշուին մէջ։

Եթէ այս գրական շարժման գլուխը Մաշտոց կը նկատենք, պիտի ըսենք միանգամայն թէ իրմէ ոչինչ նուազ արդիւնաւոր եղաւ այս կէտի մէջ Սահակ, որ իբրեւ հովուապետ ամէն դիւրութիւն ընծայեց Վարդապետին, քաջալերեց զանիկա եւ եղաւ նոյն իսկ անոր աշխատակիցը։ Առանց Սահակի աջակցութեան ոչինչ կարող էր ընել Մաշտոց։ Յաջողութիւնները, զորոնք ունեցաւ Մաշտոց, պիտի չժպտէին իրեն, եթէ Զաւէնի կամ Շահակի եւ կամ Ասպուրակէսի օրով ձեռք զարկած ըլլար գործի։

Բայց նաեւ Սահակ եւ Մաշտոց պիտի չյաջողէին, եթէ պակսէր անոնց Վռամշապուհի, Արշակունի տան այս լուսամիտ, ազգասէր եւ ուսումնասէր Թագաւորին նպաստաւորութիւնը։ Անիկա հաւասար սիրով փարեցաւ առաջարկուած խորհուրդին եւ բանիւ եւ գործով նպաստամատոյց հանդիսացաւ ձեռնարկութեան յաջողութեան։

Վռամշապուհ, Սահակ եւ Մաշտոց, այս երրորդութիւնը, ի միասին դրին հայ գրականութեան հիմը եւ բարձրացուցին հայ մշակոյթի հոյակապ կառուցուածքը։ Նախախնամական էր այս երեքին զուգադիպումը այն բազմավտանգ դարուն, երբ կը դարբնուէին ծրագիրներ վերջ տալու հայկական Թագաւորութեան եւ վճռել հայութեան ճակատագիրը։

Եթէ Մաշտոց գրականութիւնը աւետա-

բանական քարոզութեան օժանդակիչ միջոց նկատեց, Սահակ տեսաւ անոր մէջ Եկեղեցւոյ նուիրապետութեան ամրացման նեցուկը եւ Վռամշապուհ՝ ազգային ինքնապաշտպանութեան անխորտակելի զէնքը: Ոչ Թագաւորը միջոց խնայեց եւ ոչ Սահակ եւ Մաշտոց աշխատութենէ փախան գրականութիւնը տարածելու համար: Բացուեցան դպրոցներ մատաղ սերունդին համար. նաեւ նախարարներու երիտասարդ որեարին, նոյն իսկ բանակին աւանդուեցաւ գրականութեան ուսումը:

Սկիզբը առաւ գրականութիւնը, ծաղկեցաւ արագընթաց եւ աճեցաւ եւ հասաւ դասական բարձրութեան: Ասորի եւ յոյն Հարց լաւագոյն գործերը հայերէն թարգմանութեամբ փոխադրուեցան Հայաստան եւ կարճ ժամանակի մէջ տէր եղաւ Երկիրը ճոխ մատենագրութեան:

«Ոչ իբրեւ յարդի բոց մը շողաց անցաւ Ե. դարուն սկիզբները երկու հոգեկից հոգեկիր արանց — Սահակայ եւ Մաշտոցի — գործունէութիւնը: Ժիր խումբ մը կղերի մնաց անոնցմէ՝ որն որ հաւատարութեամբ, աստուածպաշտութեամբ եւ աստուածային ոսմամբ պնդակազմ՝ բոլոր երկիրը Քրիստոսի մէկ բանակի փոխեց՝ տէրութեան մը դէմ ընդդէմ, որուն առջեւ կը տատամսէր նոյն իսկ Հռոմէական պետութիւնը»[2]:

---

[2] Հ. Յ. Գաթըրճեան, Սրբազան Պատարագամատոյցք, էջ 217:

## 2. ՊԱՏՄԱԿԱՆ ԱՂԲԻՒՐՆԵՐԸ 380—450 ՇՐՋԱՆԻ ՀԱՄԱՐ

### (ՀԱՄԱՌՕՏ ՏԵՍՈՒԹԻՒՆ)

*Մեր ծրագիրն է յաջորդ էջերու մէջ քննութեան առնել Հայաստանի քաղաքական հանգամանքները 380—450 տարիներուն եւ տալ Ս. Սահակի եւ Ս. Մաշտոցի կեանքի եւ գործունէութեան պատկերը: Կարեւոր կը համարինք կանխել եւ համառօտ տեսութեամբ այս շրջանի հարազատ եւ անհարազատ աղբիւրները թուել: Կան աղբիւրներ, որոնք առհասարակ չեն չահագործուած եւ կան աղբիւրներ, զորոնք ստիպուած ենք անհարազատ, նաեւ կեղծ նշաւակել, ուստի եւ անպէտ Դ. եւ Ե. դարու պատմաքննական ուսումնասիրութեան համար:*

### 1. ԿՈՐԻՒՆ

*Կորիւն, որ Մաշտոցի կրտսեր աշակերտներէն էր, կ'ուղարկուի Ղեւոնդ Վանանդացւոյ հետ Կ. Պոլիս, յանձնելու Պրոկղ հայրապետին Հայոց պատասխանը: Վերադարձաւ հաւանօրէն նոյն տարին Եզնիկի եւ Ղեւոնդի հետ: Մաշտոցի վախճանէն չորս տարի ետքը կը յանձնարարուի իրեն Յովսէփ կաթողիկո–*

սական տեղապահէն գրել Վարդապետին վարքը, զոր ի գլուխ կը հանէ իբր 443ին, յեցած իր անձնական յիշողութիւններու եւ երիցագոյն աշակերտներու վկայութեանց վրայ:

Սուտքախօս է Կորիւն. գրի առած է իւր հաւաքած տեղեկութիւնները բարեխղճօրէն: Ժամանակագրութեան համար թէեւ պատմութեան ընթացքին չէ տուած ճշգրիտ կռուաններ, բայց ժամանակագրական ընդհանուր պատկերը, զոր զետեղած է գործին վերջը, կը ներկայացնէ Մաշտոցի գործունէութեան կարեւորագոյն հանգրուանները:

Յաւէ, որ կենսագիրը տալով իւր գրուածքին վարքագրական նկարագիր, կամ հարեւանցի եւ կամ բոլորովին լռութեամբ անցած է Մաշտոցի, Սահակի եւ ժամանակակից քաղաքական եւ եկեղեցական պատմութեան հայող մասնական դէպքերու վրայէն: Բայց եւ այնպէս շնորհակալութիւն կը պարտինք Կորիւնի, որ իւր աքանչելի գրչով աւանդած է մեզի հայ մշակոյթի պատմութեան ոսկեղէն դարու եւ ականաւոր անձնաւորութեանց մասին այնքան թանկարժէք տեղեկութիւններ: Ինքը մէկ հատիկ աղբիւրն է այս շրջանի պատմութեան, արժանահաւատ եւ վստահելի:

Մաշտոց վարդապետի այս Վարքը դժբախտաբար ենթարկուած է յընթացս դարերու բազմազիմի աղաւաղումներու: Այժմեան բնագիրը կը կարօտի ձեռագրական մանր համեմատութիւններու, նաեւ բանասիրական սրբագրութիւններու: Նորայր Բիւզանդացի,

Հ. Թորոսեան եւ այլք առաջարկած են կարգ մը ուղղագրութիւններ, ընդունելի եւ անընդունելի: Մեր յառաջ բերած հատուածներուն մէջ, ուր աչքի առաջ ունինք Կորիւնի 1894ի հրատարակութիւնը, կատարած ենք բազմաթիւ կարեւոր եւ անկարեւոր ուղղումներ, նաեւ յաւելուածներ. ասոնցմէ ոմանք կարող են նաեւ ուրիշներէ առաջարկուած ըլլալ, նոյնաձեւ եւ կամ այլակերպ. չուզեցինք մանր պրպտումներով ուղղագրութեանցս առաջնութիւնն կամ յետնութիւնը վերհանել կամ վիճարանական խնդրոց միջամուխ ըլլալ, բայց եթէ կարեւոր կէտերու մէջ:

Բացի բնագրին աղաւաղումէն Կորեան Պատմութեան մէջ տեղի ունեցած է նաեւ թղթերու տեղափոխութիւն: Կ'առաջարկեմ կարգալ.

էջ 12, տ. 16—13, տ. 6 «որպէս ի նոյն — Տեառն տեսէք» կը շարունակուի էջ 38, 11 կանոն աշակերտացն դնել»:

էջ 17, տ. 17—27 «Իսկ արքայն — նշանագրովքն տանէր.» շարունակուին է էջ 21, տ. 23 «եւ զաւրս...»:

էջ 21, տ. 23—22, տ. 2. Յայնժամ վաղվաղակի — գերծանել» կը թուի փոխադրել էջ 31, տ. 22. «հրաժարէր ապա...»:

էջ 24, տ. 1 վարէն. «զաստուք վանականաց լնոյր». կը շարունակուի էջ 30, տ. 16. «եւ ապա յետ այնորիկ» մինչեւ էջ 32, տ. 5 «դիմեալ ի կողմանսն <Սիւնեաց>». կը շարունակուի էջ 25, տ. 1 «յորում ժամանակի»

մինչեւ *էջ* 26, *տ*· 28 «*աշխարհին Վրաց* (*այլ*· *Հայոց*), *զուարթացուցանել, նորոգել եւ հաստատել*: Կը շարունակուի *էջ* 32, *տ*. 5 «*առ որով ժամանակաւ Արձիւղ*» մինչեւ *էջ* 32, *տ*· 22 «*զպարգեւացն Աստուծոյ*»: Կը շարունակուի *էջ* 26, *տ*. 29 «*Եւ յորժամ այնպէս*» մինչեւ *էջ* 30, *տ*· 15 «*վասն հոգեւոր անձուկն ախտելոյ*»: Կը շարունակուի *էջ* 32, *տ*. 23 «*Յետ այնորիկ ուշ եղեալ*» *եւն*:

*Էջ* 30, *տող* 15 — 32, 5 *յետ այնորիկ հրաժարեալ — ի կողմանս* < *Վրաց* > կը փոխադրուի էջ 24, վարէն վերջին տողին իբրեւ շարունակութիւն: *Ասով էջ* 25, *տ*· 1 — իր շարունակութիւնը կը գտնէ էջ 32, 5:

*Էջ* 26, *տ*· 26 *Յորում ժամանակի* — 26, 26 *նորոգել եւ հաստատել*, նկատելու է շարունակութիւնը էջ 32, 5ի՝ *իսկ նորա անցեալ զխմեալ*...: Ասոր շարունակութիւնն է 32, 5—26· *Առ որով ժամանակաւ*...: Կը շարունակուի 26, 29—30, 15: *Էջ* 30, 15 կը շար· 32, 33—33, 7· 40, 16—41, 5:

*Այս կարգն ունի ճշդիւ Համառօտ Կորիւնը*:

*Էջ* 17, *տ*· 19—27 *փոխադրելի յէջն* 21, *տ*· 24:

*Կորիւն կը գրէ, թէ Վռամշապուհի Ե· տարին Դանիէլեան նշանագիրք ի Հայս կը բերուին: «Իսկ արքայն հանդերձ միաբան*<*ու-թեամբ*> *սրբոյն Սահակաւ եւ Մաշտոցիւ ընկալեալ զնշանագիրսն ի Հաբէլէն, ուրախ լինէին»: Այս կը յաւելու* (17, *տ*· 19—27)·

«Ապա առեալ երանելի հոգաբարձուացն զյանկարծագիւտն՝ խնդրէին հայցէին եւս յարփայէ մանկունս մատաղս, որոց (*տպ.* որով) զնշանագիրսն <ուսուցանել> մարթեսցեն։ Եւ յորժամ բազումք ի նոցանէ տեղեկանային, ապա հրաման տայր <թագաւորն> ամենայն ուրեք նովին կրթել․ որով եւ յաստիճան իսկ վարդապետութեան գեղեցիկ երանելին հասանէր․ եւ իբրեւ ամս երկու կարգեալ զվարդապետութիւն իւր եւ նովին նշանագրովք տանէր»։

*«Իսկ իբրեւ ի վերայ հասեալ թէ չեն բաւական նշանագիրքն ողջ ածել զսիւղոբայս եւ զկապս հայերէն լեզուոյն, մանաւանդ զի եւ նշանագիրքն իսկ յայլոց դպրութեանց թաղեալք եւ յարուցեալք դիպեցան»* (17—18)։

*Այս հատուածը* Ղ․ Փարպեցի, *Ա․*, 15—16 *ունի․*

*«Իսկ արքային Հայոց սուրբ կաթողիկոսաւն Սահակաւ եւ երանելեաւն Մաշտոցիւ ընկալեալ զնշանագիրսն ի Հաբէլէ՝ ուրախ լինէին։ Եւ այսպէս դիպեալ գիւտի նշանագրացն՝ ձեռն ի գործ արկանէր երանելին Մաշտոց, յերիւրելով զնա սուրբ հայրապետին Հայոց Սահակայ, դիւրահնար ճանապարհ ցուցանելով կարգադրութեան գրենոյն եւ հեգենային ուղղաձայնութեան, տալով նմա օգնականս եւ այլ արս բանիբունս եւ մտացիս․․․։ Որոց օգնելով զօրէր երանելին Մաշտոց, հանդիպեցուցանէր զհայերէն աթուեթայսն ըստ կարգման սիլովբայիցն Յունաց․․․ կարգեալ այնուհետեւ․․․ գծիր գրենոյն հայերէնի․․․ ցանկային կարգել դպրոցս եւ ուսուցանել բազմութիւն մանկտւոյ․․․»*։

Մ․ Խորենացի (Գ․ 52) *ԶԴանիէլեան նշանագիրսն «եկեալ ետուն ցՄեծն Սահակ եւ Մեսրոպ։ Որոց ուսեալ, եւ թեւածելով ընդ նոսա տղայոց զամս սակաւս,*

անղէկացեալ գիտացին՝ ոչ լինել բաւական այնու նշանագրօք ստոյգ հոլովել զհեգենայ բառից հայկականաց հագներգարար, մուրացածոյին այնուիկ գծագրութեամբ»:

Համառօտ Կորիւնն ունի· Մաշտոց Դանիէլեան նշանագիրներուն ծանօթանալէ ետքը (ի Միջագետս!) «եւ յետ բազում աշխատութեանց եւ քննութեանց եւ ուսմանց՝ անշահ մնացեալ. զի ոչ բերէր զբաւս եւ զբանս ալփաբետացն ըստ հայերէն լեզուին» (էջ 18):

Այս համեմատութիւններէն կը տեսնուի թէ Կորիւնի Բ. հատուածը չէր ճանչնար Կեղծ Ղազար Փարպեցի Ը. դարու ա. քառորդին, գիտմամբ կամ ոչ, յայտնի չէ: Բայց կարդացած է զայն այժմեան դասաւորութեամբ Մ. Խորենացի Թ. դարու ա. քառորդին: Համառօտ Կորիւն հոս Մ. Խորենացւոյ ազդեցութեան տակ է:

Նախնաբար, սակայն, չէր կրնար այս հատուածը այժմեան տեղւոյն վերաբերած ըլլալ. տրամաբանօրէն դատելով չունի այն ներքին կապակցութիւն ա. եւ գ. հատուածներու հետ:

ա. Անհնարին է ժամանակագրօրէն. վասն զի Դանիէլեան նշանագիրները կը բերուին ի Հայս Վռամշապհոյ Ե. տարւոյն. իսկ Մաշտոց անոնց անբաւականութիւնը տեսնելով նոյն թագաւորի Ե. տարւոյն կը մեկնի Միջագետք: Ուստի չկայ երկու տարուան փորձի ժամանակ:

բ. Կ'ըսուի թէ առջի բերան արդէն կ'իմացուի թէ «չեն բաւական նշանագիրքն ողջ ածել զսիղոբայս». եւ սակայն կը հաւաքուին մատաղ մանկունք եւ անոնցմէ «բազումք» կը

*տեղեկանան, այն է՝ կը սորվին այդ նշանագիրները ·*

*գ․ Այնպէս որ հրաման կու տայ Թագաւորը «ամենայն ուրեքնովին կրթել» · այս անբաւակա՞ն նշանագիրներով:*

*դ․ Մաշտոց «ամս երկու» կ՚ուսուցանէ այս նշանագիրները եւ ապա կ՚ըմբռնէ թէ անոնք «բաւական չեն», այսքան երկա՞ր տարիներ չարչարեց «դաստիարակ» ուսուցիչը իր մատաղ սաներու ուղեղը: Ծիծաղելի պիտի ըլլար նոյնպէս, եթէ այս անպէտ գրերը սորվեցնելով «յաստիճան վարդապետութեան գեղեցիկ հասանէր» Մաշտոց:*

*ե․ Այս անպատեհութիւնը պիտի չբուժուէր եթէ «ամս երկու» (Խոր․ «ամս սակաւս» ուղէինք կարդալ «ամիսս երկու» նովին կրթէին մանկունք:*

*Այս անպատեհութիւնը ինքն իրեն պիտի բարձուէր հրապարակէն, եթէ հատուածս գտնէր Կորիւնի գրուածքին մէջ իր պատշաճ տեղը, այն է էջ 21, տող 24, իբրեւ շարունակութիւն պարբերութեանս որ թերակատար է արդէն․ «Յայնժամ վաղվաղակի հրաման առեալ (ելեա՞լ, հասեա՞լ) ի թագաւորէն սկիզբն առնելոյ <դպրութեան հայերէն լեզուի>: (էջ 17, տ․ 19—27) Ապա առեալ երանելի հօտաբարձուացն — նովին նշանագրովք տանէր»:*

*Այսպէս ալ կարդացած է Համառօտ Կորիւն, երբ յարասելով ընդարձակի 21, տ․ 20—22 «բարբառոք ցնծութեան եւ երգօք հոգեւո-*

*լօք եւ բարձրագոյն օրհնութեամբք ի քաղաքն դառնային...» պարբերութիւնը՝ կը գրէ. «եւ գոհութիւն եւ փառս ամենեցունց արարչին մատուցանէին գնորոգատուր պարգեւացն որ տուաւ նոցա ի վերուստ: Եւ ժողովեալ մանկունս ուշեղս եւ քաջուսմունս, փափկաձայնս եւ յերկարոգիս եւ դպրոցս կարգեալ յամենայն գաւառս եւ ի գեւղս հրամանաւ սուրբ հայրապետին եւ Թագաւորին, ուսոյց զրնաւ ամենայն աշխարհս Հայոց» (էջ 21). Հմմտ. եւ Փարպ. 16 եւ 17 «կարգեալ... զգիր գրենոյն... ցանկային կարգել դպրոցս եւ ուսուցանել բազմութիւն մանկտւոյ», «կարգեցան վաղվաղակի յայնմհետէ դպրոցք հօտին ուսմանց»:*

*էջ 21, տ. 24—22, տ. 2 «գխուժադուժ կողմանսն — զերծանել», կ'երեւայ թէ այլուստ մոլորած եկած է հոս. թերեւս պատշաճի էջ 24. տ. 17/18, իրր շարունակութիւն «դասս սրբոց վանականաց» նախադասութեան: Ցամենայն դէպս իր տեղը չէ այս հատուածը:*

## 2. ԱՐՔԱՅԱՑԱՆԿԸ

*Սեբէոս իւր Պատմութեան Ներածութեան մէջ զետեղած է եռանուն եւ քառանուն Արքայացանկ մը Հայոց, Պարսից եւ Հռովմայեցւոց ինքնակալներու, ժամանակագրական համադրութեամբ: Այս Արքայացանկը, որ այժմեան խմբագրութեան մէջ միաշար պատկերի մէջ ներկայացուած է արքայից անճիշդ ժամանակցութեամբ եւ այս պատճառաւ ալ ար-*

համարհուած է բանասէրներէն եւ իբրեւ անպէտ ցանկ մը անուշադրութեան առնուած, նախնաբար քառասփւն կանոններու մէջ զետեղուած էր, թագաւորներու յաջորդութեանց ճշգրիտ ժամանակագրութեամբ: Մեղ յաջողեցաւ այս կանոնները Սերխոսի քով պահուած բեկորներու վրայէն վերակազմել: Ուրիշ տեղւոյ եւ ժամանակի թողլով ամբողջին հրատարակութիւնը մանրամասն բացատրութեամբ[1], այս տեղ նկատի կ'առնենք Արքայացանկիս 380—409 տարիները միայն: Արքայացանկս յօրինուած է իբր 415ին, այն է Վռամշապուհի մահէն ետքը եւ Արտաշէսի գահակալութենէն յառաջ:

### 3. ԵԶՆԿԱՅ ԵՐԻՑՈՒ ՆԿԱՐԱԳԻՐ ԿԱՐԳԱՅ

Պարիսի Ազգային Մատենադարանի Հայերէն Ձեռագրաց Թ. 112, Թղ. 291ա—292ա (յամէ 1254) ի վերջ Ագաթանգեղեայ Պատմութեան կը ներկայացնէ գրուածք մը, որ հետեւեալ խորագիրը կը կրէ. «Նկարագիր կարգաց <ի> բանից Եզնկանն երիցու, թէ ուստի՞ էին կամ ո՞րպէս գիարդ յաջորդութիւնք Թագաւորացն <ի> Տրդատայ եւ քահանայապետացն՝ ի սրբոյն Գրիգորէ, որ կացին մինչեւ առ մեզ. վարուծն փոքր ի շատէ դրոշմեալ վասն գիտութեան ի վերայ հասանելոյ»: Հրատարակուած է Ա. Տէր-Միքէլեանէ Սամուէլ Անեցւոյ Ժամանակա-

[1] Տես այժմ Հանդէս Ամսօրեայ, 1938, էջ 9—55, 129—172:

գրութեան Ծանօթութիւններու մէջ, Վաղարշապատ, 1893, էջ 266—268:

Գրուածքիս Ա. Մասը յօրինուած Եզնիկ Երէցի գրչէն իբր 436ին, Արտաշէսի Թագաւորի մահէն ետքը, այժմ աղաւաղուած կերպարանքի մէջ պահուած է մեզի, միաշար գրութեամբ: Սկզբնաբար գրուած էր երկսիւն կանոններու մէջ, ժամանակագրական համադրութեամբ: Տեղս չի ներեր մեզի միջամուխ ըլլալ գրուածքիս մանրակրկիտ քննութեան մէջ. մեր քննութեան արդիւնքը կը վերապահենք հրատարակել ուրիշ առթիւ[2]:

Գրուածքս աչքի առաջ ունեցած են Diegesisի անանուն հեղինակն եւ Մ. Խորենացի:

## 4. ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻՈՅ Ա. ԴՐՈՒԱԳԻ ԱՆԱՆՈՒՆ ՊԱՏՄԻՉԸ

Ե. դարու Ա. կէսի պատկերը, զոր կը գծէ Ղ. Փարպեցի իւր Պատմութեան Ա. Դրուագի մէջ, բազմօք կը խոտորի իրականութենէն: Մանր քննութեան ենթարկելով Դրուագս, հասայ այն անհաճոյ եզրակացութեան, որ կեղծիք մը թաքնուած է հոս Ղ. Փարպեցւոյ անուան տակ: Ամբողջութեամբ — դուրս հանելով մանր հատուածներ, որոնք փոխ առնուած են Ղ. Փարպեցւոյ Բ. Դրուագէն — կեղծիք է այս Դրուագը, հաւանօրէն

[2] [Տես այժմ Հանդէս Ամսօրեայ, 1937, էջ 517—532 «Նկարագիր կարգաց ի բանից Եզնկան երիցու»:]

*Ը. դարու առաջին տասնեակին գրի առնուած, թերեւս Խոսրով քահանայի գրչէն, եթէ նոյն չէ անոր անուամբ յիշուած «Պատմութիւն Ս. Սահակայ» գրուածքին հետ: Նոյն գրչէն է նաեւ Սահակի Տեսիլը:*

*Ղ. Փարպեցւոյ Ա. Դրուագիս եւ Տեսլեան քննութեան նուիրուած մեր ընդարձակ ուսումնասիրութիւնը կը յուսանք հրատարակել ուրիշ տեղ*[3]*:*

5. *ΔΙΗΓΗΣΙΣ ἀπὸ τοῦ ἁγίου Γρηγορίου μέχρι τοῦ νῦν.*

*Գրուածքս, որուն հեղինակն անծանօթ է, հրատարակուած է Կոմբեֆիսէն (Հմմտ. այժմ* Migne, Patr. graeca, t. 132, c. 1237—1258)*: Հեղինակը Ը. դարու առաջին քառորդէն կ'երեւայ, որ ունեցած է աչքի առաջ Նկարագիր կարգացն եւ Ղ. Փարպեցւոյ Ա. Դրուագը:*

### 6. ՄՈՎՍԷՍ ԽՈՐԵՆԱՑԻ

*Մովսէս Խորենացւոյ Հայոց Պատմութիւնը, գրուած Թ. դարու առաջին քառորդին,* 380—439 *տարիներու համար աչքի առաջ ունեցած է Փ. Բիւզանդեայ Պատմութիւնը, Կորիւնը, Նկարագիր կարգացն եւ Ղ. Փարպեցւոյ Ա. Դրուագը: Ծանօթ է Մ. Խորենացւոյ աղբիւրներէ օգտուելու եղանակը՝ վերլուծում, ընդլայնում եւ կամայական լրացումներ: Իբրեւ պատմական աղբիւր որ եւ է*

[3] [*Տեսլեան քննութիւնը տե՛ս այժմ Հանդէս Ամսօրեայ,* 1936, *էջ* 467—479 *եւ* 1937, *էջ* 48—87:]

*արժէք չի ներկայացներ Մ. Խորենացի։ Դժբախտաբար անոր լուծին տակ կը գտնուի դեռ Դ. եւ Ե. դարերու Հայոց պատմութիւնը։*

## 7. ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՎԱՐՈՒՑ ԵՐԱՆԵԼՒՈՅՆ ՄԵՍՐՈՎԲԱՅ

*Պարիսի Ազգային Մատենադարանի Հայերէն Ձեռագրաց Թ.* 178, *Թղ.* 467*ա*—472*ա* (*ԺԲ. դար*), *ապէ՝ Վենետիկի Մխիթ. Մատենադարանի Թ.* 231, 20*ա* (*ԺԹ. դար, Ցուցակ, էջ* 488), *կը բովանդակէ գրուածքս այսպիսի խորագրով. «Ի յիշատակի պատմութեան վարուց երանելւոյ սուրբ Վարդապետին Մեսրովբայ, զոր ասացեալ է նորին աշակերտի Կորեան»։ Հրատարակուած Սոփերք Հայկականք ԺԱ.* (*Վենետիկ* 1854), 5—37. *ապէ Մեծ Կորեան* 1894*ի հրատարակութեան տորին էջերու վրայ։*

*Գրուածքս համառօտութիւնն է Կորեան վարուց Մաշտոցի, տեղ տեղ պարզուած նաեւ փոփոխուած Մ. Խորենացւոյ ազդեցութեան տակ։ Համառօտութիւնս կատարուած է հաւանօրէն ԺԱ. դարուն. եւ ունի արժէք ինչ ինչ ընտիր ընթերցուածներով, բառական փոխառնուած Կորիւնէն, որոնք կը նպաստեն վերակազմելու բուն Կորեան այժմեան աղճատուած բնագիրը։*

---

## 3. ՀԱՅԱՍՏԱՆԻ ԹԱՂԱԹԱԿԱՆ ՀԱՆԳԱՄԱՆՔՆԵՐԸ 380—450

### ԱՐՇԱԿ Գ. ԵՒ ՎԱՂԱՐՇԱԿ (380—384/85)

*Մանուէլ Մամիկոնեան* 380*ին հալածեց Հայաստանէն Վարազդատ Թագաւորը, Կայսեր պաշտպանեալը· ձեռք առաւ Հայոց սպարապետութիւնն· եւ «զամենայն մեծամեծս եւ զնախարարս Հայոց առ ինքն ժողովէր· եւ էր նոցա առաջնորդ եւ գլուխ· եւ վարէր զիւր իշխանութիւնն· եւ տայր հրաման աշխարհի փոխանակ թագաւորի· եւ ունէր զաշխարհ ի շինութեան»*[1] *: Թէպէտ կենդրոնացուցած էր իւր ձեռքը երկրին վարչական եւ զինուորական իշխանութիւնը, բայց եւ այնպէս «զկինն Պապայ արքայի՝ զԶարմանդուխտ տիկինն հանդերձ որդւովք արշակունեօք (Արշակաւ եւ Վաղարշակաւ) առեալ գնոսա ի տեղի թագաւորի կալեալ ի պատիւ շրջեցուցանէր»*[1] *:*

*Թշնամացած էր երկիրը Պարսից հետ· այժմ թշնամացաւ նաեւ Հռովմայեցւոց հետ: Անկարող էր Հայաստան երկու թշնամի պետութեանց մէջ իւր գոյութիւնը պաշտպանել: Հարկադրուեցաւ Մանուէլ Սասանեանց պաշտ-*

---

[1] *Փ. Բիւզանդեայ Պատմութիւն, Ե.* 37:

պանութեան դիմել: Արտաշիր Բ. (379—383) ընդ առաջ գալով Հայոց կ'ուղարկէ զՍուրէն մարզպան 10.000 զօրքով «ի թիկունս օգնականութեան զօրավարին Մանուէլի եւ պահել ի թշնամեաց զտիկինն Զարմանդուխտ»²: Խաղաղեցաւ երկիրը:

Կասկած մը, ներշնչուած Մեհրուժան Արծրունւոյ կողմէն, գրգիռ եղաւ Մանուէլի յանկարծօրէն յարձակում գործելու պարսիկ բանակին վրայ եւ սպառսպուռ կոտորելու: Սուրէն արեւը պարգեւ ընդունած կը մեկնի Պարսկաստան²: Այս միջադէպը կը բանայ պատերազմներու նոր շրջան մը: Մանուէլ կը խորտակէ ամենուրեք պարսկական յարձակումները:

Այժմ Մանուէլ տալով իւր դուստրը Արշակայ եւ Բագրատունի ասպետին դուստրը՝ Վաղարշակայ, ի Կարին «թագաւորեցոյց զմանուկն Արշակ երկրին Հայոց եւ զՎաղարշակ երկրորդ նմին». «յետ այսորիկ գրեաց հրովարտակ առ թագաւորն Յունաց (Թէոդոս Ա. 379—395) եւ նմա յանձն արար զաշխարհս Հայոց եւ զԱրշակ արքայ»: Իսկ «զտէրութիւն իւր եւ զսպարապետութիւն զօրավարութեանն իւրոյ» փոխանցեց իւր որդւոյն Արտաշիրի, պատուիրելով անոր «հնազանդ հպատակ կալ արքային Արշակայ եւ լինել միամիտ, ջանալ եւ վաստակել եւ տալ պատերազմ փոխանակ

² Անդ, Ե. 38:

*աշխարհին Հայոց*[3]»: *Եւ ինքը, Մանուէլ, կը վախճանի* (384):

*Եղնիկ երէց*[4] *այս հնգամեայ շրջանը «օտարակալութիւն» կ՚անուանէ. իսկ Արքայացանկը կը վերագրէ Արշակի Թագաւորութեան. «Արշակ եւ Վաղարշակ ամս Ե.»: Ա. ամ = Բ. ամ Արտաշրի* (379/80—382/83) *եւ Զ. ամ Վաղենտիանոսի Բ.* (375—392)*. ուստի հինգ տարիները կը մնայ զետեղել* 380/81—384/85 *տարիներու մէջ:*

ԽՈՍՐՈՎ Գ.

*Արշակ Թագաւոր եւ Արտաշիր Մամիկոնեան բաւական չեղան հզօր բազկով ի հնազանդութեան պահել նախարարական կազմը. «ոչ իմն կարաց հաստատել ի վերայ աշխարհին Թագաւորութիւնն*[5] *Արշակայ»*[6]*: Այս պատճառաւ ալ «բազումք ի նախարարացն անտի ելին զատեան, գնացին առ Թագաւորն Պարսից» Շապուհ Գ.* (383/84—388/89) *«եւ մատնեցին նմա զաշխարհն Հայոց եւ խնդրեցին ի նմանէ Թագաւոր Արշակունի»*[6]*. այսինքն պարսկական քաղաքականութեան ուղեցին հնազանդիլ: Պարսից արքունիքը «յանձին կալեալ մեծաւ ուրախութեամբ ընդ իւր ձեռն տալ իւրով բանիւ՝ ի նմին տոհմէ Թագաւորութեանն*[7] *Հայոց (զոմն) Արշակունի եւ*

[3] *Անդ, Ե.* 44:
[4] *Նկարագիր կարգաց:*
[5] *Տպ. Թագաւորութեանն:*
[6] *Փ. Բիւզ., Զ.* 1:
[7] *Տպ. ի Թագաւորութենէն:*

նովաւ յինքն գրաւել զաշխարհն Հայոց»: Արդեամբք ալ վեր հանեց «ի Նմին տոհմէ մանուկ մի անուն Խոսրով եւ կապեաց թագ ի գլուխ նորա. եւ ետ նմա կին զքոյր իւր (զՇապհոյ Գ.) զԶրուանդուխտ» եւ «զՁիկ նուիրակ դաստիարակ ետ արքային Խոսրովայ». ընկերացնելով անոնց «զամենայն զզօրս զօրութեան իւրոյ»՝ ուղարկեց Հայաստան:

Արշակ ի տես պարսկական բանակին յառաջխաղացութեան անկարող զգաց ինքզինքը դիմադրութիւն փորձելու. «մերժեցաւ, տեղի ետ, չոգաւ գնաց ի սահմանս Յունաց» խնդրելու Կայսեր պաշտպանութիւնը: «Եւ էին թիկունք Արշակայ՝ թագաւորն Յունաց[8] եւ Խոսրովու՝ թագաւորն Պարսից»: Հռովմէական զօրքը բանակ դրած էր «զԵկեղեաց գաւառաւ», եւ Պարսիցը՝ «յԱյրարատեան գաւառին»:

Տեղի ունեցան Պարսից եւ Հռովմայեցւոց մէջ բանակցութիւններ. «եւ այնուհետեւ առնեն[9] խորհուրդ միաբանութեան հաւանութեան ընդ միմեանս թագաւորն Յունաց եւ թագաւորն Պարսից. եւ լաւ համարեցան զաշխարհն Հայոց նախ ընդ երկուս ի մէջ իւրեանց բաժանել. զի ասէին, թէ ի միջի մերում բնակեալ է այս հզօր եւ հարուստ թագաւորութիւն. լաւ է զի այսու եղծանել եւ խանկարել կարասցուք զայս թագաւորութիւնս. նախ ընդ երկուս բաժանեալ[10] երկու թագաւորօքս ար-

---

[8] Տպ. թագաւորին Հայոց:
[9] Տպ. առնէ:
[10] Տպ. բաժանել:

*չակունեօք՝ զորս կացուցաք, ապա եւ ընդ նոսա կրծել ջանացուք, աղքատացուցանել եւ մեզ*[11] *արկանել ի ծառայութիւն, զի մի կարասցեն ի մէջ մեր ամբառնալ զգլուխս»:*

*Այսպէս ըստ համաձայնութեան «ընդ երկու զաշխարհն բաժանեցին. բաժին կողմանն Պարսից էր Թագաւորին Խոսրովու եւ բաժին մասինն Յունաց էր Թագաւորին Արշակայ: Բայց եւ ի նոցանէ բազում գաւառք կրծեալք հատեալք այսր անդր եւ մնաց սակաւ մասն յաշխարհաց երկոցունց առ երկոսեան Թագաւորսն»: Իսկ «երկոքեան Թագաւորքն արշակունիքն ի մէջ երկուց բաժնացն սահմանս արկեալ հաստատէին խաղաղութեամբ»: Կ՚աւելցնէ պատմիչը. եւ «նուազեաց բաժանեցաւ ցրուեցաւ Թագաւորութիւնն Հայոց. պակասեաց յիւրմէ մեծութենէն յայնմ ժամանակի եւ յապա*[6]*»:*

*Խոսրովի բաժին ինկաւ Հայաստանի արեւելեան մասը, մօտաւորապէս Մեծ Հայաստանի (չհաշուելով օտարացուած մասերը) չորս հինգերորդական բաժինը: Այս բաժինը նկատուեցաւ Հայերէն* Մեծ Հայաստան*. Յոյները կը կոչէին զայն Պարսկական Հայաստան: Իսկ Արշակ ստացաւ Հայաստանի արեւմտեան բաժինը, որ կը կազմէր մէկ հինգերորդականը*[12]*: Զայն անուանեցին Յոյները՝* Մեծ

[11] *Տպ. ի մէջ:*

[12] *«Հայաստանի հռովմէական պաշտպանութեան ներքեւ մտած մասը — Մեծ Հայաստան* (Armenia magna) *— կը բաղկանար Անտիտաւրոսի եւ Արածանի*

Հայաստան համեմատութեամբ Փոքր Հայքի. իսկ Կորիւն կը կոչէ այս բաժինը «Կողմն կէս ազգին Հայոց»:

Հայաստանի այս բաժանումը տեղի ունեցաւ 385ին[13]:

Արքայացանկի մէջ կ'ըսուի. «Թագաւորէ ի վերայ Հայոց Խոսրով ոմն հրամանաւ Պարսից արքային ամս Գ.»: Խոսրովի Ա. ամ = Բ. ամ Տաւհոյ (Գ.) եւ ԺԱ. ամ Վաղենտիանոսի (Բ.). այն է 384/85: Իսկ երրորդ տարին է 386/87: Թէ ի՞նչ եղք ունեցաւ Խոսրով, չգիտենք: Այն, ինչ կը գրեն Կեղծ-Ղազար եւ Մ. Խորենացի, չի կրնար պատմական նժարի վրայ առնուիլ:

Անծանօթ կը մնայ Արշակի (եւ Վաղարշակի) մահուան տարին: Նկարագիր կարգաց կը գրէ. «յետ սորա կոմեսք կալան» Հռով-

դետին հիւսիսային կողմը գտնուող հետեւեալ բարձրադաւառներէն. Եկեղեաց, Դերջան, Խորձեան, Կարին եւն: Սեւ ծովէն բաժնուած էր Պողեմոնեան Պոնտոս գաւառով, Փոքր Հայքէն՝ Եփրատով. Երասխայ ջրաբաշխը դէպի Պարսկահայաստան սահմանն էր, որ սակայն բաց էր եւ անպաշտպան: Հարաւէն քանի մը գաւառներ կորուած եւ արդէն դոյութիւն ունեցող հռովմէական սատրապութեանց կցուած էին». Կ. Գիւտերբոք, Հռովմէական Հայաստան եւ հռովմէական սատրապութիւնները. Թարգմ. Հ. Մ. Նորշուեան, Վիեննա 1914, էջ 30—31:

[13] Գիւտերբոք, անդ, 15—24, ուր ընդարձակ կը խօսի բաժանման մասին, ժամանակը կը նշանակէ «ոչ 383է յառաջ եւ ոչ 388է ետքը», այսինքն Տաւպուհ Գ.ի օրով. ինքը կը միտի 387ի: Բայց 385 վկայուած է Արքայացանկէն. եւ Մարկեղղինոսի խօսքը յամն 385 «Թէոդոս... ինչ ինչ ազգեր իւր պատգամաւորներուն ձեռքով իւր իշխանութեանը հպատակեցուց» կրնանք իրաւամբ Հայաստանի բաժանման վրայ իմանալ:

մէական Հայաստանի վարչութիւնը, այսինքն comes Armeniae[14]:

«Յամս Խոսրովու եւ Արշակայ երկուց թագաւորացն բաժանաւորացն» կենդանի էին Զորթ եւ Փաւստոս եպիսկոպոս[15]: Նոյնպէս Արտիթ Բասենոյ եպիսկոպոսը «կենդանի կայր յամսն Խոսրովու արքայի եւ Արշակայ, երկուց թագաւորացն Հայոց»[16]: Կաթողիկոսական գահի վրայ կը բազմէր Ասպուրակէս «գլուխ եպիսկոպոսաց» Հայոց, որ «առաջնորդեաց դրանն Խոսրովու»[17], այսինքն Պարսկահայաստանի: Իր յաջորդն եղաւ Սահակ, Մեծին Ներսէսի որդին, որ կ՚երեւայ թէ ընտրուած է հաւանութեամբ արքայից արքային Երկրին բաժանմամբ յուզուած ժողովուրդը խաղաղելու եւ մխիթարելու համար: Իր հեռատես եւ իմաստուն քաղաքականութեամբ ջանաց Սահակ խաղաղ յարաբերութիւն ստեղծել Հայոց եւ Պարսից մէջ. որով կրցաւ Հայաստան 65 տարի (385—450) տեւական խաղաղութիւն վայելել, որ այնքան նպաստեց երկրին քաղաքակրթական զարգացման:

ԱՌԱՒԱՆ ՀԱԶԱՐԱՊԵՏ (387—400)

Խոսրովի մահէն (386/87) ետքը Հայաստանի վարչութիւնը յանձնուեցաւ Առաւան հազարապետին. որ, ինչպէս կ՚երեւայ, նոյն

14 Հմմտ. Գիւտերբոք, անդ, էջ 32 եւն:
15 Փ. Բիւզ., Զ. 5:
16 Անդ, Զ. 7:
17 Անդ, Զ. 4:

*անձն է այն Զիկ նուիրակին հետ, որ իբրեւ «դատախարակ» ուղարկուած էր Խոսրովի հետ Հայաստան. «Զիկ» պաշտօնի տիտղոս է քան յատուկ անուն*[18]*: Իր օրով «ի Դուռն Արշակունեաց թագաւորաց Հայոց մեծաց» կու գայ Մաշտոց, «կացեալ յարքունական Դիւանին . . . առ հազարապետութեամբն աշխարհիս Հայոց Առաւանայ ուրումն»*[19]*, այն է իբր* 387/88*ին:*

### ՎՌԱՄՇԱՊՈՒՀ ԹԱԳԱՒՈՐ (400/401—408/409)

*Թէ ի՞նչ ծագում ունէր Վռամշապուհ եւ ի՞նչ պարագաներու մէջ գահ բարձրացաւ, յայտնի չէ: Պատմութեան մէջ առաջին անգամ երեւան կու գայ* 406*ին, իր թագաւորութեան Ը. տարւոյն՝ հետեւեալ կերպով. Մաշտոց եւ Սահակ հնարք կը մտածեն հայերէն լեզուի համար նշանագիրներ յօրինելու. չկարենալով եզրակացութեան մը յանգիլ, կը դիմեն թագաւորին խորհուրդին. «ազդ առնէին նմա [եւ] զկանխագոյն խնդրելին իւրեանց թագաւորին Հայոց, որոյ անուն կոչէր Վռամշապուհ: Յայնժամ պատմէր նոցա արքայն վասն առն ուրումն ասորւոյ եպիսկոպոսի ազնուականի Դանիէլ անուն կոչեցելոյ, որոյ* յանկուցեալ իմն էր[20] *նշանագիրս աղփաբետաց հայերէն լեզուի: Եւ իբրեւ պատմեցաւ նոցա յարքայէն վասն գրելոյն ի Դա—*

---

18 *Հմմտ. Հ. Ն. Ակինեան, Եղիշէ վարդապետ եւ իւր Պատմութիւնն Հայոց պատերազմի, Բ., էջ* 363—465:

19 *Կորիւն, էջ* 13—14:

20 *Տպ. յանկարծ ուրեմն:*

նիէլէ, յօժարեցին զարքայ՝ փոյթ առնել վասն պիտոյիցն այնոցիկ։ Եւ նա առաքէր զոմն Վահրիճ անուն հրովարտակօք առ այր մի երէց, որոյ անուն Հաբէլ կոչէին, որ էր մերձաւոր Դանիէլի ասորւոյ եպիսկոպոսի»։ Հաբէլ կ'երթայ Դանիէլի քով. եւ «նախ ինքն տեղեկանայր ի Դանիէլէ նշանագրոյն եւ ապա առեալ ի նմանէ առաքէր առ արքայն յերկիրն Հայոց, ի Ե. ամի թագաւորութեան նորա ի նա հասուցանէր»[21]։

Հատուածս հետեւեալ հարցումներն ընելու առիթ կու տայ մեզի. 1. Ո՞ւր ծանօթացած էր թագաւորը Դանիէլ եպիսկոպոսի եւ Հաբէլ երէցի հետ։ 2. Ո՞ր թեմին եպիսկոպոսն էր Դանիէլ։ 3. Ո՞վ է Հաբէլ երէց, որուն համար կ'ըսուի թէ եպիսկոպոսին «մերձաւորն» էր։ Որովհետեւ Մաշտոց, երբ նշանագիրներն անբաւական գտաւ, լրացնելու համար Միջագետք-Եդեսիա իջաւ, հաւանօրէն տեսակցելու Հաբէլ երէցի եւ Դանիէլ եպիսկոպոսի հետ, կ'ենթադրեմ թէ անոնք Եդեսիա եւ իր շրջակայքը կը գտնուէին։ Թէ Դանիէլ եւ թէ Հաբէլ ծանօթ եղած պիտի ըլլան հայերէն լեզուի, առաջինը՝ գիր յօրինելու եւ երկրորդը գրերու ոյժին «տեղեկանալ» կարենալու համար։ Այս «տեղեկանալն» եւ զայն գրով բացատրելն կ'ենթադրէ նոյնպէս յանձին Հաբէլի գրագէտ անձ մը։ Այս պայմաններու մէջ կը թուի ինձ, թէ Հաբէլ նոյն անձն է Հիրա (Իրաս) երէցին

21 Կորիւն, էջ 17։

հետ, որ Եդեսիոյ Դպրոցին գլխաւորն էր, ուր կ'ուսանէին նաեւ Հայեր։ Այս կէտին վրայ ընդարձակ պիտի խօսինք յետոյ։ Ըստուածնե-րէն պիտի հետեւցնենք, թէ Վռամշապուհ դահ բարձրանալէ յառաջ գտնուած է Եդեսիա. թերեւս ուսանելու համար, եւ այս առթիւ ծանօթացած Դանիէլ եպիսկոպոսի եւ Հիրա երէցի հետ։ Թէ դպրութեան ծանօթ անձ էր թագաւորն եւ ուսումնասէր, կը մղէ զմեզ են-թադրել այն պարագան, որ Սահակ եւ Մաշ-տոց երբ գրերու համար անոր խորհուրդին կը դիմեն, կը գտնեն զինքը պատրաստակամ նպաստամատոյց ըլլալու յղացուած գաղա-փարի իրագործման։

Վռամշապուհի նոյն Ե. տարւոյն Մաշտոց վարդապետ կը մեկնի Միջագետք նշանագիր-ներ հնարելու համար. եւ կը վերադառնայ թագաւորին Զ. տարւոյն 36 տառերով եւ Առակաց գրքի թարգմանութեամբ։ Իրեն ընդ-առաջ կ'ելլէ թագաւորը ողջունելու հայ մա-տենագրութեան հիմնադիրը. եւ ամէն կերպ կ'աջակցի անոր դպրոցներ բանալու եւ գրա-գիտութիւնը տարածելու համար։

Արքայացանկի համաձայն Վռամշապուհ դահ բարձրացած է Ա. Յազկերտի Բ. տար-ւոյն, այն է 400/401ին եւ ութ տարի գահակա-լելէն ետքը վախճանած է Թէոդոս Բ.ի Բ. տարւոյն, այն է 409ին։ Այս հաշուին հետ ճիշդ կու գայ Կորիւնի յառաջ բերած զուգա-դրութիւնը՝ Զ. ամ Վռամշապհոյ = Ը. ամ Յազկերտ Ա.ի, այն է՝ 407/408։

ԱՐՏԱՇԷՍ ՈՐԴԻ ՎՌԱՄՇԱՊՀՈՅ (421/422—427/428)

*Վռամշապուհ վախճանեցաւ 408/409ին թողլով գահին ժառանգ իր որդին Արտաշէսը: Բայց Արտաշէս չկրցաւ գահ բարձրանալ, կա՛մ որովհետեւ անչափահաս էր, եւ կամ, որ աւելի հաւանական կ'երեւայ, չկրցաւ գահակալութեան համար Յազկերտ Ա.ի հաւանութիւնը ստանալ:*

*«Նկարագիր կարգաց» գրութեան հեղինակը՝ Եղնիկ երէց հակիրճ տողերով կը գրէ. յետ մահուան Վռամշապհոյ «ապա ամս հարուստս մարզպանք Պարսից կալան (գաշխարհն Հայոց կողմանն Պարսից) մինչեւ առ մեզ»: Կազմուած էր արդէն համոզումը, թէ «յամի <ԺԱ.> Յազկերտի որդւոյ Վռամայ եւ յամի Բ. <Թէոդոսի Փոքու եւ ի ԺԳ. ամի> Ոնորեայ կայսեր բարձաւ Թագաւորութիւնն Հայոց, որ տեւեաց (տպ. տիրեաց) ամս ՆԻ». այսպէս Արքայացանկը:*

*Աւելի քան 10 տարի թափուր մնաց արքայական գահը: 420ին Սահակ կաթողիկոս Պարսից արքունիքի մէջ կը գտնուէր: Հաւանօրէն գացած էր հոն խնդրելու Յազկերտ Ա.ի բարեացակամութիւնը ի նպաստ Արտաշէսի:*

*«Ամս հարուստս մարզպանք Պարսից կալան» մեր աշխարհը. «ապա Արտաշէզ որդի Վռամշապհոյ թագաւորէ հրամանաւ Պարսից արքային» (Նկարագիր կարգաց, Ա.): Հաւանօրէն հրամանաւ Յազկերտի Ա., որ վախճանեցաւ 420ի վերջերը, եւ կամ անոր յաջորդին*

Վռամ Ե․ի առաջին տարւոյն (421) նստաւ Արտաշէս արշակունեաց գահը։ Թերեւս Պարսից եւ Հռոմէացւոց մէջ ծագած պատերազմի (421/22) նախօրեակին։

Երբ Մաշտոց վարդապետ Հռոմէական Հայաստան կատարած առաքելութենէն վերադարձաւ Մեծ Հայաստան, «հասեալ ի Նոր քաղաքն՝ յանդիման լինէր սրբոյ եպիսկոպոսին Սահակայ եւ թագաւորին Հայոց, որում անուն Արտաշէս կոչէին, եւ ամենայն բանակին» (Կորիւն, 30)։

Կեղծ-Ղազար Փարպեցի (Ա․ 25) Արտաշէսի գահակալութեան վեց տարի կու տայ․ «Բարձաւ թագաւորութիւն յազգէն Արշակունեաց ի Զ․ ամի Արշտաշիսի… եւ անկաւ աշխարհս Հայոց ընդ լծով ծառայութեան անօրէն իշխանութեան Պարսից»։ Ասկէ նաեւ Եղիշէ․ Պարսիկը Հայոց դէմ կը կռուէր «մինչեւ յամն Զ․ Արտաշիսի արքայի Հայոց որդւոյն Վռամշապհոյ[22]․ եւ իբրեւ զնա եւս մերժեաց ի թագաւորութենէն՝ ի նախարարսն Հայոց անկանէր թագաւորութիւնն[23]․ զի թէպէտ եւ զանձն յարքունիս Պարսկաց երթայր, սակայն այրուձին Հայոց բովանդակ ի ձեռն նախարարացն առաջնորդէր ի պատերազմի» (7)։ Նոյնպէս

---

[22] Այսպէս Վիեննայի Թ․ 971 ձեռագիրը․ տպ․ կը կարդայ․ «Ստահրշապհոյ»։

[23] Հմմտ․ Կեղծ-Ղազար (Ա․ 24—25)․ «հրաման տայր (Վռամ Ե․) վաղվաղակի ի բաց առնուլ զթագաւորութիւնն յԱրտաշիսէ… յայնմ հետէ բարձաւ թագաւորութիւնն յազգէն Արշակունեաց ի Զ․ ամի Արտաշիսի… եւ անկաւ աշխարհս Հայոց ընդ լծով… Պարսից»։

ունի Մ. Խորենացի (Գ. 58). «որ տիրեաց ամս վեց»: Ընդունելով այս վեց տարիները մերձաւորապէս ուղիղ, Արտաշիրի մահը տեղի ունեցած պիտի ըլլայ 427/28ին: «Եւ ապա մարզպանք պարսիկք կալան (գիշխանութիւնն աշխարհին Հայոց) մինչեւ առ մեզ» (Եղնիկ):

Թէ ի՞նչպէս վերջ առաւ Արշակունեաց հարստութիւնը, չենք գիտեր. ժամանակակից աղբիւր կը պակսի այս մասին մեր ձեռքը: Պիտի ենթադրենք, որ Արտաշէս վախճանեցաւ բնական մահուամբ, առանց ժառանգի. եւ Պարսից արքունիքը չհաճեցաւ տալ իր «հրամանը» յաջորդի գահակալութեան համար:

Ինչ որ կը պատմէ Կեղծ–Ղազար Փարպեցի Արտաշիրի «անարժան» վարքի մասին, չի կրնար հաստատուիլ ժամանակակից վկայի մը վկայութեամբ: Ե. դարու առաջին կէսը չի կրնար նման երեւոյթ մը հանդուրժել իր մէջ: Նախարարներու ըմբոստութիւնը թագաւորին եւ կաթողիկոսին դէմ անկարելի է մտածել Ե. դարու այդ շրջանին. երբ կ'իշխէր ոգեւորութիւն երկրին մէջ Սահակի եւ Մաշտոցի հովանաւորութեան տակ. երբ հեռաւոր եւ մերձաւոր ընդառաջ կ'ելլէր Վարդապետին եւ անոր հրամանին կ'ենթարկուէր: Եթէ Վռամշապուհ մանուկներ կը հաւաքէր, դպրոցներ կը բանար գրականութեամբ մարզելու նոր սերունդը, իր որդւո՞յն հանդէպ անտարբեր պիտի գտնուէր թագաւորը: Կը համարիմ թէ Արտաշէս Սահակի հայրական դաստիարակութեան տակ առած էր իր

կրթութիւնը․ եւ իբրեւ թագաւոր նպաստած էր իր կարգին գրականութեան զարգացման։

Սուտ–Ղազար եւ Մ․ Խորենացի չուզելով ճանչնալ 387—400 եւ 409—420 տարիներու անիշխանութիւնը, 385—428 տարիներու միջոցը կը լեցնեն այսպէս․

Խոսրով Գ․ ամս Ե․ (385—390)․
Վռամշապուհ ամս ԻԱ․ (390—411)․
Խոսրով Գ․ միւսանգամ, ամ մի (412)․
Շապուհ որդի Յազկերտի Ա․, ամս Դ․ (413—416)․
Անիշխանութիւն ամս Գ․ (417—420)․
Արտաշէս որդի Վռամշապհոյ ամս Զ․ (421—427/28)։

Մարզպանները, որոնք 409—420 եւ 428—450 կառավարեցին Հայաստանը, յանուանէ չեն յիշուած։ Մ․ Խորենացի կու տայ Վեհ-Միհրշապուհի մը անունը, որ Արտաշէսի գահընկեցութենէն ետքը ուղարկուած է իբրեւ Մարզպան Հայաստան (Գ․ 64)։ Խորենացւոյ աղբիւրը անծանօթ է[24]։ Գիտենք սակայն, թէ 443/44—450 շրջանին Հայոց մարզպանն էր Վասակ սիւնի․ սա ունէր յաւակնութիւնը ձեռք բերելու նաեւ արշակունեաց թագը։

Հայաստանի հազարապետութիւնը Վահան Ամատունւոյ ձեռքն էր։ Իր գոյութիւնը կը հիւսէ Կորիւն (44—45, 47)։

Երկրին քաղաքական կացութեան հեռաւոր պատկերը կը գծէ Շահապիվանի ժողո-

24 Հմմտ․ իմ Եղիշէ վարդապետ, Բ․, էջ 412։

վոյն Կանոնաց Յառաջաբանը, խմբագրուած այժմեան ձեւին մէջ Ը. դարուն, առանց տարակուսի յեցած Կանոնաց Նախաբանին վրայ: Ժողովը տեղի ունեցած է Յազկերտ Բ.ի Զ. (կամ ըստ այլ ձեռագրաց Ժ. եւ ԺԶ.) տարւոյն, այն է 444 (կամ 448) «ի ժամանակի> Ներսաբեր տօնին» (Յունուար 6) «ի մարզպանութեան Հայոց Վասակայ Սիւնեաց տեառն. ի հազարապետութեան Վահանայ Ամատունւոյ. եւ ի մաղխազութեան Վրուայ Խոռխոռունւոյ»: Ժամանակի Հայոց սպարապետն է Մանաճիհր Ռշտունի: Ժողովոյն ներկայ էին նաեւ Վարդան Մամիկոնեան, Արշաւիր Կամսարական եւ Ձիկ Դիմաքսեան:

Սպարապետութիւնը Մամիկոնեանց ձեռքը չէ: Հաւանօրէն Արտաշիր Մամիկոնեան, Մանուէլի որդին, եւ Հայոց սպարապետը 385ին Արշակի հետ Հռովմէական Հայաստան անցած ըլլալուն, Խոսրով իր զօրաց սպարապետ ընտրեց ուրիշ նախարար մը՝ Մանաճիհր Ռշտունի, որ 444ին սպարապետ տիտղոսը կը կրէ: Մամիկոնեանք կորսնցուցած էին իրենց հմայքը. նկատուած էին Պարսից արքունիքէն անվստահելի, նաեւ վտանգաւոր: Կանոնագրոց Յառաջաբանի մէջ կ՚ըսուի. «Զէր ի ժամանակին յայնմիկ իշխանութիւն եւ զօրութիւն ի ձեռին ազգին Մամիկոնէից. զի զօղեալ եւ նուաճեալ եւ հնազանդեալ էին համբարձելոյ[25] պարսկային թագաւորութեանն: Զի թէպէտ եւ

[25] Տպ. համարձակելոյ:

հեծէին մրմռային, մինչէին ի նմանութիւն կորեանց առիւծուց Վարդան Մամիկոնեան < եւ եղբարք> համազգ<ե>օք իւրեանց հանդերձ [եղբարք], այլ կային իբրեւ ի գառագեղ <ի> արգելեալք. եւ ակն ունէին ի վերուստ օգնականութեան: Քանզի չարահնար ազգն Պարսից ի կասկածանս կային յերկիւղի եւ ոչ տային գիշխանութիւն ի ձեռս նոցա»[26]:

Կասկածելի էին[27] Համազասպ Մամիկոնեան[28] եւ իւր որդիքն Վարդան, Հմայեակ եւ Համազասպեան, վասն զի ոչ միայն ունէին կապ Հռովմէական Հայաստան անցած Մամիկոնեանց հետ, այլ եւ խնամացած էին Գրիգորի տան հետ յանձին Մեծին Սահակի դստեր՝ Սահականոյշի, որ կինն էր եղած Համազասպ Մամիկոնեանի. եւ առով ժառանգական իրաւամբ իրենց կը պատկանէր կաթողիկոսական աթոռը.

Բայց եւ այնպէս գիտցան Մամիկոնեանք չահիլ իրենց արքայից արքայի սիրտը եւ ձեռք բերել սպարապետութիւնը:

449/50ին Վարդան Մամիկոնեան էր Հայոց սպարապետը. հաւանօրէն անիկա ի Մարվիռոտ, Յազկերտ Բ.ի ներկայութեան ցոյց տուած քաջութիւններով արժանացած էր թագաւորին գնահատութեան[29] եւ վարձատրուած սպարապետութեամբ:

---

[26] Հայապատում § 128, էջ 159: Իմ Եղիշէ, Բ., 413—414:

[27] Հմմտ. իմ Եղիշէ, Բ., 429—434:

[28] Կասկածելի է Կեղծ-Ղազարայ (37) զՀամազասպ «սպարապետ» անուանելը:

[29] Փարպեցի, Բ., 79:

## 4. ՄԵԾՆ ՍԱՀԱԿ ԿԱԹՈՂԻԿՈՍ ՀԱՅՈՑ

*Սահակ «որդին էր Ներսէսի առաքինւոյ, Թոռն Աթանագինեայ, Թոռին Ս. Գրիգորի[1]»: Զարմանալի է, որ Փ. Բիւզանդեայ Պատմութիւնը, ուր այնպէս մանրապատում կը նկարագրուի Մեծին Ներսէսի կեանքն եւ գործունէութիւնը, ոչ միայն Սահակի անունը չի յիշեր, այլ եւ Ներսէսի առ հասարակ որդի ունենալը կը լռէ: Այս լռութիւնը պահած է նաեւ Կորիւն: Ե.—Է. դարուց մատենագիրներու Թուին մէջ միայն «Եղնիկ երէց» է, որ աւանդած է մեզի Սահակի հայրանունը:*

*Սահակի ծնունդը, դաստիարակութիւնն եւ առաջին կեանքի երկար տարիները մինչեւ Ե. դարու սեամքը լուսաւորելու համար կարեւոր կը համարիմ համառօտիւ դուրս կարկառել անոր հօր պայծառ դէմքը, որուն պատկերը Փ. Բիւզանդեայ Պատմութեան մէջ, ինչպէս ինձ կը Թուի, ինքնին Սահակի վրձինով, նկարահանուած է:*

*Ներսէս Աթանագինեայ որդին եւ Ս. Յուսկան Թոռն էր: Բամբիշն կը կոչուէր իր մայրը,*

---

[1] *Եղնիկ երէց, Նկարագիր կարգաց, Ա.: Հմմտ. եւ Սեբէոս, 88, «զոր շինեալ էր (զմատուռն Ս. Հռիփսիմեայ) սրբոյն Սահակայ հայրապետի Հայոց կաթուղիկոսի, որդւոյ սրբոյն Ներսեսի»:*

որ Տիրան թագաւորի «քոյրն»[2] էր: Անիկա «լեալ էր ամուսնաւոր յաշխարհական կեանս, նախ յաստիս մանկութեան ի տղայութենէ անեալ եւ ուսեալ ի Կեսարացւոց քաղաքին Գամրաց ընդ հաւատարիմ վարդապետօք եւ ցանկալի եղեալ իւրոցն համարուեստն զուգակցացն» (իրր յընթացս 328—338 տարիներու): Արշակի թագաւորութեան սկիզբը (338/39) «էր ի վարս զինուորութեան ի վերայ ամենայն կարգաց կենաց թագաւորութեանն՝ ի ներքս եւ արտաքոյ», «նախանձելի՝ արութեամբն»[3]. իսկ ի ներքս ի սրտին «երկիւղած ի Տեառնէ Աստուծոյ, յոյժ աւանդապահ պատուիրանաց նորա, մարդասէր, սուրբ, զգաստ, սաստիկ իմաստուն եւ առանց ակնառութեան՝ իրաւանց իրաւարար, ցածուն, քաղցր, խոնարհ, աղքատասէր». «այսպէս էր ամենեւին կատարեալ յամենայնի»: Նաեւ արտաքին տեսքով «բարձր ցանկալի հասակաւ եւ վայելուչ գեղով»:

Իբր 340ին[4] ժողովրդեան միաձայն հաւանութեամբ կաթողիկոս կ'ընտրուի Ներսէս. «ամենեքեան ասէին ցարքայն. Վասն զի Ճորո—

[2] Փ. Բիւզանդեայ Պատմութիւն, Գ., 5 եւ 19: Գրիգորի տան խնամութիւնը արքունի տան հետ այս տոաջին շրջանին կը յարուցանէ կարգ մը ժամանակագրական եւ ազգախառնական դժուարութիւններ. զորոնք չենք յուզեր չօշափել հոս:

[3] Տպ. արութեանն:

[4] Արքայացանկի համաձայն Արշակի դահակալութիւնը կ'իյնայ 338/39ին. որ կը համաձայնի նաեւ արտաքին աղբիւրներու հաղորդած տեղեկութիւններուն: Այս մասին ընդարձակ պիտի խօսիմ Արքայացանկի քննութեանս մէջ:

գնաց Աստուած զթագաւորութիւն ձեր, սոյնպէս պարտ է յայնմ (Գրիգորի) զաւակէ նորոգել զհոգեւոր նահապետութիւնն»: Ներսէս իւր հովուական պաշտօնը վարեց իբր 35 տարի[5] ամենայն անձնանուիրութեամբ, առանց աչառելու թագաւորներէ աւետարանեց, հնչեցուց արդարութեան ձայնը, վերահաստատեց երկրին մէջ քրիստոնէական կարգերը, բացաւ բարեգործական հիմնարկութիւններ՝ աղքատանոցներ, հիւրանոցներ, հիւանդանոցներ եւ վանքեր արանց եւ կանանց: Եղաւ «Լոյս աշխարհի»[6]: Մինչեւ ի մահ հաւատարիմ իւր հովուական պաշտօնին՝ վախճանեցաւ 373ին դեղակուր, իբրեւ մարտիրոս իւր կոչման:

Հօրը առաքինութիւններուն ականատես վկան եւ ժառանգն եղաւ Սահակ: Թէպէտ պատմութիւնը անոր երկայնակեաց կեանքի կջերը չէ բացած մեր առջեւ, բայց իր դէմքը Ե · դարու չէմքին վրայ կը ծագի կեանքի հասարակածին լուսալիր, որ ենթադրել կու տայ իւր ետեւ զուարթ առաւօտ մը: Սահակ վախճանեցաւ 438, Սեպտեմբեր 7ին, «լցեալ աւուրբք երկայն ժամանակօք եւ վայելչացեալ աստուածաբեր պտղոցն բարութեամբք»[7]: Կորեան բացատրութիւնը «լցեալ աւուրբք երկայն ժամանակօք», թոյլ կու տայ մեզի գոնէ 100 տարեկան ենթադրել զինքը մահուան ան-

[5] Այսպէս նաեւ Մ. Խորենացի, անշուշտ հնագոյն աղբիւրէ մը օգտուելով:

[6] Փ. Բիւզ., Դ., 3:

[7] Կորիւն, 41: Diegesis կ'ընծայէ Սահակի 110, եւ Թովմ. Արծրունի՝ 120 տարի: Տե՛ս վարը:

կողնոյն մէջ. այս ըմբռնմամբ ծնունդը կ՚իյնայ 338/39 տարւոյն:

Սահակի մօր անունը չէ յիշուած: Նաեւ Սահակ «լեալ էր ամուսնաւոր յաշխարհական կեանս». որովհետեւ կը յիշուի իր մէկ դուստրը, յետիններէն կոչուած Սահականոյշ[8], որ ապա Համազասպ[9] Մամիկոնեանի կինն եղաւ. ասկից ծնան Վարդան[10], Հմայեակ եւ Համազասպեան Մամիկոնեանները, «որոց էտ եւ կնքեաց սուրբ այրն Աստուծոյ Սահակ զատացուածս գեօղից խրոց եւ ագարակաց. եւ որ ինչ միանգամ էր իւր՝ ետ նոցա ի ժա–

[8] Ղ. Փարպեցի Սահակի դստեր անունը չի յիշեր (Ա. 37): Ս. Շուշանկան վկայաբանութեան մէջ կ՚ըսուի. Վազգէն բդեշխ «կին ունէր զդուստր Վարդանայ Հայոց սպարապետի Մամիկոնէի, թոռին սրբոյն Սահակայ Պարթեւի եւ Հայոց հայրապետի՝ ի դստերէն Սահականուշայ, եւ անուն նորա Վարդենի ի ծնողացն կոչեցեալ եւ Շուշանիկ յորջորջանօք յետոյ անուանեալ». Սոփերք հայկականք. Թ., էջ 10. հաւանօրէն ազդուած Մ. Խորենացիէն (Գ. 5). Սահակ «ունելով դուստր մի Սահականոյշ կոչեցեալ, որ տուաւ յամուսնութիւն Համազասպայ Մամիկոնենին»: Վկայաբանութեան վրացերէն խմբագրութիւնն ունի պարզապէս. «Կին նորա (Վազգէնի) էր դուստր Վարդանայ սպայապետին Հայոց». P. Peeters, Sainte Sousanik, martyre en Arméno-Géorgie, Analecta Bollandiana, 53 (1935), 24. Հմմտ. անդ, էջ 267:

[9] Համազասպ Մամիկոնեան, զոր Ղազար (Ա. 37) սպարապետ կ՚անուանէ, ուրիշ կողմէ անծանօթ է: 384ին սպարապետութիւնը Արտաշիր Մամիկոնեանի, Մանուէլի որդւոյն փոխանցուած էր (Փ. Բիւզ., Ե., 44): Արտաշիր հաւանօրէն Արշակի հետ անցած էր Հռովմէական Հայաստան. իսկ Պարսկահայաստանի մէջ սպարապետութիւնը յանձնուած էր Մանաճիհր Ռշտունւոյ: Ո՞վ էր Համազասպ, Արտաշիրի եղբա՞յրը թէ որդին:

[10] Վարդան իւր «հաւը» կը կոչէ զՍահակ. Ղ. Փարպ., Բ., 57:

ռանդութիւն եւ զաւակի նոցա մինչեւ յաւիտեան»[11]:

Պիտի ենթադրենք թէ Ներսէս Մեծ հոգացած ըլլայ իր որդւոյն ընտիր դաստիարակութեան մասին: Ինչպէս ինքը ընդունած էր հելլենական կրթութիւն, նոյնպէս իր զաւակը զետեղած պէտք է ըլլայ հելլէն միջավայրի մը մէջ զարգանալու հելլենական դպրութեամբ: Գիտենք Կորիւնի վկայութեամբ, թէ հմուտ էր Սահակ յունարէն լեզուին եւ կատարած է յոյն մատենագրութիւններէն թարգմանութիւններ:

Սահակ 35 տարեկան էր, երբ վախճանեցաւ Ներսէս: Հաւանօրէն իր հօրը ձեռքէն ընդունեցաւ Սահակ քահանայական ձեռնադրութիւնը. եւ ապրեցաւ հայրապետանոցին մէջ յԱշտիշատ «ի բուն գիւղն իւր»[12], ուր «էին ի ներքինի հայրապետանոցին ի տան իւրում ընդ նորա (Ներսիսի) ձեռամբ ԺԲ. եպիսկոպոսք աթոռակիցք իւր, գործակիցք եւ խորհրդակիցք»[13]: Անշուշտ նաեւ Սահակ կը գործակցէր իր հօր:

Պապ, որ պատճառ եղած էր Ներսիսի մահուան, չբարձրացուց հայրապետական գահին վրայ զՍահակ իբրեւ օրինաւոր յաջորդ Գրիգորի տունէն: Աթոռը յանձնեց Յուսիկին, որ Աղբիանոսի տնէն էր: 373—386 տարիներուն

[11] Ղ. Փարպ., Ա., 37: Ուրիշ վկայ կը պակսի:
[12] Կորիւն, 42: Ներսէս Մեծի «բուն գիւղն» էր Ամօք. Բիւզ., Զ., 6:
[13] Փ. Բիւզ., Զ., 3:

հետեւեալ «գլուխք եպիսկոպոսաց» կը տեսնուին կաթողիկոսական աթոռին վրայ․

Յուսիկ Աղբիանոսեան ամս Գ․ 373—376[14].
Զաւ(ր)էն Աղբիանոսեան ամս Գ․ 377—379[15].
Շահակ Կորճեայ ամս Բ․ 380—381[16].
Ասպուրակէս Աղբիանոսեան ամս Ե․ 382—386[17]:

Ասպուրակէս կենդանի էր Խոսրով Գ.ի թագաւորութեան օրով[18]: Եղնիկ երէց[19] կը գրէ․ «Առ որով (Խոսրովու) Ասպուրակէս կաթողիկոս: Եւ դարձեալ առ որով ընտրեցաւ Սահակ անուն լինել կաթողիկոս, որ է որդի Ներսէսի»:

Ըստ այսմ Սահակի ընտրութիւնը տեղի ունեցած է իբր 386/87ին, երբ գահի վրայ էր դեռ Խոսրով: Այս հաշուով Սահակի գահակալութիւնը տեւած է 51 տարի[20]: Երբ գահ կը բարձրանար Սահակ դեռ նոր էր բաժնուած Հայաստանը Պարսից եւ Հռովմայեցւոց մէջ (385): Գրգռուած էր ժողովուրդը: Անշուշտ կար քաղաքական նպատակ մը, երբ Պարսից արքունիքը կու տար իր հաւանութիւնը, որ

---

[14] Փ․ Բիւզ․, Ե․, 29· կաթողիկոսութեան տարիները չէ նշանակած: Այսպէս «Գ․» ունի Diegesis:
[15] Փ․ Բիւզ․, Զ․, 2:
[16] Անդ, Զ․, 3:
[17] Ժամանակք հայրապետաց (Սամ․ Անեցի, 268)․ հմմտ. եւ Խոր․, Գ․, 41:
[18] Փ․ Բիւզ․, Զ․, 3:
[19] Նկարագիր կարգաց, Ա:
[20] Այսպէս նաեւ Մ․ Խոր․, Գ․, 67: Ժամանակք հայրապետաց ունի՝ ԽԱ․, Diegesis Խ:

*կաթողիկոսական գահին վրայ Սահակ բազմի: Ասով պիտի սիրաշահուէր ժողովուրդը: Իրօք ալ գիտցաւ Սահակ հեռատես քաղաքականութեամբ անդորրացնել երկիրը, համակերպել ժողովուրդը ճակատագրական հարուածին հետ: 65 տարի վայելեց Հայաստան ներքին խաղաղութիւն մը, որ այնքան նպաստեց երկրին մշակութային բարգաւաճման:*

*Եկեղեցականութիւնն եւ ժողովուրդը, որոնք Ներսէս Մեծի մահէն ետքը ցրուած եւ լքուած էին, միասնդամ հաւաքուեցան Սահակի շուրջը: Անոնց թուին մէջ խառնուեցաւ քիչ յետոյ (391) Հացեկացին Մաշտոց, որ մերկանալով զինուորական հանդերձը՝ փարեցաւ եկեղեցական սքեմի. «որ էառ զձեռնադրութիւն երիցութեան ի նմին Սահակայ կաթողիկոսէ»* [21]*: Մաշտոց, որ զարգացած էր «հելլենական դպրութեամբ», եղաւ նեցուկը Սահակին եւ գործեցին անոնք ձեռն ի ձեռն, միասիրտ եւ միախորհուրդ:*

*Մաշտոց գումարեց իւր շուրջը հոգելից հոգեկիր աշակերտներ եւ շրջեցաւ անոնց հետ Գողթն գաւառը, քարոզելու աւետարանական վարդապետութիւնը: Այս առաջին առաքելական շրջանը, կատարուած ծայրագաւառի մը մէջ, ուր կ՚իշխէր ոգիտութիւնը, արթնցուց Մաշտոցի մէջ անհրաժեշտ հարկաւորութիւնը լուսաւորելու այն անլոյս կողմերը գրականութեամբ: Կը վերադառնայ Վաղարշապատ,*

---

[21] *Նկարագիր կարգաց, Ա:*

*պատմելու Կաթողիկոսին իր անմխիթար տպաւորութիւնները: Սահակ եւ Մաշտոց կը խորհին այնուհետեւ հայ գրականութեան սկիզբը դնել: Մաշտոց կը յաջողի ձեւակերպել 36 նշանագիրներ. եւ Առակաց գրոց թարգմանութեամբ հիմնաքարը կը դրուի հայ մատենագրութեան (407): Սահակ ընդառաջ կը վազէ Մաշտոցին, որ Միջագետքէն կու գար հայ նշանագիրներով, եւ Ռահ գետին ափանց վրայ կ'ողջունէ իւր զուգակնը ուրախութեամբ*[22]*:*

*Կը բացուին դպրոցներ, կը հաւաքուին աշակերտներ, որոնց Մաշտոց նորագիւտ հայկական տառերը կը սորվեցնէ. կաթողիկոսն ինքնին «առեալ զՄամիկոնեան որեարն՝ որոց տաաջնոյն Վարդան անուն էր, որ եւ Վարդկան կոչէր ||||*[23]*, նոյնպէս եւ զամենայն ոգի ջանայր յերիւրել հաստուցանել ի գիտութիւն ճշմարտութեան» (Կոր. 23): Այդ Վարդանը կաթողիկոսին թոռնիկն էր, որ յետոյ Հայոց սպարապետ կարգուեցաւ եւ Աւարայրի դաշտին վրայ հերոսաբար մարտիրոսական պսակով պսակուեցաւ. կը վկայէ անիկա ինքնին, թէ Ս. Աւետարանի վարդապետութիւնն «ուսոյց եւ հաստատեաց յիս ճշմարիտ հաւն իմ տէր Սահակ»*[24]*:*

*Գրական շարժման ղեկը Սահակի ձեռքն էր. անոր ակնարկութեանց համաձայն կը*

---

[22] *Այս մասին տե՛ս վարք ի վարս Մաշտոցի:*
[23] *Կը սպասուէր, որ յիշուէր գոնէ երկրորդ մ'ալ:*
[24] *Ղ. Փարպ., Բ., 57:*

շարժէր Մաշտոց եւ կ'ընթանային աշակերտները: «Յետ այնորիկ առնոյր հաւանութիւն երանելին Մաշտոց, որպէս զի Տէր եպիսկոպոսն (Սահակ կաթողիկոս) ի կայենականսն եւ նա (Մաշտոց) ի սփիւռս հեթանոսաց զբանն կենաց սերմանիցեն» (Կոր. 24). այս ինքն Սահակստանձնէ Այրարատի, Տարօնի եւ Վասպուրականի քարոզութիւնն եւ նոյն նահանգներու մէջ գրականութեան տարածումը, անշուշտ ի ձեռն իւր աշակերտներուն, իսկ Մաշտոց շրջի Գողթն, Սիւնիք եւ Աղուանից աշխարհը: Ընտրուած ծրագրի համաձայն մեկնեցաւ Մաշտոց, առած հետը աշակերտներու խումբ մը, դէպի Գողթն գաւառ—Սիւնիք—Աղուանք—Բաղասական կողմանք—Գարդմանք—Վրաստան: Յաջողութեամբ ի գլուխ հանելով իւր ընթացքը Մաշտոց՝ «դառնայր յերկիրն Հայոց եւ պատահեալ Սահակայ կաթուղիկոսի Հայոց՝ պատմէր նմա զաջողութենէ եղելոցն» (Կոր. 26): Ժամանակ մը դադար առնելէ ետքը՝ միւսանգամ կը շրջի Մաշտոց «զտեղեօքն կարգելովք», յատկապէս Վրաստան եւ Տաշիրք, եւ «ինքն դառնայր ի կողմանս Հայոց մեծաց. եւ եկեալ ի սովորական տեղիսն՝ զընդելական ողջոյնն սրբոյն Սահակայ եւ ամենայն պատահելոցն տուեալ՝ պատմէր նոցա վասն այնր եւս նորագործ իրացն» (Կոր. 32):

Մաշտոց այժմ (419/20) հրաման կ'ընդունի Սահակէն անցնիլ Հռովմէական Հայաստան: Բաժանումէն (385) ի վեր հռովմական

այցելութիւն մը չէր տրուած այն կողման «կէս ազգին Հայոց»․ լսուած էր, թէ մուտ գործած է հոն Բորբորիանոսաց աղանդը եւ կը ճարակի․ կարեւոր էր նաեւ կարգ մը գեղծումներու առաջն առնել, բայց ի մասնաւորի մուծել այնտեղ հայկական նշանագիրներն եւ նոր դրականութիւնը։ Այս առաքելութիւնն ալ յաջողութեամբ կը պսակուի․ «եւ ինքն (Մաշտոց) բազում աշակերտօք գայր անցանէր ի կողմանս Հայոց մեծաց․ եւ հասեալ ի Նոր քաղաքն (Վաղարշապատ)՝ յանդիման լինէր սրբոյ եպիսկոպոսին Սահակայ եւ թագաւորին Հայոց, որում անուն Արտաշէս կոչէին եւ ամենայն բանակին․ եւ պատմէր նոցա զգործ կողմանցն այնոցիկ ըստ աջողութեանց շնորհացն Աստուծոյ» (Կոր․ 30)։

Հաւանօրէն Մաշտոցի բացակայութեան տեղի ունեցաւ այն ճանապարհորդութիւնը, որ գծերունի կաթողիկոսն ի Տիզբոն հանեց։ Կաթողիկոսին Բարձրագոյն Դուռն երթալու նպատակն էր անշուշտ Յազկերտ Ա․ի հետ բերան ի բերան խօսիլ ի նպաստ Արտաշէսի թագաւորութեան։ Երբ Տիզբոն կը հասնէր Սահակ, Պարսկաստանի քրիստոնէութիւնը սաստիկ հալածանք մը կ՚ապրէր։ Որմիզդ–Արտաշիր քաղաքին մէջ քահանայ մը անխոհեմութիւնն գործած էր կրակատուն մ՚այրելու․ որ պատճառ տուած էր մոգերուն՝ քրիստոնեաներու դէմ գրգռուելու։ Եւ Յազկերտ Ա․ տեղի տալով մոգերու գայրոյթին՝ յարուցած էր ընդհանուր հալածանք քրիստոնէութեան

դէմ: Նահատակուած էր Արդա, նոյն քաղաքի եպիսկոպոսը (420): Հալածանքը վերջ առաւ Սահակ Հայոց կաթողիկոսի բարեխօսութեամբ, որ յաչս արքային մեծ համբաւ կը վայելէր այնու որ աշխատանք տարած էր իւր ժողովուրդը արքային հնազանդ եւ հպատակ պահել[25]: Յազկերտ Ա. վախճանեցաւ նոյն 420 տարւոյն աշնան[26], հաւանօրէն երբ տակաւին ի Դուռն կը գտնուէր Սահակ: Յաջորդեց գահին վրայ Վռամ Ե.: Պէտք է ենթադրել թէ նորընծայ թագաւորէն ստացաւ Սահակ հաւանութիւնը պսակելու զԱրտաշէս արքայական թագով, 421ին:

Հայ նշանագիրները մուտ գտած էին հայաբնակ վայրերը. ստեղծուած էր արդէն հայաբարբառ հարուստ գրականութիւն մը: Կը մնար այժմ աւելի ճոխացնել զայն եւ պայծառացնել նորանոր թարգմանութիւններով եւ հեղինակութիւններով. «յետ այնորիկ ուշ

---

[25] Maris, Amri et Slibae de patriarchis Nestorianorum commentaria, ed. H. Gismondi. Pars I (Romae 1899), 28; pars II (Romae 1897), 16. Մարի կը գրէ. Հալածանքը «քիչ վերջը դադրեցաւ Իսահակ Հայոց պատրիկի բարեխօսութեամբ. սա եղաւ պատճառ, որ Հայերը հնազանդեցան Յազկերտի»: Իսկ Ամր նոյնը այսպէս կը խմբագրէ. «Հալածանքը տեւեց մինչեւ որ աղաչեց Իսահակ Հայաստանի առաջնորդը, որ նոյն ժողովուրդը Յազկերտի ի հնազանդութիւն բերած էր. (սա խնդրեց Յազկերտէն) որ քրիստոնեաները չարչարելը դադրեցնէ»: Հմմտ. P. Peeters, Analecta Bollandiana, 28 (1909), 401 եւ G. Westphal, Untersuchungen über die Quellen und die Glaubwürdigkeit der Patriarchenchronik des Mari Ibn Suleiman. Kirchlein 1901, էջ 145—149:

[26] Labourt, Le christianisme dans l'empire perse, p. 109.

*եղեալ երկոցունց երանելեացն զիւրեանց ազգին զդպրութիւնն առաւել յարդել եւ դիւրացուցանել· ձեռն ի գործ արկանէր ի թարգմանել եւ ի գրել Մեծն Սահակ[27] ըստ յառաջագոյն սովորութեանն»* (*Կոր*. 32)։ *Այս նպատակով Եդեսիա կ՚ուղարկուին Յովսէփ Պաղնացի եւ Եզնիկ Կողբացի, որպէս զի ասորական հարց գործերը թարգմանեն. Հաւանօրէն Արտաշէսի մահէն ետքը* (427/28)։ *Անոնք կ՚անցնին ապա Կ. Պոլիս, նաեւ յունական հայրերու գրուածքները հայացնելու համար*։

*Աշակերտները հաւանօրէն դեռ Եդեսիա էին, երբ գումարուեցաւ Եփեսոսի տիեզերական ժողովը* (431)· *ուր դատապարտուեցաւ Նեստորի մոլար վարդապետութիւնը։ Ժողովի ներկայ էր նաեւ Ռաբբուլա, Եդեսիոյ մետրապոլիտը։ Սա, որ ժողովէն յառաջ եւ ժողովի ընթացքին միշտ Կիւրեղ Աղեքսանդրացւոյ հակառակորդներու թուին մէջ էր, երբ վերադարձաւ Եդեսիա, առաջինն եղաւ արեւելեան եպիսկոպոսներէն, որ տեղի տալով դիմադարձութեան՝ հաշտուեցաւ Կիւրեղ Աղեքսանդրացւոյ հետ*[28]։

---

[27] *Տպ. Իսահակ*։

[28] *Այս շրջանի պատմութեան համար նկատի ունիմ՝* P. Peeters, La vie de Rabboula, évêque d'Edesse († 7 août 436). Recherches de science religieuse, 18 (1928), 170—204, *յատկապէս՝ էջ* 189—197. *Նոյն՝* Pour l'histoire des origines de l'alphabet arménien. Revue des études arméniennes, 9 (1929), 203—237, *յատկապէս՝ էջ* 213—217. *Նոյն՝* Jérémie, Evêque de l'Ibérie perse (431). Analecta Bollandiana, 51 (1933), 6—33, *յատկապէս՝ էջ* 21—25. A. d'Alès, La lettre

Ռաբբուլա այժմ հրապարակ իջաւ եւ բուռն թափով սկսաւ պայքարիլ Թէոդորոս Մոպսուեստացւոյ դէմ, անոր գրուածքները հերետիկոսական հրատարակեց, արգիլեց անոնց ընթերցումը, նոյն իսկ պահանջեց, որ այրուին անոնք եւ բնաջնջ ըլլան. իսկ հետեւորդները ենթարկեց հալածանքի: Ռաբբուլայի այս յանկարծական դրդումը եպիսկոպոսի մը դէմ, որ վայելած էր ի կենդանութեան մեծ հռչակ, մեռած էր 428ին Եկեղեցւոյ հետ խաղաղութեան մէջ եւ կը յարգուէր տակաւին իր գրուածքներու մէջ ընդհանուրէն, ի սկզբան զարմանք պատճառեց: Թէպէտ կային Մոպսուեստացւոյ գրուածքներու մէջ տեսութիւններ, որոնք Նեստորի վարդապետութեան ելակէտ եղած էին, բայց զգուշացան նոյն իսկ Եփեսոսի ժողովին հարք իրենց նզովքներու մէջ յանուանէ յիշել Թէոդորոսի անունը: Նաեւ Ռաբբուլա ինքնին, որ կը սիրէր կարդալ Մոպսուեստացւոյ գործերը, մինչեւ այն ժամանակ չէր արտայայտուած երբեք, թէ անոնց հեղինակը հերձուածողական վարդապետութեան մէտ ըլլայ. նոյնպէս, թէպէտ քաջ գիտէր, թէ Իբաս (Հիբա) Եդեսիոյ «Պարսից Դպրոցին» գլուխն, որ «թարգմանիչ» յորջորջանքը կը կրէր, Թէոդորոս

d'Ibas à Marès le Persan. Recherches de science religieuse, 22 (1932), 5—25. Ն. Ադոնց, Մաշթոց եւ նրա աշակերտները ըստ օտար աղբիւրների, Վիեննա 1925, էջ 11—30: Ed. Schwartz, Konzilstudien, Straßburg 1914.

Մոպսուեստացւոյ հետեւող մըն էր, բայց չէր գտած հոն մինչեւ 431 դիտողութեան արժանի բան մը: Այս պատճառաւ ալ Մետրապոլիտին յանկարծական պոռթկումը մեծ յուզում յառաջ բերաւ Պարսից Դպրոցին մէջ: Իբաս եւ իր աշակերտները նկատելով որ ականաւոր Մեկնիչին գրութիւնները բնաջնջման վտանգի մէջ են, պաշտպան կանգնեցան անոնց ընդդէմ Մետրապոլիտին եւ իրենց օգնութեան կանչեցին Սամոսատի Անդրէաս եպիսկոպոսը. իսկ սա դրաւ խնդիրը Յերապոլսի Աղեքսանդր եպիսկոպոսի առջեւ, որ այն շրջանին անտիոքեան ուղղութեան հետեւողներու քով մեծ անուն կը վայելէր: Այս թղթին մէջ Անդրէաս Սամոսատցի ի մէջ այլոց կը գրէր[29]. «Սոքա, որ վասն ուղիղ հաւատոց փոյթ յանձին ունին, գրեցին առ իս յԵդեսիայ, եթէ Ռաբբուլա յայտնագոյնս հեռացեալ ի վարդապետութեանց ճշմարտութեանն՝ զջատագովս ուղիղ հաւատոցն հալածիցէ. այնպէս զի զերանելին Թէոդորոս, որ ուղիղ հաւատոցն վարդապետ եկաց, յանդգնիցի նզովել յԵկեղեցւոջ եւ ընմանէ բազում չարիս խօսիցի, նզովիցէ եւ զայնոսիկ, որ միանգամ զնորայսն ընթեռնուցուն եւ ոչ զնոսին հուրբ մաշիցեն»: Նոյն միտքը կը կրկնէ Յովհ. Անտիոքացի առ Ոսրոյենէի եպիսկոպոսներն գրած թղթին մէջ[30]. «Ի բազմաց եւ յարժանահաւատ մարդոց ի

[29] Ed. Schwarz, Conzilium Ephesinum, IV, 86.
[30] Անդ, 87:

վերայ համայք ճչղիւ դատակաւ, եթէ մեծարոյն Ռաբբուլա ոչ զՆղեսիա եւեթ աղմկիցէ, այլ եւ զորս ի դրացի նահանգսն բնակիցին, խռովիցէ՝ գործեալ բազում ինչ ընդդէմ առաքելական հաւատոյն. եւ զնոսին, որ ուղիղն իմանայցեն, հալածական առնիցէ»: Իսկ Իբաս իւր համբաւաւոր թղթին մէջ, գրուած առ Մարի պարսիկ, այսպէս կը ներկայացնէ իրողութիւնը[31]. Ռաբբուլա, «քաջ ծանօթականն քեզ՝ բռնաւորն քաղաքիս (Եդեսիոյ), պատճառանօք հաւատոյ ոչ միայն զկենդանիս, այլ եւ զմեռեալս հալածէ, այսպէս, զի օրինակ ի մէջ ածից, զերանելին Թէոդորոս, զպատգամն ճշմարտութեան եւ զվարդապետն եկեղեցւոյ, որ ոչ միայն առ կենդանութեամբ զհերեսիովտեայս ի պարտութիւն մատնեաց, այլ եւ յետ մահուն եթող մանկանց եկեղեցւոյ հոգեւոր զէնս ի գրուածս իւր: Զսա ժտեաց նա հրապարակաւ առաջի ամենայն եկեղեցւոյ նզովել. եւ ամենայն ուրեք ի հարց եւ ի քնին արկան զիրք նորա, ոչ եթէ զի նոքին հակառակ հաւատոյն էին — քանզի մինչ կենդանին էր Թէոդորոս՝ գովէր զնա Ռաբբուլա եւ ընթեռնոյր իսկ զգիրս նորա, այլ զրգռեալ ի թշնամութենէ իմեքէ ծածկելոյ ցայնժամ, զոր բերէր յանձին ընդդէմ Թէոդորայ, որ զնա ի ժողովի ուրեք հրապարակաւ յանդիմանեալ էր»[32]:

---

[31] Mansi, VII, 241—242.
[32] Հմմտ. առ այս՝ RSR, 18 (1928), 187.

*Յովհ. Անտիոքացի երբ վերահաստ եղաւ այս անցքերուն, փութաց Ոսրոյենէի եպիսկոպոսներուն արգիլել որ մինչեւ ցնոր հրաման Ռաբբուլայի հետ, որ իբրեւ եկեղեցւոյ խաղաղութեան վրդովիչ ամբաստանուած էր, որ եւ է հաղորդութիւն չունենան*[30]*: Երկու կողմերու գրգռութիւնը քիչ յետոյ թուլացաւ, երբ Յովհաննէս Անտիոքացւոյ եւ Կիւրեղ Աղեքսանդրացւոյ մէջ համաձայնութիւն կնքուեցաւ* (433)*: Որովհետեւ կը պատկառէր Ռաբբուլա Յովհ. Անտիոքացւոյ առջեւ, չհամարձակեցաւ այլ եւս յայտնապէս մաքառիլ Մոպսուեստացւոյ դէմ: Այժմ ուրիշ ճանապարհ բռնեց: Իրեն օգնական առաւ Մելիտենէի Ակակ եպիսկոպոսը, որ քան զԿիւրեղ Կիւրեղեան մըն էր, եւ յորդորեց զանիկա, որ զգուշացնէ Հայերը Թէոդորի գրուածքներէն: Անշուշտ անծանօթ չէր, թէ Մաշտոց Թէոդորոս Մոպսուեստացւոյ բարեկամներէն էր. անոր խնդրանքով գրած էր Թէոդորոս Պարսից քէշին դէմ, որուն մէջ, ինչպէս Փոտ կը վկայէ, կային նաեւ նեստորամիտ վարդապետութիւններ: Լսուած էր նաեւ թէ Թէոդորի գրուածքները հայերէն թարգմանութեամբ մուտ գտած են նաեւ Հայաստան եւ դրացի երկիրները: Իննովկենտիոս եպիսկոպոսն Մարոնիայ իւր Երից Գլխոց համառօտ պատմութեան մէջ*[33]*, ուսկից օգտուած է ապա Լիբերատոս Կարքեդոնացի սարկաւագ իւր Համա-*

[33] Ed. Schwartz, Konzilstudien, 37—38.

ոստադրին մէջ[34], կը հաղորդէ թէ Թէոդորոսի գրքերը թարգմանուած էին «ի բարբառ Ասորւոց, Հայոց եւ Պարսից»[35]: Թարգմանչին անունը կու տայ յիշատակարան մը Բրիտանական թանգարանի Add. 12. 156 ասորական ձեռագրին մէջ, որ գրուած է 562էն յառաջ[36]: Հոս կ'ըսուի. «յորժամ անօրէնն Հիբա գմոլար գիրսն Թէոդորեայ թարգմանեալ էր եւ առ Հայս առաքեալ»: Նոյն միտքը կանխաւ յայտնած էր նաեւ Պրոկղ Կ. Պոլսոյ հայրապետը իր առ Յովհաննէս Անտիոքացի գրած մէկ թղթին մէջ, ուր կը մեղադրուէր Իբաս յանուանէ, թէ Մոպսուեստացւոյ գրուածքները ասորերէնի թարգմանած[37] է: Ասկէ յառաջ եկած է այն ըմբռնումը թէ Իբաս Թէոդորի գրուածքներու ասորերէն թարգմանութիւնը գաղտագողի Հայաստան մու–

---

34 Migne, Patrologia latina, 68, p. 963. Schwartz, անդ, 38—42: Ադոնց, անդ, 15:

35 In linguam Syrorum, Armeniorum Persarumque (Schwartz, Konzilstudien, 37). Ինձ կը թուի թէ պէտք է իմանալ «ի բարբառ Ասորւոց եւ Հայոց Պարսից» (կողմանն), որովհետեւ Պարսկաստանի քրիստոնէից լեզուն ասորերէնն էր, իսկ Հայոց հայերէն. ուստի Armenii-Persarum = in linguam Syrorum et Armeniorum Persarum.

36 Wright, Catalogue of the Syriac Manuscripts in the British Museum, p. 644. Հմմտ. Anal. Bolland., 51 (1933), 21.

37 Թուղթ Գ., Migne, Patr. gr., 65 p. 875. Հմմտ. d'Alès, La lettre d'Ibas, p. 13. Peeters, Anal. Boll., 51 (1933), 21. Ed. Schwartz, Konzilstudien, էջ 28, կը համարի թէ Հիբա թարգմանած ըլլայ միայն այն ծաղկաքաղը, զոր հանած էին Հայերը (լաւ եւս Ռաբբուլա եւ Ակակ) Թէոդորի գրուածքներէն եւ ուղարկած առ Պրոկղ: Հիբա հրատարակած էր զայն ուղղափառ վարդապետութիւն:

*ծած ըլլայ: Բայց ի՞նչ նպատակ ունէր ասորերէն թարգմանութիւնը Հայաստան ցրուելը, ուր հայերէնն էր երկրին գրական լեզուն: Ինձ կը թուի թէ Իբաս, որուն քաջ ծանօթ պիտի ըլլային Հայաստանի պայմանները, այսպիսի սխալ հաշիւ մը պիտի չգործէր: Եդեսիա, իր գլխաւորութեան տակ, կար Հայոց Դպրոց մը[38]. Թէոդորի գործերը, եթէ նպատակ կար տարածել զանոնք Հայոց մէջ, կարելի էր հայերէնի թարգմանել տալ եւ այնպէս ներմուծել Հայաստան: Բաց աստի կային այս միջոցին Եդեսիա երկու հայ մասնագէտ թարգմանիչներ:*

428/29 *շրջանին Եդեսիա ուղարկուած էին Յովսէփ Պաղնացի եւ Եզնիկ Կողբացի, թարգմանելու ժամանակակից նշանաւոր գործերը: Առանց տարակուսի յանձնարարուած էին անոնք Իբասին՝ Եդեսիոյ Պարսից եւ Հայոց դպրոցի վարիչին՝ անոր խորհրդով եւ մատնանշումներով կատարելու թարգմանելի մատեաններու ընտրութիւնը: Կորիւն կը գրէ. «Որոց դարձեալ դէպ լինէր եղբարս երկուս յաշակերտացն յուղարկել ի կողմանս Ասորւոց ի քաղաքն Եդեսացւոց՝ զՅովսէփ, զոր ի վերոյն յիշեցաք, եւ երկրորդ(ի)ն Եզնիկ անուն՝ յԱյրարատեան գաւառէն ի Կողբ գեղջէ, զի յասորական բարբառոյն զնոցին հարցն սրբոց զաւանդութիւնս ի հայերէն գրեալս դարձուսցեն: Իսկ թարգմանչացն հասեալ՝ ուր առա–*

38 *Այս դպրոցի մասին պիտի խօսիմ վարը:*

քեցանն եւ կատարեալ զհրամանան եւ առ պատուական հարսն առաքեալ, անցեալ գնացին ի կողմանս Յունաց. ուր եւ ուսեալք եւ տեղեկացեալք՝ ի թարգմանիչս կարգէին ըստ հելլենական լեզուին» (32/33) :

Ուշագրաւ է հոս, որ թարգմանիչք կ՚ուղարկուին Եդեսիա ասորական հարց գրուածները թարգմանելու. անոնք ի գլուխ հանելով հրամանը՝ փոխանակ հայրենիք վերադառնալու՝ թարգմանութիւնները «առ պատուական հարսն առաքեալ»՝ իրենք «անցեալ գնացին ի կողմանս Յունաց», թէպէտ չունէին այնպիսի հրահանգ «ի պատուական հարցն» : Մ . Խորենացի ուշադիր այս կէտին՝ մեղադրած է աշակերտները թէ «առանց հրամանի վարդապետացն իւրեանց՝ նոյն ընդ նոյն չուեալ ի Բիւզանդիոն» (Գ . 60) : Կորիւն թէպէտ մանր բացատրութիւն չէ տուած խրողութեան մասին, բայց մենք ակամայ աչքի առաջ կը բերենք այն անցքերը, որոնք տեղի ունեցան 432ին յԵդեսիա տեղւոյն Ռաբբուլա եպիսկոպոսի կողմէն : Հայ աշակերտներու մտերմութիւնը Իբասի հետ անշուշտ թագուն չէր կրնար մնալ եպիսկոպոսի աչքէն. կասկածը առաւել չափով արծարծած պիտի ըլլայ, երբ լուր տարածուեցաւ, թէ Հայոց Դպրոցի թարգմանական արտադրութիւններէն մեծ թուով հատորներ ուղարկուած են Պարսկական Հայաստան : Պարսից Դպրոցին դէմ յարուցուած հալածանքին անշուշտ նաեւ Յովսէփ եւ Եզնիկ ենթարկուեցան : Այսպէս միայն կրնայ

մեկնութիլ, որ Ռաբբուլա յորդորած է Մելիտենէի Ակակ եպիսկոպոսը[33], իբրեւ մտերմագոյն Հայոց, զգուշացնել զՍահակ Մոպսուեստացւոյ գրուածքներու մոլար վարդապետութեան մասին:

Ակակ, Մելիտենէի եպիսկոպոսը, ծանօթ էր անձամբ Մաշտոց վարդապետի եւ անոր աշակերտներէն շատերու հետ, որոնք 420ին իր հիւրն եղած էին: Երկու թուղթ հասած է իրմէ մեզի, հայերէն թարգմանութեամբ, մին գրուած «առ սուրբ Սահակ Հայոց հայրապետ[39]» եւ երկրորդն առ «պատուական եւ առաքինի նախարարս Հայոց»[40]: Վերջին թղթիս մէջ, զոր ուղարկած է ի ձեռն «սիրելեաց մերոց երիցանց Հոնայ, Քոթնայ եւ Անձնայ», կը գրէ Ակակ. «վասն դիմադարձացն ճշմարտութեան, որ զկնի գնացին ամբարշտութեանն Նեստորի եւ Թէոդորի եւ ոչ հեղգացան գովիչք լինել ամբարշտութեան նոցա, եւ մինչ ի սահմանս ձեր փութացան առաքել զթունաւոր եւ զապականիչ վարդապետութիւնն, անմարթ եւ անկարգ համարեցաք լռել, որ ունիք[41] զճշմարիտ վարդապետութեան քարոզութիւն. եւ եթէ յայսպիսի ժամանակի ոչ ճգնեսցուք... աւգնել անձանց անմեղաց եւ յատակամիտ մարդկան, զի մի վնասեսցին ի խարդախամտացն եւ ի նենգա-

---

[39] Գիրք Թղթոց, էջ 14—15:
[40] Անդ, 19—21: Ուստի ոչ առ եպիսկոպոսունս Հայոց, ինչպէս կը գրեն Իննովկենտիոս եւ Լիբերատոս:
[41] Տպ. ունին:

ւոր մշակացն»: Ի կատարածին կը գրէ թէ ինքը կը բաղձայ լսել վերոյիշեալ երէցներէն «զբարի գործսն զոր գործիցէք, զի զգրեալսն Թէոդորի[42] կապիցէք, կնքիցէք··· զի եթէ Նեստորիոս վերացաւ յամենայն եկեղեցեաց, զիա՞րդ Թէոդորի[42] գիրն եւ ուսումն ընդունելի իցէ, որք զնոյն միտս եւ զմիաստակարութիւնն ունին»: Իսկ առ Սահակ թղթին մէջ Եփեսոսի ժողովոյն վճիռը համառօտիւ ծանուցանելէ ետքը կ՚աւելցնէ. «Բայց մեզ երկիւղ է, թէ գուցէ ի Թէոդորեայ Մամուեստեայ ուսմանէն աշակերտեալ ոք գտցի եւ ի չար ժանդէն Նեստորի եւ ի միամիտ անձինս ազդիցէ: Զի զնորա մնացեալ գրեանն իբրեւ խնդիրս այս յայտնեցաւ եւ մանաւանդ որ վասն մարմնախառնին գրեալ էր, վճիռ հրամանի ետ[ուն] սուրբ աշխարհաժողով եպիսկոպոսացն որ յԵփեսացւոց քաղաքին եղեւ՝ ի մի վայր ժողովել զբնաւ գրեանն եւ այրել»[43]:

Զարմանալի է, որ Ակակ թէպէտ գիտէ թէ Մոպսուեստացւոյ գրութիւնները «մինչ ի սահմանս ձեր փութացան առաքել», անշուշտ Իբաս եւ հետեւողք, առ Սահակ գրած թղթին մէջ այս մասին լռելով կասկած միայն կը

[42] Տպ. Դիոդորի, եւ քիչ յետոյ՝ Դիոդորն:

[43] Գիրք Թղթոց, 15: Եփեսոսի ժողովին մէջ այսպիսի «վճիռ հրամանի» չէր տրուած՝ ոչ Նեստորի եւ ոչ Թէոդորի գրուածքներու մասին: Թէոդոս Բ. 435 Օգոստ. 3ին տուած վճռով հրաման հանեց միայն Նեստորի գրուածքներն այրել. իսկ Թէոդորի գրքերու մասին մասնաւոր յանձնարարութիւն կար Կայսեր կողմանէ՝ չդպչիլ անոնց. Hefele, Konziliengeschichte, II², էջ 188, 285, 802:

յայտնէ թէ «գուցէ ի Թէոդորեայ Մամուեստեայ ուսմանէն աշակերտեալ ոք գտցի»․ եւ երկիւղ զգալով յայտնապէս առաջարկելու թէ եթէ կան Թէոդորի գրուածքները, զանոնք կապէ եւ կնքէ, ի մէջ կը բերէ Եփեսոսի ժողովոյն գոյութիւն չունեցող «վճիռ հրամանին՝ ի մի ժողովել զբնաւ գրեանն (Թէոդորի) եւ այրել»։ Այս «վճիռ հրամանին» Թաբբուլայէն էր։

Սահակ իւր պատասխանին մէջ առ Ակակ կը վստահեցնէ թէ Հայաստան ոչ Թէոդորի գրութիւններն են հասած եւ ոչ ալ Նեստորի վարդապետութեան քարոզիչները․ «այլ յաղանդոյն որ գրեցեր զարշել, առ ժամանակս ի շնորհս Աստուծոյ այսպիսի ինչ չեւ է հասեալ. ապա եթէ իցէ ինչ ծածկեալ ի ժանդոյ անտի՝ ի հարկէ ջան լիցի խլել զխոշն ի միջոյ զի միաբանութեամբ փառաւորեսցուք զՔրիստոս»։

Ըստ այսմ անըմբռնելի կը մնայ թէ ի՛նչպէս Իննովկենտիոս Մարոնիացի[44] եւ իրեն հետեւելով Լիբերատոս սարկաւագ Կարքեդոնացի կրնան գրել թէ երբ լսուեցաւ Կիլիկիա, թէ Ակակ Թաբբուլայի զրդմամբ այսպիսի քայլ մ'առած է ի Հայս, կը փութան տեղւոյն տակաւին Նեստորի յարած եպիսկոպոսները ժողով մը գումարել, ուր կը յայտարարեն — Հիբայի խօսքերով — թէ Թաբբուլա եւ Ակակ աւելի անձնական ատելութենէ եւ նախանձէ շարժած զգուշացուցիչ թուղթեր գրած են

[44] Schwartz, Konzilstudien, 38.

Հայոց, քան Հայոց հաւատքի նկատմամբ ունեցած գուրգուրանքէն: Բնականաբար անտարբեր չգտնուեցան Հայք այս կէտի մասին. որոշեցին ժողովի մը մէջ վճռը Պրոկղի դատաստանին ենթարկել: Գրեցին թուղթ մը եւ ընկերացնելով անոր Թէոդորի գրուածքներէն հանուած ծաղկաքաղ մը, զոր հաւանօրէն Ռաբբուլա եւ Ակակ կազմած էին, եւ ուղարկեցին ի ձեռն երկու քահանաներու Կ. Պոլիս: Այս մասին մեր տեղեկութիւնները կը պարտինք Իննովկենտիոս Մարոնիացւոյ, որ այսպէս կը գրէ.

«Բայց որովհետեւ Կիլիկիոյ եպիսկոպոսները կը մեղադրէին, թէ Ռաբբուլա եւ Ակակ ոչ թէ ի սիրոյ այլ նախանձէ եւ հակառակութենէ չարժած կ'ընէին զայն, Հայաստան աշխարհի բոլոր սրբազան եպիսկոպոսներն ի մի գումարուեցան եւ երկու պատուական քահանաներ, զՂեւոնդիոս եւ զԱբելլիոս Կ. Պոլիս արքայական քաղաք ուղարկեցին, ըստ սովորութեան տալով անոնց թուղթեր եւ հատոր մը[45], որ կը պարունակէր Թէոդորոսի հայհոյութիւնները. արդ ասոնք առած իրենց հետ այս գրութիւնները հասան Կ. Պոլիս եւ ներ-

---

[45] Բարսեղ սարկաւագ, որ Նեստորի եւ Թէոդորի ընդդիմակացներէն էր, գրած էր Թէոդորի «հատորին» հերքումը. որ այսպիսի խորագրով պահուած է. «ի թղթոցն մատուցելոց յերիցանց եւ ի սարկաւագաց, որք առաքեցանն յեպիսկոպոսացն եւ ի կղերիկոսաց եւ ի միանձանց եւ յայլոց Մեծին Հայոց եւ Պարսից եւ յայլոց ազգաց առ Պրոկղ սուրբ եպիսկոպոսն եկեղեցւոյն Կ. Պոլսոյ». հմմտ. Ed. Schwartz, Konzilstudien, 27, ծ. 2:

կայացնելով զանոնք տեղւոյն Պրոկղ արքեպիսկոպոսին խնդրեցին գիտնալ թէ ինքը ո՞ր վարդապետութիւնը ճշմարիտ կը համարի, Թէոդորոսի՞ թէ Ռաբբուլայի եւ Ակակիոսի»:

Պրոկղ դժուարալոյծ կնճիռի մ'առջեւ կը գտնուէր. կարելի չէր զՌաբբուլա եւ զԱկակ այլափառ հրատարակել. միւս կողմէն նոր երկպառակութեան առիթ պիտի ընծայէր, եթէ զԹէոդորոս, որ Եկեղեցւոյ հետ խաղաղութեան մէջ վախճանած էր, յայտնապէս դատապարտէր: Բայց գիտցաւ հայրապետը ճարպիկօրէն դուրս գալ կնճռէն: 435ին գրեց ընդարձակ բացատրութիւն մը հաւատքի, ուղղուած Հայոց, ուր բացորոշ կերպով կը պաշտպանէր Կիւրղի մարմնաւորութեան վարդապետութիւնն եւ կը պայքարէր Թէոդորի քրիստոսախօսութեան դէմ, առանց սակայն զանիկա յանուանէ յիշելու կամ բառ առ բառ ի վկայութիւն կոչելու: Այս գրուածքը, կոչուած Թուղթ առ Հայս, հասած է մեզի ամբողջութեամբ:

Կարող էր Պրոկղի այսպիսի հարցում մ'ուղղուած ըլլալ, բայց յամենայն դէպս ոչ Պարսկական Հայաստանէն: Հաւանօրէն այս կը հայի հաւաքական թղթի մը, որ գրուած է Հռովմէական Հայաստանի (Armenia magna) եպիսկոպոսներու կողմէն. ուստի եւ Թէոդորի գործերն այն տեղ եւ ոչ Պարսկական Հայաստանի մէջ տարածուած գտած էին:

Այս տեղ կը յառնէ մեր առջեւ կարեւոր հարց մը. ո՞վ էին այն հայ եպիսկոպոսները,

որոնք կը դնեն Պրոկղի այսպիսի լուրջ աստուածաբանական խնդիր մը իրենց անուամբ: Իննովկենտիոս Մարոնիացի կը գրէր թէ Ակակ Մելիտենէի եպիսկոպոս կը զգուշացնէր Armeniaի եպիսկոպոսները եւ Armeniae regionis բոլոր եպիսկոպոսները սինհոդոսական թղթով մը կը դիմէին Պրոկղի: Աւելի բացայայտ են Բարսեղ սարկաւագի տողերը, որուն համաձայն Պրոկղի դիմողներն են Magnae Armeniae et Persidis «եպիսկոպոսք, կղերականք եւ միանձունք եւ այլք»: Չի յիշուիր Հայոց եպիսկոպոսապետի անունը, երբ Հայ Եպիսկոպոսներու թղթի վրայ խօսք կ'ըլլայ, եւ ոչ ալ Պրոկղի «առ Հայս» գրած թղթին մէջ: Այս պարագան կը դրդէ զմեզ Magna Armeniaյով իմանալ Հռովմէական Հայաստանը, եւ «եպիսկոպոսներով», հռովմէական բաժնի թեմակալները: Անոնք չէին կրնար ժողովին նախագահ ունենալ զՍահակ, որ ի Վաղարշապատ ունէր իր նիստը, Պարսկական բաժնին մէջ: Ակակ Մելիտենէի (Մալաթիայի) եպիսկոպոսը կարող էր իր տեսութիւններով եւ ժամանակակից վէճերուն մէջ խորապէս միջամուխ եղած ըլլալուն պատճառաւ կասկած յարուցած ըլլալ Magna Armeniaյի եպիսկոպոսներու մէջ, որոնք նաեւ ուրիշ ազդեցութիւններու ենթարկուած էին. եւ այսպէս գերագոյն ատեանի՝ կայսերանիստ քաղաքի հայրապետին դիմած ըլլան ճշմարտութիւնը ստուգելու համար: Ցամենայն դէպս Պարսկական Հայաստան ոչ Նեստորա-

*կանք հասած էին եւ ոչ ալ Թէոդորի գրուածքներու շուրջը խնդիր յուզուած էր հոն, ինչպէս Սահակ իւր պատասխանական թղթերու մէջ կը հաւաստէր:*

*Ըստ այսմ կը կարծեմ թէ Ակակի Բ. թուղթը, ուղղուած «առ պատուական եւ առաքինի նախարարս Հայոց», զոր յիշեցինք վերագոյն, կը հայի Հռովմէական Հայաստանի* (Armenia magna) *նախարարներուն (եւ եպիսկոպոսներուն), որուն մէկ պատճէնը ապա հասած է նաեւ Հայաստան, անշուշտ ի գիտութիւն: Այս հայեցմամբ կը բարձուի հակասութիւնը, որ կար այս թղթին եւ առ Սահակ ուղղուած թղթին մէջ:*

*Թէպէտ տակաւին այնչափ չէին կրթուած Հայերը դաւանաբանական վէճերու մէջ թեւամուխ ըլլալ կարենալու համար, բայց եւ այնպէս խոհեմութիւն էր Պրոկղ հայրապետի «առ Հայս» ուղղած թուղթէ օրինակ մ'ալ առաքել Մեծ Հայոց Սահակ եպիսկոպոսապետին: Բաց անկէ որ Պրոկղ անձամբ ծանօթ էր Մաշտոցի, երբ սա իբր* 419/420*ին Կ. Պոլիս կը գտնուէր, կային հոն նաեւ երկու հայ թարգմանիչներ, որոնք առանց տարակուսի Պրոկղի պաշտպանութեան տակ էին: Սահակի անուան ուղղուած օրինակը ի Հայս ուղարկուած ըլլայ թերեւս ի ձեռն Յովսէփ Պաղնացւոյ, որ Եզնիկին հետ եկած էր Կ. Պոլիս եւ յանկարծ մեկնած անկէ, թողլով Եզնիկն առանձին: Այս առթիւ գրուած կը համարիմ Եզնիկի թուղթն առ Մաշտոց, հասած*

*մեզի հատակոտորներով, ուր քրիստոսախօսական վարդապետութիւնը կը պարզուի ըստ մտաց Կիւրղի*[46] :

*Սահակ պատասխանեց Պրոկղի թղթին, հաւանօրէն յընթացս* 436 *տարւոյ : Թղթատարներն եղան Ղեւոնդ Վանանդեցի եւ Կորիւն : Հաւանօրէն Պարսկահայոց պատուիրակներու երթն Կ. Պոլիս թելադրած է Բարսեղ սարկաւագին* Magna Armenia*յի առընթեր գրելու* et Persidis, *այս ինքն* Armenia Persidis :

*Ինչպէս ժամանակին Ակակի նոյնպէս այժմ Պրոկղի թուղթը զարմանք պատճառեց Մեծ Հայաստանի մէջ, ուր ոչ Նեստորականներ հասած էին եւ ոչ ալ Թէոդորի գրուածքներու շուրջը խնդիր յուզուած : Սահակ առ Պրոկղ թղթին մէջ ալ կը կրկնէ, ինչ որ գրած էր Ակակին. այս տեղ կը չեշտուի Թէոդորի անունն ալ այսպէս. «եւ որ Թէոդորեայ Մամուեստացւոյ աշակերտեալք իցեն՝ առ ժամանակս ի շնորհացն Աստուծոյ այնպիսի. ինչ աստ չեւ է յայտնեալ. ապա թէ իցէ ծածկեալ*

---

[46] *«Ի թղթոյն Եզնկայ Կողբացւոյ Թարգմանչի, զոր գրեաց ի Կոստանդնուպոլիս (քաղաքէ) առ երանելին Մաշտոց յետ առաջնոյ ժողովոյն Եփեսոսի, յորում լուծին ի պատուոյ զՆստոր Կոստանդնուպոլսի եպիսկոպոս» : (Սկ.) «Երանելի որ հանապազորդ լինիցին...» :*

*Հատակոտորներ՝ Գիրք Թղթոց, էջ* 1, 1—2, 3 (*խորագրուած Թուղթ* Պրոկղեայ եպիսկոպոսի առ սուրբն Սահակ հայրապետ Հայոց եւ *առ սուրբն Մաժդոց*) : *Կնիք հաւատոյ*, 130, 1—20, 51, 12—30 : *Մանր հատուածներ կան նաեւ ուրիշ գրուածքներու մէջ : Այս մասին պիտի խօսինք ընդարձակ այլուր :*

ի ժանգոյ աղտեղութեան՝ ի հարկէ ջան լիցի մեզ խլել զխոչն եւ զգայթակղութիւնն զայն ի միջոյ ի բաց կորուսանել» [47] :

Այս թղթակցութիւններու նկատմամբ ունինք բացայայտ վկայութիւն Կորիւնի քով. որ անգամ մը ընդհանուր ակնարկութիւն ընելով Ակակի, Ռաբբուլայի եւ Պրոկղի թղթակցութեանց մասին կը գրէ. «Յայնմ ժամանակի բերեալ երեւեցան ի Հայաստան աշխարհին գիրք սուտապատումք, ընդունայնախօս աւանդութիւնք առն ուրումն հռոմի, որում Թէոդորոս անուն: Վասն որոյ սինհոդոսական հայրապետացն սրբոց նշանակեալ ազդանէին ճշմարտահաւատ փառաւորչացն Սահակայ եւ Մաշտոցի: Եւ նոցա ճշմարտասէր փութով զայն ի միջոյ բարձեալ աշխարհահալած արտաքոյ իւրեանց <սահմոնաց> մերժեցին. զի մի ի լուսաւոր վարդապետութիւնն ծուխ ինչ սատանայական յարիցի» (40—41): Հոս «սինհոդոսական հայրապետք սուրբք» յայտնապէս յիշեալ թղթակիցներն կ՚ակնարկեն, որոնք մասնակից եղած էին Եփեսոսի ժողովին: Եթէ Սահակ ինքնին կը հաւաստէր թէ՛ Պրոկղի եւ թէ՛ Ակակի, թէ Հայաստան Թէոդորեանք կամ Նեստորականք չեն երեւցած, ի՞նչպէս Կորիւն կրնար այս բացայայտ տողերը գրել: Թէպէտ Նեստորականք չհասան մինչեւ Մեծ Հայաստան, բայց անոնք մուտ գործեցին Հռովմէական Հաւաստան:

[47] Գիրք Թղթոց, 13:

Կորիւն տեղեակ էր իրողութեան, որովհետեւ, ինչպէս ինքնին կը գրէ, իրեն եւ Ղեւոնդի յանձնարարուած էր Սահակի պատասխանը տանիլ Պրոկղի. «ապա յետ ժամանակի ինչ ընդ մէջ անցանելոյ դէպ լինէր ոմանց եղբարց ի Հայաստան աշխարհէս դիմել իջանել ի կողմանս Յունաց, որոց առաջնոյն Ղեւոնդէս[48] անուն էր եւ երկրորդին Կորիւն[49]. եւ մատուցեալ յարքին յԵզնիկն իբրեւ առ ընտանեգոյն սննդակից՝ ի Կոստանդինական քաղաքին. եւ անդ միաբանութեամբ գհոգեւոր[50] պիտոյիցն գխնդիրն վճարէին» (33)։

Վերագոյն տեսանք թէ Իննովկենտիոս Մարոնիացի եւ Լիբերատոս հայ պատգամաւորները, որոնք տարած էին Հայոց խնդրագիրն առ Պրոկղ, կը կոչէին՝ հայցական հոլովով Leontium եւ Abellium. վերջին անունս Լիբերատոսի Համառօտագրին մէջ ունի Abelium եւ Aberium ձեռագրական ընթերցուածները (Schwartz, 39)։ Անուններէս Leontius հայերէն տառադարձութեամբ Ղեւոնդիոս է։ Եւ որովհետեւ նաեւ Սահակի առ Պրոկղ պատասխանական թղթին թղթատարներէն մին Ղեւոնդէս կը կոչուի, խնդիր կը յառնէ, թէ անուանց այս նմանութիւնը պատահակա՞ն զուգադիպութիւն մըն է։ Առ այս նպաստամատոյց կարող էր ըլլալ երկրորդ անունը՝ Abellius (Abelius, Aberius). բայց ասոր մեր-

---

[48] Տպ. որ եւ Ղեւոնդէս առաջնոյն։
[49] Տպ. Կորիւնս։
[50] Տպ. հոգեւոր։

ճաւոր կամ հեռաւոր նմանութեամբ հայկական անուն մը դժուար է մատնանիշ ընել։ Կարելի էր մտածել Աբել, Հաբել անուան վրայ։ P. Peeters[51] կ՚առաջարկէ աբեղայ բառը. բայց ծանօթ չէ ինձ բառս իբրեւ յատուկ անուն գործածուած։ Եթէ ABERIUM քան զABELIUM հնագոյն համարինք, անուանս երկրորդ -RIUM մասին մէջ կարելի է *KOJPIOYN* տեսնել, եւ նոյնացնել Ղեւոնդի ճանապարհորդակից Կորիւնի հետ։ Ամէն պարագայի մէջ աղաւաղուած կերպարանքի տակ հասած է Abellius անունը։

Այս մեկնութեամբ Ղեւոնդ եւ Կորիւն կը ներկայանան ըստ Իննովկենտիոսի եւ Լիբերատոսի առաջին պատգամաւորութեան գլուխ, մինչ Կորիւն ինքնին կը վկայէ թէ իրենք Պրոկղի առ Հայս գրած թղթէն ետքը հասած են կայսերական քաղաք։ Կարող ենք հոս դէպքերու շփոթութիւնը Իննովկենտիոսի վերագրել, որ հին աղբիւրներէ օգտուելով յօրինած է իւր Պատմութիւնը Զ. դարու երկրորդ քառորդին։ Ժամանակագրութեան դէմ մեղանչումներ նաեւ այլուր գործած է Իննովկենտիոս (հմմտ. Schwartz, Konzilstudien, 25, ծ. 4)։

Ընդունելով անուանց եւ դիպաց շփոթութիւն, կարելի է մտածել թէ Հայոց առաջին թուղթն առ Պրոկղ տանողներն եղած ըլլան Յովսէփ Պաղնացի եւ Եզնիկ Կողբացի։

---

[51] REA, 9 (1929), 215.

*Ասոնք հաւանօրէն Հայաստանէն հասած հրամանի մը վրայ Եդեսիայէն մեկնեցան Հռովմէական Հայաստան հոն յուզուած դաւանաբանական վէճերը խաղաղելու համար եւ այս առթիւ մասնակցեցան հայ եպիսկոպոսներու ժողովին: Երբ որոշուեցաւ խնդիրը Պրոկղի դատաստանին ենթարկել, իրենք յանձն առին տանիլ սինհոդոսական թուղթն առ Պրոկղ: Թարգմանիչներու Կ. Պոլիս անցնելու պարագան, ինչպէս յիշեցինք վերը, շատ մութ է եւ թոյլ կրնանք տալ մեզ այսպիսի ենթադրութեանց անձնատուր ըլլալ: Կորիւն, որ կը գրէր թէ Յովսէփ եւ Եզնիկ «անցեալ գնացին ի կողմանս Յունաց. ուր եւ ուսեալք եւ տեղեկացեալք ի թարգմանիչս կարգէին ըստ հելլենական լեզուին», երբ ժամանակ յետոյ ինքն անձամբ Կ. Պոլիս գնաց, հոն միայն Եզնիկը գտաւ: Ո՞ւր գացած էր Յովսէփ, որուն յունարէնի ծանօթութիւնը յայտնի էր արդէն 407էն: Ենթադրեցինք վերը, թէ վերադարձած էր անիկա Պրոկղի եւ Եզնիկի թղթերով, նախ Հռովմէական եւ ապա Պարսկական Հայաստան:*

*Թէ Հայք ո՛րքան անտեղեակ էին առ հասարակ վէճին առած ընթացքի մասին կը տեսնուի նաեւ անկէ, որ Կորիւն եւ Ղեւոնդ հրահանգ կ'ընդունին վերադարձին բերել իրենց հետ Եփեսոսի ժողովոյն որոշումները. «Որոց յետ այնորիկ հաստատուն օրինակօք աստուածատուր գրոցն եւ բազում շնորհագիր հայրապետացն աւանդութեամբք եւ Նիկիա-*

կան եւ Եփեսոսական կանոնօք դային երեւելով աշխարհին Հայոց եւ առաջի դնէին հարցն գրերեալ կտակարանսն եկեղեցւոյ սրբոյ» (33)։ Եփեսոսի ժողովոյն կանոնք Կիւրղի Նզովքներն են, որոնց հայերէն թարգմանութիւնն Ե. դարէն հասած է։ Կ'ենթադրեմ թէ անոնց կից բերուած էր նաեւ Եփեսոսի ժողովոյն համառօտ պատմութիւնը, որմէ ապա օգտուած է Վրթանէս քերդող[52]։

Եզնիկ, Ղեւոնդ եւ Կորիւն Կ. Պոլսէն վերադարձին բերին յանձնեցին Սահակայ՝ 1. Նիկիոյ եւ Եփեսոսի ժողովներու կանոնները եւ 2. Սուրբ Գրոց հաստատուն օրինակը։ Այս առթիւ կը գրէ Կորիւն (34). «Իսկ երանելոյն Սահակայ զեկեղեցական գրոց զումարութիւնն կանխաւ <ի> յունական բարբառոյն ի հայերէն դարձուցեալ <էր> եւ բազում եւս զհայրապետաց սրբոց զճշմարիտ իմաստութիւնն։ Դարձեալ յետ այնորիկ առեալ հանդերձ Եզն[ա]կաւ՝ զյառաջագոյն զյանկարծագիւտ զփութանակի զթարգմանութիւնս (աստուածաշունչ Գրոց)՝ հաստատէր ճշմարիտ օրինակօք բերելովք։ Եւ շատ եւս մեկնութիւն գրոց թարգմանէին»։

Կորիւն այս խօսքերով միահաղոյն Սահակայ կը վերագրէ այն ամէն թարգմանութիւններն, ըլլայ Ս. Գրոց, ըլլայ Ս. Հարց գրութեանց, որոնք կատարուած էին մինչեւ 435/36 զանազան ձեռքերէ։ Առանց տարակուսի ու-

[52] Հանդ. Ամս., 1910, էջ 42։

նեցած էր այն թարգմանութեանց մէջ ծերունի եւ բազմերախտ կաթողիկոսը իր մասնակցութիւնը։ Այժմ յեցած Եզնիկի երիտասարդական ոյժի վրայ կը ձեռնարկէ Սահակ Ս․ Գրքի «յանկարծագիւտ, փութանակի թարգմանութիւնը» խնամով բաղդատել նոր բերուած «հաստատուն» այսինքն Աղեքսանդրացւոց եւ Երուսաղեմացւոց օրինակներու եւ Որոգինեայ Զորեքիջեանի հետ եւ «հաստատել», վերստուգել, ճշդել եւ ուղղել[53] հայ թարգմանութիւնը Ս․ Գրոց այն մասերու, որոնք մինչ այն կատարուած էին, ոչ մասնաւոր ընտրութեամբ բնագրաց։ Որովհետեւ Սահակ իր կեանքի վերջին տարիներն անցուց ի Բլրոցաց գիւղն Բագրեւանդի առընթեր ունենալով զԵզնիկ, իսկ Եզնիկ 450ին Բագրեւանդայ եպիսկոպոս կը ներկայանայ, պիտի ըսենք թէ Եզնիկ Կ․ Պոլսէն վերադառնալէն ետքը ձեռնադրուած էր Բագրեւանդայ եպիսկոպոս եւ ունէր Բլրոցաց գիւղն իրեն նստոց եւ հոն իր որդիական հոգացողութեան տակ առած էր ծերունի կաթողիկոսը։

Կ՚ըսուի թէ Սահակ նաեւ շինարարական մշակոյթի ուշադիր եղած է․ նորոգած է եկեղեցիներ եւ վկայարաններ, նաեւ ի հիմանց նորեր կառուցած։ Յառաջ կը բերեմ հետեւեալ երկու տեղիքները, որոնք թէեւ է․ դարէն են, բայց յեցած են աւանդութեան վրայ, որ, ինչ-

---

[53] Այս մասին տես վարը Ս․ Գրոց Թարգմանութեան նուիրուած գլուխը։

այնս կ՚ըսուի, նաեւ գրաւոր վկայութեամբ հաստատուած է: «Նկարագիր կարգաց» գրութեան Բ. մասին հեղինակը կը գրէ այսպէս. «Եւ եղեւ հանումն եւ նորոգումն ոսկերացն Գայիանեայ եւ Հռիփսիմեայ եւ ընկերացն նոցին ի Սահակայ կաթողիկոսէ. զի եղածումն Գրիգորի կային նոքա: Եւ շինեաց զվկայարանսն վիմատաշ կոփածոյ քարամբք ի Վաղարշապատ քաղաքի եւ նորոգեաց զտունն Աստուծոյ, այսինքն զսուրբ եկեղեցին...: Բազում եւ այլ տեղիս նորոգեալ է սուրբ եւ ճշմարիտ կաթողիկոսն Մեծն Սահակ: Եւ ապա շինեաց զսուրբ եկեղեցին եւ զվկայարանս սրբոցն ընդ ամենայն տեղիս Հայոց մեծաց»:

Նոյնը կը պատմէ Սեբէոս (88). 619ին «քակեաց կաթողիկոսն Կոմիտաս զմատուռն սրբոյն Հռիփսիմեայ ի Վաղարշապատ քաղաքի, զի կարի ցած եւ մթին էր շինուածն, որ շինեալ էր սրբոյն Սահակայ Հայրապետի Հայոց կաթուղիկոսի որդւոյ սրբոյն Ներսիսի...»: Հռիփսիմեանց նշխարքը «երանելւոյն սրբոյն Գրիգորի կնքեալ <էր> մատանեաւ իւրով եւ մատանեաւ երանելւոյն Սահակայ Հայոց կաթուղիկոսի. զոր նա (Կոմիտաս) ոչ համարձակեցաւ բանալ»:

Արդէն «լցեալ» էր Սահակ «աւուրբք երկայն ժամանակօք եւ վայելչացեալ աստուածարեր պտղոցն բարութեամբք»: Իբր հարիւրամեայ պարարտ տարիքի մէջ կը վախ-

ճանի բազմավաստակ եւ բազմարդիւն կաթողիկոսն Հայոց, Բագրեւանդի Բլրոցաց գիւղին մէջ, «յառաջնում ամի Յազկերտի որդւոյ Վռամայ թագաւորի կացելոյ ի Պարսից աշխարհի», «ի կատարել ամսեանն Նաւասարդի, որպէս (յորո°ւմ) եւ զօր ծննդեան երանելւոյն յիշէին, յերկրորդում ժամու աւուրն, ի պաշտաման անուշահոտ խնկոյն՝ հանդերձ աստուածահաճոյ աղօթիւք ծերունւոյն ի Քրիստոս աւանդեալ <զհոգին>» (Կոր. 41):

Յազկերտ Բ.ի գահակալութեան առաջին տարին է 438 Օգոստոս—439 Օգոստոս 3: Այս տարւոյն Նաւասարդի 30 կ'իյնար Սեպտեմբեր 7ին, որ չորեքշաբթի օր մըն էր: Կեղծ-Ղազար[54] կ'աւելցնէ. «զոր եւ զօր ծննդեան սրբոյն ի ստոյգ գիտողաց եւ ի Պատմութենէ երանելւոյ առն Կորեան հաստատեալ գիտացաք նոյն օր եւ ծննդեան սրբոյն ի նմին ամսեան»[55]:

Յուղարկաւորութեան կարգը կը կատարէ «գլխաւորն պաշտօնէից Երեմիա հանդերձ բազմութեամբ ձեռնասուն եւ աստուածասէր պաշտօնէից»: Պէտի թաղուէր յԱշտիշատ «ի բուն իսկ գիւղն» իւր[56]: Յուղարկաւորա-

[54] Ղ. Փարպեցի, Ա., 37:

[55] Diegesis, Սահակի կ'ընծայէ 110 տարի. Թովմաս Արծրունի (74)՝ 120: Եթէ ընդունինք թէ Սահակ ապրած է իբր 100 տարեկան կեանք մը, զուգադիպութեամբ 340ին, Նաւասարդ 30 ճշդիւ Դշ. կ'իյնայ:

[56] Ըստ սովորութեան պիտի թաղուէր անշուշտ ի ի Թիլն Եկեղեաց, ուր կը հանգչէին նաեւ Ս. Ներսիսի նշխարք (Բիւզ., Ե., 24). բայց Թիլ աւան այժմ Հռովմէական բաժնին մէջ էր:

կան չուլին մէջ էր նաեւ «իշխանակինն Դուստր, որ էր կին Վարդանայ» Թոռին Սահակայ: Հասնելով յԱշտիշատ կը հանգչեցնեն Սուրբին մարմինը «ի մարտիրոսական խորանին յարկեղս[57] սրբոցն»: Կը պատմէ Կորիւն թէ Սուրբին յարգողները «ամի ամի գումարեալք ի նմին[58] ամսեան զնորին յիշատակն տօնախմբեն» (Կոր. 42): Կ'աւելցնէ Ղեղծ-Ղազար[59]. «ուր եւ շինեալ եկեղեցի մեծապայծառ եւ վկայարան սրբոց՝ զարդարեցին պատուական եւ մեծագին սպասուք. հիմնացեալ կանգնեցին ի տեղւոջն վանս բազմութեան պաշտօնէից, կարգեալ դարման անպակաս պտղոց ի հանգիստ առաւելեալ եղբայրութեանն. ժողովս տարեւորականս աշխարհայորդոր բազմութեամբ հաստատեցին ի տեղւոջն. որ ըստ ժամանակի բազմամբոխ ժողովրդօք կամաւոր յօժարութեամբ ազատք եւ քահանայք գաւառին, այլ եւ կարի յոյժ ի հեռաւոր տեղեաց դիմեալք զօր կարգադրութեան նորա կատարեն: Ուր եւ բազում օգնականութիւնս առողջութեան ըստ իւրաքանչիւր ախտից շահէին ի նշխարաց սրբոյն եւ ուրախալից սրտիւ դառնային ի բնակութիւն յիւրաքանչիւր»[60]:

Սահակի մահը ընդհանուր Հայաստանեայց սուգ պատճառեց. բայց մասնաւորապէս ցնցեց Մեծ Վարդապետը, որ «բազում

[57] Տպ. յարկեղ:

[58] Տպ. ի նոյն... զնոյն:

[59] Ղ. Փարպեցի, Ա., 37:

[60] Հմմտ. Յ. Թաթարեան, Ս. Սահակայ գերեզմանն յԱշտիշատ. Բիւզանդիոն, 1897, Թ. 205:

*անձկայրեաց տրտմութեամբ եւ արտօսրագութ ողբովք եւ ծանրաթախիծ սգովք պաշարեալ դնէր» (Կոր. 42): Զգաց Մաշտոց թէ առանց Սահակի առանձին է. եւ չկրցաւ դիմանալ միայնութեան. վեց ամիս ետքը, 439, Փետրուար 17ին վախճանեցաւ նաեւ երանելի Մաշտոց:*

*

*Մաշտոց արդէն ծերունի կաթողիկոսի վերջին տարիներուն իր ուսոց վրայ ունէր «զվերակացութիւն սրբոյ եկեղեցւոյն», զոր նաեւ Սահակայ մահէն ետքը «շնորհօքն Աստուծոյ առանց պակասութեան տանէր»: Երբ մահուան անկողնոյն մէջ էր Մաշտոց Եկեղեցւոյ վերակացութիւնը վարելու համար կը նշանակէ «գլխաւոր վերակացուս տեղապահս»՝ զՅովսէփ «գլխաւոր ժողովոյն» եւ զՅոհան: Այս Յովսէփ, որ «գլխաւոր ժողովոյն», այսինքն աշակերտաց, կը կոչուի, է առանց տարակուսի Յովսէփ Խողոցմեցի*[61], *եւ Յովհան՝ «յԵկեղեաց գաւառէն»* (*Կոր.* 19), *որոնք Մաշտոցի երիցագոյն աշակերտներէն էին եւ անոր անբաժին ընկերները: Յոհան Մաշտոցի մահէն քիչ ետքը գնաց Տիզբոն — թերեւս խնդրելու արքայէն արքայի հաւանութիւնը կաթողիկոսական ըն-*

---

61 *Ղ. Փարպեցի, Ա.,* 38. *«զորոյ (Սահակայ) զհետ աջորդեաց զաթոռ հայրապետութեան աշխարհիս Հայոց, հրամանաւ երանելւոյն Մաշտոցի՝ սուրբն Յովսէփ, որ էր ի գաւառէն Վայոց ձորոյ, ի գեղջէն որում անունն էր Խողոցիմք»: Դարձեալ, Բ.,* 101. *«սուրբ կաթողիկոսն Յովսէփ ի Վայոց ձորոյ»:*

տրութեան համար — ուր եւ կ՚ենթարկուի «ազգի ազգի փորձութեանց». եւ «ի նոյն վերակացութիւն դառնայր յերկիրն Հայոց» (Կոր. 46—47): Յովսէփ «գլխաւոր ժողովոյն» մինչեւ նախագահութիւնը (454) կը վարէ կաթողիկոսական գործերը, իբրեւ պարզ «երէց», առանց եպիսկոպոսական կամ կաթողիկոսական ձեռնադրութեան:

Իր օրով կը գումարուի Շահապիվանի ժողովը 444ին[62], բարեկարգական նպատակով, ուսկից կը տեսնուի, թէ Սահակի եւ Մաշտոցի վախճանէն վերջը խանգարուած են կարգերը. ժողովոյն ներկաները «միաբան միախորհուրդ բարբառէին այսպէս, եթէ Զեղեալ կարգսն սրբոյն Գրիգորի եւ զՆերսիսի եւ զՍահակայ եւ զՄաշտոցի դուք անդրէն հաստատեցէք»: Ժողովին գումարման մասին կ՚ըսուի. «գային ժողովէին ի հրամանէ միաբանութեան՝ յեղեալ կէտն ի Շահապիվան ի բանակետղ թագաւորացն Հայոց ի ժամանակ նորաբեր տօնին: Եւ լինէր այս ի Զ. ամի թագաւորութեան Յազկերտի Պարսից արքայի եւ Վասակայ Սիւնեաց մարզպանութեան եւ Վահանայ Ամատունւոյ հազարապետութեան եւ Վրւայ Խորխոռունեաց մաղխազութեան: Եւ գային ժողովէին . . . առաջի գլխաւորաց եպիսկոպոսաց՝

---

[62] Ժողովքի տարին պէսպէս աւանդուած է ձեռագիր Կանոնագիրքերու մէջ. ոմանք ունին Զ., այլք Ժ. եւ զարձեալ ուրիշներ՝ ԺԶ. Յազկերտի:

*Ղազարայ ,*
*Տաճատու ,*
*Արտակայ ,*
*Գադայ* [63] ,
*Եփրեմայ ,*

*եւ այլոց բազմաց . եւ երիցանց գլխաւորաց՝*

*Յովսեփու* [64]
*Յոհանայ* [65]
*Մեղիտայ* [66] ,
*Երեմիայ* [67] ,
*Ասպուրակեայ ,*
*Դանիէլի ,*
*տեառն Ղեւոնդի ,*
*տեառն Եղիշայի ,*

*եւ այլոց բազմաց սրբասէր քահանայից , որք էին նախանձախնդիր օրինացն սրբութեան եկեղեցւոյ Աստուծոյ : Ժողովեալ առաջի աւագ նախարարացն՝ [քաջին եւ կորովոյն սրբոյն]*

*Վարդանայ Մամիկոնենի եւ*
*Արշաւրայ Կամսարականի եւ*
*Մանաճիհրի Ռշտունւոյ սպարապետին Հայոց*
*եւ Ջրկայ Դիմաքսենի եւ ամենայն իշխանացն*
*Հայոց եւ ապատայ բազմաց» :*

---

[63] Գադ նոյն է Գիւտի հետ, որ ապա կաթողիկոս ընտրուեցաւ :

[64] *Յովսէփ ի Վայոց Ձորոյ:*

[65] *Յոհան յԵկեղեաց գաւառէ :*

[66] *Մելիտէ, որ յետոյ Մանազկերտի եպիսկոպոս, եւ ապա կաթողիկոս եղաւ. Փարպ.* 44, 110:

[67] *Թերեւս «երանելի երէցն Երեմիա ի Նոր քաղաքէ». Փարպ.* 58:

*Այս տողերը կը ներկայացնեն մեզի ընդ աղօտ Հայաստանի եկեղեցական եւ ղինուորական վիճակը, որուն մէջ կը գտնուէր երկիրը երանելեաց վաճանումէն իբր հինգ տարի ետքը :*

ԳՐԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԻՒՆԸ

*Սահակի անուամբ հասած են մեզի հարազատ եւ անհարազատ գրուածքներ : Մանր քննութեան պէտք չկայ հարազատն անհարազատէն զանազանելու համար : Լեզուին դասական նկարագիրը յատկանիշն է հոս հարազատին : Սահակի մատենագրական արտադրութեանց մէջ ամէնէն ականաւորն անոր պատմական մէկ գրուածքն է, որ ուրիշի մը անուան տակ լոյս տեսած է եւ մինչեւ այսօր պահպանուած է մեզի :*

1· Բիւզանդարան պատմութիւնք *կամ* Փաւստեայ Բիւզանդեայ ժամանակագիր մեծի պատմագրի կանոնք ժամանակագիր մատենից : *Գրուածքս, որուն Գ.—Զ. դպրութիւնք միայն հասած են մեզի, հետեւեալ խորագիրները կը կրէ դպրութեանց սկիզբը. «Բիւզանդեայ պատմութիւնք. Կանոնք ժամանակագիր մատենից տան որդւոց Թորգոմայ՝ աշխարհին Հայոց»*[68] *: Հեղինակի մասին ունինք Գ. դպրութեան վերջը հետեւեալ հակիրճ ծանօթութիւնը. «Կատարեցան*[69] *Գ դարգք ԻԱ պատմութեանց դպրութիւնք. Ժամանակագիր*

[68] *Տպ. Պետերբուրգ* 1883, *էջ* 1, 51, 55, 153, 155, 219:

[69] *Տպ. կատարեցաւ:*

կանոնք Փաւստեայ[70] Բիւզանդեայ ժամանակագիր մեծի պատմագրի, որ էր ժամանակագիր Յունաց»[71]:

Հեղինակի մասին այս կարեւոր ծանօթութիւնը կը պարզէ մեր աչքին առջեւ թէ Փաւստոս «էր ժամանակագիր Յունաց», որ գրած էր իր «Ժամանակագիր կանոնք»ը յունարէն լեզուաւ: Գործին հայերէն թարգմանութեան կամ խմբագրութեան ժամանակ անիկա կենդանեաց մէջ չէր: Հեղինակին անունն ունինք սեռական հոլովմամբ միայն՝ «Փաւստեայ Բիւզանդեայ». առաջին անուան ուղղական ձեւն է Փաւստոս, որ երիցս յիշատակուած է Պատմութեան մէջ, նախ իբրեւ «ծերունի եպիսկոպոս», որ սարկաւագ ձեռնադրած է զՆերսէս (Դ. 3), երկրորդ անգամ 373ին, երբ կը կատարէ Ներսէսի յուղարկաւորութիւնը (Ե. 24). եւ երրորդ անգամ կ'ըսուի թէ Ներսէսի տան մէջ թելակալ էր եւ կենդանի «յամս Խոսրովայ եւ Արշակայ երկուց թագաւորացն բաժանուորաց» (Զ. 5): Թէ այս տեղ յիշուած Փաւստոս եպիսկոպոսները մի եւ նոյն ա՞նձը կը ներկայացնեն, կրնանք հաստատական պատասխանել, եթէ ընդունինք թէ առաջին դէպքին Փաւստոսի «ծերունի» կոչումը յետնաբար գրուած է: «Բիւզանդեայ» յորջորջման մէջ կարելի է Փաւստոսի հայրանունը նկատել եւ Հ. Յ. Գաթըրճեանի[72] հետ անոր ուղ-

[70] Տպ. փախստեայք:
[71] Էջ 50:
[72] Սրբազան պատարագամատոյցք Հայոց, 92:

ղական ձեւը համարիլ Բիւզաս, Βύζας, սեռ. Βυζάντος, ուստի իսկական ուղղականը կ'ըլլայ Փաւստոս Բիւզանդեայ, Φαύστος ὁ Βυζάντος եւ կամ կրկնանուն նկատելով՝ Փաւստոս Բիւզաս, Φ. Βύζας:

Փաւստեայ Բիւզանդեայ աշխատութիւնը, որ մերթ «Ժամանակագիր կանոնք» եւ մերթ «Կանոնք ժամանակագիր մատենից», նաեւ «Բիւզանդարան պատմութիւնք» կը կոչուի, Գ.—Ձ. դպրութեանց մէջ կ'ընդգրկէ 300—387 տարիներու Հայոց պատմութիւնը, քաղաքականն եւ եկեղեցականը հիւսուած մէկ ամբողջութեան մէջ. վերջին Հայոց թագաւորներն են Խոսրով Գ. (Մեծ Հայաստանի մէջ) եւ Արշակ (Հռովմէական բաժնին մէջ). եւ Հայոց կաթողիկոսը՝ «գլուխն եպիսկոպոսաց» Ասպուրակէս:

Եթէ Փաւստոս գրած է ստուգիւ «Ժամանակագիր կանոնք» անուամբ պատմական աշխատութիւն մը, կրնար գրած ըլլալ զայն միայն յունարէն, քանի որ ինքը «Յունաց պատմագիր» էր: Ցամենայն դէպս իր անունը կրող «Բիւզանդեայ պատմութիւնք» այժմեան հայերէն խմբագրութեան մէջ կրնային գրի առնուած ըլլալ միայն Ե. դարուն, եւ այն ոչ պարզ թարգմանութեամբ, այլ ընդարձակուած խմբագրութեամբ, ուր կորսուած է գործին «Ժամանակագիր կանոնք» ըլլալու հանգամանքը:

Այժմեան հայերէն խմբագրութիւնը, անտեսելով այն տեղ մուծուած մանր փոփոխու-

թիւնները, ինչպէս ինձ կը թուի, հեղինակութիւնն է Ս. Սահակի: Այս համոզումը կը ներշնչեն ինձի հետեւեալ հանգամանքները.

ա. Պատմագիրը, որ յօրինած է իր աշխատութիւնը Ե. դարու առաջին քառորդին, կը ներկայանայ անձ մը որ ունի իր ետեւ երկար տարիներ, որոնց կէսը կը վերաբերի Դ. դարուն:

բ. Անիկա գրած է իր պատմութիւնը մասամբ յեցած ծերերու աւանդութեան վրայ եւ մասամբ իբրեւ ականատես դէպքերու: Այդ ծերերու թուին մէջ է Փաւստոս եպիսկոպոս († իբր 387), որուն հետ անձամբ ծանօթ եղած է պատմագիրը:

գ. Պատմագիրը Տարօնեցի է, ի մերձուստ ծանօթ Տարօնի սրբավայրերու, յատկապէս Աշտիշատի եւ շրջակայից:

դ. Անիկա ապրած է ի մօտաւորութեան Ս. Ներսիսի. գիտէ հայրապետանոցին ներսն եւ դուրս տեղի ունեցած անցքերն ու խօսակցութիւնները: Գիտէ Ներսիսի գործունէութիւնը մանր գծերու մէջ իսկ:

ե. Պատմագիրը, որ այնպէս ի մերձուստ ծանօթ է Ներսիսի տան, զարմանալի կերպով կը լռէ անոր ամուսնոյն անունն եւ չի յիշեր զաւակը, որ սկսեալ 386 թուէն այնպէս կարեւոր դեր խաղաց հայ կեանքի մէջ: Պատմիչը եթէ Ներսիսի տան բարեկամն էր, չէր կրնար անոր որդւոյն՝ Սահակի թշնամին ըլլալ: Եւ եթէ Սահակ մինչեւ 386 չէր գործած պատմական բեմին վրայ աչքի զարնող դեր

մը, կարող էր սակայն 373ին իբրեւ ազատը իր հօրը դագաղին առջեւ յիշատակուիլ. կարող էր նաեւ իբրեւ ժառանգ Ներսէսի ստացուածքներու եւ ապագայ յաջորդ յիշատակութեան արժանանալ։

Գ. Այս լռութիւնը կարող էր պահել միայն այն հեղինակը, որ միանգամայն Ներսէսի որդին էր եւ ժառանգն անոր գահին. խոնարհն եւ զգաստն Սահակ, որուն համեստութիւնը չէր ներեր անձին գովութիւնն եւ ոչ ակնարկով մը հիւսել կամ իբրեւ որդի Մեծին Ներսէսի պարծիլ։

Է. Զեմ տեսներ որ եւ է անպատեհութիւն Սահակը հռչակելու Բիւզանդարան պատմութեանց հեղինակը։ Բայց ընդունելով զինքը հեղինակ այն պատմութեանց, ինքնին կը լուծուին ամէն առեղծուած եւ տարակոյս։

Ը. Սահակ վախճանեցաւ 438, Սեպտ. 7ին ծերութեան պարարտ տարիքի մէջ, իբր 100ամեայ, բայց յուժի, զրաղած Աստուածաշունչի սրբագրութեամբ։ Իր կեանքի առաջին 60 տարիները կը պատկանէին Դ. դարուն։ 35ամեայ էր, երբ կորսնցուց իւր հայրը։ 386ին, երբ կաթողիկոսացաւ, կենդանի էին Զորթ եւ Փաւստոս եպիսկոպոս։ Ուստի ի վիճակի էր կատարեալ տարիքի մէջ հետեւիլ ժամանակակից անցքերուն, 360—387 տարիներուն դիպաց, եւ առաջին 60 տարիներու պատմութեան ալ հմտանալ յաւանդութենէ ծերոց։

Թ. Սահակ ծնած ի Տարօն, ծանօթ էր

ընականաբար նոյն կողմանց սրբավայրերուն եւ հայրապետանոցի ներքին եւ արտաքին անցքերուն :

Ժ. Պատմութեան գլխաւոր ծիրը կը դառնայ Ներսէսի շուրջը. Սահակ իւր հօր գործունէութեան մանուկ հասակէն ականատես էր : Պատմութեան գլխաւոր հերոսները Մամիկոնեանք են. Սահակ ոչ միայն մերձաւոր էր Մամիկոնեանց տեղեաւ եւ ժամանակով, այլ եւ խնամացած էր սպարապետութեան տան հետ՝ տալով իւր միակ դուստրը այդ տոհմին հարս : Մամիկոնեան մատաղ սերունդին ալ դաստիարակն եղաւ : Կարող էր այս ընտանութեամբ լսել Մամիկոնեանց ընտանեկան աւանդութիւններն եւ թափանցել անոնց պատմութեան ծալքերուն : Առանց տարակուսի մերձ էր անիկա Մանուէլ Մամիկոնեանի մահուան անկողնոյն, որուն վերջին խօսքերը այնպէս զգայուն գրչով գրի յանձնած է :

ԺԱ. Պատմելու վայելուչ ոճը, զուրցուածքի կերպը եւ արտայայտութեան պարզութիւնը մէկ կողմէն եւ պատմութեան բազմակողմանի բովանդակութիւնը, դէպքերու վեհ նկարագրութիւնը եւ խրատական, քաջալերական, նաեւ զուարճացուցիչ նկարագիրը միւս կողմէն, կը յիշեցնեն մեզի Սահակ մը, որ իւր ժողովրդեան կը խօսի ի շինութիւն եւ ի քաջալերութիւն, եւ կ'ուզէ անոր աւանդել այն ամէնը ինչ որ լսած է եւ տեսած քրիստոնեայ Հայաստանի անգիր շրջանէն : Կը

*պատմէ յիշողութենէ, այս պատճառաւ ալ առանց խիստ ժամանակագրութեան։*

*Ժբ. Պատմութիւնը չի յիշեր բացի Սահակէն ուրիշ մը, որ բարձր տարիքի մէջ — իբր 70ամեայ — ծանօթացած ըլլայ նորագիւտ հայկական նշանագիրներուն եւ պարապած մատենագրութեան։ Իսկ Բիւզանդարան պատմութիւնք կ՚ենթադրեն այսպիսի ծերունի մը։*

*Այս պատճառաբանութիւնները կը սոփ- պեն զիս Սահակ կաթողիկոսը ճանչնալու Բիւզանդարան պատմութեանց հեղինակը։*

*Ուրիշ տեղւոյ եւ ժամանակի կը վերապահեմ արտայայտուիլ աւելի ընդարձակ «Բիւզանդեայ պատմութեանց» շուրջը*[73]*։*

2. Թղթակցութիւնք *ընդ մէջ Սահակայ, Ակակայ Մելիտենացւոյ եւ Պրոկղի Հայրապետի։*

*Տեսանք վերագոյն, թէ ի՛նչպէս Թէոդորոս Մոպսուեստացւոյ գրութեանց շուրջը խնդիրներ յուզուեցան եւ կասկած ծագեցաւ թէ անոնք նաեւ Մեծ Հայաստան ուղարկուած ըլլան հայերէն (կամ ասորերէն) թարգմանութեամբ։ Այս առթիւ փութացին Ռաբբուլա Եդեսիոյ մետրապոլիտն եւ Ակակ Մելիտենէի եպիսկոպոսը զգուշացուցիչ թուղթեր գրել Հայոց։ Ռաբբուլայի թղթին մասին յիշատակութիւն չկայ հայ մատենագրութեան մէջ.*

---

[73] [*Տես այժմ Սեբէոսի «Ժամանակագիրն» եւ Փ. Բիւզանդեայ Ա. Պատմութիւնք. Հանդէս Ամսօրեայ,* 1938, *էջ* 9—56 *եւ շար.*։]

*հասած են Ակակի կրկին թղթերը հետեւեալ խորագիրներով եւ սկզբնաւորութեամբ.*

ա. Թուղթ յԱկակայ եպիսկոպոսէ Մելիտենեացւոյ առ սուրբ Սահակ Հայոց հայրապետ:

*«Որ ամենայնիւ աստուածասէրդ ես եւ լի սրբութեամբ, տէր իմ եւ գործակից...»:*

= *Գիրք Թղթոց*, էջ 14—15:

բ. Թուղթ յԱկակայ եպիսկոպոսէ՝ ի Հայս (*Յունական կողման*):

*Պատուական եւ առաքինի նախարարք Հայոց, սիրելիք եւ ծառայք Քրիստոսի, մեծամեծք եւ փոքունք, յԱկակայ եպիսկոպոսէ Մելիտինէ, ի կրտսեր ծառայէ խոնարհութեամբ եւ սիրով ողջոյն: — Վասն դիմադարձացն...*

= *Գիրք Թղթոց*, էջ 19—21:

գ. *Առաջին թղթոյն, որ ուղղուած էր առ Սահակ, պատասխանուած է հետեւեալը.*

Պատասխանի տեառն Սահակայ թղթոյն Ակակայ:

*Առ ճշմարիտ եւ աստուածասէր տէր մեր եւ հայր սուրբ եպիսկոպոս Ակակ, ի Սահակայ ի Տէր ողջոյն: — Ճառագայթք մշտնջենաւոր յաւիտենական լուսոյդ...*

= *Գիրք Թղթոց*, էջ 16—18: *Պատկեր*, 1 (1890/91), 76—78: *Սոփերք Հայկականք*, *Բ*., 150—156:

դ. *Պրոկղ Կ. Պոլսոյ հայրապետ, համաձայն իրեն եղած դիմումի՝ հաւանօրէն Հռոմէական Հայաստանէն, գրեց ընդարձակ*

*Թուղթ մը* (tomus) *ուղղուած առ Հայս, որուն մէկ օրինակը հասած է նաեւ ի Մեծ Հայս, առ Սահակ։ Յունարէն բնագիրը հասած է ամբողջութեամբ, հետեւեալ խորագրով՝*

*Πρόκλου ἀρχιεπισκόπου πρὸς 'Αρμενίους περὶ πίστεως. Քննական հրատարակութեամբ լոյս ընծայեց՝* Ed. Schwartz, Acta Conciliorum oecumenicorum, 4, 2, Argentorati, 1914, 187—195.

*Այս թղթին հայերէն ամբողջական թարգմանութիւնը, կատարուած առանց տարակուսի* 435/36*ին, թերեւս Յովսէփ Պաղնացւոյ ձեռքով, մեզի թերակատար հասած է Թղթոց գրքի եւ Կնիք հաւատոյ հաւաքման մէջ։*

*Հայ թարգմանութեան խորագիրն է մերձաւորապէս այն, ինչ որ կը ներկայացնէ Կնիք հաւատոյ* (109). «Նորին <Պրոկղի> ի թղթոյն որ առ սուրբն Սահակ Հայոց հայրապետն [*Պրոկղի*]»։

*Թղթոց գրքի մէջ սկզբէն ընդարձակ մաս մը* (*Ա.—Ը. հատուածք եւ Թ.ին սկիզբը*) *ինկած է թղթերու անկմամբ* (*այժմ կը սկսի էջ* 2, *տող* 4. *յայտ արասցեն*...). *ուստի էջ* 1 *տեսնուած խորագիրը ուրիշ թուղթի մը կը վերաբերի, էջ* 1—2, *տ.* 3 *մասով։ Նախնական խորագիրն էր անշուշտ «Պրոկղի* (*արք*)*եպիսկոպոսի Կոստանդինական քաղաքին թուղթ առ Սահակ եպիսկոպոս*(*ապետ*) *Հայոց*»։

*Թուղթին սկզբնաւորութիւնն է ըստ յոյնին.*

Οὐ μετρίως, ἀδελφοί, συνέχεεν ἡμῶν τὴν ψυχὴν . . .

Հայ թարգմանութենէն մնացած են այժմ՝

Կնիք հաւատոյ՝ էջ 109—112, Գ. Հատուածի կէսէն («Հաւատամք») մինչեւ Թ. Հատուածին վերջ (Վարդանեան, 19, 4—28, 169) մէջ ընդ մէջ դուրս ձգելով անկարեւոր տեսնուած տողեր:

Իսկ Գիրք Թղթոց (2, 4—8), կը սկսի Թ. Հատուածի կէսէն (յայտ արասցեն . . .) կը շարունակէ մինչեւ Թղթին վերջը (Վարդանեան, 2 , 133—40):

Հրտ. Պատկեր, 1890, էջ 219—222, 271—276: — Գիրք Թղթոց, էջ 2—8: — Հ. Ա. Վարդանեան, Դասական մանր բնագիրներ, Բ. (Վիեննա 1923), էջ 1—40:

Ե. Պրոկղի թղթին պատասխանն ուղարկեց Սահակ ի ձեռն Ղեւոնդ Վանանդացւոյ եւ Կորիւնի. որ հետեւեալ խորագիրն եւ սկզբնաւորութիւնն ունի.

Պատասխանի թղթոյն Պրոկղի երանելւոյ ի Սահակայ եւ ի Մաշտոցէ սուրբ հայրապետացն Հայոց:

Առ ճշմարիտ եւ աստուածասէր պատուական տէր մեր եւ հայր սուրբ եպիսկոպոս Պրոկղոս, ի Սահակայ եւ ի Մաշդոցէ ողջոյն: — Ծառագայթք մշտնջենաւոր յաւիտենական լուսոյդ . . .

= Ձեռագիր Անտոնեան հարց: — Ընդարձակ հատուած մը Երեւան, Պետ. Թանգ. 78,

212բ—202, 13ա. «Ս. Սահակայ Հայոց հայրապետի». «Այղ մեք հաւատամք — զսուրբ մարմինն եւ զպատուական արիւնն» (= Գիրք Թղթոց, 10—12, տ. 19) քաղուածաբար (չարունակութիւնը ուրիշ գրուածքէ):

Հրտ. Սոփերք Հայկականք, Ը. (Վենետ. 1853), 137—149: — Պատկեր, 1 (1890/91), 409—414 (հրտ. Հ. Ը. Ջոտոյեան): — Գիրք Թղթոց (Թիֆլիս 1901), 9—13: — P. A. Vardanian, Ein Briefwechsel zwischen Proklos und Sahak. Aus dem Armenischen übersetzt. WZKM, 27 (1913), 415—441 (էջ 425—435 հայ բնագիրը վերակազմեալ):

3. Կանոնք: Հայոց Կանոնագրքին մէջ կայ խումբ մը Կանոնաց, որ կը վերագրուի «Սահակայ Հայոց կաթողիկոսի»: Այս կանոնները թէ ըստ բովանդակութեան եւ թէ ըստ լեզուին չեն կրնար Ե. դարու՝ ուստի եւ Սահակայ անուան հարազատ ըլլալ: Անոնք է. դարէն կ՚երեւան: Այս մասին ընդարձակ պյրուր:

Հրտ. Սոփերք Հայկականք, Ը. (Վենետիկ 1853), 68—134: Թարգմ. F. C. Conybeare, The armenian canons of St. Sahak catholicos of Armenia. The American Journal of Theology, 2 (1898), 828—842.

4. Պատարագամատոյց, որ այսպիսի խորագիր կը կրէ. «Աստուածային պատարագ, զոր արարեալ է սրբոյն Սահակայ Հայոց հայրապետին: — Քահանայն ազօթէ ի ծածուկ. Տէր ամենակալ Աստուած զօրութեանց...»:

Թէպէտ Սահակ կաթողիկոսի վերագրուած է, «բայց չի կրնար Սահակայ ըլլալ. վասն զի ո՛չ հայերէն լեզուն, ոչ մատենագրական լեզուն, ոչ պատարագին կազմութիւնը, ոչ նիւթոյն կամ պարունակութեան ժամանակագրութիւնը Սահակայ կը վերաբերի, թէպէտ շատ արժանաւոր ըլլայ». այսպէս Հ. Յ. Գաթըրճեան, որ կը միտի ընծայել զայն Գրիգոր Նազիանզացւոյ:

= Հրտ. Սրբազան Պատարագամատոյցք, էջ 219—221: Պատկեր, 9 (1898/99), 304—306, 317—319, 337—340, 370—374, 385—389, 415—416: — P. P. Ferhat, Denkmäler altarmenischer Meßliturgie. 2. Die angebliche Liturgie des hl. Katholikos Sahak: Oriens Christianus N. S. 3 (1913), 16—31.

5. Ժամագիրք, Մաշտոց եւ Տօնացոյց, որոնք յաճախ Սահակի Հայոց հայրապետի ընծայուած են, այժմեան ձեւի մէջ չունին բատ էական մասին աղերս Սահակի անուան հետ: Որչափ ալ ընդունելի ըլլայ, թէ Եկեղեցւոյ Աղօթից կարգադրութիւնք Ս. Սահակի օրով՝ Ե. դարու առաջին կէսին հաստատուած ըլլան, եւ Յովհաննէս Իմաստասէրի օրով (Ը. դարու առաջին կէսին) ընդհանուր ըմբռնումն ըլլայ, թէ գիշերապաշտաման չորս «Քարոզութիւնք» եւ «Աղօթք» Ս. Սահակէն յօրինուած ըլլան[74], բայց եւ

[74] Կանոնք Յովհ. Իմաստասիրի (Մատենագրութիւնք, Վենետիկ 1833), էջ 30—31:

*այնպէս կը կարօտին անոնք տակաւին մանրախոյզ քննութեան. հմմտ. Հ. Յ. Գաթըրճեան, Սրբազան Պատարագամատոյցք, էջ 170—171: Բազմավէպ, 1905, էջ 303—304:*

6. Diegesis *գրուածքը կ՚ամբաստանէ զԿոմիտաս կաթողիկոս, թէ «ի գիրս ինչ որ ի հայ բարբառ անուանեալ կոչի Ամարտանակ գրեաց սա բանս բազումս յանուն սրբոյն Սահակայ»: Թէ ի՞նչ են այն բանք բազումք, որոնք Սահակի անուան անհարազատ են, կ՚ըսուի, ծանօթ չեն ինձ:*

7. Թարգմանութիւնք: — *Կը գրէ Կորիւն թէ «երանելւոյն Սահակայ զեկեղեցական գրոց զումարութիւնն կանխաւ ի յունական բարբառոյն ի հայերէն դարձուցեալ* < *էր* > *եւ բազում եւս զհայրապետաց սրբոց զճշմարիտ զվարդապետութիւնն» (33). եւ դարձեալ թէ «Սահակ առեալ հանդերձ Եզնկաւ զյառաջագոյն զյանկարծագիւտ զփութանակի թարգմանութիւնս՝ հաստատէր ճշմարիտ օրինակօք բերելովք» (34): Չենք կրնար մատնանշել թարգմանութիւն մը, որ յանուանէ Սահակայ գրչէն ըլլայ (Տես վարը):*

8. Տեսիլ Ս. Սահակայ: *Կեղծ-Ղազար Փարպեցի (Ա. 28—37) յառաջ կը բերէ Տեսիլ մը, զոր տեսած է Սահակ (սարկաւագութեան ժամանակ) ի Վաղարշապատ: Ամբողջութեամբ կեղծիք է այն, յօրինուած է. դարու առաջին տասնեակին, հաւանօրէն Խոսրով քահանայէ, կոչուած Խոսրովիկ Թարգ-*

*մանիչ: Այս մասին մեր ընդարձակ ուսումնասիրութիւնը կը վերապահենք հրատարակել ուրիշ առթիւ*[75] *:*

## ՆԿԱՐԱԳԻՐԸ

*Այն մեծ եւ հմայիչ անունը, զոր շահած է Սահակ հայ սրտերու մէջ, կը պարտի ոչ այնչափ իւր մատենագրի հռչակին, որչափ իբրեւ Հայոց կաթողիկոս արդիւնաւորած արդասիքին: Եւ յիրաւի չերեւցաւ հայ կաթողիկոսական գահին վրայ աւելի կորովի, աւելի շրջահայեաց, աւելի սիրելի, աւելի ուսումնասէր եւ աւելի արդասաւոր անձնաւորութիւն մը, ինչպէս Սահակ: Ներսիսի կորովի անձը, բարձրական հանճարը, լուսաւոր դէմքը կը ճառագայթեն իր որդւոյն վրայ. բայց խոհեմութիւնը մտքի, քաղցրութիւնը սրտի ինչպէս մովսիսական քող իջած Սահակի վրայ՝ կը բարեխառնէ լոյսին սաստկութիւնն եւ ճառագայթներու տապը: Ներսէսի անաչառ ոգին, սրտատես միտքը, անկաշկանդ լեզուն նկատած էր անշուշտ Պապ նաեւ յանձին Սահակի, երբ կը գլանար անոր հայրենի աթոռը: Բայց, թէպէտ անադան, պահանջեց հայ ժողովուրդը հայրապետական աթոռին վրայ արժանաւոր ժառանգը եւ ստացաւ զայն ազգին եւ եկեղեցւոյ ճգնաժամային մէկ րոպէին,*

---

[75] [*Տես այժմ Քննութիւն Տեսլեան Սահակայ. Հանդ. Ամս.*, 1936, *էջ* 467—479 *եւ* 1937, *էջ* 48—87. *նաեւ առանձին՝ Վիեննա* 1948:]

որուն համար սահմանուած էր անիկա իբրեւ նախախնամական նախատեսնուած փրկիչ:

Խորապէս ներշնչուած բարձր պարտականութենէն, զոր ստանձնած էր գահին հետ, մէկ նպատակ ունէր Սահակ՝ ծառայել հայ ժողովուրդին այն բազմավտանգ եւ աղմկայոյզ դարուն, պաշտպանել անոր շահերը հուժկու բազկով ընդդէմ զինեալ ոյժերու: Հայաստան բաժնուած էր երկու հզօր պետութիւններու մէջ. Մեծ Հայաստանի բախտը դրուած էր մանուկ արքայի ձեռքը, որուն գլխուն վրայ կախուած էր դամոկլեան սուրը: Նոր հովուապետի պարտքն էր աջովն վտանգը վանել եւ ձախովն հօտը անադարտ պահել: Մինչ պարսիկը կը ձգտէր ազգին քաղաքական միութիւնը երկփեղկելով զայն ի ներքուստ ալ քայքայել եւ ընկճել ի սպառ իր լուծին տակ, Սահակ դուրս կարկառեցաւ իր պարթեւական հաստակով եւ ամէն արդար միջոց ի գործ դնելով ջանք տարաւ ոչնչացնել Սասանականին մահահոտ ծրագիրները: Ազգին ներքին միութիւնն եւ Եկեղեցւոյ պայծառութիւնը նշանաբաններն եղան իր դրօշին: Թէպէտ կանգնած էին իր առջեւ լեռնաբերձ դժուարութիւններ, բայց չընկրկեցաւ արիասիրտ մարդը իր նպատակէն: Բովանդակ կռուի ասպարէզի վրայ հանդէս բերաւ անձնուրաց, անձնազոհ, ժողովրդասէր եւ աստուածանուէր ոգի մը. գործեց արդարակորով մտքով, ընթացաւ ուղիղ ճանապարհով դէպի նպատակ, խոյս տալով նենգամտութեան օձապտոյտ կածաններէ եւ ա-

րահեռնէրէ։ Եւ իր աղամանդեայ կամքի կորովը չընկճեցաւ մինչեւ որ հասաւ Նպատակին։ Խաղաղ բնութեան տէր՝ սիրեց անդորրութիւնն եւ ներշնչեց նոյնը իւր ժողովրդեան։ Հեռատես աչքով նկատեց թէ զէնքերու շաչիւնը վնասաբեր միայն կրնար ըլլալ ժողովուրդին եւ գիտցաւ զսպել բանակը հզօրագոյն ոյժի առաջ։ Իր նկարագրին սրբութիւնը, անշահախնդրութիւնը եւ հաստատամտութիւնն ընծայեցին զինքը ժամանակակիցներուքով բարեհամբաւ. իր պերճ անունը նոյն իսկ արքայից արքայի Դուռը կը վայելէր յարգանք եւ հիացմունք։ Իր կորովամիտ անձնաւորութիւնն ի հանդէս եկաւ Յազկերտ Ա.-ի արքունիքի մէջ, ուր իր ազգու միջնորդութեան տեղի տալով զօռոզ արքայն՝ Պարսից հալածուած քրիստոնեաներուն խաղաղութիւն կը շնորհէր։ Իր հմայքը մոգեց երկիցս պարսիկ բռնաւորները՝ բարձրացնելու արշակունի թագաւորներ հայ գահին վրայ, ժամանակ մը, երբ որոշուած էր թագաւորական գահին բարձումը։ Մղձաւանջը, որ կը տանջէր հայ ժողովուրդը, ի տես քաղաքական ազատութեան օր աւուր կաշկանդումին, չխորտակեց Հովուապետին խորհողութիւնը. որ հոգաց նաւարեկ ժողովրդեան փրկութեան ուրիշ լաստափայտ ընձեռել. կազմակերպել եկեղեցւոյ նուիրապետութիւնը, զինել անդէն ժողովուրդը հոգեւոր զէնքով։ Պէտք էր քաղաքական ազատութիւնը հակակշռող նոր ոյժ, որ կարենար ժողովուրդին ապազգայնացման

*տռաջն առնել, զօդել զանիկա ներքին միութեամբ եւ ազգային մշակոյթով: Առանձին թափով ամրացուց Եկեղեցւոյ հիմերը, բարձրացուց անոր չուրջը պատուարներ, աւետարանական ազդու քարոզութեամբ եւ ազգային եկեղեցական գրականութեամբ: Ծնունդ տուաւ հայ գրականութեան կրօնական շունչով, տարածեց զայն հայարնակ վայրերու մէջ դպրոցներով եւ շրջուն քարոզիչներով: Այսպէս ոչ միայն ամրապնդեց ազգային միութիւնը Հայաստանի սահմաններու մէջ, այլ եւ նիզակակից ըրաւ Վրաց եւ Աղուանից աշխարհները, առանց աչքէ հեռացնելու Հռովմէական Հայաստանը:*

*Իր շրջահայեցողութեամբ, հաշտ քաղաքականութեամբ 50 տարի խաղաղութիւն վայելեց Հայաստան իր կաթողիկոսութեան տեւողութեան եւ տասնեակ տարի մըն ալ անկէ ետքը: Պահեց երկիրը կրօնական միութեամբ սերտիւ զօղուած. դաւանաբանական վէճեր, որոնք արեւմուտքն եւ մերձաւոր արեւելքը այնպէս խռովեցին, իր արթուն հսկողութեամբ չթափանցեցին հայկական սահմաններէն ներս: Ջանք տարաւ ամենայն խնամքով կաթողիկէ Եկեղեցւոյ ջինջ վարդապետութեան յստակ աղբիւրները հոսեցնել երկրին մէջ:*

*Թէ կեանքի այսպիսի դերազանցապէս գործնական ասպարէզի վրայ մատենագրական գործունէութիւնը երկրորդական տեղ միայն կարող էր գրաւել, դիւրին է ըմբռնել: Բայց*

եւ այնպէս Սահակ գիտցաւ պտղաբեր ըլլալ նաեւ մատենագրութեան համար։ Ոչ միայն քաջալեր հանդիսացաւ թարգմանիչներուն մեծ եռանդով հայացնելու ասորի եւ յոյն եկեղեցական մատենագրութիւնը, այլ եւ անձամբ միջամուխ եղաւ թարգմանելու «եկեղեցական գրոց գումարութիւն»։ Չենք կրնար յանուանէ թուել անոր ոսկեգրչին արդասիքները, բայց կրնանք վստահաբար ըսել, թէ իր աչքի տակ, իր թելադրութեամբ թարգմանուած են շատ գրքեր, եւ ուրիշներ կոկուած եւ յղկուած են անոր գրչի շարժումներով։ Գիտենք, որ ծերունոյն վերջին տարիները նուիրուած էին Աստուածաշունչի սրբագրութեան։ Աւանդութիւնը Սահակի կը վերագրէ նաեւ Ժամագրքի, Պատարագամատոյցի, Մաշտոցի եւ Տօնացոյցի առաջին խմբագրութիւնը. որչափ ալ կասկածոտ վերաբերուինք հանդէպ աւանդութեան, այն ստոյգ է սակայն, որ Սահակի ազդեցութիւնը եկեղեցական գրոց կազմութեան վրայ մեծ եղած է. առաջին անգամ ինքը մուծեց Հայ Եկեղեցւոյ մէջ Հայաբարբառ սաղմոսերգութիւնը, հին եկեղեցւոյ երգերն եւ աղօթքները, որոնք ծիլը կազմեցին քրիստոնէական քնարերգական բանաստեղծութեան, որ ապա յընթացս դարերու խնամով մշակուեցաւ։

Այժմ Սահակ նաեւ պատմիչ մատենագիր երեւան կու գայ. առանց տարակուսի իր հեղինակութիւնն է Փ. Բիւզանդեայ Պատմութիւնք, ուր աւելի իբրեւ աստղ քան պատմա-

*գիր կը հանդիսանայ. իւր յիշողութիւնները գրի կ՚առնէ, տեսածն ու լսածը, գունարթ պատմուածքով: Յիշողութիւնը տեղ տեղ կը դաւաճանէ ժամանակագրութեան, երեւակայութիւնը կը գործէ թռիչքներ, բայց դէպքերը կը ներկայացուին պատմական ճշդութեամբ, թէպէտ երանգաւորուած ժողովրդական գրոյցներով:*

*Սահակի պատմական բարձր դիրքը, անոր հռչակուած համբաւը յետիններէն շահագործուած է վերագրելու անոր անուան գրութիւններ:*

*Բայց ամէնէն աւելի բարերար ազդեցութիւն թողուց Սահակ յետագայ սերունդի վրայ անով, որ իր հսկայ անձնաւորութիւնը շահեցաւ Եկեղեցւոյ Մաշտոց մը, որուն ծննդական միտքը եւ սքանչելի հանճարը պարգեւեց Հիւսիսական կողմանց մտաւոր լոյս մը, որուն ճառագայթները մինչեւ ցայսօր պահպանած են իրենց լուսաւորող եւ կիզիչ ոյժը:*

## 5. ՄԱՇՏՈՑ ՎԱՐԴԱՊԵՏ ՀԱՑԵԿԱՑԻ

*Տարօնի Հացեկաց գիւղը*[1] *եղած է Մաշտոցի*[2] *ծննդավայրը։ Ծնած է իբր*

---

[1] *Այժմ Հացիկ, Թրքերէն Խասիկ անուանուած։ Գիւղիս եկեղեցւոյն մէջ կ'ըսուի թէ կայ Ս. Մեսրոպայ գերեզմանը, որ թէեւ հոս ծնած է, բայց Օշական թաղուած է։ Այս եկեղեցին Թրքերու եւ Եզիդիներու ալ նուիրական է, որ զայն «զիարէթ էլ-Խասիկ» կամ Տէր էլ-Խասիկ կ'անուանեն։ Հմմտ. Ինճիճեան, Նոր Հայաստան, 191. Հիւբշման, Տեղւոյ անուններ, 190 եւ 369։ Յիշատակագիր մը 1256ին ի Մսիս կը գրէ. «Ես Յովհաննէս երէց, յերկրէ Տարաւնոյ, ի գեղջէ Հացեկաց» եւն (ի Ջեռագիրս Տարօնոյ)։*

[2] *Անունս Մաշտոց պէսպէս ուղղագրութեամբ աւանդուած է.*

ա. *Մաժդոց, Թուղթ Եզնկայ. Գիրք Թղթոց*, 1։

բ. *Մաշդոց. Պատասխանի թղթոյն Պրոկղի, Գիրք Թղթոց*, 9. *նաեւ անդ* 81, 180, 220, 296։ *Յովհ. Օձնեցի, Ընդդէմ Երեւութականաց*, 66։ *Հմմտ. եւ Մաշդոց եպ. Խոտխոռունեաց (իբր* 570), *Գիրք Թղթոց*, 70, 73։

գ. *Մաշտոց, Ղ. Փարպ. Բ.* 70. *հմմտ. եւ անդ, Ա.* 13—17, 38։ *Յառաջաբան կանոնաց ժողովոյն Շահապիվանի. Հայապատում*, § 128։

դ. *MACTOYBIOC (կարդա՛ MACTOTZIOC) Փոտ, Մատենադարան*, 81։

ե. *Մաշթոց, որ միայն Կորեան քով կը հանդիպի։*

*Արմատն է անշուշտ ՄԱՋԴ– կամ ՄԱԺԴ–ակ* (Nöldeke, Tabari, 456, *ծ.*)։ — *ԺԴ վերածուած յընթացս ժամանակի ՇԴ > ՇՏի (հմմտ. Ոխժդ, ոխշդ, ոխշտ)։ Հմմտ. Ադոնց, Մաշթոց եւ նրա աշակերտները*, 9, *ծ.*։ *Ը. դարէն ետքը սովորութիւն եղած է Մաշտոց վարդապետն անուանել* Մասրովպ (*Նկարագիր Կարգաց, տես էջ* 17), Մեսրովպ (*Յառաջաբան Կանոնաց Շահապիվանի, Հայապատում*, § 128), Մեսրոպ (*Սակս ժողո–*

361ին[3], երբ Արշակ էր Հայոց թագաւորը եւ Ներսէս՝ կաթողիկոսը: Վարդան[4] կը կոչուէր իր հայրը. մօրը անունը չէ յիշատակուած:

Մաշտոցի ուսման ընթացքի մասին հետեւեալ հակիրճ տեղեկութիւնն ունինք կենսագիրէն. «ի մանկութեան տիսն վարժեալ

վոց, Գիրք Թղթոց, 304). Մեսրոբ, Մեսրոպ, Մեսրովբ, Մեսրովպ (Մ. Խորենացի, յաճախ, անգամ մը միայն «Մաշտոց», էջ 120. նաեւ «մեսրոպեան նշանագիրք», 255): Հմմտ. Հ. Հ. Համբարեան, Մեսրո՞պ թէ Մաշթոց. Հայ Խօսնակ, Ա (1924), 33:

[3] Հ. Ց. Գաթրըճեան, Տիեզ. Պատմ. Բ. 523: Մաշտոցի ոչ ծննդեան տարին ծանօթ է եւ ոչ կեանքի հասակը:

[4] Հ. Ց. Գաթըրճեան, Տիեզերական Պատմութիւն, Բ., 523, նկատի առնելով թէ Վարդան Մամիկոնեաններու յատուկ անուն է, կը հետեւցնէ թէ Մաշտոց Մամիկոնեան ծագում է ըլլայ: Մաշտոց Հացեկացի էր. այս պարագան ակամայ կը յիշեցնէ ինձ Փաւստոսի Բիւզանդեայ հետեւեալ տեղիքը. «Պապայ (որդւոյ Յուսկան) ի բուն ի կնոջէն (ի Վարազդուխտոյ, ի քեռէն Տիրանայ) ոչ մնաց (որդի). այլ էր նորա հարճ մի ի դաւառէն Տարօնոյ ի Հաց(եկ)աց դեղջէ կարճապատացն, եւ մնաց որ(դի) ի հարճէ անտի ի Հացեկացւոյն, որում անուն իւր — որդւոյ հարճին — Վրիկ կոչէր» (Գ. 19): Վրիկ հաւանօրէն կրճատուած ժողովրդական ձեւն է Վրթան(էս) կամ Վարդան անուան (հմմտ. Յուսիկ = Իսահակ), եւ այսպէս նոյն Մաշտոցի հօր Վարդանի հետ: Պիտի ենթադրենք թէ Ներսէս Մեծ անփոյթ չգտնուեցաւ իւր հօրեղբօրորդւոյն հանդէպ. եւ հոգաց ինչպէս Վրիկի, նոյնպէս անոր որդւոյն Մաշտոցի մասին: Վերջնոյս հոգածութիւնը մասնաւորապէս Սահակի պարտքն եղած ըլլալու էր, Ներսէսի մահէն (373) ետքը: Կը տեսնուի պատմութենէն թէ Մաշտոց անձուկ սիրով կապուած էր Սահակի հետ. այս սէրը, հաւանօրէն, ոչ միայն ազգակցութեան (իբրեւ երկու թոռնորդիներ Յուսկան) մէջ ունէր իւր արմատը, այլ եւ այն հոգացողութեան մէջ, զոր վայելած էր Մաշտոց իրմէ 20 տարւով երիցագոյն Սահակէն: Եթէ ուղիղ է ենթադրութիւնս, Մաշտոց եւս կը սերէր Գրիգորի տունէն:

հելլենական դպրութեամբ» (13) ։ Կը լռէ Կորիւն, թէ ո՞ւր առած էր Մաշտոց հելլենական կրթութիւնը ։ Կարելի էր ենթադրել թէ Մաշտոց ի Տարօն, ուր կար Փաւստոս եպիսկոպոս մը՝ ազգով «հոռոմ»[5], ուսած ըլլար յունարէն լեզուի տարերքը ։ «Հելլենական դպրութեամբ» վարժումը կը պահանջէր սակայն հելլենական շրջան ։ Նկատի առնելով, որ Անտիոքացի Թէոդորոս երէց իր մէկ գրութիւնը նուիրած է Մաշտոց հայ քորեպիսկոպոսի, կամ անոր խնդրանօք գրած է[6], պիտի հետեւցնենք թէ Մաշտոց ժամանակ մը բարեկամական եւ մտերիմ յարաբերութեան մէջ ապրած է Թէոդորոս երիցու հետ ։ Թէոդորոս 383ին ձեռնադրուած յԱնտիոք, մինչեւ 392 մօտաւորապէս կը գործէր նոյն քաղաքի մէջ որպէս երէց եւ մատենագիր[7] ։ Կար նոյն քաղաքին մէջ նաեւ Լիբանիոս, սոփեստ եւ ճարտասան, որուն հռչակը կը ձգէր դէպ ի Անտիոք ամէն կողմէ, յատկապէս Փոքր Ասիայէ եւ Առաջաւոր Ասիայէ աշակերտներ[8] ։ Անոր աշակերտներու թուին մէջ նշանաւոր հանդիսացած էին Յովհ․ Ոսկեբերան, Մեծն Բարսեղ, Գրիգոր Նազիանզացի, նոյն ինքն Թէոդորոս երէց, որ ապա Մոպսուեստիայի եպիսկոպոս կարգուեցաւ, եւ Ղեւոնդիոս հայկազն, որ իբրեւ սո–

---

[5] Փաւստ․ Բիւզանդեայ Պատմութիւն, Զ․, 5, 6։
[6] Photii bibliotheca, 81.
[7] Bardenhewer, Geschichte der altkirchlichen Literatur, III, 212. Christ, Geschichte der griechischen Literatur, II, 2, S. 1212.
[8] Christ, անդ ։

*փեստ եւ բանաստեղծ անուանի եղաւ եւ Ե. դարու երկրորդ տասնեակին Աթէնքի համալսարանի ուսուցչապետ կոչուեցաւ*[8] *: Ասոնց թուին մէջ խառնուած էր հաւանօրէն, իբր* 380*ին, նաեւ Մաշտոց, եւ աշակերտած Լիբանիոսի եւ մտերմացած Թէոդորոսի: Վերջնոյս հետ յարաբերութեան մէջ ապրեցաւ Մաշտոց նաեւ յետոյ:*

*Մաշտոց ուսումը աւարտելէն ետքը «եկեալ հասեալ ի Դուռն (տպ. ի գաւառն) Արշակունեաց թագաւորաց Հայոց մեծաց <եւ> կացեալ յարքունական Դիւանին՝ լինել սպասաւոր արքայատուր հրամանին առ հազարապետութեամբ աշխարհին Հայոց՝ Առաւանայ ուրումն»: Առաւան պարսիկ Խոսրով Գ.ի մահէն ետքը կարգուած էր Պարսից արքունիքէն Հայաստանի մարզպան* (387—400)[9] *: Հոն «տեղեկացեալ եւ հմուտ եղեալ աշխարհակեաց*[10] *կարգաց՝ ցանկալի եղեալ զինուորական արուեստին խրոց զօրականացն»* (14) *: Ուսկից կը տեսնուի թէ Մաշտոց միաժամանակ զինուորական հրահանգներու հետեւած է, ծառայած է բանակին մէջ: Բայց եւ այնպէս եղած է նաեւ անձնատուր ուսմանց. «անդէն ուշ եղեալ փութով ընթերցուածոց աստուածեղէն Գրոց, որով առժամայն լուսաւորեալ՝* [*եւ*] *թեւամուխ միջամուխ յաստուածատուր հրամանացն հանգամանս <լինէր>», առանց*

---

[9] *Տե՛ս վերը, էջ* 27:
[10] *Տպ. աշխարհական:*

*հեղգալու իր պարտականութեանց մէջ. «եւ ամենայն պատրաստութեամբ զանձն զարդարեալ՝ հարկանէր զիշխանացն սպասաւորութիւն*[11]» (14) ։

*Մաշտոց զինուորական ծառայութեան մէջ մնաց մինչեւ* 391 ։ *Այնուհետեւ հրաժարելով զինուորութենէն՝ նուիրեց ինքզինքը եկեղեցւոյ ծառայութեան ։ Կարեւոր կը համարիմ հոս յառաջ բերել կենսագրին տողերը, որոնք ուշագրաւ են ։ Մաշտոց Ս. Գրոց ընթերցման շնորհիւ ընդունած լուսաւորութեամբ կ՚որոշէ «ըստ աւետարանական չափուցն», այսինքն աւետարանական խրատներու հետեւելով, «ի ծառայութիւն Աստուծոյ մարդասիրին» դառնալ ։ «Մերկանայր այնուհետեւ զաշխարհակիր*[12] *ցանկութիւնն եւ առեալ զխաչն պարծանաց՝ ելանէր զկնի ամենակեցոյց Խաչելոյն ։ Եւ հաճեալ զհրամանացն պայման*[13] *ի խաչակիր գունդն Քրիստոսի խառնէր եւ անդէն վաղվաղակի ի միայնակեցական կարգ մտանէր. բազում եւ ազգի ազգի վշտակցութիւն ըստ աւետարանին կրէր. ամենայն իրաց, ամենայն կրթութեանց*[13*] *հոգեւորացն զանձն տուեալ՝ միայնաւորութեան*[14], *լեռնակեցութեան, քաղցի եւ ծարաւոյ եւ բանջարաճաշակութեանց, արգելանաց անլուսից, խարազ-*

---

11 *Տպ. սպասաւորութիւնսն ։*
12 *Տպ. զիշխանակիր ։*
13 *Տպ. զհրամանացն. չունի «պայման» ։*
13* *Տպ. կրթութեամբ ։*
14 *Տպ. միաւորութեամբ ։*

նազգեստ եւ գետնատարած անկողնոց. եւ բազում անգամ զհեշտական հանգիստ գիշերոյն եւ զհարկ քնոյ յոտնաւոր տքնութեան ի թօթափել ական վճարէր» (14—15)։ Կ'աւելցնէ Կորիւն թէ «եւ զայս ամենայն առնէր ոչ սակաւ ժամանակս»։ «Եւ զտեւալ եւս զոմանս՝ յինքն յարեցուցանէր աշակերտեալ նմին սովորական աւետարանութեան» (15)։

Միայնակեացներ կային Հայաստանի մէջ մեծ թուով, որոնք գլխաւորաբար Տարօնի (եւ շրջակայ գաւառներու) մէջ հաստատուած էին։ Անոնց գլուխն էր Գինդ, որ իւր բնակութիւնը յակունս Եփրատայ, Ոսկիք կոչուած տեղն ունէր։ Փ. Բիւզանդեայ Պատութեան վերջին գլուխը (Զ. 16) նուիրուած է անոնց։ Կը յիշուի անոնց թուին մէջ Տրդատ մը, որ Ներսիսի օրով հայրապետանոց կանչուած՝ ձեռնադրուած էր սարկաւագապետ, եւ անոր մահէն (373) ետքը միւսանգամ անապատ քաշուած։ Անոր «կայեանք բնակութեան էին[15] ի գաւառ(ի)ն Տարօնոյ, <ուր էր> շինեալ գիւր եղբայրանոց» (Զ. 16)։ Այս միանձնաւորները «հրամանաւ իւրեանց գլխաւորին Գնդայ» կը շրջէին Հայաստանի այլ եւ այլ գաւառները, երբեմն նաեւ «ընդ բազում հեթանոս տեղիս շրջէին յաշխարհս հեռաւորս եւ ի սփիւռս հեթանոսաց, դարձուցանէին զմոլորութիւն բազմաց եւ զբազում մարդիկ ածէին ի գիտութիւն կենաց եւ ի ճանապարհս ճշմարտութեան»։

---

[15] Տպ. էր ի գաւառն։

կարող էր Մաշտոց առնց յարած ըլլալ։ Բայց Կորեան տողերը կը յիշեցնեն մեզի ուրիշ միանձնաւոր մը, որ ճիշդ այս շրջանին իւր «կայեանքն բնակութեան» եւ «եղբայրանոցն» հաստատած էր Եփրատի աջ կողմը, յայն կոյս հայկական սահմանին, ասորական Միջագետքի մէջ։ Աղեքսանդր կը կոչուէր անիկա, Անհանգստից վանքի հիմնադիրը։ Աղեքսանդրի վարուց եւ Մաշտոցի կեանքի մէջ կան հասարակաց գծեր․ եւ կը յառնէ կասկած, թէ Մաշտոց ծանօթացած չէ՞ր Աղեքսանդրի հետ Միջագետքի մէջ[16]։

Կորիւն չի նշանակեր թէ ո՞ւր անցուց Մաշտոց միանձնաւորութեան տարիները եւ ե՞րբ առաջին անգամ հաւաքեց իւր շուրջը աշակերտներ։ Միանձնաւորութեան սկիզբը Կորիւն կը դնէ Վռամ Դ․ Կրմանի Դ․ տարին (48), այն է 391/2, որովհետեւ Վռամ Դ․ գահ բարձրացաւ 388, Օգոստոս—389 Յուլիս տարւոյն։

---

[16] Աղեքսանդր, որ Կ․ Պոլիս առած էր իր կրթութիւնը, իբր 380ին կ'երթայ Ասորիք․ հոն եօթը տարի մը մնայ Եղիա վանականի քով․ ապա չորս տարի կ'ապրի որպէս միայնակեաց։ Իբր 391ին շրջան կ'ընէ Միջագետք աւետարանական քարոզութեամբ։ Կը հիմնէ Եփրատի աջ եզերքը՝ վանք մը, ուր կ'աշակերտին իրեն իբր 400 միանձնաւորներ։ Անոնցմէ 70 (ապա 150) հոգի առած՝ նոր շրջան մ'ալ կ'ընէ Միջագետք․ անկէ Պալմիրայի վրայէն կ'իջնայ Անտիոք (իբր 404ին)։ Յետոյ կը վերադառնայ Կ․ Պոլիս եւ իբր 430ին կը վախճանի ի Գոմոն, ուր Բոսփոր եւ Սեւ ծով կը խառնուին (հմմտ․ Patrologia Orientalis, հատոր Զ․, էջ 664—674)։ S. Vailhé, Acèmétes ի Dictionnaire d'histoire et et de géographie, 1 (1912), 274—282.

Այս տարույն կ՚ընդունի Մաշտոց Հայոց Սահակ կաթողիկոսէն «ձեռնադրութիւն քահանայութեան»[17] եւ կ՚անուանուի «քորեպիսկոպոս»[18], այսինքն շրջուն առաքեալ։ Կ՚երեւայ թէ Մաշտոց իր կեանքի մէջ տեղի ունեցած փոփոխութեան մասին հաղորդած է Թէոդորոս երէցին յԱնտիոք եւ այս առթիւ խնդրած իրմէ Պարսից մոգական կրօնի հերքումը, որուն պէտք ունէր ինքը, որովհետեւ մտադիր էր աւետարանական քարոզութեամբ շրջիլ Պարսից սահմանակից հայկական գաւառները։ Թէոդորոս երէց ընդառաջ գալով իր բարեկամին խնդրանքին, կը յօրինէ գրուածք մը յերիս գիրս, որ այսպիսի խորագիր կը կրէր․

Θεοδώρου πρεσβυτέρου περὶ τῆς ἐν Περσίδι μαγικῆς καὶ τίς ἡ τῆς εὐσεβείας διαφορὰ ἐν λόγοις γ'. ...πρὸς Μαστούβιον ἐξ Αρμενίας ὁρμώμενον, χωρεπίσκοπον δὲ τυγχάνοντα, այս ինքն «Թէոդորոսի երիցու վասն մոգակրօնից գենին Պարսից եւ եթէ զի՞նչ իցէ ճշմարիտ հաւատոյն խտիր, յերիս գիրս . . . (գրեալ) առ Մաշտոց, որ էր յաշխարհէն Հայոց, կարգեալ ի քորեպիսկոպոսութիւն»[18]։

---

[17] Նկարագիր կարգաց, Ա։

[18] Photii bibliotheca, 81 (Migne, Patrologia graeca, 103, 281). Հմմտ. Ն. Ադոնց, Մաշտոց եւ նրա աշակերտները, 7—8։ Գրուածքս կը յիշէն նաեւ Ղեւոնդիոս Բիւզանդացի, Adv. Nest. et Eut. 3 (Migne, P. g., 86, 1, 1384, τά τε κατὰ μαγουσαίων αὐτων [կարդա՛ αὐτῷ] συγγραφέντα.) եւ Եբեդ-Յեսու՝ «Ընդդէմ մոգութեան յերկուս գիրս», Assemani, Bibl. Or., III, 1, p. 30.

Թէոդորոս երէց, որ 383—392 տարիներուն իբրեւ երէց կը ծաղկէր Անտիոք, 392/93ին ընտրուեցաւ եպիսկոպոս Մոպսուեստիայի (Մամուեստիայի) ի Կիլիկիա[19]: Ըստ այսմ Թէոդորոս գրուածքս Մաշտոցի խնդրանքով յօրինած պիտի ըլլայ 391/92ին, երբ «ի Հաւատս» մտած էր Մաշտոց:

Մաշտոցի «քորեպիսկոպոս» տիտղոսը, որ կը յիշէ Թէոդորոս, անծանօթ է Կորիւնին. բայց անիկա կը ներկայացնէ զինքը շրջուն առաքեալ, որ կը քարոզէ գաւառները աւետարանական վարդապետութիւնը. եւ այս էր արդէն քորեպիսկոպոսին պաշտօնը. Փաւստոս խօսելով Դանիէլ ասորիի մասին, որ շրջուն քարոզիչ էր, կ'ըսէ. «էր սա ընկալեալ զքորեպիսկոպոսութեան ձեռնադրութիւն աստիճանին ի ձեռաց մեծին Գրիգորի. ... սուրբ մեծ քորեպիսկոպոսն Դանիէլ... վերակացու եւ գլխաւոր (էր) եկեղեցեացն նահանգին Տարօնոյ... այլ եւ վերակացու եւ հրամատար ամենայն եկեղեցեացն Հայոց մեծաց: Ընդ ամենայն տեղիս, այլ եւ ի կողմանս Պարսից յօտար տեղիս քարոզեաց սա եւ անթիւս ի մոլորութենէ դարձոյց» (Գ. 14): «Քորեպիսկոպոսութեան աստիճանը» երիցութեան ձեռնադրութեամբ՝ ճոխացած էր վարդապետա-

[19] Թէոդորոսի եպիսկոպոս ձեռնադրութեան տարին սովորաբար կը նշանակուի 392, հիմ առնելով Թէոդորետոսի (Պատմ. Եկեղ. 5, 39) վկայութիւնը, որ կը հաւաստէ թէ անիկա 36 տարի եպիսկոպոսական գահի վրայ բազմելէ ետքը վախճանացեւ 428ին:

կան իշխանութեամբ, որով իրաւունք կը շնորհուէր շրջելու գիւղեր եւ գաւառներ, քարոզելու եւ ուսուցանելու ։ Ղ. Փարպեցի տրտունջով կը գրէր առ Վահան Մամիկոնեան[20], թէ զինքը «այլ եւ քորեպիսկոպոս ոք չարար», թող թէ «ձգտեցուցանել յեպիսկոպոսութիւն» ։

Մաշտոց կը հաւաքէ իր շուրջը ներանձնացեալ կեանքի հետամուտներ. ուստի եւ ունէր «եղբայրանոց» մը, ուր անոնք իր առաջնորդութեան տակ կը մարզուէին ։ Ոչ տեղւոյ եւ ոչ ժամանակի մասին ակնարկութիւն կ'ընէ Կորիւն ։ Մաշտոցի առաջին աշակերտները, որոնք «հաւասարք», «գործակիցք» եւ «օգնականք» կը կոչուին, հետեւեալներն եղան. 1. Յովսէփ ի Պաղանական տանէն. 2. Յովհաննէս յԷկեղեաց գաւառէն. 3. Տիրայր ի Խորձենոյ. 4. Մուշէ ի Տարօնոյ եւն ։ Ուշագրաւ է որ առաջին երեքը Հռոմէական Հայաստանէ են եւ չորրորդը Տարօնէն ։ Այս պատրաստողական շրջանը կ'իյնայ 391—405 տարիներուն ։

Կը գրէ Կորիւն թէ Մաշտոց առնելով հետը «զհաւատացեալս իւր», այսինքն աշակերտները, եւ «դիմեալ իջանէր յանկարգ եւ յանդարման տեղիս Գողթան» գաւառին ։ Տեղւոյն իշխանին՝ Շամբիթի անունը Կորիւնի

[20] Ղ. Փարպեցի, 193. «Յաղագս ատելոյ զիս... ուսուցիչքդ Հայոց թող ի մեծամեծսն ձգտեցուցանել զիս՝ յեպիսկոպոսութիւն.. եւ կամ յեկեղեցւոյ դատաւորութիւնս, այլ եւ քորեպիսկոպոս ոք չարար. զոր Պարսիկք եւ արք անարժանք գործեն եւ այսօր» ։

այժմեան օրինակին մէջ դուրս ինկած է ։ Անի-կա սիրով կ՚ընդունի առաքեալները, որոնք եկած էին քարոզելու աւետարանական վարդապետութիւնը ։ Մաշտոց «զամենեսեան . . . ի հնազանդութիւն Քրիստոսի մատուցանէր» (15) ։

Այս տեղ, քարոզչական ասպարէզի վրայ, կը զգայ Մաշտոց թէ քարոզութիւնը տեւական արդիւնք պիտի չպտղաբերէ ժողովրդեան համար, եթէ չհնչուի անոր ականջին Աւետարանը, եթէ խորհուրդներու մատակարարութիւնը իմանալի լեզուով չպաշտուի, եթէ ժողովուրդին ըմբռնողութիւնը դպրոցով չնախակրթուի ։ Դպրոցը կ՚ենթադրէր գրականութիւն, եւ այն՝ այն հեռաւոր կողմին համար՝ հայերէն լեզուով ։ Իսկ գրականութեան համար անհրաժեշտ էր հայերէնի հնչումներուն պատշաճեցուած նշանագիր ։ Այս եւ ասոր նման խորհրդածութիւններ կը սպասուէին հոս Կորիւնէն ։ Որովհետեւ կը պակսի, պիտի ենթադրենք թէ թերայթ մ՚ունի հոս Կորիւն, թերեւս տողերու կամ թղթի մ՚անկումով ։ Պակասը զգալի է . Կորիւն կը գրէ . «Նոյնպէս առաւել հոգ ի միտս[21] արկանէր (Մաշտոց) զ|||||||||||||||| համաշխարհական խնդրուածովք[22] եւ առաւել յաղօթս մշտնջենամռունչս . . . եթէ որպէս[23] արդեօք եւս իրացն գտանիցէ» (16) ։ Ղ . Փարպեցի (Ա . 13), որ Կո-

---

[21] Տպ . ի մտի ։
[22] Տպ . զհամաշխարհականս սփոփելոյ ։
[23] Տպ . որպիսի ։

րինը ունի իրեն աղբիւր, կը գրէ. «Քանզի հոգացեալ յարաժամ տրտմէր երանելի այրն Մաշտոց, տեսանելով զմեծ ջանն եւ զառաւել ծախս մանկանցն Հայաստան աշխարհիս. որք բազում թոշակօք եւ հեռագնաց ճանապարհօք եւ բազմաժամանակեայ դեգերմամբք մաշէին զաւուրս իւրեանց ի դպրոցս ասորի գիտութեան: Քանզի պաշտօն եկեղեցւոյ եւ կարդացմունք գրոց ասորի ուսմամբ վարէին ի վանորայս եւ յեկեղեցիս Հայաստան ժողովրդոցս. յորմէ ոչինչ էին կարող լսել եւ օգտել ժողովուրդքն այսպիսի մեծ աշխարհի. եւ լինէր պաշտօնէիցն աշխատութիւն եւ ժողովրդոցն անշահութիւն յանլրութենէ լեզուին ասորւոյ: Զայս ի բազում ժամանակս զմտաւ ածեալ երանելի առն Մաշտոցի եւ փղձկացեալ յանձն իւր...»: Կեղծ–Ղազար առանց տարակուսի Կորիւնի ազդեցութեան տակ կը գրէր խորհրդածութիւնները:

«Եւ իբրեւ աւուրս բազումս անդէն (ի Գողթան կողմանս) ի նմին (խորհուրդս) դեգերէր (Մաշտոց), յարուցեալ այնուհետեւ հասանէր առ սուրբ կաթողիկոսն Հայոց» Սահակ: Մաշտոց կաթողիկոսին առջեւ կը դնէ սեպհական նշանագիրներ ունենալու սախրոզական պէտքը: Սահակ, որ ունէր դպրոցական կրթութիւն, ըմբռնեց Մաշտոցի յուզած խնդրոյն կարեւորութիւնը. եւ «պատրաստական գտանէր նմին փութոյ հաւանեալ»: Այնուհետեւ Սահակ եւ Մաշտոց կը խորհին միասին «աւուրս բազումս»՝ «ի գիւտ նշանա–

գրոց[24] Հայաստան ազգին հասանել», այսինքն ամէն գնով փորձել հայերէն լեզուի համար յարմար նշանագիրներ հնարել։ Առ այս «բազում հարց <եւ> փորձի եւ քննութեան զանձինս պարապեցուցեալ», բայց չեն յաջողիր եզրակացութեան մը յանգիլ։ Խնդիրը կը հանեն նաեւ Հայոց Վռամշապուհ թագաւորի առաջ։ Զարմանքով կը լսեն իրմէ, թէ հայերէն լեզուի համար յարմարցուած գրեր արդէն գոյութիւն ունին եւ կը գտնուին Դանիէլ ասորի եպիսկոպոսի քով։ Թագաւորին հրամանաւ կը բերուին անոնք Վաղարշապատ «ի Ե. ամի թագաւորութեան» Վռամշապուհի (17)։ Բայց առաջին նայուածքով իսկ[25] կը համոզուին Սահակ եւ Մաշտոց, թէ «չեն բաւական նշանագիրքն ողջ ածել զսիւղոբայս՝ [եւ] զկապս[26] հայերէն լեզուի»։

---

24 Տպ. ի գիրս նշանագրոյ։

25 Ինչպէս վերագոյն ակնարկեցինք, Կորիւնի այժմեան բնագրին, էջ 17, տ. 19—27 «Ապա առեալ — տանէր» պէտք է փոխադրել էջ 21, տ. 24։

26 «Եւ զկապս» թէ հոս եւ թէ վարը հաւանօրէն «սիւղոբայ» = συλλαβή բառին մեկնութիւնն (glose) է. հմմտ. Ոսկ. Մատթ. Ա. 248. «որպէս վարդապետ որ յորժամ հեգգ աշակերտի սատուցէ, թէ ո՛րչափ ժամանակս ծախեցեր այգրէն ի սղոբայսդ» (ի լուս.՝ սողոբայսդ)։ Եւս. Քրոնիկոն, Ա., 37. «զաշտարակագործութենէն եւս Բազմավէպն միարան ըստ Մովսիսի գրոյն յիշէ զայս ձեւ օրինակի մինչեւ ցսիղոբայս անգամ». եւ 81. «զայս զոյն օրինակի մինչեւ ի սողոբայս ապաստան»։ Ոսկ. Ճառք, 550. «ոչ ասաց եթէ առեր, այլ թէ ընկալար. յոյժ ընտրութիւն ունի յաւելուած կապոյն. զոր բազում անգամ ասացի սիրոյ ձերում՝ եւ վասն սիւղաբայիցն թէ պարտիմք եւ զայն քննել»։ Այս բազմազան ուղղագրութիւններէն կը տեսնուի թէ բառս գրչագիրներու բերանը կրած է աղաւաղութիւն. յու—

*Դանիէլեան նշանագիրները իբրեւ անպէտ կը նետուին մէկդի։*

*Ժամանակի մասին ճշդիւ արտայայտուած է Կորիւն. Դանիէլեան նշանագիրները Հայաստան կը բերուին Վռամշապուհի Ե. տարին,* այն է 406/407։ *Մաշտոց նոր նշանագիրներ գտնելու համար Միջագետք կը մեկնի նոյնպէս Վռամշապուհի Ե. տարին եւ կը վերադառնայ անոր թագաւորութեան Զ. տարւոյն* (407/408)։

*Մաշտոց եւ Սահակ իրենց ակնկալութեան մէջ խաբուած զգալով իրենք գիրենք՝ «դարձեալ կրկին անգամ ի նոյն հոգս դառնային եւ նմին ելս խնդրէին ժամանակս ինչ»։ Ի վերջոյ կ՚որոշուի, որ Մաշտոց անձամբ իջնայ Միջագետք եւ հոն խորհրդակցելով յոյն եւ ասորի կարող անձանց հետ՝ հնարէ հայ լեզուին հնչումներուն ըստ ամենայնի համապատասխանող նշանագիրներ։*

*Մաշտոց առած հետը «դաս մի մանկտւոյ»՝ «հրամանաւ արքայի եւ միաբանութեամբ սրբոյն Սահակայ», «խաղայր գնայր ի Ե. ամի Վռամշապհոյ արքային Հայոց. եւ երթեալ հասանէր ի կողմանս Արամի՝ ի քաղաքս երկուս*[27] *Ասորւոց, որոց առաջինն Եդեսիա կոչի եւ*

---

*նարէնին մերձաւորագոյնն է «Սիւղարայ», լաւագոյն՝ Սիւղղարէ.* –այ *վերջաւորութիւնը ասորականէ կ՚երեւայ, եթէ չէ συλλαβή ի յոգ. հայց. (συλλάβας էն. հմմտ. եւ լատ.* syllaba, *Ե. դարուն գրի ներածումին հետ ներածուած է նաեւ բառս, որուն հայկականն է* կապ։ *Հելլենաբան դպրոցն՝* փաղառութիւն։

[27] *Տպ. երկուց. հմմտ. Նորայր, Կորիւն,* 75։

երկրորդ<ի>ն Ամիդ անուն» (18) ։ Մաշտոց հաւանօրէն նախ Ամիդ հանդիպած էր եւ ապա Եդեսիա. կ'երեւայ թէ Կորիւն հոս քաղաքներս ըստ նախապատուութեան յիշած է ։

«Անդ դէպ[28] լինէր (Մաշտոցի)՝ սուրբ եպիսկոպոսացն՝ որոց առաջնոյն Պակիդա[29] անուն եւ երկրորդին Ակակիոս՝ հանդերձ կղերականօքն եւ իշխանօքն քաղաքացն պատահել[30], <որք> եւ բազում մեծարանս ցուցեալ հասելոցն՝ ընդունէին <գնոսա՝ մեծաւ> հոգաբարձութեամբ ըստ Քրիստոսի անուանելոցն կարգի» (18) ։

Ժամանակագրութեան համար կուռաններ են եպիսկոպոսներու անունները ։

Եդեսիոյ եպիսկոպոսն էր այս շրջանին Pakîdâ, որ հայերէն տառադարձութեամբ պիտի գրուէր Պակիդա. անիկա գահ բարձրացած է 398, Նոյեմբեր 23ին եւ վախճանած է 409 Օգոստոս 1ին[32] ։ Իր յաջորդն է Դիոգենէս, որուն մահը պատահած ըլլալու է 411/12ին[33] ։ Այնուհետեւ Եդեսիոյ Թափուր աթոռին վրայ բազմեցաւ իբր 413ին Rabbûlâ, որ վախճանեցաւ 435 (ըստ Peetersի 436) Օգոստոս 7ին[34], ըստ կենսագրին 24 տարի եւ

---

[28] Տպ. ընդդէմ. հմմտ. Նորայր, անդ, 75 ։
[29] Տպ. Բաբիլաս ։
[30] Տպ. քաղաքին պատահեալ. հմմտ. Նորայր, անդ, 76 ։
[32] L. Hallier, Untersuchungen über die Edessinische Chronik. Leipzig 1892, S. 105, 106. Braun, Das Buch der Synhados, 9.
[33] Hallier, 106.
[34] Hallier, 110.

3 ամիս աթոռին վրայ բազմելէ ետքը[35]: Իր յաջորդն եղաւ Իբաս (Հիբա), Եդեսիոյ դպրոցին գլուխը: Կորիւնի այժմեան բնագիրը ՊԱԿԻԴԱ անունը կը ներկայացնէ ԲԱԲԻՂԱՍ (զոր Խորենացի, Գ. 53, կը կարդայ ԲԱԲԻԼՈՍ, ձեռագիրներ՝ Բաբեղոս, Բաբիղոս, Իբարոս են): Անունս սկսեալ Զամչեանէ կարդացուած է Րաբելոս, ՐԱԲԻԼԱՍ, եւ նոյնացուած է Rabbûlâի հետ[36], անուն մը, որ Կորիւնի գրչին տակ պիտի տառադարձուէր առանց տարակուսի ՀՌԱԲԲՈՒՂԱ (հմմտ. Rufinus = Հռուփինոս, աղաւաղուած՝ Հռոփանոս): Ամէն դէպքի մէջ ասորական անուն մը յունական վերջաւորութեամբ պիտի չտար Կորիւն: Ինձ կը թուի

1 2 3 4 5 6 7

թէ ԲԱԲԻՂԱՍ աւելի դիւրաւ կրնար աղաւա-

---

[35] Ռաբբուլայի վարքը եւ գործերը ասորերէն բնագրով հրատարակեց՝ J. J. Overbeck, S. Ephrem Syri, Rabulae Edesseni, Balaei aliorumque opera selecta, Oxonii 1865. p. 159—221. Անկէ գերմաներէնի թարգմանեց՝ G. Bickell, Ausgewählte Schriften der syrischen Kirchenväter Aphraates, Rabulas und Isaak von Ninive. Kempten 1874, S. 155—270 (Bibliothek der Kirchenväter von Thalhofer). Ռաբբուլայի վարուց քննութիւնը տուաւ մանրակրկիտ ուսումնասիրութեամբ՝ Paul Peeters, La vie de Rabboula, évêque d'Edesse († août 436). Recherches de science religieuse, 18 (1927). 170—204. Հ. Յ. Թորոսեան, Կորեան յիշած «Բաբիլաս» եպիսկոպոսը (Եդեսիոյ Րաբիլաս կամ Րաբուլաս հայրապետը). Բազմավէպ 1922, էջ 99—104:

[36] Ադոնց, Մաշտոց եւ նրա աշակերտները, 33 կը գրէ. «ինչ վերաբերում է Բաբիլասին, սա ոչ այլ ոք է, եթէ ոչ Եդեսիայի հռչակաւոր Ռաբուլ(աս) եպիսկոպոսը. եւ ուրեմն՝ Բաբիլաս ուղղելի է Ռաբիլաս»:

1 2 3 4 5 6
վումը ՊԱԿԻԴԱ անուան[37] համարուիլ, ինչպէս ժամանակակցութիւնն ալ կը պահանջէ, քան ՀՌԱԲԲՈՒԼԱ անուան: Ասով նաեւ դուր տեղ կասկածի ենթարկած պիտի չըլլանք Կորիւնի արժանահաւատութիւնը[38]: Պակիդա ցանցառ անգամ գործածուած անուն մը հայ գրչէն կարող էր ծանօթ անուան մը՝ Բաբիլասի (հմմտ. «Բաբիլաս երէց Յովհաննավանից 606ին[39], Բաբեղաս վկայ եւն) վերածուիլ, պահելով ձայնաւորներն եւ փոխելով բաղաձայները: Անուան առաջին գիրը Բ = Պ եւ հինգերորդը Ղ = Դ կարող էին դիւրաւ իրարու տեղի տալ:

Ակակիոս եպիսկոպոս բարձրացած էր Ամդայ աթոռը 400, Մայիս 9ին, Մարասէն ետքը[40]: 409ին, երբ Մարութաս եպիսկոպոս դեսպանութեամբ Յազկերտ Ա.ի արքունիքը պիտի մեկնէր, Պորփիւր Անտիոքայ, Ակակ Հալէպի, Պակիդա Եդեսիոյ, Եւսեբիոս Թելլայի եւ Ակակ Ամդայ եպիսկոպոսները կ՚ընձեռէին իրեն թուղթ մը, որ ուղղուած էր թագաւորին ի նպաստ Պարսկաստանի քրիստոնեաներու[41]: Իսկ 419/20ին, Յազկերտ Ա.ի ԻԱ. տարւոյն Թէոդոս Բ. կ՚ուղարկէր զԱկակ Պարսից արքունիքը բանակ-

---

[37] Առաջին անգամ անդրադարձաւ այս անուան Հ. Յ. Թորոսեան, Բազմավէպ, 1922, էջ 259—260:

[38] Ադոնց, անդ, 34:

[39] Գիրք Թղթոց, 111, 151:

[40] Gams, Series episcoparum.

[41] Braun, Das Buch der Synhados, 9.

ցելու խաղաղութեան մասին: 421/22ին, երբ Պարսիկ եւ Հռոմէական բանակները ընդհարուած էին Մծբինի առաջ եւ պատերազմը ի փոյս Պարսից վերջացած էր, Ակակ ծախեց Ամդայ եկեղեցւոյն մեծագին անօթները, որպէս զի Աղձիքէն բերուած իրր 7000 գերիները փրկանաւորէ եւ վերադարձնէ Պարսկաստան: Եպիսկոպոսի այս բարեգործութիւնը շարժեց Վռամ Ե·ի հիացմունքը· կ՚ըսուի թէ թագաւորը գինքը երկրորդ անգամ արքունիք հրաւիրած ըլլայ, յայտնելու համար անոր իւր շնորհակալութիւնը[42]: Այսպէս Կորիւն նաեւ այս տեղ երեւան կը բերէ իւր ստուգախօսութիւնը, որ հիմնուած է ժամանակակիցներու ճշգրիտ տեղեկութեանց վրայ: Թէ յԵդեսիա եւ թէ յԱմիդ երկար ժամանակով մնացած էին երիցագոյն աշակերտները եւ վայելած յիշեալ եպիսկոպոսներու հոգածութիւնը· չէին կրնար անոնց անունները դիւրաւ ջնջել իրենց յիշողութենէն: Ուստի Ն· Ադոնց[43], եթէ ճշդիւ

[42] DHGE, 1 (1912), 244 (F. Nau).

[43] Մաշտոց եւ նրա աշակերտները· 32—33· «Արդարեւ, արտաքին աղբիւրներից քաջայայտ է, որ Ակակը Ամիդի եպիսկոպոսն էր մօտաւորապէս սկսած 419/20 թուականից: ... Եթէ Մաշթոց Ամիդում ներկայացել է Ակակին եւ Եդեսիայում Ռաբուլին, այդ կարող էր լինել 420ից ոչ յառաջ եւ ոչ ուշ քան 435: Եւ եթէ իրաւ այդ ճանապարհորդութեան հետ է կապուած տառերի գիւտը, ակներեւ է, որ նա չէր կարող տեղի ունենալ Յազկերտի Ը· տարին — ժամանակական անհեթեթութիւն»: Ճիշդ այս «անհեթեթութիւնը» գրգիռ ըլլալու էր հեղինակին՝ ժամանակակից աղբիւրները աւելի մանրակրկիտ ուսումնասիրելու եւ չափաւոր ըլլալու իր անհեթեթ եզրակացութիւններու մէջ:

քննէր ժամանակակից աղբիւրները, պիտի չխորհէր կասկածի ենթարկել Կորեան ժամանակագրութիւնն եւ Մաշտոցի այս ճանապարհորդութիւնը 420ի տեղի ունեցած ներկայացնել:

Այն տեղ, հաւանօրէն ճանապարհին, «աշակերտաւէրն վարդապետ<ին> պատրեալ ընդ իւր յերկուս բաժանեալ՝ զոմանս յասորի դպրութիւն կարգէր <յԵդեսիա> եւ զոմանս <ի> յունական դպրութիւնն» (18) յԱմիդ․ որովհետեւ նախատեսնուած էր նշանագիրները ձեւակերպելէն ետքը թէ ասորի եւ թէ յոյն գրականութենէ թարգմանութիւններ ընել, առ այս պէտք էին երկու լեզուներու համար ալ հմուտ գրագէտ գործիչներ: Անշուշտ ամբողջ ձեռնարկութեան համար կարեւոր գումարը արքունի գանձարանէն պիտի հոսէր:

Առիթ ունեցաւ անշուշտ Մաշտոց ծանօթանալու Հիրա (Իրաս) երէցին հետ, որ Եդեսիոյ Դպրոցին գլուխն եղաւ:

Մաշտոց առած հետը երիցագոյն աշակերտներէն (օգնականներէն) երկու հոգի «անտի ի Մամուետական (տպ․ ի Սամուսատական) քաղաքն գումարէր»[44] (18): Տպա–
1 2 3 4 5 6 7 8 9 10 11 12
գրին ՍԱՄՈՒՍԱՏԱԿԱՆը կ՚առաջարկեմ կար–

---

[44] «Գումարեմ» հոս երթալ, մեկնիլ իմաստով: Ուղիղ չէ այս տողերու մեկնութիւնն այն իմաստով, ինչպէս կը հասկնայ Նորայր Բիւզանդացի, Քննասէր, Ա․ (1887), 12—17․ Կորիւն վարդապետ, 79—80:

1 2 3 4 5 6 7 8 9 10 11 12
դալ ՄԱՄՈՒԵՍՏԱԿԱՆ, այսինքն՝ Ս = Մ եւ 6—8 գրերը՝ ՍԱՏ=ԵՍՏ ուղղելով։ «Սամուստական ք․» իբրեւ Սամոստ Կորիւն պիտի գրէր «Սամոստացւոց ք․» եւ Կորիւն անխնամ կրկնութեան մէջ ինկած պիտի ըլլար, եթէ զՄաշտոց Սամոստէն ի Սամոստ հանէր։ Աղաւաղութիւնը աղաղակող է, թէեւ մինչեւ այսօր ուշադրութիւն չէ դարձուած այս կէտին։

Մամուեստիա Յունաց Մոպսուեստիան է, այսպէս երկիցս յիշատակուած է քաղաքս Սահակի թղթերու մէջ («Թէոդորոս Մամուեստացի կամ Մամուեստեայ» Գիրք Թղթոց, 13, 15)։ Մաշտոց իջաւ Մամուեստիա տեսակցելու քաղաքին եպիսկոպոսին՝ Թէոդորոսի հետ, որ ծանօթ էր իրեն արդէն, եւ հարցնելու անոր խորհուրդը նկատմամբ հայկական նշանագիրներու եւ գրականութեան, որուն պիտի ձեռնարկուէր անմիջապէս[45]։ Թէոդորոս Մոպսուեստացի մեծ հռչակ կը վայելէր արեւելեայց քով իբր աստուածաբանական իրաց հմտութեամբն եւ

[45] P. Peeters, REA, 9 (1929), 210, նկատի առնելով որ Թէոդորոս Մոպսուեստացի Մաշտոցի խնդրանքով գրած է Պարսից քէշին դէմ գրուածք մը, կը գրէ. «կը հետեւի ուրեմն, թէ հայ թարգմանիչներու գլուխը ունէր Թէոդորոս Մոպսուեստացւոյ հետ ծանօթութիւն։ Իր բնակութիւնն ի Կոմագենէ, բնականապէս, պիտի մատուցանէր իրեն առ այս առիթը։ Կորիւն չի յիշեր զայս. բայց իր լռութիւնը չի կրնար ժխտել, թէ Թէոդորոս չէ ունեցած Հայոց հետ աղերս։ Եզնիկ օգտուած է անոր գրութիւններէն» (L. Mariès, Le De Deo d'Eznik de Kolb, REA, 4, p. 197—202).

բազմաթիւ երկասիրութիւններով, մանաւանդ յետ եպիսկոպոս ձեռնադրութեան. Bardenhewer[45*] կը գրէ· „daß er seitdem an allen Angelegenheiten, welche die orientalische Kirche bewegten, den regsten Anteil nahm, darf trotz der Dürftigkeit der Quellenberichte vorausgesetzt werden“. Պէտք է ընդունիլ, թէ Թէոդորոս իւր բարեկամին տուաւ հնարաւոր խորհուրդներ, թէ նկատմամբ նշանագիրներու եւ թէ ձեռնարկուելիք թարգմանութեանց շուրջը: Անոր անունը լռած է Կորիւն, որովհետեւ երբ կը գրէր, Թէոդորոս՝ իբրեւ Նեստորի վարդապետութեան նախաքարոզ, անուանարկ եղած էր եւ անոր գրուածքները դատապարտուած էին: «Թէոդորոս, ինչպէս եւ իր ուսուցիչն Դիոդոր Տարսոնացի, ի կենդանութեան ընդ ուղղափառս հաշուած էին· յետ մահու իբրեւ հերետիկոս դատապարտուած: Իր գրուածներու մէջ երեւան եկաւ Նեստորի մոլորութիւնը· Կիւրեղ Աղեքսանդրացի Թէոդորոսի դէմ սաստիկ ընդդիմագրութիւն մը գրեց· այնուհետեւ ուղղափառ աստուածաբաններու շրջանին մէջ նկատուեցաւ Թէոդորոս մոլորուած մը»[46]:

[45*] Geschichte der altkirchlichen Literatur, 3 (Freiburg 1912), 312—313.

[46] W. von Christ, Geschichte der griechischen Literatur, II, 25 (München 1913), 1215.

Մաշտոց «իւրովքն հաւասարօք» (այս ինքն, ինչպէս քիչ յետոյ կ'ըսուի՝ «հանդերձ օգնականովք իւրովք») «բազում աշխատութեանց համբերեալ վասն իւրոյ ազգին բարեաց օճան գտանելոյ», կը յաջողի ի վերջոյ — հաւանօրէն նպաստաւորութեամբ Թէոդորոսի — հնարել «նշանագիրս հայերէն լեզուին», «ծնունդս նորոգ եւ սքանչելի»: «Եւ անդ (ի Մամուեստիա) վաղվաղակի նշանակեալ, անուանեալ եւ կարգեալ (գնշանագիրսն)՝ յօրինէր սիւղոբայիւք՝ [եւ] կապօք» (19): «Եւ ապա հրաժարեալ յեպիսկոպոսացն սրբոց (հաւանօրէն Կիլիկիոյ եպիսկոպոսները կ'ակնարկէ, որոնց հանդիպած է ճանապարհին, գլխաւոր հանդրուաններու մէջ) հանդերձ օգնականօք իւրովք իջանէր ի քաղաքն Սամոստացւոց. յորում մեծապատիւ իսկ յեպիսկոպոսէն եւ յեկեղեցւոյն մեծարեալ լինէր» (19):

Սամոսատի եպիսկոպոսին անունը լռած է Կորիւն: Եպիսկոպոսանիստ քաղաքիս աթոռին վրայ կը յիշուին՝ 381ին Անտիոքոս. 431—434 Անդրէաս եւ 449ին Ռուփինոս: Հաւանօրէն 406/7ին, երբ կը հասնէր հոն Մաշտոց, Անդրէաս էր քաղաքին եպիսկոպոսը: Կորիւն զանց ըրած է յիշել անոր անունը, վասն զի 431էն սկսեալ Նեստորականներու կողմը բռնած էր հակառակ Կիւրեղեանց. իրեն դէմ գրած է նաեւ Ռաբբուլա, Եդեսիոյ եպիսկոպոսը: Շատ ուշ, բայց հաշ-

տուեցաւ Կիւրղի հետ եւ սաով մտաւ ընդհանուր եկեղեցւոյ հետ միութեան մէջ[47]:

Սամոսատ փնտռեց Մաշտոց, գտնելու համար հոն Հռուփինոս անուանի գեղագիրը, որ հաւանօրէն յանձնարարուած էր իրեն Թէոդորոս Մոպսուեստացւոյ կողմէն: Նորագիւտ նշանագիրները պէտք ունէին յղկուելու գրչութեան արուեստով: «Եւ անդէն ի նմին քաղաքի գրիչ ումն հելլենական դպրութեան՝ Հռուփինոս[48] անուն՝ զամենայն ընտրութիւնս նշանագրոցն[49]՝ զնրբագոյնն, զկարճն եւ զերկայնն, զառանձինն եւ զկրկնաւորն միանգամայն յօրինեալ եւ յանկուցեալ »[50]: Հռուփինոս Մաշտոցին կը յանձնէ 36 քաջ չափուած եւ ձեւուած նշանագիրներ:

Կորեան ձեռագրին «Հռոփանոս» առանց տարակուսի ʽΡουφινος, Rufinus անուան աղաւաղուած ձեւն է. Խորենացի (Գ. 53) կը կարդայ նոյնպէս Հռոփանոս (նաեւ ըստ Զենոագրայ՝ Հռուփանոս). հայկական տառադարձութեամբ պիտի ըլլար Հռուփինոս: Թերեւս սա ըլլայ Սամոսատի Հռուփինոս եպիսկոպոսը, յաջորդն Անդրէասի, որ կը յիշուի 449ին Եփեսոսի աւազակաժողովին

[47] Հմմտ M. Jugie, Dictionnaire d'histoire et le géographie ecclesiastique, 2, p. 1604. Peeters, RSR, 18.

[48] Տպ. Հռոփանոս:

[49] Տպ. Նշանագրոյն:

[50] Կ'երեւայ թէ հոս տողեր դուրս ինկած են բնագրէն: Նշանագիրներու վրայ պիտի խօսինք պլուր:

ժամանակից եպիսկոպոսներու թուին մէջ[51]։ Կարելի է կարծել թէ Սամոսատացի Հռուփինոս իր կարգին գտնուած ըլլայ Թէոդորոսի աշակերտներու թուին մէջ[52]։

Երբ իրենց վերջին կերպարանքը առին Հայ նշանագիրները, Մաշտոց օգնութեամբ իւր երկու աշակերտներու ձեռք զարկաւ անմիջապէս թարգմանութեան։ Կորիւն կը գրէ. <այնուհետեւ> ի թարգմանութիւն դառնայր[53] <Մաշտոց> հանդերձ արամբք երկուք՝ աշակերտօքն իւրովք, որոց[54] առաջնոյն Յովհան անուն կոչէին, յԵկեղեաց գաւառէն, եւ երկրորդին Յովսէփ անուն՝ ի Պաղանական տանէն» (19)։ Այս երկու «աշակերտք» առանց տարակուսի այն «հաւատարքն» կամ «օգնականքն» էին, որոնք ընկերացած էին Մաշտոցի եւ գործակցած անոր նշանագիրներու գիւտին մէջ։ Առաջին փորձը

[51] J. Fleming, Akten der Ephesinischen Synode vom Jahre 449: Abhandlungen der königlichen Gesellschaft der Wiss. zu Göttingen, phil.-hist. Klasse N. F., 15, 1 (1917), S. 6. Հմմտ. Peeters, REA, p. 210.

[52] Ն. Ադոնց կը յիշէ (42) Թէոդորոս Մոպսուեստացւոյ մէկ աշակերտը՝ Ռուփինոս քահանայ, որ 399ին Հռոմ կ՚երթայ «եւ այստեղ ծանօթանալով Պելագիոս քահանային՝ նորա միջոցով Պելագիական կոչուած վարդապետութեան հիմնադիրն եղաւ։ Մեզ թւում է, որ այս Ռուփինը ուրիշ անձն չէ, եթէ ոչ այն գրիչ Հռուփանոսը, որը յիշւում է գրերի գիւտի պատմութեան մէջ։ Եթէ Թէոդորի աշակերտն իբրեւ սոսկ գրիչ մասնակցում է գիւտին, հարկաւ, նրա ուսուցիչն աւելի շօշափելի նպաստ պիտի բերած լինէր նոյն խնդրին»։

[53] Տպ. դառնային։

[54] Տպ. որոյ։

նորագիւտ նշանագիրներով հայերէն գրելու, փորձեցին թարգմանելով Սողոմոնի Առակաց գիրքը· որ մանր խրատական ասացուածքներով յարմար էր դեռակիրթ մանկուոյն առաջին ընթերցանութեան դասագիրք ծառայելու: Մաշտոց թարգմանեց, Հռուփինոս օրինակեց գեղագիր, եւ աշակերտները սորվեցան գրչութեան արուեստը[55]:

Մաշտոց երբ կը մեկնէր Հայաստանէն համոզուած էր թէ պիտի յաջողէր իրեն նշանագիրներու գիւտը· այժմ կարող էր վերադառնալ յաղթանակաւ, տանելով իրեն հետ ընծայ Հայաստանի առաջին հայերէնագիր մատեանը:

«Ապա յետ այնորիկ առնոյր <Մաշտոց> թուղթս յեպիսկոպոսէ քաղաքին (Սամոսատացւոց) եւ հրաժարեալ ի նմանէ[56] հանդերձ ամենայն իւր<այ>ովքն՝ բերէր (գթուղթըսն) առ եպիսկոպոսն[57] Ասորւոց, [որ] յորոց նախնկայն եղեւ, առաջի արկեալ նոցա <եւ> զնշանագիրսն աստուածատուրս[58]. վասն որոյ բազում խակ գոհութիւնք (տպ. գովութիւնք) յեպիսկոպոսաց

---

[55] Կորեան բնագիրը հոս խանգարուած կ'երեւայ եւ բառեր դուրս ինկած. «որ եւ գրեցաւ ձեռամբն այնորիկ («ձեռամբ նորին?» այսինքն Հռուփինոս) գրչի հանդերձ ուսուցանելով մանկունս գրիչս <ի> նմին դպրութեան» (19/20):

[56] Տպ. ի նոցանէ:

[57] Տպ. եպիսկոպոսն:

[58] Տպ. զնշանագիրն աստուածատուր: Խօսքը անշուշտ թէ նշանագիրներու եւ թէ Առակաց գրքի թարգմանութեան մասին է:

որրոց եւ յամենայն եկեղեցեաց բարձրանային ի փառս Աստուծոյ. եւ [ի] մխիթարութիւն աշակերտելոցն ոչ սակաւ[ք] <լինէր>». այսինքն ի տես նշանագիրներու եւ Առակաց գրքին հայագիր եւ հայերէնալեզու թարգմանութեան:

Իբր տարի մը Ամիդ—Եդեսիա—Մալատեսիա—Սամոսատ գծի վրայ դեգերելէ ետքը կը պատրաստուի Մաշտոց մեկնելու Հայաստան: Առնելով Եդեսիոյ եւ Ամդայ եպիսկոպոսներէն «թուղթս աւետագիրս (ուղղուած անշուշտ առ կաթողիկոսն Սահակ)՝ հանդերձ շնորհատուր պարգեւելովքն[59] եւ ամենայն իւրայովքն[60] ի շնորհացն Աստուծոյ ճանապարհորդ լինէր: <Եւ այսպէս զբազում> աւթեւանաւք[61] անցեալ՝ առողջութեամբ, աջողութեամբ եւ հոգելից ուրախութեամբ եկեալ հասանէր ի Հայաստան աշխարհն՝ ի կողմանս Այրարատեան գաւառին, առ սահմանօք Նոր քաղաքին, ի Զ. ամի Վռամշապհոյ արքային Հայոց մեծաց» (20), այն է 407/8ին, իբր տարի մը պանդխտութեան մէջ դեգերելէ ետքը:

Զուն կը հանէ «մերձ ի թագաւորական քաղաքն»: Մաշտոցի եւ իւրայիններուն գալուստը կը տարփողուի թագաւորին, կաթողիկոսին, աւագանւոյն եւ քաղաքացիներուն:

---

59 Տպ. պարգեւօքն:
60 Տպ. իւրայիւքն:
61 Տպ. զօթեւանօք:

Թագաւորը «առեալ զամենայն նախարարագունդ աւագանւոյն ամբոխ», եւ Սահակ եկեղեցական դասը եւ ժողովուրդը անոնց հետեւէն «ի քաղաքէն ելեալ պատահէին Երանելւոյն զափամբ Ռահ գետոյն»։

Հին եւ Նոր աշխարհներ կը բաժնէր գետը, գիշերն ու ցորեկը, մահն եւ ծնունդը։ Առ դուրս էր լոյսը մերժելու խաւարը։ Բարբարոս, անգրագէտ ժողովուրդը պիտի խառնուէր գրականութեամբ ճոխ ժողովուրդներու թուին մէջ։ Գիտակից դարակազմիկ րոպէին՝ ոտքի վրայ էր հայ ժողովուրդը, ողջունելու առաջին լոյսը։

Մաշտոց գրկին հայերէն առաջին գիրքը յաղթականի քայլերով կ՚անցնի կամրջակը։ «Եւ <անդէն> զցանկալի ողջոյն միմեանց տուեալ՝ [ուստի եւ] բարբառոք ցնծութեան եւ երգօք հոգեւորօք եւ բարձրագոյն օրհնութեամբք ի քաղաքն դառնային. եւ զաւուրն[62] տօնական ուրախութեամբ անցուցանէին» (21)։

Դրուած էր գրականութեան սկիզբը. հայերէն լեզուի ճոխ նշանագիրները մուտ գտած էին Հայաստան։ Եւ հետաքրքիր աչքերը յառած կը մնային նշանաձեւերու վրայ, զոր չէին կրնար առեղծուլ. բայց իմանալի էին ականջներուն գրերու հնչիւնները, զորոնք ի լուր ամէնուն բարձրաբարբառ կը հնչեցնէր Մաշտոց. «Ճանաչել զիմաստու—

[62] Տպ. զաւուրս։

*թիւն եւ գիրատ, իմանալ զբանս հանճարոյ...»:*

*«Ապա առեալ երանելի հոգաբարձուացն (Սահակայ եւ Մաշտոցի) զյանկարծագիւտն՝ խնդրէին հայցէին եւս յարքայէ մանկունս մատաղս», անշուշտ արքունատուր թոշակով, «որոց զնշանագիրսն <ուսուցանել> մարթեսցեն: Եւ յորժամ բազումք ի նոցանէ տեղեկանային <նշանագրոցն>, ապա հրաման տայր <արքայն> ամենայն ուրեք նովին <նշանագրովք> կրթել. որով եւ յաստիճան իսկ վարդապետութեան գեղեցիկ Երանելին հասանէր», այս ինքն Մաշտոց նոր բացուած դպրոցներու ուսուցիչ կը կարգուի: «Եւ իբրեւ ամս երկու կարգեալ զվարդապետութիւն իւր եւ նովին նշանագրովք տանէր» (17):*

*Կը բացուին այնուհետեւ թագաւորական հրամանաւ միջնաշխարհին եւ գաւառներու մէջ դպրոցներ. նորագիւտ նշանագիրները կը սորվի մատաղ սերունդը: Կը թարգմանուին գրքեր, կը բազմացուին օրինակներ, եւ գիրքը շրջան կ'ընէ ձեռքէ ձեռք:*

*Սահակ եւ Մաշտոց եւ իրենց աշակերտները «ի ձեռն առեալ այնուհետեւ աստուածագործ մշակութեամբ զաւետարանական արուեստն»՝ կը նուիրեն իրենք զիրենք «ի թարգմանել, ի գրել» եւ յուսուցանել (22): Շնորհիւ ուսուցիչներու անխոնջ աշխատասիրութեան, թարգմանիչներու տենդագին գործունէութեան, գրչագիրներու արագա-*

գիր օրինակութիւններու եւ ուսանողներու փոյթեռանդն ջանասիրութեան աճեցաւ աշակերտներու թիւը, տարածուեցան բազմատեսակ գրքեր բազմաթիւ օրինակներով, ընթերցանութիւնը եւ ունկնդրութիւնը սիրելի եղաւ ժողովրդեան: Ժամանակի պատկերը գծելով Կորիւն կը գրէ·

«Անդ էր այնուհետեւ սրտալիր ուրախութիւն եւ ակնավայել տեսիլ հայելոյ[62*]. քանզի երկիր, որ համբաւուցն անգամ օտար էր կողմանցն այնոցիկ, յորս[63] ամենայն աստուածագործ սքանչելագործութիւնքն գործեցան, առժամայն վաղվաղակի ամենայն եղելոց խելամուտ լինէր· ոչ միայն ժամանակաւ պաշտեցելոցն, այլ եւ յառաջակարգ[64] յաւիտենիցն եւ ապա եկելոցն՝ սկզբանն եւ կատարածի<ն> եւ ամենայն աստուածատուր աւանդութեանցն»· այսինքն Հայաստան ծանօթանալով Հին եւ Նոր Կտակարաններուն, վերահասու եւ խելամուտ եղաւ աստուածեղէն յայտնութեանց եւ փրկագործ տնօրէնութեան:

Մինչ կեդրոնին մէջ, Սահակի եւ Մաշտոցի առաջնորդութեան տակ «նորագիւտ վարդապետութեան» համար աշակերտներ կը համախմբուէին «ուսուցանել եւ թեքել եւ պատրաստական<ս> քարոզութեանն ան-

---

62* Տպ. հայելւոյ:

63 Տպ. յորում: Այսինքն՝ «ի կողմանս Պաղեստինացւոյ»:

64 Տպ. յառաջագոյն:

գէտ մարդկան յօրինել», այսինքն ուսուցչական մարմին պատրաստելու եւ գաւառները ուղարկելու համար, «ինքեանք իսկ (գաւառականք) ի կողմանց <կողմանց> եւ ի գաւառաց <գաւառաց> Հայաստան աշխարհին յորդեալք եւ դրդեալք հասանէին ի բացեալ աղբիւրն գիտութեանն Աստուծոյ», այսինքն դէպի Այրարատեան գաւառ կը խուժէին, մտնելու Վաղարշապատի աստուածաբանական համալսարանը, ուսանելու եւ հմտանալու «նորագիւտ վարդապետութեան» : «Բանդի, կը գրէ Կորիւն, յԱյրարատեան գաւառին, ի կայս թագաւորացն եւ քահանայապետացն, բղխեցին Հայոց շնորհք պատուիրանացն Աստուծոյ» :

Սահակ եւ Մաշտոց, որոնք գրական շարժման սկզբնապատճառն էին, անձամբ կը ղեկավարէին գրական շարժումը տարածելով դպրոցական ցանցը մերձաւոր եւ հեռաւոր գաւառները : Նպատակը կրկին էր· անգրագէտ ժողովրդեան գրագիտութիւնը ծանօթացնել եւ գրականութեամբ աւետարանական քարոզութիւնը տարածել· «որ եւ սկսան իսկ սիւնքն եկեղեցւոյ միջամուխ ձեռնամուխ[65] զգործ աւետարանչացն Քրիստոսի գործել, գումարել ի կողմանս <կողմանս>, ի գաւառս <գաւառս>, ի տեղիս տեղիս Հայաստան ազգին դասս դասս աշակերտելոցն[66] ճշմարտութեանն, զհաս[ուց]ե–

65 Տպ· ձեռամբ :

66 Տպ· դաս դաս աշակերտելոյն :

լոցն[67] ի կատարումն գիտութեան, զբաւա-կանսն[68] առ ի զայլսն ուսուցանելոյ»[69] (23)։

Իսկ իրենք, Սահակ եւ Մաշտոց, փոյթ տարին այնուհետեւ «զառընթերակաց ար-քունին հանդերձ ամենայն ազատազունդ բանակաւն[70] աստուածեղէն իմաստութեամբն վարդապետել» (23)․ Սահակ հաւաքած էր իր չուրջը յատկապէս Մամիկոնեանները, որոնք «ի վարժս վարդապետութեանն պա-րապեցուցանէր» (23)։

Անգրագիտութեան դէմ կռիւ հրատա-րակուած էր։ Յընթացս 408—410 տարինե-րու հնարաւոր եղաւ նոր սերունը նուաճել գրագիտութեան քաղցր լուծին տակ։

Վռամշապուհ, որ ողջունած էր նորա-գիւտ նշանագիրները, վախճանած էր (409)։ Անշուշտ մեծ եղաւ եւ ընդհանուր՝ ցաւը այս կորուստին համար։ Բայց Սահակ եւ Մաշտոց չյուսալքուեցան։

Այնուհետեւ միաբան խորհրդակցու-թեամբ կ՚որոշուի, որ Սահակ ստանձնէ միջ-նաշխարհի եւ հարաւակողման հոգը, իսկ Մաշտոց շրջի հիւսիսային գաւառները։ Կո-րիւն կը գրէ․ «Յետ այնորիկ անդր հաւա-նութիւն երանելլին Մաշտոց, որպէս զի Տէր եպիսկոպոսն (կաթողիկոսն Սահակ) ի կայե-նականսն եւ նա (Մաշտոց) ի սփիւռս հե-

[67] Տպ. զհաստուցելոցս։
[68] Տպ. բաւականս եւ։
[69] Տպ. զեկուցանելոյ։
[70] Տպ. բանակին։

թանոսաց զբանն կենաց սերմանիցեն» (24)։ Կորիւն նկատի ունի հոս Պաւղոսի առ Գաղատացիս թղթին հետեւեալ տեղիքը (Գաղատ. Բ. 9). «Ձեռն ետուն հաւանութեան ինձ եւ Բառնաբայ, զի մեք ի հեթանոսս եւ նոքա ի թլփատութեանն» զբանն կենաց սերմանիցեմք։ Նկատի առնելով որ Մաշտոց իւր գործունէութիւնը տարածեց Գողթն—Սիւնիք—Վրաստան—Գուգարք—Աղուանք—Բաղասական կողմանք, ուստի հիւսիսային Հայաստան եւ դրացի աշխարհները, պէտի հետեւցնենք, թէ Սահակի բաժինն ինկաւ Այրարատը, Տարօնը, Վասպուրականը. հետեւաբար «Կայենականք» կ'ընդգրկէր այս նահանգները. ասոնցմէ Այրարատը եւ Տարօնը ուղղակի կաթողիկոսական շրջաններ էին։ Որովհետեւ Այրարատը, Տարօնն եւ հարաւային Հայաստանը Մաշտոցի գործունէութեան շրջանին չէին պատկաններ, այս պատճառաւ ալ Կորիւն չէ խօսած անոնց մասին։

Մաշտոց հրաժեշտ տալով Սահակ կաթողիկոսի եւ իր շրջանակին (414º) «հանդերձ այլովք եւս օգնականօքն — որոց առաջնումն Տիրայր անուն՝ ի Խորձենական գաւառէն, եւ երկրորդին Մուշէ անուն ի նահանգէն Տարօնոյ, որք էին սուրբք եւ զըւարթագոյնք — հանդերձ այլովք եւս սպասաւորօք աւետարանին, զոր<ս> չեմք բաւական ըստ անուանցն նշանակել, [որով] <եւ> յանձն եղեալ Երանելլին շնորհացն

Աստուծոյ՝ երթեալ իջանէր յոռդատակն[71] Գողթան, յառաջին դաստակերտն իւր» (24), այսինքն ուր առաջին երթին պարապած էր առաքելութեամբ: Իր «օգնականները՝ Տիրայր եւ Մուշէ, հաւանօրէն այն առաջին «աշակերտեալներէն» էին, որոնք ընկերացած էին Մաշտոցին առաջին առաքելութեան ի Գողթն: Մուշէ նոյն կ'երեւայ այն Մուշէի հետ, որ Գինդի «մանուկ ձեռնասունն» էր, եւ միշտ «առ նմա հանապազորդեալ էր» (Փաւստ. Զ. 16)· յարած յետոյ Մաշտոցի:

Գողթն գաւառի տէրը Շաբաթ (Շամբիթ) նաեւ այս անգամ սիրով կ'ընդունի Քրիստոսի առաքեալը, որ եկած էր առաքելական քարոզութեանց հետ տարածել գրագիտութիւնը: Կը բանայ դպրոցներ, կը հաւաքէ ուշիմ պատանիներ, որպէս զի Մաշտոց սորվեցնէ անոնց հայկական նշանագիրները: Առ այս եռանդուն աջակցութիւն ցոյց կու տայ նաեւ Գիւտ, Գողթան տիրոջ որդին: Մաշտոց բացի դպրոցներէ՝ «կարգէր յամենայն գիւղս գաւառին դասս <դասս> սրբոց վանականաց», որպէս զի աւանդեն մատաղ սերունդին գրագիտութիւնը եւ ամրապնդեն զանոնք աւետարանական վարդապետութեան մէջ:

Գողթն գաւառէն կ'անցնի Մաշտոց «ի սահմանակիցն[72] ի Սիւնական աշխարհն»:

---

[71] Տպ. առ ոտս տանն: Հմմտ. Ա. Վարդանեան, Բառաքննական դիտողութիւններ, Գ. (Վիեննա 1921), 55—60:

[72] Տպ. սահմանակիցս:

Նաեւ հոս սիրով կը հիւրընկալուի Մաշտոց. Վաղինակ, Սիւնեաց իշխանը, ամէն դիւրութիւն կ՚ընծայէ Վարդապետին, կազմակերպելու գաւառին մէջ կրթական հաստատութիւններ եւ քարոզելու աւետարանական վարդապետութիւնը: Կը բացուին դպրոցներ. «Ժողովեալ մանկունս զգազանամիտ, զվայրենագոյն, զճիւաղաբարոյ կողմանցն առ ի նիւթ վարդապետութեանն»՝ կը յանձնէն զանոնք Վարդապետին, որ «դայեկաբար սնուցանելով եւ խրատելով», «առեալ պարզախօսս, հռետորաբանս, կրթեալս, աստուածատուր իմաստութեանն ծանօթս կացուցանէր» [73] (21). «մինչեւ իսկ ի նոցունց իսկ ի վայրենեացն եպիսկոպոս[ս] տեսուչ[ս] եկեղեցւոյն Սիւնեաց կարգել, որոյ անունն կոչէր Անանիա» (24). ապա եւ զերկիրն դասուք վանականաց լնոյր» (24):

Կորիւն չ՚ըսեր, թէ Սիւնեաց աշխարհէն ո՞ւր անցաւ Մաշտոց: Եթէ Հայաստան դարձած ըլլար, պիտի յիշէր ըստ սովորութեան Սահակի հետ հանդիպումը: Ինձ կը թուի թէ Մաշտոց Սիւնեաց աշխարհէն անցաւ ուղղակի Աղուանից աշխարհը. ըստ այսմ ինչ որ կը պատմուի յետոյ Աղուանից առաքելութեան մասին (էջ 30, 15—32, 22), պէտք է փոխադրել հոս (էջ 25, 1). վասն զի Կորեան բնագիրը հոս թղթերու ետեւառաջութիւն կրած է: Այս կարգով ալ կը պատմէ Կորեան Համառօտութիւնը:

73 Տպ. ծնունդս կացուցանէին:

*«Եւ ապա յետ այնորիկ հրաժարէր*[74] *<ի նոցանէ*[75] *Մաշտոց> գնալ ի կողմանս Աղուանից. եւ երթեալ իջանէր յաշխարհն. եւ հասեալ ի թագաւորական տեղին՝ տեսանէր զսուրբ եպիսկոպոսն Աղուանից, որում անուն Երեմիա կոչէին, եւ զնոցին թագաւոր, որում Արսվաղէն*[76] *անուն, ամենայն ազատօք հանդերձ: Որոց առաւել հպատակութեամբ ընկալեալ <զնա> վասն անուանն Քրիստոսի»* (30): *«Ապա հարցեալ ի նոցանէ <Երանելւոյն> առաջի դնէր*[77] *<նոցա> վասն որոյ եկեալն էր: Եւ նոցա՝ երկոցունց զուգանացն*[78]*՝ եպիսկոպոսին եւ թագաւորին՝ յանձն առեալ զդպրութեանն հնազանդել[ոյ]». ուստի «տային եւս հրաման ի գաւառաց <գաւառաց> եւ ի տեղեաց <տեղեաց> իշխանութեանն իւրեանց բազմութիւն մանկանց յարուեստ դպրութեանն ածել եւ գումարել ըստ արժանաւոր եւ պատեհ <պատեհ> տեղեաց դասս դասս դպրոցաց եւ ռոճիկս կարգել ի դարմանս»: Իսկ իբրեւ հրամանն այն արդեամբք եւ գործովք յանկ ելանէր, ապա այնուհետեւ երանելւոյն Երեմիայի եպիսկոպոսի* ի ձեռն առեալ վաղվաղակի զաստուածեղէն[79] Գրոց թարգմանութիւն՝ ի

---

[74] *Տպ. հրաժարեալ:*

[75] *Այս ինքն «յիշխանէն Սիւնեաց՝ ի Վաղինակայ եւ յեկեղեցւոյն»:*

[76] *Տպ. Արսվաղ էր. Ձեռ.*[2] *Արսվաղէ:*

[77] *Տպ. եդեալ:*

[78] *Տպ. զուգացելոցն:*

[79] *Տպ. աստուածային:*

գործ արկանէր. որով անդէն յական թօթափել վայրենամիտ եւ դատարկասուն եւ անասնաբարոյ աշխարհն Աղուանից մարգարէադէտք եւ առաքելածանօթք եւ աւետարանաժառանգք լինէին. եւ ամենայն աւանդելոցն Աստուծոյ ոչ ինիք անտեղեակք» (30—31) :

Աղուանից Արցախ, Ուտի եւ Գարդման գաւառները ժամանակաւ Մեծ Հայաստանի մասը կը կազմէին. անոնք հայերէնախօս էին : Նաեւ քրիստոնէութիւնը Հայոց քարոզութեամբ մուտ գտած էր այն կողմերը : Աղուանից եկեղեցին ենթակայ էր Հայոց կաթողիկոսին եւ միշտ սերտ յարաբերութեան մէջ անոր հետ : Մաշտոց անհրաժեշտ համարեցաւ հայ նշանագիրներն եւ հայ գրականութիւնը տարածել այն կողման հայ եւ քրիստոնեայ ժողովրդեան մէջ. եւ ուրախալի է որ թագաւորն եւ եպիսկոպոսն ընդառաջ եկան Մաշտոցի եւ ընդունեցան հայկական գիրն եւ գրականութիւնը :

Աղուանից աշխարհէն անցաւ Մաշտոց դրացի Բաղասական աշխարհը, ուր քրիստոնեայ ժողովուրդը ունէր իր եպիսկոպոսը՝ Մուշեղ անուամբ : Վերադառնալով Աղուանք՝ «զոմանս յիւրոց աշակերտացն վերակացուս կողմանցն[80] կացուցանէր՝ հանդերձ արամբ միով քահանայիւ արքունական դրանն՝ որում անուն[ն] Յոփնաթան կոչէին, որոյ բազում

[80] Տպ. «խուրեանց», որ անիմաստ է. պէտք է իմանալ կա՛մ «կողմանցն» կամ «դպրոցացն» եւ կամ «աշակերտելոցն» :

ախորժութիւն[80*] ի վարդապետութենէն էր դաեալ. եւ յանձն առնելով զնոսա եւ զանձն ամենապահ շնորհացն Աստուծոյ», «հրաժարէր ապա եւ ի Թագաւորէն եւ յեպիսկոպոսացն (յԵրեմիայէ եւ ի Մուշեղէ) եւ յամենայն եկեղեցւոյն Աղուանից», «խաղացեալ գայր ի կողմանցն Աղուանից, անցանել յաշխարհն Վրաց» (31):

Ծանապարհը Կուրի հարաւակողմէն առնելով «հասեալ գայր հանդէպ Գարդմանական ձորոյն»: Կը դիմաւորէ զինքը Գարդմանից Խուրս իշխանը. որ «առաջի դնէր զանձն վարդապետին՝ հանդերձ իշխանութեամբն իւրով: Առաւելագոյն իսկ վայելեալ ի հիւթ եւ ի պատրաստութիւն վարդապետութեանն՝ յուղարկէ զՆրանելին ուր եւ երթալոցն էր: Իսկ նորա անցեալ դիմեալ ի կողմանս <Վրաց>»: Շարունակութիւնն է էջ 25, 1 «Յորում ժամանակի պարգեւեալ յԱստուծոյ հասանէր ի գլուխ իշխանութեանն Վրաց[80**] քաջն Սխականն Վասակ»: Ասկէ կը տեսնուի թէ Մաշտոց Գարդմանքէն գալով ի «կողմանս Վրաց» կը պատահի հոն Վասակ Սինեոյ, որ նոր կարգուած էր «Վրաց Մարզպան» (ի Տփղիս)[80***]: Սա եւս իր կարգին «բազում ինչ նպաստաւորութիւն ընծայեցուցեալ[81] աւետարանագործ վարդապետութեանն՝ իբրեւ որդի[82] առ հայր

[80*] Տպ. յօժարութիւն: — [80**] Տպ. Սինեայ: — [80***] Այնպէս իմացիր ՀԱ. 1935, էջ 526:

[81] Տպ. նպաստութիւն ցուցեալ. Ագաթ. 455:

[82] Տպ. որդւոյ:

հպատակութիւն ցուցեալ եւ ծառայեալ ըստ աւետարանին վայելչութեամբ[83]՝ մինչ ի վախճան զհրամայեալսն ի գործ բերէր» (25)։

Մաշտոց կ՚երեւայ թէ ժամանակ մը մնաց Սիւնեաց աշխարհի մէջ։ Իր ծրագիրն էր անկէ անցնիլ Վրաց աշխարհը։ Ինչպէս Աղուանք, նոյնպէս Վրացիք Հայոց միջնորդութեամբ ընդունած էին քրիստոնէութիւնը․ թէպէտ բարեկամական էին երկու դրացի ժողովուրդներու, Հայոց եւ Վրաց, յարաբերութիւնները, բայց ցեղով եւ լեզուով անջատուած էին Հայերէն։ Մաշտոց չէր կրնար առաջարկել անոնց, որ ընդունէին հայերէն նշանագիրներն եւ օգտուէին հայկական գրականութենէն։ Հարկ էր անոնց համար սեպհական տառեր յօրինել եւ այսպէս վրական գրականութեան հիմը դնել։ Այս պիտի հաճէր անոնց ազգային զգածումները։ Մաշտոց ինքը վրացերէն չէր գիտեր անշուշտ․ բայց կային առանց տարակուսի իր աշակերտներու մէջ տաշրացի վրացագէտներ։ Կ՚ըսուի թէ Ջաղայ հմուտ էր հայկական լեզուի եւ գրականութեան։ Այսպէս կամ այնպէս ուսումնասիրելով Մաշտոց վրացերէնի հնչարանութիւնը՝ յօրինեց (ի Սիւնիս կամ վաղօրօք ի Հայս) վրացերէն լեզուի համար նշանագիրներ։ Կորիւն կը գրէ․

«Դարձեալ յետ ժամանակի ինչ ընդ մէջ անցելոյ հոգ ի միտ[84] արկանէր սիրելին

[83] Տպ․ վայելչութեան․ ա՛յսպէս Ագաթ․ 455։
[84] Տպ․ ի մտի։

Քրիստոսի եւ վասն բարբառոյ հիւսիսական կողմանցն[85]: Եւ առնոյր կարգէր[86] նշանագիրս <վան> վրացերէն լեզուին ըստ շնորհացն տուելոց[87] նմա ի Տեառնէ. գրէր, կարգէր եւ օրինօք յարդարէր <գնշանագիրսն> եւ առնոյր ընդ իւր զոմանս լաւագոյնս յաշակերտաց իւրոց (եւ) յարուցեալ գնայր իջանել ի կողմանս Վրաց: Եւ երթեալ յանդիման լինէր Թագաւորին՝ որում անուն էր Բակուր, եւ եպիսկոպոսի<ն> աշխարհին, <որում անուն> Մովսէս: Եւ առաւելագոյն հնազանդեալ նմա ըստ օրինացն Աստուծոյ՝ Թագաւորին եւ զօրացն հանդերձ ամենայն զաւառօքն: Եւ նորա զիւր արուեստն առաջի արկեալ խրատէր յորդորելով», որպէս զի ընդունին նշանագիրներն եւ սկիզբ դրուի վրացերէն գրականութեան: «Որոց[88] եւ յանձն առեալ ամենեցուն զխնդրելլին կատարել: Եւ գտեալ (Մաշտոցի) զայր մի Թարգման վրացերէն լե-

---

[85] Տպ. «վասն բարբարոսական կողմանն». ինձ կը թուի թէ Կորիւն չէր կրնար «Վրաց աշխարհն», «բարբարոսական կողմն» անուանած ըլլալ: Մաշտոց ոչ միայն Վրացիներու, այլ վրական ժողովուրդներու բարբառին համար նշանագիրներ կ'ուզէր տալ: Ըստ այսմ կը համարիմ թէ սկզբնագիրն ունէր
ԲԱՐԲԱՌՈՑ ՀԻՍԻՍԱԿԱՆ որ աղաւաղուած է
ԲԱՐԲԱՐՈ ՍԱԿԱՆ:
Կորիւն այլուր կ'ըսէ թէ Կ. Պոլիս հասած էին Մաշտոցի մասին համբաւք «ի հիւսիսական կողմանց» (27), այսինքն թէ անիկա գտած է Հայոց եւ Վրաց համար գրեր եւ պարգեւած անոնց գրականութիւն:

[86] Տպ. կարգեալ:

[87] Տպ. ըստ շնորհեցելոյ:

[88] Տպ. յորում:

գուխն (այսինքն հմուտ հայերէնի եւ վրացերէնի), որ անուանեալ կոչէր Ջաղայ, այր գրագէտ եւ ճշմարտահաւատ. հրաման տայր այնուհետեւ արքայն Վրաց ի կողմանց կողմանց եւ ի խառնաղանջ գաւառաց իշխանութեան իւրոյ ժողովել մանկունս, տալ ի ձեռս[89] Վարդապետին: Զորս[90] առեալ արկանէր (Մաշտոց) ի բովս վարդապետութեանն», այսինքն կը սորվեցնէ անոնց նորահնար վրացերէն նշանագիրները ուժը, միջնորդութեամբ Ջաղայի (26): Առանց տարակուսի այս շրջանին կատարուեցաւ Ս. Գրքի վրացերէն թարգմանութիւնը, Ջաղայի ձեռքով, աջակցութեամբ Մաշտոցի եւ իւր աշակերտներուն, հայերէն թարգմանութեան վրայէն:

Այս առթիւ կը գրէ Կորիւն.

«Եւ արդ զնոսա որ յայնչափ ի մասնաւոր եւ ի բաժանեալ լեզուացն ժողովեցան, միով աստուածարարբառ պատգամաւ ի մի ազգ կատարեալ՝ փառաւորիչս[91] միոյ Աստուծոյ յօրինէր: Յորոց եւ ոմանք արժանի եղեալ ի կարգ եպիսկոպոսութեան վիճակեցան[92]. որոց

---

89 Տպ. ի ձեռն:

90 Տպ. Զոր:

91 Տպ. կապեալ՝ փառաբանիչս:

92 Տպագիրն ունի. «յորոց եւ իմ անարժանիս՝ եղեալ ի կարգ եպիսկոպոսութեան վիճակ». Նորայր Բիւզանդացի, Կորիւն 385/86, կ'առաջարկէ կարդալ՝ «յորոց եւ գտան արժանիք եղանել ի կարգ եպ–ութեան վիճակի»: Թ. Աւդալբէգեան՝ Անյայտ աղանդաւորներ, 47—52. «յորոց եւ (զ)ոմանս արժանիս եղեալ ի կարգ եպ–ութեան վիճակ»: Կարելի է ուղղել նաեւ «յորոց եւ

*առաջնոյն*[93] *Սամուէլ անուն, այր սուրբ եւ բարեպաշտօն՝ եպիսկոպոս կացեալ տանն Արշուշայ իշխանի*[94] » (26) ։ *Կը ապասուէր երկրորդի մ՚անունն ալ, որ դուրս ինկած է*․ «*Իբրեւ ընդ ամենայն տեղիս Վրաց կարգէր*[95] *զգործ աստուածպաշտութեանն, այնուհետեւ հրաժարեալ ի նոցանէ՝ դառնայր յերկիրն Հայոց*» (26), *ուր կը պատմէ Սահակին* «*զա-ջողութենէ*[96] *եղելոցն*» ։

ոմանք արժանի եղեն *ի կարգ եպիսկոպոսութեան վի-ճակի*» ։ *Հմմտ․ Ագաթ․* «*յաստիճան եպիսկոպոսութեան լինէին արժանի կալոյ*» (441)․ «*արժանի եղեւ ի մեծ յեպիսկոպոսութեան աթոռն հասանել*» (12)․ «*վիճա-կեցուցանել զոք ի քահանայապետութիւն կամ ի գլխա-ւորութիւն*» (413, 420) ։

[93] *Տպ․ առաջինն* ։

[94] *Տպ․* «*տանն արքունականի*», *զոր կը կարդամ այսպէս*․

| | | | | | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | 2 | 3 | 4 | 5 | 6 | 7 | 8 | 9 | 10 | 11 | 12 | 13 | 14 |
| Ա | Ր | Շ | Ո | Ւ | Շ | Ա | Յ | Ի | Շ | Խ | Ա | Ն | Ի |
| 1 | 2 | | 4 | 5 | | 7 | | | | | 12 | 13 | 14 |
| Ա | Ր | Ք | Ո | Ւ | Ն | Ա | | | | | Կ | Ա | Ն | Ի |

«*արքունականի*» *բառին* 8 *գրերը կան* «*Արշուշայ իշ-խանի*»*ի մէջ*․ *Մնացածէն Ք = Շ, Ն = Շ, Խ = Կ*․ *Կո-րիւն քիչ յետոյ ակնարկելով այս տեղիքը կը գրէ, թէ Մաշտոց Տաշրացւոց իշխանը,* «*որ անուանեալ կո-չէր Ա(ր)շուշայ*», *կը յանձնէ* «*սրբոյ եպիսկոպոսին Սա-մուէլի, այնմ, զոր ի վերոյ նշանակեցաք*» (32) ։ *Այս ինքն Մաշտոց առթիւ այս այցելութեան ի Տաշիրք կար-գեց նոյն աշխարհին եպիսկոպոս զՍամուէլ, որ աշակեր-տած էր իրեն, եւ ինչպէս վրացերէն, նոյնպէս հայե-րէն նշանագիրները հմտացած*։ *Տաշրացւոց բդեշխի իշխանանիստ քաղաքն էր* Ցուրտաւ, *ուր եւ կը նստէր եպիսկոպոսը*։ *Վրաց Կիւրիոն կաթողիկոս, որ Ցուր-տաւի եպիսկոպոսներու յաջորդութիւնը* «*ի սրբոյն Շուշանկանէ եւ այսր*» *տուած է, կ՚աւելցնէ թէ ա-նոնցմէ ոմանք* «*ի Հայոց եւ ոմանք ի Վրաց էին՝ ի Հայս ուսեալք, գիտունք եւ վարդապետք*»․ *Գիրք Թղթոց, էջ* 178։

[95] *Տպ․ կարդեալ* ։

[96] *Տպ․ զողջութենէ* ։

*Այս իրողութեան վկայ է Աբրահամ Կաթողիկոս, որ 608ին կը գրէր առ Կիւրիոն Վրաց կաթողիկոս. «Բայց արդ մի՛ հեղգասցուք զսէրն հոգեւոր, որ կայր ի մէջ երկուց ազգացս՝ նորոգել, զա՛յն, որ ի միջէ աղբերէ առեալ էր զվարդապետութիւն. որ նախ ինքեանք զկենդանութեանն լոյս առին՝ որպէս ուսուցին մարգարէքն եւ առաքեալքն, եւ ապա մեզ եւ ձեզ հասարակ սերմանեցին զաստուածպաշտութիւն. նախ երանելին սուրբն Գրիգոր, եւ ապա* Մաշդոց, որ ետ զգրոց ծանօթութիւն ի պնդութիւն հաւատոց: *Եւ այժմ աղօթեսցուք նովիմք կալ մեզ մինչեւ ի գալուստն Աստուծոյ մերոյ» (Գիրք թղթոց,* 180):

*Ժամանակ մը հանդստանալէ ետքը «ապա դարձեալ ելանէր շրջէր զտեղեօքն կարգելովք*[97] *եւ զգաւառօքն աշակերտելովք աշխարհին Վրաց*[98]*. զուարթացուցանել, նորոգել հաստատել*[99]*. առ որով ժամանակաւ Արձիւղ անուն թագաւորեալ Վրաց. որոյ <սատարութեամբ> առաւել պայծառացուցեալ ծաղկեցուցանէր զվարդապետութիւնն: Եւ նորա շրջեալ զամենայն աշակերտելովք պատուիրէր*[100] *<նոցա> կալ ի ճշմարտութեանն»: Վերադարձին կ՚անցնի Տաշիրք:*

---

97 *Տպ. կարգելօք:*

98 *Տպ. Հայոց:*

99 *էջ* 26, *տող* 28. *շարունակութիւնը՝ էջ* 32, *տող* 5:

100 *Տպ. աշակերտօք՝ պատուիրեալ:*

«Յայնժամ իշխանին Տաշրացւոց՝ առն պատուականի եւ աստուածասիրի, որ անուանեալ կոչէր Ա(ր)շուշայ, <ընդ առաջ ելեալ> ի ձեռս տայր նմա զանձն <հանդերձ> ամենայն գաւառովն իւրով․ եւ նորա <զ> ամենասփիւռ վարդապետութիւնն՝ ոչինչ պակասութեամբ քան զայլոցն գաւառաց <եւ> անդ ցուցեալ[101] եւ յանձն արարեալ զնոսա սրբոյ եպիսկոպոսին Սամուէլի, այնմ զոր ի վերոյ նշանակեցաք, ինքն դառնայր ի կողմանս Հայոց մեծաց: Եւ եկեալ ի սովորական տեղիսն՝ ընդելական ողջոյնն սրբոյն Սահակայ եւ ամենայն պատահելոցն տուեալ՝ պատմէր նոցա վասն այնր եւս նորագործ իրացն․ որք իբրեւ լուան՝ առաւել գոհանային զպարգեւացն Աստուծոյ[102]»:

Մաշտոց Հայաստանի սահմանակից աշխարհները շրջած էր․ Գողթն, Սիւնիք եւ Աղուանից աշխարհը օժտած էր հայերէն եւ Վրաց աշխարհը վրացերէն նշանագրերով եւ դրականութեամբ․ անշուշտ իր կարգին նաեւ Սահակ Այրարատը, Տարօնն եւ Վասպուրականը՝ մերձակայ նահանգներով լուսաւորած էր: Կը մնար այժմ դրականութենէն մասն եւ բաժին հանել «վասն կէս ազգին Հայոց», այն է Հռովմէական Հայաստանի: Անխոնջ առաքեալը յանձն առաւ այս հեռաւոր

101 Տպ․ անցուցեալ:

102 էջ 32, տող 22: Ճառունակութիւնը՝ էջ 26, տող 29:

ճանապարհն ալ, որ կապուած էր քաղաքական դժուարութեանց: Կը գրէ Կորիւն (26—30).

«Եւ յորժամ այնպէս ընդ ամենայն տեղիս նաւթձէր[103] զուրբ աւետարան Տեառն... խորհուրդ առնոյր այնուհետեւ վասն կէս ազգին Հայոց, որ էր ընդ իշխանութեամբ թագաւորին Հոռոմոց: Եւ փութացեալ գնայր հանդերձ աշակերտօք բազմօք, անցանել ի կողմանս Յունաց: Եւ վասն առաւելագոյն բարեգործ համբաւուց յառաջագոյն գնմանէ անդր[104] ի հիւսիսական կողմանց հաչակելոց՝ առաւել միամտութեամբ ընտանեբար յեպիսկոպոսաց աշխարհին եւ յիշխանաց եւ ի զաւառականացն պատուեալ < մեծարեցաւ >, մանաւանդ ի սպարապետէն[105] աշխարհին, որ անուանեալ կոչէր Անատոլիոս[106] < պատահեալ նմա > ի Դերջան գաւառին»[107]:

103 Տպ. լի առնէր:

104 Տպ. անդ:

105 Տպ. ի սպայապետէն:

106 Տպ. Անատոլիս. Ձ[1] Անտիոխ, Ձ[2] Անտիոխի. Ղ. Փարպ. 74, Անատոլիոս. Մ. Խոր., Անատոլ. Կորիւն համառօտեալ՝ Անատոլիոս:

107 Տպ. «ի մուտ ճանապարհին». զոր կը կարդամ՝

1 2 34 5 6 7 8 9 10 11 12 13 14 15
Ի Մ ՈՒ Տ Ճ Ա Ն Ա Պ Ա Ր Հ Ի Ն

1 2 34 5 6 7 8 9 10 11 12 13 14 15
Ի Դ Ե Ր Ջ Ա Ն Գ Ա Ւ Ա Ռ Ի Ն

Միտքն է՝ Մաշտոց պատուեալ մեծարեցաւ մանաւանդ ի սպարապետէն աշխարհին... < պատահեալ նմա > ի Դերջան գաւառին. որ եւ...»: Մաշտոց Դերջանի մէջ կը գտնուէր, երբ կայսեր հրամանը կը հասնէր. ապա առած հետը Դերջանի եպիսկոպոսը կը մեկնի Մելիտինէ—Անտիոք—Կ. Պոլիս: Հ. Յ. Թորոսեան, Բազմավէպ 1931, էջ 469—471 կ՚առաջարկէ ուղղել «Անատոլիս՝ ի քաղաքին Անտիոք, խոստանալը լինել ձեռնտու ճանապարհին»:

Դժբախտաբար մանր չի նկարագրեր Կորիւն Մաշտոցի ընթացած ճանապարհը: Առանց տարակուսի Հռովմէական սահմանը անցաւ Կարնոյ ուղղութեամբ. ասկէ հասաւ Դերջան Մամախաթունի վրայէն. եւ հոն (ի Բագառի՞ճ) պատահեցաւ Սպարապետին եւ Դերջանի Գինթ եպիսկոպոսին: Ա՛յստեղ սպասեց հաւանօրէն Կայսեր հրամանին:

Սպարապետը Արեւելեան բանակին հրամանատարն էր, Յոյներէն կոչուած ὁ τῆς ἕω στρατηγὸς = militum per Orientem magister: Այս շրջանին (420) Արեւելից Սպարապետն էր Անատոլիոս. որ իր նիստն ունէր յԱնտիոք: Պրոկոպիոս խօսելով 421/22ին Հռովմայեցւոց եւ Պարսից մէջ տեղի ունեցած կռուոյ մասին, կ՚ըսէ թէ Անատոլիոս Արեւելից սպարապետի հնարագիտութեամբ խաղաղութեամբ վերջացաւ վէճը: Ճիշդ այս ժամանակն էր, որ Անատոլիոս Վռամ Ե.ի հալածանքներէն փախստական Ասպահապետին ապնջական եղաւ հռովմէական հողին վրայ, ինչպէս կը պատմուի Ս. Եւթիմիոսի վարքին մէջ: Անատոլիոս աւելի քան 30 տարի պահեց իր անուան կից սպարապետ տիտղոսը[108]:

Արդ Անատոլիոս լսելով Վարդապետին ճանապարհորդութեան նպատակը, հարկ տեսաւ խնդիրը ներկայացնել Կայսեր եւ անոր

---

[108] Անատոլիոսի մասին տե՛ս ընդարձակ Հ. Ն. Ակինեան, Եղիշէ վարդապետ եւ իւր Պատմութիւնն Հայոց պատերազմին. Ա., 261—262, 268—270:

*կամքը հարցնել: «Որ գիրս առաջի եղեալս[109] գրով ցուցանէր Կայսերն, որում Թէոդոս կոչէին, որդի Արկադեայ[109] կայսեր: Ուստի եւ հրաման ելանէր՝ վայելուչ մեծարանօք զՍուրբն յարքունիս յուղարկելոյ»[110]:*

*Կայսրն Թէոդոս Բ. Փոքր* (408—450), *որդին Արկադեայ, թագ կապած էր հինգամեայ հասակին:* 414*ին Ծերակոյտը պետութեան վարչութիւնը յանձնած էր Կայսեր Պուղքերիա քրոջ, անուանելով զանիկա Աւգոստա: Ըստ այսմ արքայատուր հրամանը տրուած էր յատկապէս Պուղքերիայի կողմէն:*

*Այս հրամանին վրայ Մաշտոց «զբազմութիւն աշակերտացն տարեալ ի քաղաքն Մելիտենացւոցն՝ յանձն առնէր սրբոյ եպիսկոպոսի քաղաքին, որ Ակակիոս կոչէր[111]. եւ գլխաւոր աշակերտացն Թողոյր զայն, որում Ղեւոնդէոս կոչէին, այր հաւատարիմ եւ ճշմարտապաշտ»* (27):

*Մելիտենէի (Մալաթիայի) եպիսկոպոսն Ակակ՝ Ս. Եւթիմիոսի վարքին համաձայն արդէն* 390*ին Մելիտենէի եկեղեցւոյն պաշտօնեաներէն էր. ծագմամբ՝ ինչպէս կը կարծուի, ազնուական ընտանիքէ, հմտացած էր եկեղեցական եւ արտաքին գիտութիւններու: Ոտրէոս Մելիտինէի եպիսկոպոսը անոր խնամ-*

---

[109] *Տպ. եղեալ... Արկադու:*

[110] *Տպ. «զսուրբն Ակումիտ անուն կոչելոյ». որ անիմաստ է. այսպէս ուղղել կ'առաջարկէ նաեւ Հ. Յ. Թորոսեան, Բազմավէպ* 1931, 473:

[111] *Տպ. «կոչէին». կամ այսպէս, եւ կամ «որում Ա. կոչէին»:*

քին յանձնած էր Ս. Եւթիմիոսի դաստիարակութիւնը: Թէ ո՛ր թուականին կոչուեցաւ Ակակ եպիսկոպոսութեան՝ յայտնի չէ. բայց գիտենք Կորիւնի տողերէս թէ 420ին նա արդէն եպիսկոպոս էր: Ակակ անձամբ ծանօթ Կ. Պոլսոյ Նեստոր հայրապետի հետ՝ զուր տեղ աշխատեցաւ (430) ետ կեցնել զանիկա մոլար վարդապետութենէն: 431ին մասնակցեցաւ Եփեսոսի ժողովին: 433/34ին միացած Եդեսիոյ Ռաբբուլա եպիսկոպոսին հետ՝ ազդու պատերազմ մղեց Թէոդորոս Մոպսուեստացւոյ գրուածքներու դէմ: Գրեց զգուշացուցիչ թուղթեր նաեւ Հայոց: Իր մահուան տարին ծանօթ չէ. Եփեսոսի 449ի ժողովին կը մասնակցէր Մալիտենէի Կոստանդիանոս եպիսկոպոսը[112]: — Ըստ այսմ Մաշտոց լաւ ձեռքի յանձնած էր իւր աշակերտները:

Մաշտոց հետն առած Դերջանի Գինթ եպիսկոպոսն եւ «սակաւս յաշակերտաց անտի, եւ ելեալ յՍնտիոք ի դեսպակս[113] եւ բազում պատիւ գտեալ (զճանապարհայն)՝ հասա-

---

112 Հմմտ. U. Rouziesի յօդուածն ի D. H. G. E. 1, 242/43:

113 Տպ. «ելեալ յանարւոյն դիմոսական»· զոր կը կարդամ այսպէս.

1 2 3 4 5 6 7 8 9 1 2 3 4 5 6 7 8 9
Յ Ա Ն Ա Ր Ի Ո Յ Ն Դ Ի Մ Ո Ս Ա Կ Ա Ն

1 2 3 45 6 7 8 9 1 2 3 4 6 7 8 9
Յ Ա Ն Տ Ի Ո Ք Ի Դ Ե Ս Պ Ա Կ Ս Ն

Հ. Ց. Թորոսեան, Բազմավէպ 1932, էջ 7, կ'առաջարկէ՝ «եւ ելեալ ի կառս՝ ի դեսպակս արքունականս» եւ կամ «եւ կալեալ զճանապարհս արքունականս...»:

նէր[114] ի Թագաւորական քաղաքն Կոստանդինական։ Զորմէ իսկոյն պատմէին յարքունիսն։ Եւ մտեալ առաջի պատուական[114*] աթոռոյն՝ յանդիման լինէր աստուածակարգ թագաւորացն[115] եւ Հայրապետին սրբոյ՝ կաթողիկոսին աշխարհամուտ Դրանն, որում Ատտիկոս կոչէին։ Յորոց եւ գտեալ շնորհս՝ հրամայեալ լինէր ժամանակս ինչ անդէն ի տիեզերական քաղաքին դադարել[116] դարմանօք կարգելովք՝ <մեծարեալ> յեկեղեցւոյն եւ յարքունեաց եւ ի պատուական իշխանաց քաղաքին» (27/28)։

Ատտիկոս Կ. Պոլսոյ հայրապետը գահ բարձրացած էր 415/16ին եւ վախճանած 425 Հոկտ. 10ին։

Մաշտոցի ուղեւորութիւնն դէպի Կ. Պոլիս ըստ ամենայն հաւանականութեան տեղի ունեցած է 419/420ին Արտաշէսի թագաւորութենէն յառաջ, Յազկերտի թագաւորութեան քաներորդ տարւոյն, երբ խաղաղ էին Պարսից եւ Հռովմայեցւոց մէջ յարաբերութիւնները։ 417/18ին Յազկերտ Ա. ուղարկած էր առ Թէոդոս իբրեւ դեսպան զՑահբալլահա, Պարսից քրիստոնեաներու կաթողիկոսը[117]։

---

114 Տպ. հասանէին։

114* Տպ. պատուական։

115 Կ'ակնարկուին Թէոդոս Բ. եւ Պուղքերիա։ 419/29ին ի Տիզբոն գումարուած ժողովի մը Գործոց մէջ կ'ըսուի, թէ Ակակ Ամդայ եպիսկոպոսը «իբրեւ հրեշտակ արքայիցն Հռովմայեցւոց» ուղարկուած է առ Յազկերտ Ա., Braun, Das Buch der Synhados, 37։

116 Տպ. մեծարել։

117 Das Buch der Synhados, 35/36։

Երկու տարի յետոյ՝ 419/20ին Կայսեր կողմէն դեսպան եկած էր թագաւորին Ակակ Ամդայ եպիսկոպոսը[118]: Յազկերտի ԻԱ. տարւոյն (420) ի Դուռն գացած էր Սահակ Հայոց կաթողիկոսը[119]: Թերեւս Սահակ թագաւորին ներկայացուցած աղերսներու մէջ նկատի ունէր նաեւ Մաշտոցի Հռովմէական Հայաստան առաքելութեան խնդիրը: Ինչպէս Ակակ եկած էր Կայսեր կողմէն Պարսից քրիստոնեաներու ներքին եկեղեցական վէճերը խաղաղելու համար, նոյնպէս կարելի է մտածել թէ Պարսից թագաւորի թոյլտուութիւնն առնուած ըլլայ Մաշտոցի համար Հռովմէական Հայաստան այցելելու տեղւոյն եկեղեցական իրաց քննութեան համար: Թերեւս ունեցած ըլլայ Մաշտոցի երթը նաեւ դեսպանական հանգամանք, Ակակի այցելութեան դիմաց փոխայցելութիւն մը տալու Կայսեր: Մաշտոց Կ. Պոլիս էր, 420ի կամ 421ի զատկին: Հռովմայեցւոց եւ Պարսից մէջ թշնամութիւնը ծագեցաւ 421ին. եւ խաղաղութիւնը կնքուեցաւ 422ին: P. Peeters[120] Մաշտոցի այս առաքելութիւնը կը միտի դնել 422ին, խաղաղութիւնը կնքուելէն ետքը: Յամենայն դէպս Մաշտոցի Հայաստանէն մեկնած պահուն Արտաշէս դեռ չէր բարձրացած գահը (գահակալած հաւանօրէն 421/422ին):

Մաշտոց Զատիկն անցուց Կ. Պոլիս: «Ապա

[118] Անդ, 37/38:
[119] Տես վերը էջ 47:
[120] REA. 9, 212:

*յետ Պասեքին կատարելոյ՝ ցուցեալ (Մաշտոցի) Կայսերն զպիտոյից զհանգամանս», այսինքն*

ա. *Հայաբնակ վայրերու մէջ բանալ դպրոցներ, հայերէն գրագիտութիւնը ծանօթացնելու հայ մանկտւոյն:*

բ. *Դարման տանիլ եկեղեցական գեղծումներուն:*

գ. *Բորբորիտոսներու աղանդը ջնջել կամ տարագրել երկրէն:*

*Կայսրը բարեացակամօրէն ընդունած եկու Վարդապետին առաջարկութիւններուն: Եւ Մաշտոց «առեալ զանընդդիմակաց հրամանն՝ հանդերձ սակերօք՝ կայսերագիր նշանակօք*[121]*.*

1. *վասն մանկտւոյն յաշակերտութիւն[ն] առ ի կէս ազգէն Հայոց ժողովելոյ.*

*եւ* 2. *վասն ժանտագործ ազգին Բորբորիտոսաց*[122]*.*

*եւ* 3. <*վասն*> *եկեղեցեաց հաստատութեան*[123]*:*

*Վասն որոց*[124] *հաւանեցուցեալ ճշմար-*

---

121 *Տպ. նշանակելովք: «Կայսերագիր նշանակօք» մեկնութիւնն է «սակերօք»* (sacra, σάκρα, *կայսերական հրովարտակ*, Hübschmann, Arm. Grammatik, I., 376) *բառին թէ հոս եւ թէ վարը՝ «առեալ* <*դ*> *սակերս՝ կայսերական նշանօք (կարդա՝ զկայսերագիր նշանակս)»: Լաւագոյն պիտի ըլլար կարդալ «հրովարտակօք»:*

122 *Տպ. բարբարոսաց:*

123 *Տպ. ունի հոս «եւ մեծամեծ պարգեւօք պատուել», որ անյարմար է տեղւոյն: Կը փոխադրեմ յաջորդ նախադասութեան վերջ, ինչպէս ունի նաեւ Ագաթանգեղոս,* 464:

124 *Տպ. որոյ:*

տին զարքունիսն՝ <ոչինչ> անընկալ թո-ղոյր» [125] :

Մաշտոց կրնար այլեւս գոհ սրտով մեկ-նիլ :

Ինձ կը թուի թէ այս տեղւոյ կը հայի, ինչ որ Կորիւն պատմած է յետոյ «աղուան ազգի» նշանագիրներու յօրինման մասին (էջ 29, 18—24) : «Յայնմ ժամանակի» Մաշտոցի Հռովմէական հողի վրայ գտնուած շրջանը կ'ակնարկէ. տեղւոյ մասին ակնարկութիւն չկայ : Կորիւն Մաշտոցի առաքելական գոր-ծունէութեան պատմութիւնը միջանկեալ դէպքով չընդհատելու համար ձգած է զայն հատուածին վերջը : Կորիւն կը գրէ. «Յայնմ ժամանակի եկեալ գիպէր նմա այր մի երէց Աղուան ազգաւ (տպ. ազգով), Բենիամէն ա-նուն. եւ նորա հարցեալ եւ քննեալ զբարբա-րոս զբանս աղուաներէն լեզուին՝ առնէր ապա նշանագիրս ըստ վերնապարգեւ կորովի սո-վորութեան իւրում. եւ յաջողութեամբ Քրիս-տոսի շնորհացն կարգեալ եւ հաստատեալ կշուէր» (29) :

Բարբարոս աղուան ազգի համար, որ քրիստոնեայ է, ունի երէց, նշանագիրներ կը յօրինէ Մաշտոց, Հռովմէական հողի վրայ : Այս պատմական–մշակութային կարեւոր

[125] «Ոչինչ» աւելցնելով կ'առնէ նախադասութիւնը իմաստ. այսինքն Մաշտոց այս երեք խնդրոց մասին համոզած է արքունիքը, որ անոր խնդիրներէն եւ ոչ մէկը մերժեց : Ուրիշ կերպ փորձած է մեկնել Հ. Յ. Թորոսեան, Բազմավէպ, 1932, էջ 261—262 :

*դէպքը այսպէս հակիրճ տողերով կը յանձնէ Կորիւն պատմութեան: Ինչպէս այլուր բացած եմ[126], եւ առիթ պիտի ունենամ միւսանգամ ընելու, այս տեղ «աղուան ազգով» պէտք է իմանալ «ալան» ժողովուրդը, որ նաեւ «գոթ» կը կոչուի: Կը զանազանուին արեւմտեան եւ արեւելեան գոթեր: Անոնք դաւանութեամբ արիանոսեան էին: Բենիամէն երէց արեւելեան գոթ–ալաններէ ուղարկուած էր Մաշտոցի՝ խնդրանքով, որ անիկա իրենց «բարբարոս», այսինքն անգիր լեզուին համար նշանագիրներ յարմարցնէ: Մաշտոց գոհացուց անոնց փափագը, հիմ առնելով յունական (եւ լատինական) նշանագիրները՝ լրացուց պակասները: Ասով միանգամայն ալան–գոթական գրականութեան հիմը դրաւ: Այս գրականութիւնը գերմանական մատենագրութեան առաջին սկզբնաւորութիւնը կը կազմէ: Մաշտոցի եւ Բենիամինի պատահումը կարող է միայն Կ. Պոլիս հանդիպած ըլլալ:*

*Մաշտոց այլեւս պատճառ չունէր ժամանակ անցնելու կայսերական քաղաքին մէջ: Կորիւն կը գրէ. «Եւ մեծամեծ պարգեւօք պատուեալ[123] եւ երկիր պագեալ ծիրանափառ Աւգոստականացն եւ սրբոյ կաթողիկոսին (Ատտիկոսի) եւ ընկալեալ ողջոյն յեկեղեցւոյն եւ յերեւելի իշխանացն քաղաքին եւ ամենայն*

---

126 Հ. Ն. Ակինեան, Հայ ստեղծագործ միտքը. Մշակոյթի օր, Պարիս 1932, էջ 41—48:

*իրօք յաջողեալք՝ ելանէին ի դեսպակս՝ ի կառս*[127] *արքունատուրս»* (28) :

*Մաշտոց եւ աշակերտք ամենուրեք պատիւ գտնելով «գային հասանէին ի ժամադիր կողմանս: Եւ անդէն փափագակի պատահեալ Սպարապետին Հայոց՝ հանդերձ սակերօք Կայսեր յանդիման լինէին* <*նմա*>*: Եւ նորա առեալ զսակերսն*[128]*՝ կայսերագիր նշանակսն*[121]*՝ փութայր փափագակի զհրամանն կատարել»* (28) :

*«Ժամադիր կողմանք» հաւանօրէն Անտիոքն է հոս, ուր կը բերձն կը հասցնեն գիրենք արքունատուր դեսպակք: Անատոլիոս «սպարապետ Հայոց» կոչուած է, թերեւս վասն զի Անտիոքի սպարապետի տակ էր նաեւ Հայաստան: Աւելի ճիշդ պիտի ըլլար սակայն, եթէ «սպարապետ Արեւելից» բուած ըլլար: Մաշտոց սպարապետին ցոյց տալէ ետքը կայսերականիք հրովարտակը՝ ինքը փութաց անշուշտ դէպի Մելիտենէ, ուր կը սպասէին իրեն աշակերտք:*

*Մաշտոց ազգային–քաղաքական եւ եկեղեցական–քաղաքական տեսակէտներէ դըրդուած եկած էր առ «կէս ազգն Հայոց» ծանօթացնելու անոր այն աստուածատուր նշանագիրներն եւ նորածին հայկական գրականութիւնը, որով լուսաւորուած էր Մեծ Հա–*

[127] *Տպ. ամենայն խուրայովքն յաջողեալք. հմմտ. Ագաթ.* 464: *Հոս կ'ըսուի՝ «ելանէին յուկխապատ կառս»: Եթէ հարազատ է Կորիւնի այս տողը, «ի կառս» պէտք է «դեսպակ»ի մեկնութիւնը համարիլ:*
[128] *Տպ. սակերս:*

յաստան: Լեզուով մը, զգածումներով մը եւ միայն արտաքին քաղաքականութեամբ միութենէն բաժնուած «կէս Ազգը» գրականութեամբ ալ միացնել կ'ուզէր Մաշտոց մեծ գանձուածին հետ, եւ այսպէս գոնէ մտաւորապէս յետս նուաճուած պիտի ըլլար նախկին Մեծ Հայաստանը:

Խնդիր էր սակայն, թէ ի՞նչ ընդունելութիւն պիտի գտնէր Մաշտոցի այս ծրագիրը Բիւզանդիոնի արքունիքի քով: Մաշտոցի աշակերտաց բանակին ի տես Արեւելից սպարապետը երկիւղ զգաց ի սկզբան: Պատեհ չհամարեցաւ անձամբ ասպարէզ տալ այս արշաւանքին: Եւ դրաւ խնդիրը Ծերակոյտին առջեւ: Կայսեր ազնուական վերաբերութիւնը հանդէպ Հայաստանի Լուսաւորչին ամէն գովութենէ վեր է: Թէոդոս Բ. փարեցաւ Մաշտոցի ծրագրին եւ քաջալերեց զայն ամէն հնարաւոր միջոցներով: Ոչ պարզապէս մարդասիրական կամ քաղաքակրթական եւ կամ կրօնական տեսակէտներէ նայեցաւ Բիւզանդական արքունիքը Մաշտոցի առաջարկին, այլ կար հեռատես քաղաքականութիւնը, որ հրապուրիչ կը տեսնէր ձեռնարկութիւնը: Հայկական նոր գրականութիւնը ընտրած էր իրեն հելլենական ուղղութիւն, եւ այն զուտ քրիստոնէական առաջնորդութեամբ: Հայաստան, Վրաստան եւ Աղուանից աշխարհը նուաճուած էին այս առաջնորդութեան տակ եւ կը կազմէին թումբ մը մազդէականութեան դէմ, տուած իրենց թիկունքը կայսեր: Իսկ կայսրը

յեցած Հռովմէական բանակին վրայ՝ կը նկատուէր պաշտպան արեւելեան քրիստոնէութեան: Պահելով այս ժողովուրդները իրենց քրիստոնէական կրօնին մէջ եւ անդադար յարաբերութեան մէջ Արեւմուտքի հետ՝ պիտի բարձրանար Հռովմէական ազդեցութիւնը Արեւելքի վրայ: Այս յարաբերութիւնները կենդանի պահելու համար ձեռնտու պիտի ըլլար Հռովմէական Հայաստանը, եթէ նոյն աշխարհահայեացքները, նոյն գրականութիւնը եւ նոյն կրօնական ըմբռնումներն եւ սովորութիւնները նաեւ հոս պահպանուէին անայլայլ: Եկեղեցական տեսակէտէ կարող էր ծրագիրը անհաճոյ ըլլալ Բիւզանդական Եկեղեցւոյ, որ աւելի սիրով պիտի ուզէր «կէս ազգն Հայոց» ծէսով եւ լեզուով ձուլել իրեն հետ. բայց ծանրակշիռ դատուեցան քաղաքական շահերը եւ տեղի տուաւ Եկեղեցին: Ճիշդ նոյն շրջանին էր, որ Պարսից քրիստոնէութիւնը կը ձգտէր ինքնագլուխ հրատարակել ինքզինքը, բաժնուելով Արեւմուտքէն: Թէոդոսի քաղաքականութիւնն եղաւ, որ Հայաստանն եւ դրացի եկեղեցիները սերտիւ կապեց Արեւմուտքի հետ:

Անատոլիոս համաձայն կայսերական հրամանին «հրեշտակս արձակեաւ այնուհետեւ ի գաւառս <գաւառս> կէս ազգին Հայոց յիշխանութեանն կայսեր՝ բազմութիւն մանկտւոյ ժողովել եւ նոցին ռոճիկս կարգել ի պատեհագոյն տեղիս. յոր եւ երանելին զվարդապետութիւնն իւր ի գործ արկեալ՝ <զնոյն>

[եւ] ժողովելոցն քաղցրացուցանէր» (28) ։ Սա այս մեծապէս նպաստամատոյց եղաւ իրեն «բազմութիւնն աշակերտաց», զոր բերած էր հետը ։

Դպրոցական–կրթական հարցը լուծելէ ետքը ձեռնարկեց Մաշտոց «դժպատեհ եւ կամակոր» եւ «ժանտագործ» Բորբորիանոսներու աղանդը քննել ։ Բորբորիանոսք (Խոր. Գ. 57, 58 «աղանդ Բորբորիտոնաց»), որոնք նաեւ Բարբարիտոք, Բարբելիտոք, Բարբելիոտք, Բորբորիանոսք կը կոչուին, Միջագետքի մէջ տարածուած աղանդաւորներ էին, որոնց դէմ կռուած էին Եպիփան Կիպրացի, Ռաբբուլա Եդեսացի եւ այլք ։ Ռաբբուլայի կենսագիրը[129] կը գրէ ․ «Բարբոյեաններու ամօթալի աղանդն եւ աղտեղի (ժանտագործ) աւանդութիւնը հալածեց Ռաբբուլա իր կեանքի բովանդակ տեւողութեան՝ չարժած ճշմարիտ գթասրտութենէ ․ որովհետեւ անոնց ժանտագործութիւնն այնպէս մեծ եւ անոնց վարդապետութիւնն այնպէս զզուելի է, որ մաքուր շրթունքն եւ ողջախոհ ականջները պիտի աղտեղէին, եթէ ուզէինք անոր մասին նոյն իսկ խօսիլ ։ Այս պատճառաւ ալ սահմանեց Ռաբբուլա, որ անոնք իրաւունք չունենան բնաւ երբեք իր թեմին մէջ բնակիլ» ։

Թէ ե՞րբ եւ Հայաստանի ո՞ր մասին մէջ երեւցան Բորբորիանոսք, չգիտենք ։ Մաշտոց ի սկզբան մեղմով մերձեցաւ անոնց ․ ուզեց

---

[129] Bickell, անդ, 197 ։

համոզելով, յորդորելով դարձի բերել զանոնք. եւ «իբրեւ ոչինչ գտանէր հնարս յուղղութիւն ածելոյ», կը դիմէ խիստ միջոցներու. «ի բանդս, ի գելարանս» կը դնէ զանոնք: Երբ այս միջոցներն ալ անօգուտ կ՚անցնին, «խարանելով» կը հալածէ հայկական սահմաններէն:

Երրորդ կէտին՝ «եկեղեցեաց հաստատութեան» շուրջը Կորիւն մասնաւոր յիշատակութիւն չ՚ըներ: Բայց կը գրէ թէ Մաշտոց ձեռք կը բերէ այս միջոցին սուրբ հարց զանազան գործերը, զորոնք ուսումնասիրելով՝ կ՚ընդարձակէ իր աստուածաբանական ծանօթութիւնները. «բազում շնորհագիր մատեանս զհարցն եկեղեցւոյ ստացեալ՝ ծովացուցանէր զվարդապետութեանն զխորութիւն եւ լցեալ զեղոյր ամենայն բարութեամբք» (29) ոչ միայն իր անձը, այլ եւ քարոզութեամբ բաժին հանելով ժողովրդեան:

Մաշտոց բարեաւ ի գլուխ հանելով իր առաքելութիւնը, «յետ այնորիկ հրաժարեալ յեպիսկոպոսաց, յիշխանաց աշխարհին եւ յամենայն եկեղեցեաց — առ որս թողեալ վերակացուս հաւատացելոցն (այսինքն աշակերտելոցն) զերկուս ոմանս յիւրոց աշակերտացն, որ <ոց> առաջնոյն Ենովք անուն էր եւ երկրորդին՝ Դանան, արք կրօնաւորք եւ յառաջադէմք յաւետարանական սպասաւորութեանն. զորս յանձն արարեալ շնորհացն Աստուծոյ՝ անդէն զետեղէր. — եւ ինքն բազում աշակերտօք գայր անցանէր ի կողմանս Հայոց

*մեծաց»։ Մաշտոց հասնելով ի Նոր քաղաք, կը պատմէ մանրամասն «զգործս կողմանցն այնոցիկ» Սրբոյն Սահակայ «եւ Թագաւորին Հայոց, որում անուն Արտաշէս կոչէին եւ ամենայն բանակին»* (30)։ *Եւ «զաղարէր անդ աւուրս ինչ»*։

*Կորիւն դարձեալ կը լռէ, թէ որչափ տեւեց Մաշտոցի դեգերումը հռովմէական հողի վրայ։ Հաւանօրէն* 420—422 *տարիները անցուց անիկա օտարութեան մէջ։ Երբ վերադարձաւ՝ Արշակունեաց թագաւորական գահին վրայ գտաւ Արտաշէս, որուն գահակալութիւնը մօտաւորապէս* 421/22*ին կ՚իյնայ*։

*Հռովմէական Հայաստանէն դարձէն վերջը հաւանօրէն նոր շրջագայութեան չելաւ Մաշտոց «զտեղեօքն կարգելովք»։ Նա յոգնած էր անդադար ճանապարհորդութիւններէ եւ ուսուցչական ու առաքելական գործառնութիւններէն. կը կարօտէր հանգստութեան եւ առանձնակեաց կեանքի։ Միւս կողմէ Սահակ կը գտնուէր բարձր տարիքի մէջ, ունէր պէտք օգնականի վարչական գործերու համար*։

425—438 *տարիներու գործունէութիւնը հետեւեալ հակիրճ տողերու մէջ կ՚ամփոփէ Կորիւն. «Յետ այնորիկ ուշ եղեալ երկոցունց երանելեացն՝ զիւրեանց Ազգին զգպրութիւն առաւել յարդել եւ դիւրացուցանել». առ այս կ՚ըսուի թէ Մեծն Սահակ «ձեռն ի գործ արկանէր ի թարգմանել եւ ի գրել»* (32)։ *Անշուշտ նոյնպէս Մաշտոց պարապեցաւ թարգմանութեամբ եւ հեղինակութեամբ։ Նոր հայրապե–*

*տական եւ պատմական հատորներով ճոխացնելու համար գրականութիւնն («յարդել») եւ ընթերցասիրութիւնը չահագրգիռ ընծայելու («դիւրացուցանել») համար կ'որոշեն զՅովսէփ եւ զԵզնիկ Կողբացի Եդեսիա ուղարկել, որպէս զի տորի «հարցն սրբոց զաւանդութիւնսն» հայերէնի թարգմանեն։ Անոնք ի գլուխ կը հանեն իրենց եղած յանձնարարութիւնն. «եւ կատարեալ զհրամանսն», թարգմանութիւնները «առ պատուական հարսն» կ'ուղարկեն. իսկ իրենք կ'անցնին Կ. Պոլիս, հաւանօրէն 433ին։*

*431ին Եփեսոսի ժողովը դատապարտած էր Նեստորի վարդապետութիւնը։ Նեստորի հետեւողք այժմ Թէոդորոս Մոպսուեստացւոյ գրուածներու վրայ յեցած ժողովոյն վճռոյն դէմ դիրք կը բռնէին։ Ծանօթ էր ամէնուն, թէ Մաշտոց Մոպսուեստացւոյ բարեկամն էր. եւ անոր գրուածներէն ինչ ինչ թարգմանուած էին հայերէնի։ Ռաբբուլա եւ Ակակ փութացին թղթերով հրաւիրել Սահակի եւ Մաշտոցի ուշադրութիւնը Մոպսուեստացւոյ գրուածքներու հերձուածողական բովանդակութեան վրայ։ Գրեց անոնց ապա նաեւ Պրոկղ, յորդորելով որ անյապաղ անհետացնեն զանոնք հրապարակէն։ Կը յիշուի նման բովանդակութեամբ թուղթ մ'ալ գրուած Եզնիկի կողմէն առ Մաշտոց[129*]։*

---

[129*] *Այս մասին խօսեցանք վերը մանրամասնօրէն. տես էջ 53—68։*

*Որչափ ալ կապուած էր Մաշտոց գործնական կեանքի, բայց եւ այնպէս կը զգար իր հոգւոյն խորքը բուռն պահանջք ճնշմամբ մարմնոյն, հեռու աղմկալից աշխարհէ ապրիլ աստուածամերձ աստուածամուխ կեանք մը, անձնատուր խորհրդապաշտ տեսիլներու եւ հայեցողական մտածմանց: Այս պատճառաւ ալ «ընդ ժամանակս ժամանակս իւրով մարմնոյն օրինակ ցուցեալ՝ առեալ զոմանս յաշակերտաց յիւրաքանչիւր մենաստանացն եւ երթեալ լեռնակեաց, սորամուտ, ծակախիթ եղեալ՝ զառօրէական զկերակուրն խոտարուտ ճարակօքն վճարէր»*[130]. *«Եւ նոյին*[131] *հոգեկրօն արուեստին հանէր աւուրս բազումս յանապատ տեղիս»* (36—37): *Բայց եւ այնպէս երբ «ազդ լինէր* <*նմա*> *իրաց*[132] *իրաց ինչ օգտակարաց եկեղեցեաց կողմանցն այնոցիկ*[133] *հասանել յօգնականութիւն... առանց իրիք յապաղելոյ*[134] *հանդերձ գործակցօք իջեալ ի թիկունս դիպացն պատահելոց եւ վճարեալ... եւ յորդադոյնս եւ պարարտադոյնս եւ անփակ բերանով զվտակս վարդապետութեանն ի սիրտս լսողացն ծաւալեցուցանէր»* (37/38):

*Սահակ հաւանօրէն նաեւ այս դէպքին կանչած էր զՄաշտոց քննելու Ակակի եւ*

---

[130] *Տպ. ճաշակօքն վճարէին:*
[131] *Տպ. նորին:*
[132] *Տպ. յերիցանց:*
[133] *Լաւագոյն պիտի ըլլար կարդալ «կողմանց կողմանց»:*
[134] *Տպ. զբաղելոյ:*

Ռաբբուլայի յարուցած խնդիրները, որոնց մասին նաեւ Պրոկղ գրած էր: Մաշտոց առանց աղմուկի քաշեց Մոպսուեստացւոյ գրութիւնները հրապարակէն. եւ անդորրացուց թղթերով յիշեալ եպիսկոպոսները: Այս առթիւ ուղարկուեցան Ղեւոնդ եւ Կորիւն Կ. Պոլիս, հանդերձ յանձնարարութեամբ, որ բերեն իրենց հետ վերադարձին Նիկիոյ եւ Եփեսոսի ժողովներու որոշումներն եւ Ս. Գրքի հաստատուն օրինակ մը:

438, Սեպտ. 7ին վախճանեցաւ Սահակ, Բագրեւանդ գաւառի Բլուր գիւղին մէջ: Մաշտոց չէր կրցած մասնակցիլ յուղարկաւորութեան: Կ'ըսուի թէ երբ լսեց «երանելի զուգականն» Մաշտոց հայրապետին մահուան բօթը՝ «բազում անձկայրեաց տրտմութեամբ եւ արտօսրազութ ողբովք եւ ծանրաթախիծ սգովք պաշարեալ դնէր» (42): Տխրութիւնը ընկճեց զինքը: Զգաց թէ առանձին մնաց: «Թէպէտ եւ միայնաւորութեանն տրտմութիւն չթողոյր զուարթանալ, սակայն զաւետարանական ընթացսն եւ (զ)վերակացութիւնն սրբոյ եկեղեցւոյն շնորհօքն Աստուծոյ առանց պակասութեան տանէր» (43): «Զամենեսեան յորդորէր առ բարեացն քաջութիւն. եւ զաստուածադիր պատուիրանացն հրամանս յուշ առնէր» ամենեցուն. «մերձաւորացն առ խրեւ զհոգեւոր եռանդն ածէր». եւ հեռաւորացն «բազում թուղթս խրատագիրս եւ զգուշացուցիչս ընդ ամենայն գաւառս առաքէր» (43—44):

47 տարի առաքելական եւ 33 տարի ուսուցչական ասպարէզի վրայ գործած էր Մաշտոց առանց խնայելու անձին. կատարած էր հեռաւոր ճանապարհորդութիւններ, քարոզած, ուսուցած եւ միաժամանակ պարապած գրական աշխատութիւններով: Իր տոկուն բնութիւնը թերեւս կարենար քանի մը տարւով աւելի վայելել արեւի լոյսը, եթէ իր զուգակցին, Մեծին Սահակի մահը չհարուածէր զինքը. «միայնաւորութեանն տրտմութիւն չթողոյր զուարթանալ»: Թէպէտ կ՚ընկճէր զինքը տարիքին ծանրութիւնը եւ անչափ «տրտմութիւնը», բայց եւ այնպէս գործեց բանիւ եւ գրով մինչեւ կեանքին յետին ժամը. եւ ապրեցաւ անձնատուր մեռուցողական հրահանգներու. «մանաւանդ զի եւ զմտաւ խոկածէր՝ ըստ տէրունական հասակին[135] զոր վախճանին. չտայր քուն աչաց եւ ոչ նիրհ արտեւանանց՝ մինչեւ հասանել ի հանգիստն Տեառն» (43):

Այսպէս գործելով «զգործ աւետարանչի Տեառն» հասաւ «ի հանգիստն Տեառն»: Կորիւն, որ առանց տարակուսի տակաւին առ ոտս իր ուսուցչին կը գտնուէր, այսպէս կը

[135] Կորիւն կ՚ակնարկէ հոս Եփես. Դ. 13. «մինչեւ հասցուք ամենեքեան ի մի միաբանութիւն հաւատոց եւ գիտութեանն որդւոյն Աստուծոյ. յայր կատարեալ ի չափ հասակի կատարմանն Քրիստոսի». հմմտ. եւ Կորիւն, էջ 13: Ըստ այսմ անտեղի է Նորայրի «ծերունական» ընթերցուածը (Կորիւն վարդապետ, էջ 8): Պէտք է յիշել զուգադիպութիւնս. Մաշտոց գրի գիւտէն մինչեւ մահը ապրած էր 33 տարի, «ըստ տէրունական հասակին»:

նկարագրէ Մեծ Վարդապետին կեանքի վերջին օրերը․

«Անդէն ի նմին ամի[136]՝ յետ ամսոց վեցից անցելոց <զկնի> վախճանի<ն> երանելւոյն Սահակայ, լինէր բանակն Հայոց հանդերձ սրբով Վարդապետաւն[137] յԱյրարատեան <գաւառի> ի Նոր քաղաք<ի>»: Հոն կը հիւանդանայ Մաշտոց․ եւ «յետ սակաւ ինչ աւուրց հիւանդութեանն՝ յերեքտասներորդում ամսեանն Մեհեկանի», «հասանէր սրբոյն քրիստոսակոչ կատարումն»: Կը վախճանի «նովին հոգեկրօն վարուք», ինչպէս ապրած էր բովանդակ կեանքին մէջ, շրջապատուած ձեռնասուն աշակերտներէ (44): Մեհեկանի ամսոյն 13ը կը համապատասխանէ 439, Փետրուար 17ին, որ ուրբաթ օր մըն էր:

Կը պատմէ Կորիւն թէ մահուան անկողնոյն մէջ յանկարծ «թեթեւացեալ եւ սթափեալ ի ցաւոցն՝ կանգնեալ նստաւ ի ժողովոյն միջի եւ համբարձեալ զձեռս[138] հանապազատարած յերկինս՝ զամենայն զմնացեալսն յանձն առնէր շնորհացն Աստուծոյ, վասն նոցա օգնականութիւն հայցէր»: «Եւ ապա նոցա[139] զսէր եւ զմխիթարութիւն աւանդեալ՝ զմերձաւորս եւ զհեռաւորս օրհնութեամբ պա-

---

[136] Այս ինքն 438 Նաւասարդ—439 Նաւասարդ տարին, որ կը համապատասխանէ 9 Օգոստոս—8 Օգոստոս տարւոյն:

[137] Տպ․ վարդապետով:

[138] Տպ․ զձեռն:

[139] Տպ․ սորա սրբոցն:

կէր ։ Եւ զհաճոյական աղօթման հատուցեալ[140] ի Քրիստոս հանգեաւ» (45) ։

«Եւ մինչդեռ ձեռք սրբոյն ընդ երկինս կարկառեալ էին՝ տեսիլ սքանչելի խաչանման, լուսաւոր, նշողազարդ[141] երեւէր ի վերայ ապարանիցն, յորում երանելին վախճանէր․ զոր ամենայն ուրուք ինքնատես եղեալ եւ ոչ առ ընկերի[142] պատմեալ» (44/45) ։ Նոյն տեսիլը կ՚ընկերանայ յուղարկաւորական շուրն մինչեւ գերեզմանատեղը ։

Վարդապետին մահուան անկողնոյն քով էին երիցագոյն աշակերտներէն՝ Յովսէփ եւ Թադիկ (Թոդիկ) ․ իսկ զինուորականութեան կողմէ՝ Վահան Ամատունի, հազարապետն Հայոց, եւ Հմայեակ Մամիկոնեան (47) ։

Հանգուցեալին մարմինը մեծ յուղարկաւորութեամբ կը փոխադրուի Օշական գիւղը Վահան Ամատունիոյ փափագին համաձայն ։ Զուին մասնակից էր Մամիկոնեաններէն Հմայեակ ։ Հոն, յՕշական կը թաղուի Մաշտոց՝ «ի մարտիրոսարանն մատուցեալ եւ զօրինաւոր յիշատակն կատարեալ» ։ Խաչանշան լուսազարդ տեսիլը թաղման հետ կ՚աններեւութանայ, իբրեւ նշանակ յայտարար, թէ հանգած է այն մեծապայծառ նշուլազարդ լոյսը — Մաշտոց վարդապետ, որ ինչպէս արեգակ ծագած էր Հայաստանի, Վրաստանի եւ Աղու–

140 Տպ․ հատուցեալ ։
141 Տպ․ շողաւոր ձեւ ։
142 Տպ․ եւ ոչ առ յընկերէ ։

*անից աշխարհի հորիզոնին վրայ եւ լուսաւորած հիւսիսը։*

*Վահան Ամատունի երեք տարի ետքը կը կանգնէ Երանելույն նշխարաց վրայ «խորան սքանչելի՝ տաշածոյ վիմօք քանդակելովք*[143] *եւ ի ներքսագոյն խորանին զՍրբոյն հանգիստ յօրինեալ»․ եւ «սպաս գոյնագոյնս, պայծառատեսիլս եւ արծաթովք եւ ակամբք պատուականօք* <*ընդելուզեալս*> *ի յիշատակարան սեղանոյն․․․ պատրաստեաց եւ ամենայն սրբովք* <*ոսկերօք*> *ի միասին զումարելովք խաչակրօն վկայիցն Քրիստոսի՝ հանդերձ երանելեաւն Մաշտոցիւ ի հանգիստ խորանին փոխէ»․ եւ զԹադիկ եկեղեցւոյն սպասաւոր կը կարգէ* (46)։

*Մաշտոց վարդապետի նշխարները մինչեւ այսօր կը հանգչին նոյն «խորանին» մէջ յՕշական, եւ ամէն տարի Սրբոց Թարգմանչաց տօնին մեծահանդէս շքով կը յարգուին։ Ունեցած եմ եւ ես երջանկութիւնը,* 1927*ին, խառնուելու այդ յարգողներու Թուին մէջ եւ մատուցանելու իմ յարգութիւնս սրբակրօն Վարդապետին եւ հայ մատենագրութեան հիմնադրին։*

*Եկեղեցին, որ այժմ կանգուն է, ի հիմանց նորաշէն կանգնուած է Գէորգ Դ․ կաթողիկոսի օրով։*

---

[143] *Տպ․ քանդակելով։*

## ՄԱՇՏՈՑԻ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԵԱՆ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆԸ ԸՍՏ ԿՈՐԵԱՆ

*Կորիւն իւր գրուածքին վերջը դրած է Մաշտոցի կենսագրութեան համար կարեւոր ժամանակագրական պատկեր մը. այսպէս.*

«Եւ արդ լինի համար հաւատոց[144] Երանելւոյն՝ ամք խէ[145]:

Եւ ի դպրութենէն Հայոց մինչեւ ցվախճան Սրբոյն ամք լբ[146]:

Որք համարին այսպէս.

Թագաւորեալ Կրմանայ Պարսից արքայի ամս ժ.[147] եւ Յազկերտի ԻԱ.[148] <եւ Վռամայ ամս ժթ.[149]>. եւ յառաջնում ամի Բ.

---

[144] *«Հաւատք» հոս «կրօնաւորութիւն» իմաստով. ակէ «հաւատաւոր»:*

[145] *Տպ.* խե: — *Այս ինքն՝* 438/39—47 = 391/92:

[146] *Տպ.* լե: — *Այս ինքն՝* 438/39—32 = 406/7:

[147] *Տպ. Դիմոնայ: — Կ'ակնարկուի Վռամ Դ. Կրման,* 388/89—398/99: *Կորիւն Վռամ Դ.ի կու տայ ժ. տարի (Դ + Զ = ժ). արտաքինները եւ անոնց համաձայն Սեբէոսի Արքայացանկը՝ ժԱ. տարի: Նոյն Արքայացանկի համաձայն Վռամի Է. (տպ. Ե.) տարւոյն թագ կը կապէ Արկադիոս կայսր* (395): *Վերջին տարին է* 398 *Օգոստոս*—399 *Օգոստոս. տարին չբոլորած սպանուեցաւ Վռամ. սպանման լուրը Հռոմ կը հասնի* 399*ին* (Nöldeke, Tabari, 72 *ծ. եւ* 418): *Հաւանօրէն սպանութիւնը տեղի ունեցած է* 398*ի վերջերը կամ ի սկզբան* 399 *տարւոյ: Այս կէս տարին չէ հաշուած Կորիւն: Ըստ այսմ Կորեան համաձայն Կրմանի* 6 *տարիները կ'իյնան* 392/93—397/98 *տարիներու մէջ:*

[148] *Յազկերտ Ա., որ գահակալեց ԻԱ. տարի,* 399 *Յունվ.*°—420 *աշուն: Ոմանք* 420 *Օգոստ.—աշուն առանձին տարի հաշուելով՝ Յազկերտի կ'ընծայեն ԻԲ. տարի* (Hoffmann, Auszüge, 34):

[149] *Այս պարբերութիւնը դուրս ինկած է բնագրէն, զոր պէտք է անպատճառ վերականգնել: Կ'ակնարկուին Վռամ Ե.ի գահակալութեան 19 տարիները, որոնք կ'իյնան* 421 *(Յունուար)*—438 *Օգոստոս տարիներու մէջ:*

Յազկերտի որդւոյ Վռամայ վախճանեցաւ Երանելին[150]:

Եւ արդ առնու համար ամաց Սրբոյն հաւատոց ի Դ. ամէն Կրմանայ արքայի[151] մինչեւ ցառաջին ամն Բ. Յազկերտի որդւոյ Վռամայ: Եւ դպրութեանն Հայոց՝ յութերորդ ամէն Յազկերտի[152] առեալ սկիզբն»:

## ՄԱՇՏՈՑԻ ԳՐԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԻՒՆԸ

1. Ճառք կամ վարդապետութիւն Ս. Գրիգորի: *Կորիւն* (32) *կը գրէ թէ Մաշտոց երբ վերջացուց առաքելական շրջագայութիւնքը, «յետ այնորիկ ուշ եդեալ երկոցունց երանելեացն զիւրեանց ազգին զդպրութիւն առաւել յարգել եւ դիւրացուցանել. եւ քիչ յետոյ. «ապա դարձեալ յետ այնպիսի առաւել եւ բարձրագոյն լուսաւորութեանն՝ սկսեալ երանելւոյն Մաշտոցի ճառս յաճախագոյնս դիւրապատումս, շնորհագիրս, բազմադիմիս ի լուսաւորութենէ եւ ի հիւթոյ Գրոց մարգարէականաց կարգել եւ յաւրինել, լի ամենայն*

---

[150] *Յազկերտ Բ.ի առաջին տարին է* 438 *Օգոստ.*— 439 *Օգոստոս: Կորեան ընծայած հաշիւն է՝*

| | |
|---|---|
| *Վռամ Դ. Կրման* | 6 |
| *Յազկերտ Ա.* | 21 |
| *Վռամ Ե.* | 19 |
| *Յազկերտ Բ.* | 1 |
| | 47 |

*Ըստ այսմ՝* 391/92—439 (*Փետր.* 17):

[151] *Կրմանի Դ. տարին է* (388/89 + 4 =) 391/92:

[152] *Յազկերտ Ա.ի Ը. տարին է* 399/400 + 8 = 407/408:

ճաչակօք աւետարանական հաւատոյն ճշմարտութեան: Ցորս բազում նմանութիւնս եւ օրինակս ի յանցաւորացս ասաի՝ առաւելագոյն վասն յարութենական յուսոյն առ ի հանդերձեալսն՝ յերկիւրեալ կազմեալ. զի հեշտընկալք եւ դիւրահասոյցք ախմարագունիցն եւ մարմնական իրօք գրաղելոցն լինիցին» (34—35):

Ինչպէս լաւ նկատած է Հ. Բ. Սարգիսեան[1], Կորիւնի ակնարկած այս «ճառք յաճախագոյնք», «յայտնի կերպով մարմնաւորուած կը տեսնենք Գրիգորի կարծեցեալ Վարդապետութեան ներքեւ»: «Վարդապետութեան մէջ Կորեան բամծին համաձայն մեւելոց յարութեան ճառը ոչ միայն մասնաւոր առանձնայատկութեամբ ընդարձակ տեղ մի գրաւած է առ Ագաթանգեղ(եայ), այլ աստ միայն ստուգիւ կը հրաւիրուին քերթողական խանդիւ եւ աղու բանիւք ծառերն եւ պտուղներ, բոյսք եւ ծաղիկք, մայրք եւ անտառք, մարգագետինք եւ անդք, ձմեռն եւ գարուն, պարք թռչնոց եւ բոլոր նիւթական համագոյք՝ համօրէն իրենց մեռելութեամբք եւ վերածնութեամբք, կու գան տալ մեզ ազդու վկայութիւն ապագայ յարութեան մերոյ, մեսրովբեան յափշտակիչ գրչի ներքեւ: Այնպէս որ սիրտ, միտք եւ լեզուական առանձնայատկութիւնք առ հասարակ կը

[1] Հ. Բ. Սարգիսեան, Ագաթանգեղոս եւ իւր բազմադարեան գաղտնիքն: Վենետիկ 1890. էջ 302—303:

թուին մատնանիշ ցուցնել մեզ զՍ. Մեսրոպը»:

Սարգիսեանի այս ճիշտ նկատողութիւնը որով Կորեան յիշած «Ճառք յաճախագոյնք» են կը նոյնացուին Ագաթանգեղեայ Պատմութեան մէջ ագուցուած ընդարձակ «Սրբոյն Գրիգորի վարդապետութեան» հետ (էջ 134—372), կ՚իւրացնեմ եւ անփոփոխ: Վասն Յարութեան ճառը կը սկսի Ագաթանգեղեայ քով էջ 328· «Եղեն փողք տապեալքն ժամատուք տիեզերաց... սպասել տեառնագալուստ փողոյն: Զի նովին ձայնիւք ելեալ հանեալ, ի ժամանակի անդ ծանուցեալ զնոյն ձայն փողոյն, ի մահահանգիստ քնոյն յարուցեալք ի գարունն... զի կարի նմանութիւնք եւ օրինակք են ամենայն ծառատունկք» յարութեան մեռելոց (հմմտ. 328—341):

Վարդապետութիւնս, որ իր ժամանակին անկախ գործ եղած է, Ագաթանգեղոսի Պատմութեան ներկայ խմբագրութիւնը կատարուելու ժամանակ, հաւանօրէն 440—450, բարեպաշտութեամբ ներս առնուած է Պատմութեան մէջ, երբ մուծուած են մանր յաւելուածներ, թերեւս եղած են նաեւ յապաւումներ: Տեղս թոյլ չի տար այս մասին աւելի տարածուիլ: Պ. Ֆետտէրի տեսութիւնը, թէ Կորիւնի ակնարկած «Ճառք յաճախագոյնք» Յաճախապատում ճառեանն ըլլայ, անընդունելի է:

2. Թուղթք: Կորիւն կը հաղորդէ թէ Մաշտոց վարդապետ «Բազում թուղթս խրա–

*տագիրս եւ զզուշացուցիչս ընդ ամենայն գա–ւառս առաքէր»* (44) :

*Այսպիսի թուղթեր չէ հասուցած մեզի ժամանակը : Տեսանք վերագոյն, էջ* 83, *թէ առ Ակակ եւ առ Պռոկղ թղթերը գրուած էին յանուն Սահակայ եւ Մաշտոցի . առայն տա–րակուսի Մեծ Հայրապետին անունով շարա–գրուած էր Մաշտոցէն :*

3 · Թարգմանութիւնք : *Խօսեցանք յըն–թացս կենսագրութեան, թէ Մաշտոց մեծ մասնակցութիւն բերած է Ս · Գրքի եւ Ս · Հարց գործերու թարգմանութեան մէջ : Գի–տենք յանուանէ, թէ իր գրչէն է Առակաց գրքի թարգմանութիւնը : Ուրիշ գործեր չենք կրնար յանուանէ մատնանիշ ընել :*

4 · Ճառք, խրատք եւ Աղօթք : *Ինձ ծա–նօթ են գրութիւններ, որոնք Մաշտոց կամ Մեսրոպ վարդապետի կ'ընծայուին ձեռա–գիրներու մէջ : Ասոնց հարազատութիւնը Մաշտոցի անուան շատ երկբայական է : Կը յիշեմ հոս ·*

1 · *«Երանելւոյն Մեսրոպայ Հայոց վար–դապետի (վասն Երաղոց եւ Դիւթից) · Բա–րիոք ողբայր ումն ի սրբոցն · Գիտացէք, աւէ, ով սիրելիք · · ·*

Վերջ՝ *զորոյ վտարանդութիւնն ընկա–լաւ» :*

= *Վիեննա, Մխիթ · Մատ ·* 579, 228*ա*—228*բ* (1783) · 581, 160*բ* (1663) : *Էջմիածին,* 209, 162*բ* (*ԺԷ*) · 783, 195*ա*—*բ* (1605) *եւ այլն :*

*Հայոց Եկեղեցւոյ Կանոնագրքին մէջ մուծուած այս հատուածը ոչ յօրինուածքի եւ ոչ ալ լեզուի կողմէ ունի դասական շրջանի նկարագիր. ուստի եւ անհարազատ է:*

2. *Սրբոյ հօրն Մաշտոցի խրատք ոգեշահք:*

*Նախ եւ առաջին. Մի ինչ պահեր յերկրաւորացս եւ ոչինչ այլ, սոսկ լեր յամենայն իրաց...:* Վերջ՝ *եւ ջնջեցին զանուն նորա ի պատարագէն յԵրուսաղէմ:*

= Վիեննա, Մխիթ. Մատ. 364, 253բ (1295. Ցուցակ, 817): Էջմ. 601, 195բ—201ա (1418):

*Քաղուածք մըն է Հարանց վարուց խրատներէն:*

3. *Աղօթքներ:*

ա. *Մեսրոպայ վարդապետի ասացեալ յաղագս Զղջման եւ Արտասուաց:*

*Ով, որ անեղդ ես եւ անստեղծ...*

= Էջմիածին, 11, 138բ (1736): 596, 74ա (ԺԴ.): 639, 92բ (1409): 1720, 109ա եւ 333ա (ԺԷ): Երեւան, Պետ. Թանգ. 653, 49բ: Մոսկուա, Լազարեան ճեմ. 45, 78բ—80: Վենետիկ, Մխիթ. Մատ. 240, 77բ (Ցուցակ, 587): Հրատարակուած՝ Համառօտ գիրք աղօթից, Կ. Պոլիս 1721, էջ 220—224: Յանուն Յովհ. Մանդակունւոյ, ճառք, Վենետիկ 1860, էջ 184—186:

բ. *Մեսրոպայ վարդապետի ասացեալ (ի Ս. Աստուածածինն):*

*Բարեբանեալ եւ փառաւորեալ ամենա-*

սուրբ կոյս Մարիամ Աստուածածին, անկանիմ առաջի քո․․․։

= Էջմ. 11, 63ա (1736)։

Գ. Աղօթք առ սուրբ Աստուածածինն, որ ասացեալ է Մեսրոպայ վարդապետին Հայոց։

Մարիամ Աստուածածին, մայր լուսոյ․․․

= Վիեննա, Մխիթ. Մատ. Էջմ. 11, 127բ (1736)։

Դ. Աղօթք Մեսրոպայ վարդապետին վասն ճանապարհի։

Առաջնորդ կենաց․․․

= Էջմ. 11, 137բ։ Հրտ.՝ Համառօտ գիրք աղօթից. Կ. Պոլիս, 1721, էջ 94։

Ե. Մեսրոպայ վարդապետի ասացեալ աղօթք երեք ժամուց աւուրն։

1. Առ Հոգին սուրբ։ — Հոգի Աստուծոյ, Հոգի Քրիստոսի Տեառն մերոյ․․․

2. Աղօթք Զ. ժամու աւուրն։ — Թագաւոր հզօր․․․

3. Աղօթք Թ. ժամու աւուրն։ — Բարերար․․․

4. Աղօթք յերեկոյին ժամուն։ — Աստուած անեղ․․․

= Էջմ. 553, 288ա—296բ (ԺԷ)։ 1720, 289ա (ԺԷ)։ Տիւբինգէն, Համալսարանի Մատ. 50, 286ա (ԺԸ)։

Այս 1—3 գրութեանց համար իբրեւ հեղինակ նկատի կրնան առնուիլ նաեւ Մաշտոց կաթողիկոս (898—899), եւ Մեսրոպ Վ. Վայոցձորեցի (Ժ. դար)։

Հին ազգերը, որոնք օժտուած էին գրականութեամբ, աստուածներու կը վերագրէին իրենց նշանագիրներու գիւտը: Հայոց, Վրաց եւ Աղուանից Մաշտոց պարգեւած էր ազգային նշանագիրները· անոնց գրականութեան հաստահիմն հիմերը իր ձեռքովը էր դրած եւ այսպէս այդ անգրագէտ, բարբարոս ժողովուրդներն իր թեւերու վրայ բարձած՝ գրագէտ, քաղաքակիրթ ազգերու թուին մէջ խառնած: Եթէ պէտի չուզեմ զինքը անմահ դից պարին պարակից ընել, բայց կը ստիպեն զիս անոր անմահ գործերը հռչականուն աշխարհակալներու գահակից համբառնել զինքը, որ մտաւոր զէնքով նուաճեց ժողովուրդներ մշակոյթի քաղցր լուծին տակ, լուծ մը, զոր կրեցին անոնք դարեր շարունակ առանց հեծեծանքի, եւ ունի այժմ իրեն նոր սերունդները երախտագէտ: Իբրեւ այսպիսի հանդիսացաւ Մաշտոց դարակազմիկ անձնաւորութիւն մը, որուն համբաւը հռչակուած «ի հիւսիսական կողմանց» ալիքներով հասաւ մինչեւ կայսերանիստ մայրաքաղաք եւ թագակապ ծիրանազգեստ ազդուականք ցանկացան անոր տեսութեան:

Հելլենական դպրութեամբ զարգացած, զինուորական մարզանքով ուռճացած, քրիստոսակիր գունդին մէջ պարանցիկ՝ երեւցաւ Մաշտոց գործունէութեան լայնանիստ ասպարէզի վրայ իբրեւ հոյակապ անձնաւորութիւն մը օժտուած ուժեղ, հաստարմատ նկարագրով, կորովարիր տեսութեամբ եւ

մեղմախառն բնաւորութեամբ: Ի սկզբան ուզեց զինուորական ծառայութեան մէջ ի սպաս դնել իւր ոյժերը հայրենիքին. բայց զգաց թէ ոչ հայրենի, այլ սատանականին դրօշին տակ կը գտնուի, եւ թօթափելով անձէն զէնքերն եւ համազգեստը՝ փարեցաւ պարծանաց խաչին եւ խառնուեցաւ խաչակիր գունդին մէջ՝ Քրիստոսի դրօշին տակ ծառայելու ազգին հոգեւոր եւ մտաւոր բարգաւաճման: Սահակ մեծ ողջունեց անոր մէջ աւետարանի առաքեալը: Առած հետը գործակից օգնականներ մեկնեցաւ ոչ մայրաքաղաքներ, հռետորաբան ճառերով դափնիներ խլելու, այլ անցաւ գնաց երկրին հիւսիս արեւմտեան ծայրագաւառները, ուր աւետարանական վարդապետութեան հեշտական լոյսին աղօտ ճառագայթներն միայն հասած էին, քարոզելու հոն վայրենամիտ, գազանաբարոյ մարդկան ի լրութեան աւետարանի կենարար վարդապետութիւնը եւ զանոնք փրկութեան հաղորդ եւ քաղաքակրթութեան ընտանի կացուցանելու: Ի խնդիր չէր անցաւոր դրուատիքի, բայց խարազնազգեստ, անինչք եւ անստացուածք եւ ազգի ազգի վշտակցութեամբ մաշած առաքեալին ընդ առաջ դիմեց այն գազանաբարոյ խուժադուժը, մոգուեցաւ անոր քաղցրուսոյց վարդապետութենէն եւ կամովին նուաճուեցաւ անոր լուծին տակ. «զամենայն ոգի քրիստոսազգեստս եւ հոգեզգենս վառէր» աւետարանական արուեստով, «դայեկաբար սնուցա-

նէր» զանոնք եւ «ի հնազանդութիւն Քրիստոսի մատուցանէր»: Այն վայրենամիտներէն հեզահամբոյր խաչակիրներ կը կազմէր· «բազում եւ անհամար գունդս վանականաց ի չէնս եւ յանչէնս» հաստատէր եւ անոնցմէ «երգօք հոգեւորօք» Աստուծոյ փառաբանիչներ կը յօրինէր, «յորդորական վարդապետութեամբ», «ի կրթութիւն քաղցրուսոյց ընթերցուածոց հոգեպատում գրոց» կը մարզէր եւ անձնուրացութեամբ «ի նպատակն քրիստոսադիր կոչին» յառաջադէմ նկրտիլ կը խրախուսէր, ամէն հրահանգներու մէջ ինքզինքը օրինակ ընծայելով: Կը սիրէր միանձնական անապատական կեանքը, անձնատուր ըլլալու աստուածահաճոյ աղօթից եւ վշտակրութեանց, բայց միշտ անձնազոհ պատրաստական, երբ հասարակաց բարիքը իր աջակցութեան կարօտէր: «Եւ զայս առնէր զամենայն ժամանակս իւր վասն անձին եւ վասն աշխարհի»:

Հոգելից եւ հոգեկիր մարդը կը կրէր իր մէջ նաեւ մարդասէր եւ բարեգործ սիրտը· «բազում սգաւորաց եւ կարճամտելոց մխիթարական վարդապետութեամբն զակնկալութիւն յուսոյն նօթձեաց»· «բազում բանդականաց եւ կալանաւորաց եւ տագնապելոց ի բռնաւորաց՝ թողութիւն արարեալ կորզեաց զնոսա ահաւոր զօրութեամբն Քրիստոսի»:

Անխոնջ էր, յարատեւութեամբ նկրտող դէպի նպատակն, կուրծք տալով ամէն ընդդիմակ պատահարներու· չէր գիտէր յետս

կամիլ նպատակակէտէն։ Տեսաւ անհրաժեշտ պէտքը գրագիտութեամբ ձեռնտու ըլլալ անուսումն ժողովուրդին մտաւոր զարգացման. չինեց ծրագիր, հետամուտ եղաւ իրագործման եւ դադար չտուաւ իր անձին մինչեւ որ յաջողեցաւ։ Նշանագիրները դրուեցան սեղանի վրայ. բայց պէտք էր զանոնք մերձեցնել ժողովուրդին. անձամբ յանձն առաւ վարդապետն ըլլալ մատաղօրեայ, անկիրթ մանկաւոյն. «դայեկարար սնոյց» զանոնք. եւ երեւան բերաւ հոս անսպառ համբերութեան հետ քաջ դաստիարակի յատկութիւնները։ Իր եռանդը գկայ չառաւ միջնաշխարհի մէջ. երբ հասուցան հոն ուսուցիչներ, երբ արմատ ձգեց ուսման սէրը, փութաց այնուհետեւ դէպի գաւառներ, նաեւ հայրենի սահմաններէն դուրս՝ Աղուանից աշխարհը, Վրաստան, նաեւ Հայաստանի Հռոմէական բաժինը. «եւ այնպէս զամենայն կողմանս Հայոց, Վրաց եւ Աղուանից զամենայն ժամանակս կենաց իւրոց՝ զամառն եւ զձմեռն, զտիւ եւ զգիշեր անվեհեր եւ առանց յապաղելոյ < գնորդագիր վարդապետութիւնն ուսուցանէր. եւ իւրովի իսկ ճանապարհորդեալ> աւետարանական եւ ողջապատում գնացիւքն առաջի թագաւորաց եւ իշխանաց եւ ամենայն հեթանոսաց եւ անընդդիմակաց ի հակառակորդաց զամենափրկչին անուն կրեաց յանձին» (35)։

Մեղմախառն էր բնաւորութեամբ, քաղցրուսոյց վարդապետութեամբ, ազնուական գնացքով եւ յանկուցիչ վարմունքով. այս

յատկութիւններով էր, որ կրցաւ նուաճել նախապաշարումներով տոգորուած իշխաններն ու ռամիկները: Ուր սակայն անզօր էր մեղմական յորդորն, հոն գիտէր բարձրացնել ձայնը սուրբ նախանձով, սաստել, նաեւ կոչկոծել: Այսպէս ընթացաւ ժանտագործ Բորբորիտեանց հետ:

Մաշտոց, որ կոչման ձայնին հետեւելով նուիրուած էր բոլորանուէր առաքելական եւ ուսուցչական գործունէութեան, կը սիրէր, իբրեւ հոգական պահանջք, նաեւ ուսումը: Ս. Գիրքը եւ սուրբ հարց գործերը չհանեց երբեք ձեռքէ: «Զամենայն ժամանակս իւրեանց յընթերցուածս գրոց ծախէին հարքն (Սահակ եւ Մաշտոց), զտիւ եւ զգիշեր եւ նովիմբ ծաղկեալք եւ չահաւետեալք՝ օրինակ բարեաց ուսումնասէր առընթերակայից լինէին» (34): Ոչ միայն կը դեգերէր յուսմունս, այլ նաեւ սիրելի էր իրեն պատաղիլ մատենագրութեամբ: Ինքն էր եղած ռահվիրայն հայ մատենագրութեան: Իր ջանքն էր յոյն եւ ասորի հարց գրականութիւնը հայաբարբառ մատչելի ընել հայ ժողովուրդին եւ առաջնորդել զանոնք քրիստոնէական աշխարհահայեցութեան բազմադիմի բաւիղներէն ներս: Առ այս հիմը Ս. Գրքի թարգմանութեամբ պիտի դրուէր: Թարգմանութիւններ, որոնք միաժամանակ մինչեւ այն ժամանակ գրականութեան անծանօթ ժողովուրդին առաջին գրական գործերը պիտի ըլլային: Մաշտոց անդէն ի սկզբան որոշեց թարգմանիչները ուսման բովէն ան–

ցընել· անոնք պիտի ծանօթանային ոչ միայն յոյն եւ ասորի լեզուներուն, այլ եւ քրիստոնէական վարդապետութեան, որպէս զի թարգմանէին հասունութեամբ նիւթին՝ ազատ, հայ ժողովրդեան ըմբռնելի եւ վայելուչ հայերէն լեզուով։ Կը զարմանանք մենք այժմ ի տես այս թարգմանութեանց, ոչ միայն թարգմանութեան արուեստի գերազանցութեան, հայերէն լեզուի վսեմութեան, այլ եւ թարգմանուած նիւթերու խորիմաց ըմբռնման վրայ։ Դասական գրականութեան երկնատուր շնորհքով առլցուն՝ անոնց մէջ աստուածախօս պատգամներն եւ հոգեկիր հայրերը կարծես իրրեւ սկզբնագրի մէջ հայաբարբառ հայերէնաշունչ կը խօսին։

Առաջին գիրքը, որ հայերէն գրերով եւ լեզուով գրի առնուեցաւ, Սողոմոնի Առակներն են· Մաշտոցն եղաւ անոր թարգմանիչը· թէպէտ յանուանէ չենք գիտեր այն բազմաթիւ թարգմանութեանց հեղինակները, բայց պիտի համարինք թէ շատ բան Մաշտոցի գրչէն հայացուած է։ Կորիւն, անոր կենսագիրը, կը յիշէ բազմաթիւ թղթեր, զորոնք գրած է Մաշտոց· անոնք անծանօթ են մեզի։ Բայց այն «Ճառք յաճախագոյնք, դիւրապատումք շնորհագիրք», զորոնք կը յիշէ Կորիւն, առանց տարակուսի «Գրիգորի վարդապետութիւնն» է, ուր մատենագիրը, որ սնած է ծծելով հիւթ հելլենական հարց երկերէ, իրրեւ ճշմարիտ վարդապետ եկեղեցւոյ աստուածաբանական խորիմաց հմտութեամբ, հեշտըն-

*կալ եւ դիւրահասոյց ոճով եւ բազմադիմի նմանութիւններով կը ջանայ տալ փրկագործութեան խորհրդոյն վարդապետութիւնը: Եթէ հոս զարմանք կ'առթէ մեզ մատենագրին մտաց թռիչքը, նիւթին ներհմտութիւնն եւ աստուածաշունչ գրոց անչափ ծանօթութիւնը, հիացումի կը մատնէ զմեզ իր արտայայտութեան ոճը, որ վսեմական է, բարձր եւ անհամար բարդաձեւերով ճոխ, միանգամայն հաւատարիմ լեզուի դասական նկարագրին՝ հեշտընկալ եւ շնորհագիր: Առաջին եւ վերջին մատեանը հայ գրականութեան մէջ, աննման կատարելութեամբ նիւթին վերլուծման եւ լեզուին գեղեցկութեան. վասն զի չունեցաւ հայ մատենագրութիւնը երկրորդ Մաշտոց մը: Մաշտոց եւ Սահակ ծնան աշակերտներ. «որոց կանոն եւ օրինակ զիւրեանց անձանց արգասիս եղեալ եւ պատուիրեալ կալ ի նմին կանոնի» (Կոր. 23): Որոնք հետեւեցան այս կանոնին, եղան իրենց օրինակին նմանող. որոնք ընթացան ինքնուրոյն ճանապարհ, հեռացան կանոնէն եւ ձախողեցան:*

---

## 6· ՄԱՇՏՈՑԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐ

### 1· ԵԴԵՍԻՈՅ ԴՊՐՈՑԸ

*Նշանագիրներու գիւտը բաւական պիտի չըլլար ստեղծելու հայկական գրականութիւնը, եթէ չենթադրենք երկրին մէջ առյն պատրաստական հող: Նորագիւտ նշանագիրներով ազգային գրականութեան հիմը դնելու եւ զայն առաջին թափով կերպաձեւելու համար անհրաժեշտ էր թիւ մը գրագէտ անձանց, որոնք դաստիարակուած ըլլային յոյն կամ ասորի դպրութեամբ, մղղուած արտայայտելու իրենց մտքերը գրչով:*

*Գործին պարագլուխները՝ Մաշտոց եւ Սահակ տեղեակ էին յոյն եւ ասորի դրականութեան: Հաւանօրէն նաեւ Մաշտոցի երիցագոյն աշակերտները, որոնք նախ քան գրի գիւտը հաւաքուած էին անոր շուրջը եւ կոչուած էին աւետարանական քարոզութեամբ գործել ժողովրդեան մէջ, նոյնպէս ունեալ անձնաւորութիւններ էին:*

*Կ՚ըսուի, թէ Ներսէս Մեծ «կարգէր եւ ի տեղիս տեղիս դպրոցս* յունարէն եւ ասորե–

բէն[1] *յամենայն գաւառս Հայոց»* (*Փաւստ.* Դ. 4, էջ 65, *Պատկ.*)։ *Որչափ ալ հաւանական համարինք, թէ կային երկրին մէջ յունարէն եւ ասորերէն լեզուներու համար բացուած դպրոցներ, Դ. դարու երկրորդ կէսին, բայց արդիւնքը մեծ բան մը եղած ըլլալու չէր, ինչպէս նոյն պատմագիրը ուրիշ առթիւ ակնարկած է. «բայց միայն սակաւ ինչ զհանգամանս գիտէին հելլէն կամ ասորի դպրութեանց, որք էին հասու ինչ այնմ փոքր ի շատէ»* (Գ. 13, էջ 29)։

*Թէպէտ կային երկրին մէջ յոյն եւ ասորի դպրութեանց համար տարրական դպրոցներ, բայց եւ այնպէս չենք կրնար ժխտել թէ առաւել զարգանալու համար յիշեալ լեզուներու մէջ, խումբ մը աշակերտաց չէր դեգերեր դրացի քրիստոնեայ աշխարհներու մէջ։ Այս տեսակէտէ ուղիղ խորհրդածութիւն է այն, զոր Կեղծ-Ղազար կը գրէր (Ը. դարուն). «Քանզի հոգացեալ յարաժամ տրամէր երանելլի այրն Մաշտոց՝ տեսանելով զմեծ ջան եւ զառաւելապէս ծախս մանկանցն Հայաստան աշխարհիս. որք բազում թոշակօք եւ հեռագնաց ճանապարհօք եւ բազմաժամանակեայ դեգերմամբ մաշէին զաւուրս իւրեանց ի դպրոցս ասորի գիտութեան. քան-*

[1] *Ինձ կը թուի թէ ընդգծեալ բառերը յետամուտ են Փաւստոսի մէջ, ուշ ժամանակի գրչէ մը մուծուած, իբրեւ* glose, *ուշադիր ընել տալու համար, թէ յիշեալ դպրոցները յունարէն եւ ասորերէն լեզուներու համար էին, քանի որ Ներսէսի օրով հայ նշանագիրներ չկային։*

զի պաշտօն եկեղեցւոյ եւ կարգացմունք գրոց սուրբ ուսմամբ վարէին ի վանորայս եւ յեկեղեցիս Հայաստան ժողովրդոյս. յորմէ ոչինչ էին կարող լսել եւ օգտել ժողովուրդքն այսպիսի մեծ աշխարհի. եւ լինէր պաշտօնէիցն աշխատութիւն եւ ժողովրդոցն անշահութիւն յանլրութենէ լեզուին ասորւոյ» (13) եւ քիչ յետոյ. «սուրբ մեծաջան եւ անօգուտ ուսմամբքն աշխատեալք յոխորտ. յորոց բազմութիւնք ժողովրդոց ունայնք եւ թափուրք հրաժարեալք գնային յեկեղեցւոյն. եւ ուսուցիչքն հանելով յոգւոց եւ հառաչելով՝ զգջանային զանուրի ջանն իւրեանց, յորում ոչ զոք յուսումնասէր ժողովելոցն տեսանէին օգտեալ ի վարդապետութենէ հոգեւոր խրատուցն[2]» (16) :

Այսպէս նաեւ Մաշտոց, երբ ի խնդիր հայկական նշանագիրներու Միջագետք կ'իջնար, «հրամանաւ արքային Վրամշապհոյ», այսինքն արքունի թոշակով, հետը կը տանէր «դաս մի մանկտւոյ», զորոնք ապա «ընդ երկուս բաժանեալ՝ զոմանս յասորի դպրու-

[2] Հաւանօրէն աչքի առաջ ունեցած է Կեղծ-Ղազար Փաւստոսի տեղիքս (Գ. 13, էջ 29). «Իսկ որք արտաքոյ քան զգիտութիւն արուեստին (յոյն եւ ասորի դպրութեանց) էին այլ խառնաղանճ բազմութիւն մարդկան ժողովրդոց նախարարացն եւ կամ շինականութեանն, եթէ զցայգ եւ զցերեկ նստեալ վարդապետացն եւ ըստ նմանութեան ամպոցն իբրեւ զյորդահեղեղ ինչ անձրեւաց սաստկութիւն զվարդապետութիւնն ի վերայ հոսէին, ոչ ոք ի նոցանէն եւ ոչ մի ոչ եւ ոչ մի բան եւ ոչ կէս բանի եւ ոչ դոյզն յիշատակ ինչ եւ ոչ նշմարանս ինչ ոչ որ լսէինն եւ ոչ կարէին ինչ ունել ի մտի»։

*թիւնն կարդէր (յԵդեսիա) եւ զոմանս ի յունական դպրութիւնն» (յԱմիդ. Կոր. 18):*

*Ամդայ դպրոցի մասին շատ աղքատ են մեր տեղեկութիւնները: Հաւանօրէն հոս ըրաւ ապա իր ուսման ընթացքը նաեւ Ղ. Փարպեցի, որ երբ հայ արեղեանէն հալածուեցաւ՝ միւսանգամ Ամիդ փնտռեց իր ապաստանը: Կը յիշուին հայ աշակերտներ, սկսեալ Դ. դարու երկրորդ քառորդէն, յունական կարեւոր կենդրոններու մէջ, ի մէջ այլոց Աթէնքի Համալսարանը յաճախողներ:*

*Անշուշտ նաեւ Ասորիք, որուն գլխաւոր կենդրոնն էր Եդեսիա, առաջին անգամ չէր, որ հայ ուսանողներ կը հասնէին: Ինչպէս Ս. Եփիփան (Հերձուածոց, 66) կը գրէր, ի Պարսս շատեր կային որոնք, կից Պարսկերէնի կը գործածէին նաեւ ասորի լեզուն եւ գիրը. մասնաւորապէս Պարսիկ քրիստոնեայք: Նոյնը կրնանք ըսել նաեւ Հայաստանի համար, որուն հարաւակողման ծայրագաւառներու մէջ նաեւ ասորախօս ժողովուրդներ կ'ապրէին: Կ'ըսուի ի վարս Աղեքսանդրի*[3]*, թէ յԵդեսիա «ի հին ժամանակաց հետէ չինեալ էին յաստուածեղէն ազդմանէ դպրոցք ասորի դպրութեան, յօգուտ եւ ի շի-*

[3] Vie d'Alexandre l'Acémète, texte grec et traduction latine, ed. E. de Stoop, Patrologia orientalis, t. VI, p. 643—701. *Հմմտ. եւ* G. Bickell, Ausgewählte Schriften der syrischen Kirchenväter Aphraates, Rabulas und Isaak von Ninive. Kempten 1874, S. 223—224. *եւ Հ. Յ. Տաշեան, Վարդապետութիւն Առաքելոց, էջ* 195—196:

*նուած մերձաւոր աշխարհաց. քանզի իշխանք եւ այլ մեծատունք սովոր էին զմանկունս իւրեանց անդր տաքել յուսումն»: Վարքագիրը խօսելով նոյն քաղաքի Ռաբբուլա եպիսկոպոսի մասին կ՚աւելցնէ, թէ անիկա «նաւահանգիստ ստուածեղէն գիտութեանց էր ոչ միայն վասն Ասորւոց, Հայոց եւ Պարսից, այլ եւ վասն համօրէն տիեզերաց»: Խօսքը հաւանօրէն միայն Ռաբբուլայի 432ի Հայոց հանդէպ ցոյց տուած հոգացողութիւնը չ՚ակնարկեր. Եդեսիոյ եպիսկոպոսները, որոնք իրենց հսկողութեան տակ ունէին Եդեսիոյ դպրոցը, հաւատարապէս խնամք կը տանէին տեղացի եւ դրսեցի ուսանողներու վրայ, որոնց թուին մէջ կային նաեւ Հայեր:*

*449ին, երբ Եդեսացիք իրենց եպիսկոպոսին՝ Իբասի մասին ամբաստանագիր մը ներկայացուցին Եփեսոսի Աւազակաց ժողովին, համամիտ էին անոնց ոչ միայն Աստերիոս, Պարոյինոս, Միկադղոս եւ այլ երիցունք, այլ եւ* Սմբատ (ܣܡܒܛ), *Սաբբա եւ այլ սարկաւագունք. իսկ ամբաստանագիրը ստորագրած էին «բոլոր կղերականք եւ վարդապետք. վանականք եւ ուխտի մանկունք, պատուաւորք, խորհրդականք եւ Հոռոմք,* Դպրոցf Հայոց, Պարսից եւ Ասորւոց [4]»:

---

[4] Akten der ephesinischen Synode vom Jahre 449: Syrisch mit G. Hoffmanns deutscher Übersetzung, herausgegeben von J. Flemming, Berlin 1917 (Abh. d. Kgl. Gesellschaft der Wissenschaften zu Göttingen, N. F. 15, 1), SS. 23, 25.

«Պարսից դպրոցը» դար մը չարունակ պահպանեց իր գոյութիւնը. «Եդեսիա քաղաքի մէջ կար, կ'ըսէ Թէոդոս ընթերցող [5], Պարսիկ ազգի (այսինքն Պարսից քրիստոնեաներու) քրիստոնէական դպրոցը, որուն գլուխն անցան Նեստորի հերետիկոսութեան հետեւողները»: Սիմէոն Բեթ–Արշամացի [6] յանուանէ կը թուէ այդ Դպրոցի գլխաւորները սկսեալ Իբասէն մինչեւ 489, երբ Զենոն կայսեր հրամանով փակուեցաւ. եւ ապա Մծբինի մէջ չարունակուեցաւ:

Այս համբաւուած «Պարսից Դպրոցի» գլուխն էր, հաւանօրէն արդէն 406էն ի վեր, Իբաս (Հիբա) երէց: Եւ Մաշտոց երբ հասաւ Եդեսիա իր «մանկտւով», առանց տարակուսի զետեղեց զանոնք «Պարսից Դպրոցին» մէջ, ուսանելու համար ասորի լեզուն եւ գրականութիւնը: Ասով հայ մանկտին, ինչպէս կը գրէ P. Peeters, «ենթարկուեցաւ ինքնաբերաբար Իբասի մտաւոր իրաւասութեան»: «Իբաս չի յիշուիր հայ աղբիւրներու մէջ, կ'ըսէ Peeters, եւ հարկ էր որ չյիշուէր. եւ եթէ նոյն իսկ յիշէր զանիկա Կորիւն, յետագային անխուսափելիօրէն պիտի ջնջուէր այդ նեստորականին յիշատակը Կորեան բնագրէն, այն վայրկենէն սկսեալ, երբ յարեցաւ Հայոց եկեղեցին միաբնակութեան»:

Բայց կը թուի ինձ, թէ Հիբայի անունը

[5] Migne, Patrologia graeca, 86, 1, 165—228.
[6] Assemani, Bibliotheca orientalis, I, 351.

բոլորովին ալ հետակորոյս, ընաջինջ չէ եղած Կորեան բնագրէն:

Նկատի առնելով այն պարագան, որ 406ին, երբ առաջին անգամ ժողով կազմուեցաւ ի Վաղարշապատ, լրջօրէն մտածելու հայ նշանագիրներու մասին, Վռամշապուհ յիշեց, թէ ինքը տեսած է Դանիէլ Ասորի եպիսկոպոսի քով հայկական նշանագիրներ, եւ զայն ստանալու համար դիմում եղաւ Հաբել Երէցի մը, որ Դանիէլ եպիսկոպոսի մերձաւոր մը կը ներկայացուի, կը խորհիմ, թէ մի գուցէ այս Հաբել աղաւաղութիւնն ըլլայ Հիբայի, գիտմամբ կամ պատահականութեամբ:

Հիբա առանց տարակուսի նպաստամատոյց եղաւ իր խորհուրդներով Մաշտոցի ի մասին հայ նշանագիրներու յերիւրման:

Իբր 430ին, երբ Հիբա Եդեսիոյ Պարսից Դպրոցին պարծանքն էր, ուղարկուեցան հոն Յովսէփ Պաղնացի եւ Եզնիկ Կողբացի ասորի հարց գործերը հայացնելու: Այս անգամ ալ առանց տարակուսի անոնց հիւրընկալն եղաւ Հիբա եւ իր հմտութեամբ խորհրդատու եղաւ թարգմանիչներուն:

Եդեսիոյ Դպրոցը իր համբաւը մեծապէս տուժեց 432էն ետքը: Հիբա, որ ժամանակակիցներէն «թարգմանիչ», այս ինքն մեկնող եւ աստուածաբան կը հռչակուէր, Եդեսիոյ Կղերին խորհող միտքն էր, գլուխն եւ պարծանքը Պարսից Դպրոցին: 430ին, Ռաբբուլա եպիսկոպոսին օրով, կը գտնուէր

*իր հասակի եւ տաղանդի կատարեալ հասունութեան մէջ։ Իր վարդապետական ձգտումները հրապարակի վրայ էին. կը հետեւէր իր ուսմանց մէջ անտիոքեան մեկնութեան բարձրագոյն պատգամին՝ Թէոդորոս Մոպսուեստացւոյ։ Այս ուղղութիւնը յուզմանց պատճառ եղաւ 432էն ետքը, երբ Ռաբբուլա Թէոդորոս Մոպսուեստացւոյ տեսութեանց ոսոխ հրապարակ ելաւ, եւ անոր գործերը բնաջնջել հրամայեց։ Հիբա եւ իր աշակերտութիւնը բողոքեցին Ռաբբուլայի այս ընթացքին դէմ։ Այս առիթ տուաւ Եղեսիոյ եպիսկոպոսին թշնամանալու Հիբայի հետ։ Բայց եւ այնպէս Հիբա Ռաբբուլայի մահէն ետքը, 435 աշնան, ընտրուեցաւ Եղեսիոյ Կղերէն կողմէն յաջորդ աթոռին։ Միաբնեայք շարունակեցին դատապարտել զինքը իբրեւ Նեստորական. 449ին զրկուեցաւ աթոռէն. բայց 451ին Քաղկեդոնի ժողովը վերահաստատեց զինքը աթոռին վրայ։ Վախճանեցաւ 457, Հոկտ. 28ին։*

*Իր մահէն ետքը Պարսից Դպրոցը Նեստորական հերձուածին պաշտպան կանգնեցաւ։ Այս պատճառ եղաւ, որ Զենոն ի սպառ փակէ Դպրոցը։ Գլխաւորք փոխադրուեցան Մծբին, Պարսկական հողի վրայ, եւ այն տեղ շարունակեցին իրենց գործունէութիւնը։*

## 2. ՄԱՇՏՈՑԻ ԵՒ ՍԱՀԱԿԱՅ ԱՇԱԿԵՐՏՔ

*Նշանագիրներու գիւտով Մաշտոց, Սահակ եւ Վռամշապուհ դրին հայ գրականու–*

թեան հիմը: Յառաջ եկաւ գրական շարժում մը Հայաստանի մէջ, որ անզուգելի էր: Շարժումը առած էր իր ընթացքը. նուաճեց կենդրոնը եւ տարածուեցաւ գաւառներու մէջ:

Արքունատուր թոշակով հաւաքուեցան մատաղ մանուկներ, բացուեցան դպրոցներ ամենուրեք: Մաշտոց ինքնին առաջին ուսուցիչն եղաւ այդ նորաբոյս դպրոցներու: Երկու տարի բաւական եղաւ առաջին սերունդին ուսուցանելու հայկական նորագիւտ նշանագիրները, կարենալու կարդալ եւ օրինակել եւ արտայայտել իրենց մտքերը հայագիր: Այնուհետեւ ցրուեցան դաստիարակուած ուսուցիչները գաւառներ, եւ ամէն կողմէն «յորդեալք եւ դրդեալք հասանէին» ուսումնասէր մանկունք «ի բացեալ աղբիւրն գիտութեանն Աստուծոյ»:

Աշակերտութիւնը, որ հաւաքուած էր Մաշտոցի շուրջը, փարեցաւ սիրով գրականութեան եւ անխոնջ ճիգով հետամուտ եղաւ գիտութեան ծարաւի ժողովրդեան բանալ յորդահոս աղբիւրը յոյն եւ ասորի քրիստոնեայ գրականութեան, թարգմանութիւններով: Արդիւնքը եղաւ ճոխ գրականութիւն մը, հայերէնախօս, նոյն իսկ դասական նկարագրով պճնուած: Եւ նորակերտ գրականութիւնը մատչելի դարձաւ քաղքենւոյն եւ շինականին:

Նոր գրականութեան առաջին աշակերտները, որոնք զարգացան Մաշտոցի ուսուցչութեան տակ, ծնան իրենց կարգին աշա-

կերտներ: Ուսուցիչք եւ աշակերտք գործեցին ձեռն ի ձեռն, նուիրուած ազգին մտաւոր լուսաւորութեան:

Թէպէտ դժուար է այժմ թուով եւ համարով տալ աշակերտաց դասերու որքանութիւնը, բայց ունինք կռուան զանազանելու երեք կարեւոր խումբեր.

Ա. դաս. Երիցագոյն աշակերտք Մաշտոցի, որոնք արդէն գրի գիւտէն յառաջ հաւաքուած էին անոր շուրջը:

Բ. դաս. Երէց աշակերտներ, որոնք իբրեւ «դաս մի մանկտւոյ» ընկերացան Մաշտոցի, տարբեր ժամանակով յաճախելու Ամդայ եւ Եդեսիոյ Դպրոցները ծանօթանալու յոյն եւ ասորի դպրութեանց, թերեւս նաեւ կատարելագործելու իրենց ծանօթութիւնը այդ լեզուներու:

Գ. դաս. Կրտսեր աշակերտներ, այսինքն այն «մատաղ մանկունք», որոնք նշանագիրներու գիւտէն անմիջապէս յետոյ հաւաքուեցան ի Վաղարշապատ նոր բացուած դպրոցներու մէջ:

Կրնանք զանազանել աւելի դասեր, եթէ նկատի առնենք Գողթն, Սիւնիք, Աղուանք, Հռոմէական Հայաստան եւ այլուր բացուած Դպրոցներու աշակերտները:

Գրական շարժման առաջին մղում տուողն էր Մաշտոց. առաջին աշակերտք երիցագոյն դասէն Մաշտոցի ընկերացող «օգնականք», այն է յանուանէ Յովհաննէս յԵկեղեաց եւ Յովսէփ Պաղնացի: Ապա կու գան այն «մանկը–

տին», որոնք իջած էին Միջագետք, ուստի Երէց աշակերտք: Իսկ Վաղարշապատի մէջ առաջին աշակերտ կը հանդիսանայ Սահակ Հայրապետ, որ յետոյ գրական շարժման ղեկը իր ձեռքը պիտի առնէր:

Պիտի փորձեմ այստեղ կազմել անուանացանկը Մաշտոցի եւ Սահակի աշակերտներուն:

### Ա. Դաս. Երիցագոյն աշակերտք:

Կը պատմէ Կորիւն, թէ Մաշտոց երբ նուիրուեցաւ եկեղեցական կոչման, հաւաքեց իր շուրջը համախոհ, համակամ, հոգեկիր անձինք, ապրեցաւ անոնց հետ ժամանակ մը ներանձնական–վանական կեանք եւ ապա առած զանոնք հետը՝ ելաւ Գողթն քարոզելու: Ասոնք կը կոչուին «աշակերտք» Մաշտոցի (8, 19), «հաւատացեալք[1]», «օգնականք» (8, 19), եւ «հաւասարք» (18)[2]: Ասոնք հաւանօրէն գրագէտներ էին՝ ծանօթ յոյն կամ ասորի դպրութեան:

Այս դասէն յանուանէ կը յիշուին.

1. Յովհաննէս յԵկեղեաց գաւառէ:
2. Յովսէփ ի Պաղանական տանէ:

Մաշտոց երբ Միջագետք կ'իջնար (406ին) հայերէն լեզուի համար նշանագիրներ հնարելու, իրեն հետ էին Յովհաննէս եւ Յով–

---

[1] Այն է միանձունք. ասկէ հաւատաւոր միանձնուհի, կուսան:

[2] Կարդա՞լ «հաւատացեալք»:

ուէփ իբրեւ օգնականներ: Ի Սամոսատ, երբ Հռուփինոս կը գեղաձեւէր հայերէն նշանագիրները, անոնք առաջինն եղան, որ սորվեցան նորագիւտ նշանագիրներուն ոյժն եւ գրչութեան արուեստը: Վարդապետին հետ վերադարձան Հայաստան եւ եղան հայ դպրութեան եւ գրչութեան արուեստի նախընթաց ուսուցիչները: Յովհաննէս ծանօթ էր հաւանօրէն յունարէնի եւ Յովսէփ՝ ասորերէնի:

Յովսէփ 430ին ուղարկուեցաւ Եզնիկի հետ Եդեսիա, ասորի հայրերու գործերը թարգմանելու: Անկէ անցան Կ. Պոլիս յոյն հայրերու գործերու թարգմանութեամբ պարապելու (Կոր. 32—33):

Մաշտոց վարդապետի մահէն (439) ետքը Յոհան կարգուեցաւ «վերակացու ժողովոյն» աշակերտաց: Իր գովութիւնն կ'ընէ Կորիւն (46—47). «այր խսկ սուրբ, վարդապետասէր եւ ճշմարտապատում». եւ կ'աւելցնէ թէ սա «բազում եւ ազգի ազգի փորձութեանց եւ կապանաւոր վշտաց, մենամարտիկ երկպատական բռնութեանն ի Տիզբոն քաղաքի վասն Քրիստոսի յաղթութեամբ տարեալ համբերեաց. վասն որոյ եւ զխոստովանողական անուն ժառանգեաց. < եւ ապա միւսանգամ > ի նոյն վերակացութիւն դառնայր յերկիրն Հայոց»:

Շահապիվանի ժողովոյն (444) ներկայ հարց թուին մէջ մին «ի գլխաւոր երիցանց» էր Յոհան (Հայապատում, էջ 159):

3. Տիրայր[3] *Խորձենական գաւառէն* (*Կոր*. 24)։

4. Մուշէ *ի նահանգէն Տարօնոյ* (*Կոր*. 24). *ասոնք իբրեւ օգնականներ Մաշտոցի ընկերացան իրեն իր 410ին աւետարանելու ի Գողթն*։ *Մուշէ կարող է նոյն ըլլալ այն «Մուշէ մանուկ ձեռնասունի» հետ, որ Գինդ ճգնաւորի կրտսեր աշակերտներու թուին մէջ էր* (*Փաւստ*. *Զ*. 16)։

5. Թադիկ (*Թողիկ*), *«նորին* (*Մաշտոցի*) *աշակերտ, այր զգաստ եւ բարեպաշտօն», որ կը կարգուի յՕշական Մաշտոցի շիրմին վրայ կառուցուած եկեղեցւոյն «սպասաւոր»* (*Կոր*. 46)։ 450*ի Աշտիշատի ժողովին մէջ կը յի- շուի «տէր Թաթիկ Բասենոյ եպիսկոպոս»* (*Փարպ*. 44)։

6. Դանան։

7. Ենովք. *երկուքն ալ «կրօնաւորք եւ յառաջադէմք յաւետարանական սպասաւո- րութեանն», զորոնք Մաշտոց Հռոմէական Հայաստանի մէջ բացած դպրոց-վանատուն- ներու վրայ իբրեւ «վերակացու հաստատե- լոց» կը կարգէ* (*Կոր*. 30)։

---

[3] *Կեղծ-Ղազար կը կոչէ զինքը «Տէր ի Խորձենոյ»* (15)։ *Չեմ կարծեր թէ իր մասին ըլլայ Ղ*. *Փարպեցւոյ* (*Թուղթ*, 202) *տողերս. «զհրեշտականման այրն զՏէր», զոր աբեղեանն Հայոց «նոյն անհանգիստ հալածանօք վախճանեցուցին, որք եւ այժմ դեռ եւս անյագու- թեամբ քինով ընդ մեռելոյն կային»։ Հոս խօսքը հա- ւանօրէն Յովհաննէս Մանդակունի կաթողիկոսի մա- սին է*։

Բ. Դաս. Երէց աշակերտք:

8. Եզնիկ ի Կողբ գեղջէ: 429/430ին Սահակ եւ Մաշտոց կ՚որոշեն «եղբարս երկուս յաշակերտացն յուղարկել ի կողմանս Ասորւոց ի քաղաքն Եդեսացւոց, զՅովսէփ... եւ երկրորդին Եզնիկ անուն՝ յԱյրարատեան գաւառէն, ի Կողբ գեղջէ, զի յասորական բարբառոյն զնոցին հարցն սրբոց զաւանդութիւնս ի հայերէն գրելս (°) դարձուցեն: Իսկ Թարգմանչացն հասեալ ուր առաքեցանն եւ կատարեալ զհրամանսն եւ առ պատուական հարսն առաքեալ», իրենք «անցեալ գնացին ի կողմանս Յունաց, ուր եւ ուսեալք եւ տեղեկացեալք <յունական բարբառոյն> ի Թարգմանիչս կարգէին ըստ հելլենական լեզուին» (Կոր. 33): Իբր 435ին Կ. Պոլիս կը հասնին Ղեւոնդ եւ Կորիւն, որոնք «մատուցեալ յարէին յԵզնիկն իբրեւ առ ընտանեգոյն սննդակից» (33). այս ինքն իբրեւ իրենց աշակերտակիցը: Քիչ յետոյ դարձաւ Եզնիկ Հայաստան եւ պարապեցաւ Սահակի հետ ի Բլուր Ս. Գրոց փութանակի Թարգմանութեան սրբագրութեամբ (Կոր. 34): Ինքն է առանց տարակուսի «տէր Եզնիկ Բագրեւանդայ եպիսկոպոս», որ ներկայ էր 450ի Աշտիշատի ժողովին (Ղ. Փարպ. 44):

9. Ղեւոնդ «ի Վանանդայ» (Փարպ. 101): 420ին, երբ Մաշտոց առած հետը խումբ մը աշակերտներ կ՚ուղեւորէր Հռոմէական Հայաստան, հասնելով ի Մելիտենէ, «զբազմութիւն աշակերտացն» կը յանձնէր Ակակ եպիս-

կոպոսի խնամքին եւ «գլխաւոր աշակերտացն Թողոյր զայն, որում Ղեւոնդէսն կոչէին, այր հաւատարիմ եւ ճշմարտապաշտ» (Կոր. 27), իսկ ինքը կ'անցնէր Կ. Պոլիս: Դարձեալ 436ին, երբ պէտք եղաւ առ Պրոկղ Թուղթ գրել, Սահակ եւ Մաշտոց պատգամատար կ'ընտրէին զՂեւոնդ եւ զԿորիւն, որոնք համ-նելով Կ. Պոլիս՝ «մատուցեալ յարքին յԵզ-նիկն իբրեւ առ ընտանեգոյն սնընդակից» (Կոր. 33):

Կը պատմէ Ղ. Փարպեցի (էջ 70), «Սուրբ երէցն Ղեւոնդ զամենայն գիշերն անձանձրոյթ առաքելական վարդապետութեամբ զօրացեալ ուսուցանէր զամենեսեան յորդորուղխ իմաս-տութեամբ, առակաց մեկնութեամբք, հո-գեշնորհ վարդապետութեամբ. որոյ բանք նման քաղցրութեան մեղու բղխէին ի բերա-նոյ արդարոյն. որ էր լսողացն ցնծութիւն. եւ ախորժարար զնա ծանուցանէր վերին ազ-դեցութեամբ լուսաճաճանչ պայծառութիւնն ի նմա ներքին մարդոյն եւ տեսակցութիւն հրեշտականման երեսացն կերպարանի: Զոր եւ յառաջագոյն ժամանակի, կալով ի քուն սրբոյն, այրն Աստուծոյ Մաշտոց վարդա-պետն նորին՝ հանդերձ եւ այլ աշակերտօք իւրովք՝ երանելեաւն Կորեամբ եւ Արձանաւ, տեսանէին արթնութեամբ ճառագայթեալ շուրջ զնովաւ լոյս սաստիկ, որք անդէն եւ անդ ծանեան երանելի արքն սուրբ Հոգւով զվախճան սրբոյն, թէ նահատակութեամբ կատարի. զոր թէպէտ եւ նմա ոչ յայտնեցին

*զուքանչելապործութեան զտեսութիւնն, սակայն ի բաղում չընջելն՝ պատմեալ հուչակեցաւ բան երեւմանս այսորիկ»։*

*«Տէր Ղեւոնդ երէց» ներկայ էր իբր 444ին ի Շահապիվան գումարուած ժողովին (Հայապատում, 156)։ Իսկ 451ի Հայոց պատերազմի ժամանակ «երանելին Ղեւոնդ» ողի եւ չունչ կը ներշնչէր իւր հրապարակախօսութիւններով հայ բանակին։*

*Ուշագրաւ են 453/454ին տեղի ունեցած հարցաքննութեան հետեւեալ հատուածները․ Վեհզենշապուհ կ՚ըսէ նկատմամբ Ղեւոնդի․ «Մեր լուեալ է վասն քո, թէ օրինաց քրիստոնէից իբրեւ զքեզ ոք տեղեակ չէ»։ Ղեւոնդ կը պատասխանէ․ «Դուք ասացէք աւագիկ, զոր ինչ լուեալ է ձեր վասն իմ, թէ օրինացն մերոց տեղեակ եմ եւ բազմութեան ժողովրդոց եղեալ եմ ուսուցիչ․ ցուցանէ ձեզ տիոց իմոց մերձաւորութիւն ի կատարումն» (Ղ․ Փարպ․ 99)։ Ղեւոնդ նահատակուեցաւ 454ին ի Ռեւան (Փարպ․ 101)։*

10․ Յովսէփ *ի Վայոց ձորոյ ի Խողոցիմք գեղջէ, կաթողիկոս։*

*Կորիւն կը յիշէ զինքը երկիցս առանց մանաւոր տեղեկութեան իր հայրենիքի մասին․ Մաշտոցի մահէն եաքը, երբ նշանակուեցան «գլխաւորք, վերակացուք եւ տեղապահք», Յովսէփ կարգուեցաւ «գլխաւոր ժողովոյն» (Կոր․ 46)։ Կորիւն Մաշտոցի վարքը գրեց հրամանաւ «առն միոյ պատուականի Յովսէփ կոչեցելոյ, աշակերտին» Մաշ—*

տոցի (8)։ Ներկայ էր Յովսէփ Շահապիվանի 444ի ժողովին իբրեւ մին «յերիցանց գլխաւորաց» (Հայապատում, 159)։ Կորեան լռութիւնը Յովսէփի երէցի հայրենիքի մասին, պատճառ եղած էր նոյնացնելու զինքը Յովսէփ Պաղնացւոյ հետ։ Բայց Ղ. Փարպեցի հաղորդած է մեզի իր մասին գոհացուցիչ տեղեկութիւններ. «Յովսէփ, որ թէպէտ եւ երէց էր ըստ ձեռնադրութեան, այլ զկաթողիկոսութեան Հայոց զաթոռն ունէր ի ժամանակին» (Փարպ. 44, 74). իբրեւ այսպիսի նախագահած է 450ի Աշտիշատի ժողովին։ «Սուրբ երէցն Յովսէփ, որ եւ զկաթողիկոսութեանն Հայոց ունէր զաթոռ» (70), «հանդերձ երանելեաւն Յովսէփաւ, որ թէպէտ եւ զձեռնադրութիւն երիցութեան ունէր, սակայն յաթոռ կաթողիկոսութեանն էր վիճակեալ արժանաւորապէս» (70). «սուրբ կաթողիկոսն Յովսէփ ի Վայոց ձորոյ» (101)։ Իսկ Սուտ-Ղազար (38) կը գրէ. «զորս (զՍահակայ) զհետ յաջորդեաց զաթոռ հայրապետութեան աշխարհիս Հայոց հրամանաւ երանելոյն Մաշտոցի, սուրբ Յովսէփ, որ էր ի գաւառէն Վայոց ձորոյ, ի գեղջէ որում անունն էր Խողոցիմք»։ Ղեւոնդ երէց Հարցաքննութեան ժամանակ կ'ըսէր Միհրներսեհին նկատմամբ Յովսէփի. «Զսա, զոր տեսանէքս, թէպէտ եւ մանկագոյն քան զիս տեսանէք տիովք, այլ պատուով կարգեալ է արժանաւորապէս եւ գլուխ է ամենայն Հայոց

*քահանայութեանց» (Փարպ. 79)։ Յովսէփ երէց նահատակուեցաւ 454ին ի Թեւան։*

11. Կորիւն. *կը գրէ ինքնին ի Վարս Մաշտոցի (8). «Եկեալ հասանէր առ իս հրաման առն միոյ պատուականի՝ Յովսէփ կոչեցելոյ, աշակերտի առն այնորիկ (Մաշտոցի) եւ ընդ նմին այլոց եւս քաջալերութիւն՝ աշակերտակցաց մերոյն վարդապետութեան. ուստի եւ իմ մտադիւր յօժարութեամբ յանձն [4] առեալ, թէպէտ եւ էի կրսերագոյն... մատենագրել»։ «Կրսերագոյն» հոս հաւանօրէն իմանալու է խոնարհական արտայայտութիւն։ 436ին «դէպ լինէր, կը գրէ, ոմանց եղբարց ի Հայաստան աշխարհէս դիմել իջանել ի կողմանս Յունաց, որոց առաջնոյն Ղեւոնդէս անուն էր, եւ երկրորդին Կորիւն»։ «եւ մատուցեալ յարէին յԵզնիկն, իբրեւ առ ընտանեգոյն սննդակից՝ ի Կոստանդինական քաղաքին. եւ անդ միաբանութեամբ զհոգեւոր պիտոյիցն զխնդիրն վճարէին» (33)։ Տարած էին իրենց հետ Սահակի առ Պրոկղ հայրապետ թուղթը։ Ի դարձին բերին իրենց հետ Ս. Գրոց ընտիր օրինակ մը։*

12. Արձան. *Ղ. Փարպեցի (70) կը պատմէ, թէ «այրն Աստուծոյ Մաշտոց վարդապետն՝ հանդերձ եւ այլ աշակերտօք իւրովք՝ երանելեաւն Կորեամբ եւ* Արձանաւ, *տեսանէին... շուրջ (Ղեւոնդեաւ). լոյս սաստիկ երբ սա ի քուն էր» են։ Կորիւն չի յի–*

[4] *Տպ. եւ իմ մասնաւոր աշակերտութեամբ վիճակ։*

չեր անոր անունը: «Նկարագիր Կարգաց» գրութեան յաւելուածին մէջ կը յիշուին նոյնպէս Մաշտոցի այս երեք աշակերտք «Կորիւն, Արձան, Ղեւոնդ», նաեւ Եզնիկ: Նոյնը կը կրկնուի Մ. Խորենացւոյ քով. Յովսէփ եւ Եզնիկ Կ. Պոլիս կը պարապին թարգմանութեամբ. հոն կ'երթան նաեւ Ղեւոնդ եւ Կորիւն. «ապա եկանեն անդր Յովհան եւ Արձան, զորս կանխագոյն առաքեալ էր մեծին Սահակայ եւ Մեսրոպայ. որոց յուլարար ուղեւորեալ եւ ծուլարար դեղերեալք՝ պատահեցան ի Կեսարիա: Որոց ընդունելութիւն ամենեցուն մեծապէս արար Մաքսիմիանոս եպիսկոպոս Բիւզանդացւոց» (Գ. 60, էջ 341): Կ'ըսուի նաեւ Օրհնութինարեր ցուցակին մէջ[5] թէ «զԱպաշխարողն արգիլել եւ զարձեալ ի մեծ Հինգշաբաթին արձակել, Ա. Կիւրեղ արար ի դուռն Ս. Սիոնի, ի ՒԱ. ամի հայրապետութեան իւրոյ... եւ Արդեւան (կարդա՛ Արձան) թարգմանիչք բերին ի Հայս»: Կը գրէ նաեւ Վրթանէս Քերթող[6]. «Եղեն ի Հայս յետ Պապայ հայրապետաց որպէս երանելին սուրբն Սահակ եւ Մեսրոպ եւ Եզնիկ եւ Արձան եւ Կորիւն եւ ընկերք նոցա. որ եւ ի ձեռն իսկ նոցա Հայոց դպրութիւն շնորհեցաւ ի Տեառնէ»:

Այս տեղիքները աներկբայ ցոյց կու տան, թէ գոյութիւն ունէր Արձան մը, աշակեր–

[5] Ընդդէմ պատկերամարտից, էջ 339:
[6] Հայապատում, § 153 (էջ 188):

*տակից Ղեւոնդի եւ Կորիւնի, բայց Կորիւն լռած է անոր մասին։*

13. Աբրահամ *ի գեղջէն Արածոյ։ Թովմաս Արծրունի* (65) *կը յիշէ Արեւելեան վկայից Վկայաբանութիւնը. «զոր շարադրեաց, կ՚ըսէ, երանելի խոստովանողն Քրիստոսի Աբրահամ ի գեղջէն Արածոյ, որ էր աշակերտ եւ հետեւող սրբոյ Ղեւոնդեանց»։ Թովմաս հոս աչքի առաջ ունեցած ըլլալու է «Արեւելեան վկայից» ասորերէն բնագրէ հայերէն թարգմանութեան յիշատակարանը, ուր թարգմանիչը Աբրահամ յիշած է իր անունը։ Ղ. Փարպեցի կը յիշէ «զքահանայսն Արածոյ զտէր Սամուէլ եւ զտէր Աբրահամ»* (75), *որոնք Ղեւոնդեանց հետ կալանաւորուած էին. Միհրներսեհ «հարցանէր զսուրբ երէցն Արածոյ զՍամուէլ եւ զնորին զհոգւոյ որդին, զսուրբ սարկաւագն զԱբրահամ, որոյ զկրակն անցուցեալ էր զԱրտաշատու»* (78). *նոյն «տէր Սամուէլ երէցն Արածոյ եւ տէր Աբրահամ սարկաւագ» սուրբ Քահանայից հետ Վրկանաց աշխարհին մէջ* (86)։ *Ապա Յազկերտ «զերանելի զերկու քահանայսն՝ զտէր Սամուէլ եւ զԱբրահամ հրամայէր ընդ իւր խաղացուցանել. որոնք կը նահատակուին ի Վարդգէս գաւառի* 454, *հրոտից* 7*ին* (*Փարպ.* 86—87)։ *Փարպեցի զԱբրահամ երկու անգամ սարկաւագ եւ երկու անգամ երէց կը ներկայացնէ։*

*Թովմաս երբ «զԱբրահամ ի գեղջէն Արածոյ» խոստովանող կը կոչէ, այսու նոյնացու–*

ցած կ՚ըլլայ զինքը խոստովանող Աբրահամ երէցի հետ, «որ էր ի գաւառէն Տայոց, ի գեղջէն որում անուն էր Զենակն» (Փարպ. 94). ապա Յորէն երէցի հետ ուղարկուեցաւ «Ասորեստան ի Ծափուլ գաւառ ի գործ արքունի մշակութեան». ապա կարգուեցաւ եպիսկոպոս Բզնունեաց, ուր եւ կը վախճանի ի բարւոք ծերութեան (Փարպ. 105—106): Ի՞նքն է Ղազարի Թղթին մէջ յիշուած Աբրահամ եպիսկոպոս (էջ 202—203):

«Արեւելեան վկայից» ընտիր թարգմանութիւնը ասորերէն բնագրէ հաւանօրէն կատարուած է երէց աշակերտներէն:

Գ. Դաս. Կրտսեր աշակերտք:

Ասոնք այն «մատաղ մանուկներն» են, որոնք ուսան Վաղարշապատի Դպրոցին մէջ: Զենք կրնար մատնանշել յանուանէ ներկայացուցիչ մը այս Դասէն: Այս դասին կը պատկանէին հաւանօրէն հետեւեալները.

14. Երեմիա «գլուխ պաշտօնէից Սահակայ» (Կոր. 42):

15. Գադ կամ Գիւտ կաթողիկոս, «որ էր ի գաւառէն Տայոց, ի գեղջէն Արահեզայ. այր լի գիտութեամբ հայոցս եւ առաւելեալ յունին. յորդառաց բանիւ եւ առատարուղի վարդապետութեամբ... որոյ բանք իւր նման յորդառատ անձրեւի զամենայն լողի ծաղկեցուցեալ պտղաբերէր զոգիս»: Մովսէս Մանազկերտցի կաթողիկոսէն ետքը գրաւեց գահը. զոր ապա ստիպուեցաւ թողուլ Պերոզի հրամանաւ (Փարպ. 110—113):

Դ. Դաս. Կրտսերագոյն աշակերտք:

17. Անանիա *Սիւնեաց եպիսկոպոս : Մաշտոց ի Սիւնիք* (414) *«ժողովեալ մանկունս ի նիւթ վարդապետութեանն» կը սնուցանէ զանոնք դայեկաբար, այնպէս որ «ի նոցունց իսկ ի վայրենեացն եպիսկոպոս՝ տեսուչ եկեղեցւոյն Սիւնեաց կարգել, որոյ անունն կոչէր Անանիա, այր սուրբ եւ երեւելի, հայրաբարոյ ի ժառանգաւորաց եկեղեցւոյ» (Կոր.* 24) : *Սա ներկայ էր* 450*ի Աշտիշատի ժողովին (Փարպ.* 44) :

18. Սամուէլ *եպիսկոպոս Տաշրաց : Կը պատմէ Կորիւն, թէ Մաշտոց երթալով ի Վրաստան կը պարգեւէ Վրացիներուն իր նորագիւտ նշանագիրներն վրացերէն լեզուի եւ ի ձեռն Ջաղայի հիմը կը դնէ վրական գրականութեան : Եւ այսպէս «զնոսա, որ յայնչափ ի մասնաւոր եւ ի բաժանեալ լեզուացն ժողովեցան, միով* (°) *աստուածաբարբառ պատգամօքն մի ազգ կատարեալ (տպ. կապեալ) փառաբանիչս (տպ. -իչք) միոյ Աստուծոյ յօրինէր. յորոց ոմանք արժանի եղեն ի կարգ եպիսկոպոսութեան վիճակել. որոց առաջնոյն (տպ. առաջինն) Սամուէլ անուն, այր սուրբ եւ բարեպաշտօն՝ եպիսկոպոս կացեալ տանն արքունականի» (իմացի՛ր՝ տանն Աշուշայ բդեշխին ի Ցուրտաւ) (Կոր.* 26) : *Արդեամբք ալ երբ Մաշտոց քիչ յետոյ Տաշիրք գնաց, «յայնժամ իշխանին Տաշրացւոց առն պատուականի եւ աստուածասիրի, որ անուանեալ կոչէր Աշու-*

չայ, ի ձեռն տուեալ (այլ. տալը) նմա զանձն ամենայն գաւառոքն. եւ նորա ամենասփիւռ վարդապետութիւնն ոչինչ պակասութեամբ քան զայլոցն գաւառաց անդ ցուցեալ (այլ. անցուցեալ) եւ յանձն արարեալ զնոսա սրբոյ եպիսկոպոսին Սամուէլի, այնմ զոր ի վերոյ նշանակեցաք, ինքն դառնայր ի կողմանս Հայոց մեծաց» (Կոր. 32):

Սամուէլ աւելի Ջաղայի, քան Մաշտոցի աշակերտած ըլլալու էր: Բայց նկատի առնելով. որ Տաշիրք կային հայախօս եւ վրախօս ժողովուրդներ, կրնանք կարծել, թէ Սամուէլ ուսած էր նաեւ հայերէն լեզուն առ ոտս Մաշտոցի:

Կրնայինք յիշել հոս նաեւ Վարդան Մամիկոնեանը, Աղան Արծրունին եւ ուրիշ անուններ, որոնք ծանօթ են Ե. դարու առաջին կէսէն իբրեւ համբաւուած Եկեղեցականներ. եւ հաւանօրէն եղած են Մաշտոցի եւ Սահակի աշակերտներ. բայց աննպատակ կը համարինք երկարել անուանացանկս:

Այս աշակերտներէն իբրեւ Թարգմանիչ եւ իբրեւ հեղինակ պայծառացան յանուանէ.

Յովսէփ Պաղնացի, ասորագէտ եւ յունագէտ:

Եզնիկ Կողբացի, հմուտ ասորերէնի եւ յունարէնի:

Կորիւն, ծանօթ յունարէնի:

Աբրահամ Արած գիւղէն, ասորագէտ:

*Անշուշտ Մաշտոցի աշակերտներէն շատեր մասնակցեցան թարգմանութեանց, որոնք կատարուեցան ասորերէնէ եւ յունարէնէ ։ Ուրիշներ նպաստեցին գրականութեան իբրեւ երագագիր գրիչներ. եւ դարձեալ ոմանք ուսուցչութեամբ ։*

*Ամէնուն ձեռն ի ձեռն գործունէութեամբ ծլաւ, ծաղկեցաւ եւ պտղաւէտ եղաւ Ե. դարու Հայ դասական գրականութիւնը ։*

## 7. ՍՈՒՐԲ ԳՐՔԻ ՀԱՅԵՐԷՆ ԹԱՐԳՄԱՆՈՒ-ԹԻՒՆԸ

Նշանագիրներու գիւտը սերտօրէն կապուած է Ս. Գրքի Թարգմանութեան հետ։ Մաշտոցի գրեր հնարելու դրդապատճառն եղած էր Ս. Գրքի պահանջքը աւետարանական քարոզութեան համար։ Այս պատճառաւ երբ յաջողեցաւ հայերէն լեզուի հնչումներուն յարմարցնել պատշաճ նշանագիրներ, առաջին փորձն եղաւ Առակաց գրոց թարգմանութիւնը։ Կը գրէ Կորիւն, թէ երբ Հռոփիանոս ի Սամոսատ ձեւակերպեց գեղագրօրէն հայերէն նշանագիրները, Մաշտոց նոյնհետայն «ի թարգմանութիւն դառնայր[1] հանդերձ աշակերտօքն իւրովք, որոց առաջնոյն Յովհան անուն կոչէին յԵկեղեաց գաւառէն, եւ երկրորդին՝ Յովսէփ անուն ի Պաղանական տանէն։ Եւ եղեալ սկիզբն նախ յԱռակացն Սողոմոնի, որ ի սկզբանն իսկ ծանօթս իմաստութեանն ընծայեցուցանէ լինել առեալ, եթէ ‘Ճանաչել զիմաստութիւն եւ զխրատ, իմանալ զբանս հանճարոյ,։ Որ եւ գրեցաւ ձեռամբ նորին[2] գրչի» (19/20)։ Այս տեղի կ՚ունենայ 407/408 տարւոյն։

---

[1] Տպ. դառնայրն։

Ս. Գրքի թարգմանութեան սկիզբն եղած էր Առակաց գրքով ի Սամոսատ. շարունակուեցաւ ապա ի Վաղարշապատ, «փութանակի» ի գլուխ հանել Ս. Գրոց բոլոր մասերու թարգմանութիւնը, ի ձեռն «երկուց հաւասարելոց». այս ինքն Սահակի եւ Մաշտոցի: Իրօք ալ յընթացս 408—414 տարիներու թարգմանուած էին Հին եւ Նոր Կտակարաններն ամբողջութեամբ, ինչպէս կը տեսնուի այն ընդհանուր պատկերէն, ուր Կորիւն կը գծէ գրական շարժման առած ընթացքը մինչեւ Մաշտոցի առաքելութեամբ ի Գողթն եւ ի Սիւնիս մեկնիլը: Կորիւն այսպէս կը գրէ. «Յայնմ ժամանակի երանելի եւ ցանկալի, անպայման սքանչելի լինէր աշխարհս Հայոց[3]. յորում յանկարծ ուրեմն օրէնսուսույց(ն) Մովսէս (ի Հնգամատենին) Մարգարէական դասուն եւ յառաջադէմն Պաւղոս բովանդակ առաքելական գնդովն՝ հանդերձ աշխարհակեցոյց աւետարանաւն Քրիստոսի միանգամայն եկեալ հասեալ ի ձեռն երկուց հաւասարելոցն (Սահակայ եւ Մաշտոցի) հայաբարբառք հայերէնախօսք գտան» (22): Ուստի Մովսէս ի Հնգամատենին եւ Մարգարէք, Չորս Աւետարանք եւ Առաքելական թղթերը «միանգամայն եկեալ հասեալ հայերէնախօսք գտան ի ձեռն երկուց հաւասարելոցն»:

Այս խրողութիւնը կը հաստատէ Կորիւն

---

[2] Տպ. ձեռամբն այնորիկ:

[3] Տպ. ցանկալի աշխարհս Հայոց անպայման սքանչելի լինէր:

նոր վկայութեամբ մըն ալ, երբ կը պատմէ թէ Մաշտոց առաքելական եւ գրական քարոզութեամբ կը հասնի «ի Թագաւորական տեղիս» Ադուանից աշխարհին եւ կը դնէ Արսվաղէն Թագաւորին եւ Երեմիա եպիսկոպոսին առջեւ հայկական նշանագիրները եւ կը խնդրէ որ ընդունին զանոնք: Անոնք յանձն կ'առնեն «զպրութեանն հնազանդել»․ կը բացուին անմիջապէս դպրոցներ․ «ապա այնուհետեւ Երեմիա եպիսկոպոսի ի ձեռն առեալ վաղվաղակի զԱստուածեղէն[4] Գրոց թարգմանութիւնս ի գործ արկանէր․ որով անդէն յական թօթափել ․․․ աշխարհն Աղուանից մարգարէադէտք եւ առաքելածանօթք եւ աւետարանաժառանգք լինէին» (31): Այս կը պատահի ընդ մէջ 414—418 տարիներու, մօտաւորապէս: Ըստ այսմ Աստուածաշունչի մատեանները ոչ միայն 408—414 տարիներուն ամբողջապէս թարգմանուած էին հայերէնի եւ տարածուած երկրին մէջ, այլ եւ կ'արտածուէին հայերէն թարգմանութեամբ մինչեւ Աղուանից աշխարհը: Եւ ոչ միայն հոն, այլ եւ Վրաստան․ ուստի գի քիչ յետոյ ալ վրացերէն թարգմանութեան հիմ կը ծառայեն:

Կորիւն յայտնապէս կը գրէ, թէ Սահակ եւ Մաշտոց նշանագիրներու գիւտէն ետքը[5] «ի ձեռն առեալ այնուհետեւ աստուածապործ մշակութեամբ զաւետարանական արուեստն՝

[4] Տպ. աստուածային:

[5] Ծչղագոյնս 410ին, այսինքն գրի գիւտէն երկու տարի ետքը:

ի թարգմանել, ի գրել եւ յուսուցանել. մանաւանդ հայեցեալ ի տեառնաբարբառ հրամանացն բարձրութիւնն, որ առ երանելին Մովսէս եղեալ[6] ... մատենագրել առ ի պահեստ յուխտեանցն որ գալոցն էին ... ուստի եւ երանելլի հարցն մերոց համարձակութիւն առեալ յուսալից փութով եւ երեւելի եւ արգիւնաւոր ըստ աւետարանին գիւրեանց մշակութիւնն ցուցանէին[7]» (22)։ Այս մշակութիւնն էր թարգմանութեամբ աճեցնել հայ գրականութեան անդաստանը, ինչպէս քիչ յետոյ կ՚ըսուի, գլխաւորաբար Ս. Գրքի թարգմանութեամբ։ Այս կէտը կը շեշտուի յաճախ Կորեան մատենին մէջ. «ձեռն ի գործ արկանէր ի թարգմանել եւ ի գրել... ըստ յառաջագոյն սովորութեանն» (32). եւ դարձեալ «իսկ երանելւոյն Սահակայ եկեղեցական գրոց գումարութիւնն կանխաւ ի յունական բարբառոյն ի հայերէն դարձուցեալ եւ բազում եւս զհայրապետաց սրբոց զճշմարիտ զիմաստութիւնն» (33—34)։ «Եկեղեցական գրոց գումարութիւնն», զոր «կանխաւ ի յունական բարբառոյն» հայերէնի թարգմանած էր Սահակ, առանց տարակուսի առաջին գծի վրայ Աստուածաշունչ Մատենին մասերը կ՚ենթադրէ։

Սահակի եւ Մաշտոցի համար, որոնք «հելլենական դպրութեամբ վարժած էին», դժուարին չեղաւ թարգմանութեան արուեստը, այնու որ երկուքն ալ հմուտ տատտու–

[6] Տպ. եկեալ։
[7] Տպ. ցուցանեն։

ծաղկաներ էին, «թեւամուխ միջամուխ յաստուածատուր հրամանացն հանգամանս» (14)։ Մաշտոց արդէն զինուորական հանդերձի տակ «փութով ընթերցուածոց աստուածեղէն Գրոց» (14) կը պարապէր։ Իսկ Սահակ, որ իր քահանայութեան 50ամեայ յոբելեանը կը տօնէր, վարժ եւ փորձ էր ոչ միայն «յընթերցուածս աստուածեղէն Գրոց», այլ եւ ներհուն աստուածեղէն Գրոց մեկնութեան։ Պիտի ենթադրենք թէ անիկա յընթացս 50 տարիներու յաճախ անգամ կարդացած էր Աստուածաշունչը յունարէն բնագրի մէջ եւ զայն հայերէն բերանացի թարգմանութեամբ բացատրած ժողովրդեան։ Այս պատճառաւ ալ երբ գտնուեցան նշանագիրները եւ հնարաւորութիւն ստեղծուեցաւ ի գիր աւանդելու հնչիւնները, դժուարին չեղաւ ոչ Սահակի եւ ոչ Մաշտոցի ճշգրիտ եւ վայելուչ թարգմանութեամբ հայացնել Աստուածաշունչը եւ կամ անձամբ եւ կամ ի ձեռն գրիչներու մագաղաթի վրայ դրոշմել։ Աւելի հմուտ հայերէնագէտներ քան Սահակ եւ Մաշտոց, որոնք Տարօնեցիներ էին եւ ապրած թէ արքունի Դիւանին եւ թէ գեղջուկ շրջանակներու մէջ, կարելի չէր գտնել։ Լեզուն այդ կատարեալ հասակի եւ հելլենական կրթութեամբ զարգացած անձնաւորութիւններու բերանը յղկուած եւ ողորկուած էր, ատակ գրաւորապէս ալ արտայայտուելու։ Անոնք չէին կրնար այնպիսի սուրբ, աստուածեղէն Մատեանին թարգմանութիւնը արմուզ, դեռակիրթ աշակերտներու յանձնել.

*ինչպէս եւ չէին կրնար անոր թարգմանութիւնը անփութութեամբ անագանագոյն ժամանակի յետաձգել:*

*Ժամանակը* 408—414, *ուստի 6ամեայ շրջան մը, բաւական պէտք է համարիլ Աստուածաշունչի թարգմանութեան համար, կատարուած երկու նիւթին քաջածանօթ «հաւասարեալ»ներու ձեռքով: Առանց տարակուսի անոնց գործակից եղան նաեւ Յովհաննէս յԵկեղեաց գաւառէ եւ Յովսէփ ի Պաղանական տանէ, որոնք Մաշտոցի օգնականներն էին ի Սամոսատ Ասորւոց գրքի թարգմանութեան ժամանակ:*

*Երբ Կորիւն կը գրէ, թէ Սահակ «եկեղեցական գրոց գումարութիւն կանխաւ ի յունական բարբառոյն ի հայերէն դարձուցեալ» էր, որ եւ իցէ կասկած չի թողուր, թէ Աստուածաշունչի թարգմանութեան հիմ ծառայած է յունարէն բնագիր մը, մանաւանդ երբ ծանօթ չէ այլուստ թէ Սահակ եւ Մաշտոց առ հասարակ ասորերէնի տեղեակ եղած ըլլան: Այս կէտին համար ապացոյց կարող է ծառայել եւ այն որ շատ յետոյ, իբր* 436*ին հրաման կ'արձակուի Եզնիկին, որ Կ. Պոլիս թարգմանութիւններով էր զբաղած, որպէս զի վերադարձին բերէ հետը «աստուածատուր Գրոց հաստատուն օրինակս»: Երբ այդ օրինակները կը հասնին Հայաստան «դարձեալ յետ այնորիկ առեալ (Սահակայ) հանդերձ Եզն[ա]կաւ* զյառաջագոյն, զյանկարծագիւտ. զփութանակի զթարգմանութիւնս (*զմատեանց Ս.*

Գրոց)՝ հաստատէր ճշմարիտ օրինակօք բե-րելովք» (33)։

Այս տեղեկութիւններու համաձայն Աստուածաշունչի հայերէն թարգմանութիւնը, որ կատարուած էր յունարէն բնագրէ, սրբագրուած, ճշգագոյնս «հաստատուած է» ի ձեռն Սահակի եւ Եզնիկի Կ. Պոլսէն բերուած օրինակներու համեմատ։ Այս «հաստատելն» տեղի ունեցած է 436—438 Սեպտեմբեր 7 շրջանին, երբ Սահակ իրր 100ամեայ էր եւ Եզնիկ արդէն այր կատարեալ։

Ընդունելով հրոդութիւնն այսպէս՝ կը յառնեն այլ եւ այլ հարցեր նկատմամբ նախագաղափար օրինակներու եւ սրբագրութեան եղանակին։

Եւրոպացի քննիչք, որոնք առիթ ունեցած են զբաղելու Ս. Գրոց հայերէն թարգմանութեամբ, յայտնած են զանազան կարծիքներ։ La Croz[8] կը գրէ. «Հայերէն եւ սլաւերէն թարգմանութիւնք ճշդիւ կը հետեւին Աղեքսանդրեան ձեռագրին»։ Այս կարծեաց համամիտ է Կաուլէն[9]. «Նկատելի է որ հայերէնը աւելի Աղեքսանդրեան ձեռագրին կը համաձայնի քան ուրիշ ձեռագիրներու»։ Բերտհոլդի[10] համաձայն հայ թարգմանութեան ըն-

[8] La Croz, Thesaurus epistolici, 3 (Lipsiae 1796), 201.

[9] F. Kaulen, Einleitung in die Heilige Schrift des Alten und Neuen Testamentes. Freiburg 1876, էջ 145.

[10] Bertholdt, Einleitung in das Alte Testament, II (Erlangen 1812), 560.

ծագած ընթերցուածները իրենց լուծումը կը գտնեն Ղուկիանոսի եւ Յեսիւքիոսի ձեռագրական խումբերու մէջ: Իսկ Շտոյէրնագէլ[11] կը հաստատէ, թէ «մեզի հասած Հայերէն թարգմանութիւնը ստրկօրէն կը հետեւի Վեցիջեանի»:

Այս տեսութիւնները փորձաքարի մերձեցնելով Հ. Ս. Կողեան իւր Մակաբայեցւոց Բ. Գրքին նուիրած մանրակրկիտ քննութեան մէջ[12], հետեւեալ եզրակացութեան կը յանգի. «Հայր թէ Աղեքսանդրեան, թէ Վեցիջեան եւ թէ Ղուկիանեան ընթերցուածներ կը ներկայացնէ. ուստի եւ ապարդիւն է պնդել թէ արտաքապէս միայն կամ միւսին վրայէն կաղապարուած է: Մակաբայեցւոց Հայերէն թարգմանութեան սկզբնագիրը մեզի ծանօթ ոչ մէկ խմբագրութեան մէջ կը գտնենք: Հայն ունեցած է առանձնայատուկ բնագիր մը՝ իւրովի նկարագրով, այս ինքն մերթ մեզի հասած բոլոր խմբագրութիւններուն կը համընթանայ, բայց երբեմն ալ ինքնուրոյն եւ անկախ է: Իր բերած նոր եւ մեծարժէք ընթերցուածներով կը գրաւէ միւս խմբագրութիւններուն ոչ թէ ստորակարգ այլ համակարգ հաւասարապատիւ դիրք մը»: Կողեանի այս եզրակացութիւնը կը հաստատուի հին վկայութեամբ մը:

---

[11] Karl Steuernagel, Lehrbuch der Einleitung in das Alte Testament. Tübingen 1912, էջ 58.

[12] Դիտ. Հ. Սահակ Կողեան, Մակաբայեցւոց Բ. գրքին Հայերէն թարգմանութիւնը: Վիեննա 1923, էջ 50—61:

էջմիածնի Թ. 193 (գրուած Յովսէփ գրչէն 1299ին յԱսպիրինկայ վանս Արճէշի [13]), որ կը բովանդակէ Սողոմոնի գրքերն եւ Փոքր Մարգարէները, ի վերջ Փոքր Մարգարէից (Թղ. 172բ) ունի հետեւեալ յիշատակագրութիւնը. «Ուղղեալ է գաւրինակս զայս յԱղեքսանդրացւոց եւ յԵրուսաղեմացւոց աւրինակէ : Դարձեալ եւ ի Զորեքկնուոյն Ովրիգենի : Գրեցաւ երկոտասան մարգարէս ըստ Եւթանասնիցն եւ երկուց թարգմանացն» :

Այս յիշատակագրութիւնը պէտք է իմանալ անշուշտ հետեւեալ չարադասութեամբ. «Թարգմանեցան երկոտասան մարգարէքս ըստ Եւթանասնիցն եւ երկուց թարգմանացն աւրինակին : Ուղղեալ է աւրինակս այս յԱղեքսանդրացւոց եւ յԵրուսաղեմացւոց աւրինակաց. դարձեալ եւ ի Զորեքկնուոյն Ովրիգենի» :

Աղեքսանդրացւոց օրինակն է այն բնագիրը, որ կազմած է Յեսիւքիոս յԱղեքսանդրիա, որ տարածուեցաւ ապա Եգիպտոս. Երուսաղեմացւոց օրինակն այն բնագիրն է, որ կազմեցին Պամփիլիոս եւ Եւսեբիոս ի Կեսարիա. այս բնագիրը տարածուեցաւ Պա–

---

13 Կ'ըսէ. «Բայց գրեցաւ ի սատրիկ եւ յընտրե-
լագոյն աւրինակէ ի վաղուց հետէ ստուգեալ եւ ճշմար-
տեալ ի նոյն պայմանի բայիւք եւ բառիւք եւ տառի-
ւանթերի եւ անաղալ գոլով. զի թէպէտ եւ յաղագս կա-
րեաց ի սոյնս ձեռնարկեցաք՝ սակայն եւ սատուել եւս
տան աւրինակի եւ ղաղափար այլոց լինելով սա բառ
յարմարութեան բանիցն. զի ամենայն որ համարձակ
գոյս տայէ առ ի յայլս փոխելոյ ստանց երկբայութեան
եւ կասկածանաց» :

դեստին եւ Փոքր Ասիա. իսկ Զորեքկինն Որոգինեայ Tetraplaն է, որ հանուած էր Որոգինեայ Վեցիչեանէն: Հաւանօրէն նախադաղափար օրինակը, որմէ թարգմանուած է, Ղուկիանոս վկայի († 312) բնագիրն է, կազմուած յԱնտիոք, որ տարածուեցաւ Անտիոք—Կ. Պոլիս գծին վրայ: Այս խումբերու մասին մեր տեղեկութիւնը կը պարտինք Ս. Յերոնիմոսի, որ այսպէս կը գրէ[14]. Alexandria et Aegyptus in septuaginta suis Hesychium laudat auctorem, Constantinopolis usque Antiochiam Luciani martyris exemplaria probat. Mediae inter has provinciae Palaestinos codices legunt, quos ab Origene elaboratos Eusebius et Pamphilius vulgaverunt, totusque orbis hac inter se trifaria varietate compugnat.

Թէ առաջին թարգմանութիւնը Ղուկիանեան, ուստի եւ Անտիոքեան բնագրէ եղած է, հաւանական կ՚ընծայեն հետեւեալ պարագաները. ա. Մաշտոց Անտիոքի հետ յարաբերութեան մէջ էր. բ. Առակաց գիրքը թարգմանուեցաւ ի Սամոսատ, որ Անտիոքեան ազդեցութեան տակ էր:

Կ՚ըսուի թէ «ուղղեալ է յԱղեքսանդրացւոց եւ յԵրուսաղէմացւոց օրինակաց. դարձեալ եւ ի Զորեքկնոյն Ովրիգենի»: Այս օրինակնե՞րն էին Կ. Պոլսէն բերուածները:

Որոգինէսի Զորեքկինէն կամ Զորեքիչեանէն են հայ հին ձեռագրաց մէջ տեսնուած

[14] Praef. in Paral.; Apol. adv. Ruf. 2, 27.

ատեղանիշք եւ լուսանցագրութիւնք[15] (Սիմաքոսի, Ակիւղասայ եւ Թէոդիոտնի ընթերցուածներով), որոնցմէ ինչ ինչ նաեւ բնագրի մէջ ագուցուած է:

Մ. Գարագաշեան[16] կը գրէ, թէ Աստուածաշունչի հայերէն թարգմանութիւնը եբրայականին հետ բաղդատած ժամանակ «պարմանօք դիտեցաք», «զի թէպէտ եւ թարգմանութիւն մեր զհետ երթայ բազում հաւատեաւ եւ ճշդիւ զթարգմանութեանն Եօթանասնից, ուրեք ուրեք խոտորեալ ի նմանէ, մերձենայ Եբրայական բնագրին: Ապաքէն կարեւոր խնդիր է, թէ ուստի՞ իցէ խոտորումս այս Հայերէնին ի թարգմանութենէ անտի Եօթանասնից»: Գարագաշեան մասնաւոր տեղիքներ մատնանիշ չ'ըներ: Թերեւս մուտ գտած ըլլան անոնք Զօրեքիշեանէն, ուսկից փոխառութիւններ կը տեսնուին յառաջ. կը յիշեմ Եօթանասնից բնագրէն ροϑμξν

[15] Այս տեսակէտով ուշադրութեան արժանի է էջմիածնի թ. 199 (Սաղմոսք, Առակք, Բանք ժողովողի, Երգ երգոց, Իմաստութիւն, Մեծ եւ Փոքր մարգարէք), գրուած Կոստանդին գրչէ ի Վանկունք Դրազարկի 1271ին: Ի լուսանցս կը նշմարուին աստեղանիշք եւ Սիմաքոսի եւն ընթերցուածք: Գրիչը կը գրէ. «Արդ... որք պատահիք այսմ գրոյ... համարձակ լերուք, զի բազում աշխատութեամբ ուղղեցի»: Որոգինի Զօրեքիշեանի ընթերցուածները կը տեսնուին նաեւ Դ. Թագաւորութեանց լուսանցքներու վրայ: Այս լուսանցագրութիւններէն կազմուած է ապա հաւաքածոյ մը՝ «Անուանք հեբրայեցի յՕրէնս եւ ի Մարգարէս եւ ի Նոր Կտակարանս՝ թարգմանեալ եւ մեկնեալ ի Հեբրայեցւոցն ի յոյնս եւ ի յունէն ի հայս»: Այս հաւաքման վրայ պիտի խօսինք ուրիշ տեղ:

[16] Աստուածաշունչ մատեան հին եւ նոր Կտակարանաց: Կ. Պոլիս 1895, Ցառաջաբան:

երրայական բառը (Գ. Թգ. ԺԹ. 4), որ հայերէնի մէջ թարգմանուած է «բեւեկնի» հաւանօրէն Զօրեքիջեանէն ուր կ՚ըսուի. Ակիւղաս՝ ἀρκεύθον (գիհի, բեւեկնի), Սիմմաքոս՝ σκέπης, Այլք՝ κυπαρίσσου[17]:

Բարհեբրէոս[18] կ՚ենթադրէ, որ հայ թարգմանութիւնը աչքի առաջ ունեցած ըլլայ ասորերէն բնագիր մը: Բայց զայս հաստատել չենք կրնար: Կան տեղիքներ Հայերէնին մէջ, որոնք համաձայն են Պեշիտտոյի ընթերցուածներուն, բայց անոնք աւելի հասարակաց աղբիւր մը կ՚ենթադրեն, քան փոխառութիւն ուղղակի ասորերէնէ[19]:

Չենք ուզեր ասով ուրանալ թէ նախնիք Ս. Գրոց ինչ ինչ մասեր նաեւ ասորերէնէ թարգմանած չըլլան: Ունինք վկայ Մնացորդաց գիրքը, որ թարգմանուած է նաեւ ասորերէնէ, առանց տարակուսի նոյնին յունարէնէ կատարուած թարգմանութենէն յառաջ: Առաջին եռանդը թելադրած էր թարգմանիչներուն անյապաղ հայացնել Աստուածաշունչը իր մասերու մէջ, առանց խտրութիւն դնելու բնագրի եւ բնագրի մէջ: Բայց յետոյ, երբ առաջին ոգեւորութիւնը տեղի տուաւ խոհականութեան, ուշադրութիւն դարձուեցաւ

[17] F. Wutz, Onomastica sacra, I. Leipzig 1914, էջ 523. սխալ է հեղինակին բացատրութիւնը:
[18] Հմմտ. J. Goettsberger, Die syro-armenischen und die syro-koptischen Bibelzitate aus den Scholien des Barhebräus. Zeitschrift für die alttest. Wissenschaft, 21 (1901), 101—141.
[19] F. Kaulen, անդ, 144:

*բնագրի մխտանականութեան. եւ նախադասութիւնը շնորհուեցաւ յունարէնի, որմէ նաեւ ստորականը կը բղխէր։*

*Աստուածաշունչ Մատեանին հայերէն թարգմանութիւնը հայ գրականութեան առաջին սկզբնաւորութեան անշուշտ խիզախ ձեռնարկութիւն էր։ Լեզու մը, որ տակաւին գրական հաստատութիւն չունէր, պիտի բարբառէր աստուածեղէն պատգամները, պատգամներ, որոնք ճշդիւ ընծայելու համար նոյն իսկ դասական գրականութեամբ յղկուած եւ իմաստասէր հանճարներու գրչին տակ դիւրաթեք հելլէն լեզուն անբաւական գտնուած էր։ Բառեր, գաղափարներ, որոնք օտար էին հայ մտքին, որոնց համար չունէր հայ լեզուն համազօրներ, պիտի արտայայտուէին հայերէն, եւ այն ըստ ծանրութեան նիւթին՝ յարած բնագրին, խղճմտօրէն։ Հարկ էր նոր ոյժ, նոր իմաստներ զգեցնել բառերու, որոնք գործնական կեանքի մէջ մէկ նշանակութիւն ունէին, եւ բարդել բառեր, առանց լեզուին բռնազբօսիկ արուեստական նկարագիր տալու։ Կար աւելի դժուարութիւն ալ․ Եօթանասնից թարգմանութիւնը ենթարկուած էր տեղ տեղ եբրայաբանութեան։ Կապուելով բնագրին՝ պիտի փոխանցուէին անոնք յունարէնի միջոցով հայերէնի։*

*Դժուարութիւններուն առջեւ չընկճեցան թարգմանիչները։ Անոնք կապուելով հանդերձ խղճմտօրէն յոյն սկզբնագրին՝ գիտցան հաւատարիմ մնալ հայ լեզուի նկարագրին։*

Հայերէնի դիւրաթեքութիւնը օժանդակեց անոնց ձեռնարկութեան յաջողութեան ։ Եւ եթէ կիրարկուած են թարգմանութեան մէջ բառեր եւ ասութիւններ, որոնք օտար կ՚երեւան հայ ականջներուն, հոն ոչ թէ թարգմանչին ակարութիւնն է որ երեւան կուգայ կամ Հայերէնի աղքատութիւնը, այլ թարգմանչին սուրբ երկիւղածութիւնն է պատճառը, որով ուզած է ստրուկն ըլլալ սուրբ բնագրին, չայլայլելու համար իմաստը ։

Թարգմանութիւնը կատարած են զանազան անձինք՝ Սահակ եւ Մաշտոց եւ անոնց «գործակիցք»․ իւրաքանչիւրին բաժինը յանուանէ չենք կրնար մատնանշել․ բայց զգալի է անոնց ոճի եւ թարգմանութեան արուեստի զանազանութիւնը ։ Իւրաքանչիւր թարգմանիչ ունեցած է իւր ինքնայատուկ ոճն եւ թարգմանութեան արուեստի մասին իւր ըմբռնումը ։ Պէտք է նկատի առնել նաեւ, որ Աստուածաշունչ Մատեանին բոլոր մասերը հաւասարապէս ճոխութիւն չէին վայելեր․ ոմանք, ինչպէս Մովսէսի Հնգամատեանը, Սաղմոսք եւ Մարգարէութիւնք, ինչպէս նաեւ Նոր Կտակարանը կը պահանջէին աւելի լուրջ վերաբերմունք, քան Եսթեր, Յուդիթ եւ Մակաբայեցւոց գրքերը ։ Այս պատճառաւ ալ թարգմանիչները տեղ տեղ խստիւ կապուած են բնագրին եւ տեղ տեղ ընթացած են անկաշկանդ ։ Ըստ այսմ ալ թարգմանչական արուեստը ունի աստիճանաւորութիւն, խիստ բառականութենէն մինչեւ ազատ նմանողութիւն ։

*Հ. Յ. Գաթըրճեան*[20] *կը զանազանէ ոճի տարբերութիւններ հետեւեալ գրքերու մէջ.*

ա. *Ծննդոցէն մինչեւ Մնացորդաց գիրքը.*
բ. *Եզր եւ Նեէմի.*
գ. *Յուդիթ եւ Եսթեր.*
դ. *Երեմիայի Թուղթ առ գերեալսն ի Բաբելոն.*
ե. *Մակաբայեցիք.*
զ. *Աւետարանք.*
է. *Պետրոսի եւ Յուդայ կաթողիկեայ Թուղթք.*
ը. *Պաւղոսի Թուղթք:*

*Կորիւն կը գրէր թէ Սահակ եւ Եզնիկ* 436—438 *տարիներուն «զյառաջագոյն զյանկարծագիւտ զփութանակի թարգմանութիւնն» կ. Պոլսէն բերուած հաստատուն օրինակներու վրայէն կը հաստատեն: Թէ յորո՞ւմ կը կայանար այս «հաստատել»ն, չգիտենք: Ընդհանրապէս ըմբռնուած է թէ նորաբեր օրինակներու վրայէն սրբագրուած է փութանակի թարգմանութիւնը: Բայց ինձ կը թուի թէ հիմնական սրբագրութիւն մը կատարուած էր արդէն 436էն յառաջ: Ունինք այժմ Սաղմոսները, Սողոմոնի Առակք, Բանք Ժողովողի, Իմաստութիւն եւ Երգ երգոց, եւ Իմաստութիւնն Յեսուայ որդւոյ Սիրաքայ, որոնք հասած են մեզի թէ փութանակի թարգմանութեամբը եւ թէ անոր սրբագրեալ օրինակովը: Ոմանք համարած են որ այս կրկին խումբերը կրկին թարգմանութիւններ ըլլան: Ուշադիր համեմատութիւնը այս կրկին խումբերու իրա-*

[20] *Անտիպ պատուիկ:*

րու հետ եւ յունարէն բնագրին հետ չի հաստատեր այս կարծիքը:

Անշուշտ առաջին փութանակի թարգմանութիւնը երբ հրապարակ ելաւ, ունէր իր պակասութիւնը թէ թարգմանչին անփորձութեան եւ թէ լեզուի անհարթութեան կողմէ. սակայն եւ այնպէս տարածուեցաւ անիկա առաջին 20ամեայ շրջանին: Յետոյ միայն, երբ Սահակ եւ Մաշտոց թեթեւցան առաջին շրջանի տենդագին աշխատանքներէ եւ թարգմանիչները աւելի վարժութիւն ձեռք բերին թէ թարգմանութեան արուեստի եւ թէ յունարէնի գիտութեան մէջ եւ երբ հայերէն գրական լեզուն հարթուեցաւ եւ կոկուեցաւ, փոյթ տարուեցաւ առաջին թարգմանութիւնները «սրբել յարդել (յարդարե՞լ) եւ գիրացուցանել»: Վերաքննութեան ենթարկուեցան առաջին թարգմանութիւնները եւ մանր բաղդատութեամբ յունարէնի հետ ճշդուեցան ոչ միայն սխալ, չհասկցուած տեղիքներն, այլ եւ հայերէնի ակարութիւնները: Այս սրբագրուած թարգմանութեան օրինակներն ալ իրենց կարգին տարածուեցան:

Մինչեւ 1180 Աստուածաշունչի մասերը չէին հաւաքուած մէկ հատորի մէջ: Անոնք որոշ խմբաւորումներով առանձին հատորներ կը կազմէին: Էջմիածնի Թ. 141 (ԺԴ՞. դար) կ՚ամփոփէ միայն Մովսէսի Հնգամատեանը. Վիեննայի Թ. 542 (ԺԳ./ԺԴ. դար) Սողոմոնի գրքերը: Էջմ. Թ. 193 Սողոմոնի եւ Փոքր Մարգարէներու գրքերը: Էջմ. Թ. 195 Սաղ-

մոս, Սողոմոնի գրքերն եւ Յոբ: Վիեննայի Մխիթ. Մատ. Թ. 316 (ԺԳ. դար) Սողոմոնի գրքերն եւ Յոբ: Էջմ. Թ. 199 եւ 287 Յոբ, Սաղմոսք, Սողոմոնի գրքերն եւ Մեծ եւ Փոքր Մարգարէք: Վիեննայի Թ. 274 (1337) Սողոմոնի գրքերն, Յոբ, Փոքր Մարգարէք եւ Դանիէլի Տեսիլք: Էջմ. Թ. 183 (1308) Սաղմոսք, Սողոմոնի գրքերը, Սիրաք, Յոբ, Մեծ եւ Փոքր Մարգարէք: Անկէ կը տեսնուի թէ նախնաբար Սողոմոնի Առակք, Բան Ժողովողի, Երգ երգոց եւ Իմաստութիւն անբաժին էին իրարմէ եւ մէկ հատոր կը կազմէին. եւ յընթացս ժամանակի կցուած են անոնց Սաղմոսք, Յոբ, Մարգարէութիւնք եւն:

Ներսէս Լամբրոնացի երբ ձեռնարկեց մէկ հատորի մէջ ամփոփել Աստուածաշունչի մասերը, չգտաւ իր տրամադրութեան տակ ձեռագիրներ, որոնք ընծայէին իրեն մասանց արտագրելու օրինակները: Դատելով Աստուածաշունչի մասանց այժմեան հաւաքածոյէն, օրինակի համար Սողոմոնի գրքերը փութանակի թարգմանութեամբ միայն ծանօթ եղած են իրեն եւ զետեղած է զանոնք իր հաւաքման մէջ: Այս պատճառաւ ալ անոնք Լիակատար Աստուածաշունչի մէջ ուրոյն խումբ մը կը ներկայացնեն: Բայց կ'երեւայ թէ յետոյ օրինակողները անդրադարձած են արտաքոյ Աստուածաշունչի գտնուած օրինակներու այլազան ընթերցուածներուն եւ փորձած են ձուլել երկու խումբերը. երբ կամայական փոփոխութիւններ ալ տեղի ունեցած են:

Բանասիրութեան գործը պիտի ըլլայ ձեռագրական համեմատութիւններով վերականգնել առաջին փութանակի թարգմանութիւնն իր մէջ եւ անոր սրբագրուած օրինակը առանձին[21]:

Երկու օրինակներու իրարու հետ ունեցած սերտ կապակցութիւնը գեղեցիկ կերպով երեւան կը բերէ Ժողովողի Ա. 16 համարը. ուր տեղի ունեցած է անուշադրութեամբ տողերու եռեւառաջութիւն եւ կրկնութիւն, հաւանօրէն արդէն փութանակի թարգմանութեան նախաբնագրին մէջ, որ պահուած է նաեւ սրբագրեալ օրինակին մէջ: Այս տեղիքն է.

«Խօսեցայ ի սրտի իմում ասել, թէ Ահա մեծացայ <եւ յաւելի յիմաստութիւն> քան զամենեսեան որք էին յառաջ քան զիս յԵրուսաղէմ: Եւ եսու զսիրտ իմ գիտել զիմաստութիւն եւ զգիտութիւն [եւ յաւելի յիմաստութիւն քան զամենեսեան որք յառաջ եղեն քան զիս (որ քան զիս յառաջագոյն եղեն C) յԵրուսաղէմ]»:

Հաւանօրէն թէ Ա. եւ թէ Բ. խումբը, ուստի թէ փութանակի թարգմանութիւնն եւ թէ սրբագրութիւնը կատարուած է յունարէն մէկ ձեռագրի վրայէն, որ հոս այս աղաւաղուած ընթերցուածը կ'ընծայէր: Ձենք կրնար մատծել թէ երկրորդ «հաստատուն» բնագրին

[21] Այսպիսի փորձ մը կատարած է Դկտ. Հ. Համազասպ Ոսկեան, Երգ երգոցի Ա. եւ Բ. թարգմանութիւնը. ուսումնասիրութիւն եւ բնագիր: Վիեննա 1924:

*մէջ ալ նոյն աղաւաղումը մուտ գտած ըլլար եւ այսպէս նաեւ սրբագրութեան ժամանակ աննկատելի մնացած :*

*Այսպէս նաեւ* Իմաստութիւն Յեսուայ որդւոյ Սիրաքայ, *որուն առաջին փութանակէ թարգմանութիւնը տուաւ Զօհրապեան (Դ. Յաւելուած, էջ* 4—40) *եւ Սրբագրուած օրինակը լոյս տեսաւ Վենետիկ* 1833*ին :*

*Սրբագրիչ ձեռքը նկատելի է նաեւ Մակաբայեցւոց գրքերու մէջ. ուր սակայն թէ նախկինն եւ թէ սրբագրութիւնը պահուած են քով քովի :*

*Այս խնամոտ սրբագրութեան չեն արժանացած Նոր Կտակարանի առաքելական Թղթերը. ինչպէս կ՚երեւայ : Աւետարանը սակայն ունեցած է խղճամիտ թարգմանիչ մը : Բայց ժամանակը իւր աւերիչ ձեռքը դրած է ինչպէս Հին, նոյնպէս Նոր Կտակարանի վրայ : Փոփոխութիւններ, յատկապէս լեզուական, մինչ դէպի պարզութիւն ձգտող, կատարուած են նաեւ Նոր Կտակարանի մէջ, ինչպէս ձեռագրաց համեմատութիւնը կը վկայէ : Պիտի յիշեմ հոս Մատթ. ԻԵ.* 15, *ուր հնագոյն, դասական լեզուի յատուկ «ըստ իւրաքանչիւր կարի», պարզուած է յետնոց իմանալի ըլլալու համար «իւրաքանչիւր ըստ իւրում կարի», որ հող գտած է բոլոր ծանօթ ձեռագիրներու մէջ : Հնագոյն ձեւը պահուած է մեզի Վիեննայի Թ.* 3 *ճաշոցի մէջ, որ չէ ենթարկուած, հաւանօրէն Զ. դարէ սկսեալ, գրչագիր Աւետարաններու ազդեցութեան :*

*Ինչպէս ակնարկեցինք վերագոյն Աստուածաշունչի հայերէն թարգմանութիւնը մեզի համար միանգամայն ազգային գրականութեան արժէք ունի, մանաւանդ հայերէն լեզուի ուսման համար: Թարգմանիչները ստրուկը չեն եղած յունարէն բնագրին, չեն զոհած հայերէն լեզուն բնագրին, այլ հայացուցած են զայն, հայաբարբառ լեզու տալով աստուածախօս պատգամներու: Իրենց գրչին տակ[22] Ս. Գրքի գրական բոլոր սեռերը, պատմականը, մարգարէականն եւ վարդապետականը, գտած են հարուստ հայերէն լեզուի մէջ գեղեցկութեան, ոյժի եւ վեհութեան անկաւոր արտայայտութիւններ: Կարծես թէ հայերէն բառերն ու բայերը իբրեւ թուխ պատեան մը ծառայած են Սաղմոսներու իմաստին խորհրդական նսեմութիւնը վերընծայելու համար: Եսթերի եւ Յուդիթի պատմութեան թատերական գեղեցկութիւնը այնպիսի վայելչութիւն եւ շնորհք զգեցած է, որ կարծել կու տայ թէ սկզբնագիր եւ ոչ թարգմանութիւն եղած ըլլան այդ գրքերը: Նոյնպէս Մակաբայեցւոց Ա.—Գ. գրքերը հայերէն թարգմանութեան մէջ ճաշակաւորութեան ընտիր օրինակներ կարող են նկատուիլ: Անկարելի է անտարբերութեամբ կարդալ հայերէն թարգմանութեան մէջ այն նկարագրական պատկերները, որոնք կը տեսնուին մարգարէութիւններու մէջ տեղ տեղ. մանաւանդ*

*[22] Աչքի առաջ ունիմ Հ. Յ. Գաթըրճեանի մէկ անտիպ գրուածքը (պատառիկ):*

Եզեկիէլի Ողբը Տիւրոսի վրայ: Իսկ չորս Աւետարաններու մէջ կ'իշխէ ոճի անհամեմատ պարզութիւն, պատշաճեցուած կենարարի վարդապետական-առակաւոր ոճին: Ընդհակառակը Պաւղոսի թղթերուն մէջ կը ներկայանայ հայերէնը այնպիսի սաստիկ եւ ուժեղ, ջղուտ եւ աճառապատ նկարագրով, որ ակամայ կը գերէ ընթերցողին ուշադրութիւնը:

Իսկ ճշդութեան կողմէ թէեւ Հայերէնը կ'ընծայէր ամէն դիւրաթեքութիւն, յարմարցնելու ինքզինքը ամէն լեզուի եւ դրական ամէն տեսակի, բայց եւ այնպէս թարգմանիչներէն ոմանք թարգմանութեան ժամանակ հայերէնի գեղեցկութեան սիրոյն համար շնորհած են իրենք իրենց աւելի ազատութիւն քան որ կը ներէին սատուածեղէն պատգամներու խօսքերը: Այսպէս Յուդիթ, Սողոմոնի Իմաստութիւնը (ինչ ինչ տեղեր), Յոբ, Մեծ եւ Փոքր Մարգարէք (յատկապէս նկարագրական հատուածներու մէջ), բայց ամէնէն աւելի Եսթեր եւ Մակաբայեցիք, ինչպէս նաեւ Երեմիայի առ գերեալսն ի Բաբելոն Թուղթը, յատկապէս վերջինս, շատ բան տուժած են ճշդութենէ, մի միայն թարգմանչին զարդարելիկ ցանկութիւնը յագեցնելու համար: Ասոր հակառակ Ս. Գրոց մնացած մասերը, սկսեալ Ծննդոցէն մինչեւ Եզր եւ Նէեմի, Սաղմոսք, Առակք, Ժողովող, Երգ երգոց եւ բոլոր Նոր Կտակարանը այնպիսի սքանչելի ճշդութեամբ թարգմանուած են, որ կարծես նոյն իսկ մա-

*նիկներուն մէջ ուղուած է ըստ հնարաւորութեան հաւատարիմ մնալ բնագրին:*

*Աստուածաշունչ Մատեանը կը կարօտի քննական հրատարակութեան, համեմատութեամբ ծանօթ ձեռագիրներու: Բնագրի վերակազմամբ ինքնին պիտի լուծուին շատ մը խնդիրներ, որոնք այնքան բանավէճերու առիթ տուած են:*

---

## 8. ԵԶՆԻԿ ԿՈՂԲԱՑԻՈՅ ԹՈՒՂԹՆ ԱՌ ՄԱՇՏՈՑ ՎԱՐԴԱՊԵՏ

*Եզնիկ Կ. Պոլիս էր 435/36ին, երբ հասան հոն Ղեւոնդ եւ Կորիւն: Հաւանօրէն եկած էր քաղաքս 433/34ին (հմմտ. վերը էջ 55), եթէ ոչ աւելի կանուխ՝ 430/31ին արդէն: Թուղթս գրուած կ՚երեւայ Եփեսոսի ժողովէն ոչ շատ ետքը: Նպատակն է բացատրել Վարդապետին Եփեսոսի ժողովին խոստովանութիւնը: Եզնիկ համամիտ է հոս Կիւրեղեանց:*

*Այս կարեւոր թուղթը դժբախտաբար ամբողջութեամբ չէ հասած մեզի: Ունիմ աչքի առաջ հինգ հատակտորներ, զորոնք կ՚ուզեմ համադրել այստեղ:*

### ԹՈՒՂԹ ԵԶՆԿԱՅ ԱՌ ՍՈՒՐԲ ՄԱՇՏՈՑ

1․ Թուղթ [Պրոկղեայ եպիսկոպոսի առ սուրբն Սահակ հայրապետ Հայոց եւ] առ սուրբն Մաժդոց[1]:

*Երանի որ հանապազորդ լինիցին ի քաղցրահայեաց տեսիլ աստուածպէտ երեսացդ: Եւ զի՞ ասեմ հանապազ, այլ գոնեայ յաւուրս կամ յամիսս կամ ի տարեկանս: Ասացէ եւ*

---

[1] *Գիրք Թղթոց, էջ 1, տ. 1—2, տ. 3 (= T):*

*իմ անձն սատանայեալ. ո՞ անձէր զիս արժանի հատանել անկանել յասս աւետարանչիդ եւ ասել. Մեղայ յերկինս եւ առաջի քո. եւ չեմ արժանի եթէ անուանեցայց քո որդի, այլ համարեաց քոյով բազմագութ ողորմութեամբդ իբրեւ զմի ի վարձկանացդ: Եւ ուստի՞ ինձ այդ լինիցի, բայց եթէ յաղաւթից սրբոյդ. զոր մեծ պատերազմաւ միշտ ի վերայ արժանեաց եւ անարժանեաց ամենասուրբն Աստուծոյ հատուցանես:*

Ի[2] թղթոյն Եզնկայ Կողբացւոյ թարգմանչի, զոր գրեաց ի Կոստանդնուպոլիս առ Երանելին Մաշտոց վարդապետ (ի Հայս) յետ առաջնոյ ժողովոյն Եփեսոսի, յորում լուծին ի պատուոյ զՆեստոր Կոստանդնուպոլսի եպիսկոպոս:

*Եւ վասն հաստատութեան եկեղեաց, զոր կարծեաց յանկարծայարոյց հողմ մոլորութեան չարժել՝ յաղաւթից քոց տեսան սրբութեան դադարեաց. եւ ի միաբանութիւն եկին ամենայն եպիսկոպոսք Հռոմոց՝ ունել հաստատուն զառաջին Երեքհարիւրոցն հաւատս. եւ նզովեցին զի մի ոք իշխեսցէ գնել նորածին ինչ եւ աւտարոտի հաւատս, այլ ի*

ՏԱՐԲԵՐԱԿՔ. 6 *աւետարանիչս* T: — 15 *եկեղեցեայց* K: — 16 *յարուցանել* K: — 17 *եւ չարժել սուրբ աղաւթիւք ձեր դադարեաց* K. *աղաւթից* T: — 21 *հաւատ* K: *զի*] *որ* T. *գնել* չունի K: — 22 *հաւատս*] *հաւատալ* K:

---

[2] *Հոս կ՚ըսկսի Կնիք հաւատոյ, էջ* 130. *տ.* 1—20 (= K), *այսպիսի խորագրով:*

Նորին վերայ չինել եւ զնոյն ուսուցանել, խոստովանել զՔրիստոս Աստուած ճշմարիտ Որդի Աստուծոյ եւ միածին, ծնեալ ի Հաւրէ յառաջ քան զամենայն արարածս եւ տէր արարիչ ամենայնի, եւ զնոյն Բանն Աստուած ի վախճան ժամանակաց զգեցեալ մարմին՝ եղեալ վասն մեր մարդ առանց շրջելոյ եւ անկանելոյ եւ խախտելոյ յիւրմէ աստուածական ինքնութենէն, եւ ծնեալ ի սուրբ Կուսէն Աստուած՝ ըստ մարմնաւոր Ծննդեանն՝ մարդ կատարեալ. եւ կոչի եւ է Կոյսն Տիրածին եւ Աստուածածին: Եւ կատարեալն Աստուած առի մարդ կատարեալ. վասն զի կատարեալ անդամովք. եւ չնչապատեաց զիւր սուրբ մարմինն եւ ոչ իբրեւ մարդ եւ |||:

2. Եզնկայ Կողբացւոյ Թարգմանչի (թուղթ) ի Հայս [3]:

Մի Աստուած խոստովանիմք յանդիմանութիւն բազմանուն չաստուածոցն, ինքնակայ, անպատճառական, պարզական անյաւդական, արարիչ, ամենակալ, ամենազաւր, ամենագործ, հաստիչ եւ կազմիչ երեւելեաց եւ աներեւութից: Եւ ի նմանէն եւ ընդ նմա եւ առ նմին մի ծնունդն անսկզբնակից, արար–

23 ի սորին K: — 26 քան զյաւիտեանս եւ տէր ամենայն արարածոց K: — 27 ի վաղջան K: — 28 եւ եղեւ մարդ K: — 30 խախտելոյ չունի K: — յիւրոյ Բ յիւր K ուղղեցինք յիւրմէ: աստուածային T. ինքնութենէ K: — 34 ծնեալն K: — 35 կատարեալ] հաս կ՚ընդհատի K:

[3] Կնիք հաւատոյ, 51, տ. 12—30:

*չակից, համագուր, համագործ: Եւ մի Հոգի սուրբ Աստուծոյ մշտնջենաւոր բղխեալ եւ ընդ նմին եւ առ նմին արարչակից եւ գործակից Հօր եւ Որդւոյ: Այսպէս կատարեալ սուրբ Երրորդութիւն դաւանի սուրբ եւ Համաշխարհական եկեղեցիս, անմարմին, անզննական, անտարրական, կանխագէտ, յառաջիմայ քան զամենայն արարեալս եւ հաստատեալս, ի մի թագաւորութիւն եւ ի մի աստուածութիւն՝ յերիս անձինս կատարեալս: Զի ոչ անձն Հայր է անձն Որդւոյ, քանզի ոչ իւրոյ անձինն է Հայր, եւ ոչ անձն Որդւոյ է անձն Հայր, քանզի ոչ եթէ իւրոյ անձինն է Որդի. եւ ոչ անձն սուրբ Հոգւոյն է անձն Հայր կամ Որդւոյ, զի ոչ եթէ իւրոյ անձինն է Հոգի, այլ Աստուծոյ Հոգի:*

3. Ի թղթէն Եզնրնկայ որ առ Մաշդոց [4]:

*Բանն Աստուած ի վախճան ժամանակաց եղեալ վասն մեր մարդ առանց յեղաշրջելոյ [5] յիւրմէ աստուածութենէն [6]: Եւ ոչ բաժանի Էմանուէլն յերկուս առաջս. եւ ոչ մարդ որ եղեւ Աստուած յաւելուած Երրորդութեանն. այլ էն Աստուած եւ Որդի Աստուծոյ արժանի արար լինել մարդ անփոփոխելի [7] եւ անզատին*

---

[4] Ձեռ. Երուսաղէմի, Թ. 1110 (նոր՝ 574), թղ. 461 յամէ 1355/63): Հրտ. Ն. Մառ, Тексты и разыскания V (1903), 61—62: Վատիկանի Մատենադարանի Borg. arm. 31, թղ. 146ա (1632):

[5] Borg. չիջանելոյ իմացիր չրջելոյ:

[6] Տե՛ս Հատակոտոր 1. ա. 25—29:

[7] Borg. արար արժանի լինել զմարդիկն փոփոխելի:

յորովայնէ Կուսին յետ միաւորութեանն Բանին ընդ մարմնոյն ոչ ասի մարմին մարդոյ, այլ մարմին Աստուծոյ[8]:

4· Եզնկայ առ սուրբն Մաշտոց[9]:

Իբրեւ զիւր մարմին եւ ոչ իբրեւ զմարմին[10] մարդոյ ուրուք առանց Աստուծոյ Բանին խմանալ է զմարմին, որպէս դանդաչէրն Նեստորիոս եւ ոմանք յԱրեւելեայցն, այլ Բանին մարմին եւ նորին արիւն հեղեալ ի փրկութիւն աշխարհի· զի մարդոյ մարմին ի քաւութիւն աշխարհի ոչ կարէ լինել, այլ Աստուծոյ մարմին: Նոյնն էն Աստուած եւ Որդի Աստուծոյ արժանի արար լինել մարդ՝ առանց չրջելոյ եւ փոփոխելոյ յիւրմէ աստուածական էութենէն: Եւ ոչ այլ ուրուք են ծառայական կերպարանքն, զոր առ իւր, որպէս զի ոչ այլ ուրուք անհերեւոյթ պատկերն Աստուծոյ յորմէ ծնաւ. եւ է նորին պատկեր կերպարանաց: Եւ ոչ ասի տէրունական մարմինն յետ միութեան աստուածութեան եւ մարդկութեան անզատին ի ծննդենէն եւ յորովայն[11] մարմին մարդոյ Աստուծոյ, զոր առ ի մարմնաւորաց· եւ վասն այնորիկ է քաւութիւն ամենայն աշխարհի»:

---

[8] Տե՛ս հատուածը 4. տ. 8—18:

[9] Ձեռ. Վենետիկի Մխիթ. Մատ. Թ. 221, թղ. 176ր (յամէ 1255· հմմտ. Սարգիսեան, Ցուց., Բ., 321): Հրտ. Բազմավէպ, 1889, էջ 321:

[10] Բազմավէպ՝ իբրեւ զմարդոյ:

[11] Պէտք է խմանալ «յորովայնէ Կուսին»:

## 9. ՀԱՅԵՐԷՆ ԱՅԲՈՒԲԵՆԻ ԳԻՒՏԸ

1. *Չկայ որ եւ է փաստ հաստատելու համար, թէ 406էն յառաջ հայերէն լեզուն սեպհական նշանագիրներ ունեցած ըլլայ։*

*Հաւանօրէն թիւրիմացութեան վրայ յեցած է այն զրոյցը, զոր ի մէջ կը բերէ Փիլոստրատոս ի Վարս Ապողոնիոս Տիւանացւոյ*[1], *որուն համաձայն ի Տաւրոս վագր մը բռնուած է, որ կը կրէր մանեակ մը վրան գրուած հայերէն նշանագիրներով.* «ԹԱԳԱՒՈՐ ԱՐՇԱԿ ՆԻՒՍԵԱՑ ԱՍՏՈՒԾՈՅ», *ἐπέγραπτο Ἀρμενίου: γράμμασι· Βασιλεὺς Ἀρσάκης θεῷ Νυσίῳ. Առ այս կը գրէ* P. Peeters[2]: mais cette historiette, que son inanité même soustrait à la discussion, s'effondre sous on ne sait combien de démentis, à commencer par celui de la numismatique arsacide.

*Հայ Արշակունի թագաւորներն իրենց դրամներու վրայ յունարէն լեզուն եւ նշանագիրները կը գործածէին*[3]*։ Յունարէն գրուած են նաեւ Հայաստանի մէջ գտնուած հին ար–*

[1] II, 2, *տպ.* C. L. Kayser, *հատ. Ա.*, *էջ* 44. *Փիլոստրատոս ապրած է իբր* 210*ին յետ Քրիստոսի։*

[2] Revue des Études arméniennes, 9 (1929), 220.

[3] Sammlung Petrowicz, Arsaciden-Münzen. Wien 1904, S. 183—191, Tafel XXV.

ձանագրութիւնները հայ արքայից[4]: Հնագոյն շրջանին, երբ Հայաստան աքեմենեան պետութեան տակ էր, հաւանօրէն արամէական նշանագիրներով եւ լեզուով կը գրէին Հայերը իրենց պաշտօնական գրութիւնները[5]. իսկ Արշակունեաց եւ Սասա—

[4] Բաշ-Ապարանի մէջ գտնուած արձանագրութիւնը, հաւանօրէն յ. Ք.-ի Գ. դարէն, այսպէս ընթերցուած ունի, ըստ Ռոստովցեւի եւ Սմիռնովի վերծանութեան (Արարատ, 1915, էջ 219).

ιριδάτη(ς, ὁ μέγας μεγά(λης) Ἀρμενίας βα(σι)λεὺς ἔδοκεν Γε ||| τζύνη Γυντ(ου)νιη Ῥοδομίσ(του կամ Ῥοδομίθρου) υἱῷ εἰς ᾿αρτα ||| α (ὀρταριο?) πόλιν Νιγη(ν) φεβράρις ΚΧ ||| |||.

Այն է. «Տրդատ մեծ մեծին Հայաստանի (Հայոց մեծաց) արքայ ետ Գե ||| ծինէ (?) Գնդ(ու)նւոյ Հռոդոմիս(տեայ կամ Հռոդոմիթրայ) որդւոյ ի (կօշիկս) զքաղաքն Նիգ. Փեբրուարեայ ԿX......»:

Փաւստոս առ Սեբէոսի, 1 կը յիշէ արձանագրութիւն մ'ի Մծուրք «գրոշմեալ ի վերայ վիմի զամս եւ զաւուրս հինգ թագաւորացն Հայոց եւ Պարթեւաց յունարէն գրութեամբ», որ «ունէր վերնագիրն այսպէս. «Ես Ագաթանգեղոս գրիչ գրեցի... հրամանաւ քաջին Տրդատայ»: Այս Արձանագրութեան մասին տե՛ս Հանդ. Ամսօրեայ, 1938, էջ 19—23:

Յունարէն լեզուով նոր արձանագրութիւն մ'ալ երեւան եկաւ յԱրմաւիր. որուն համար կ'ըսուի թէ Սելեւկեան շրջանէ ըլլայ:

[5] Արամերէն լեզուի մասին տե՛ս O. G. Wesendonk, Über die Verwendung des Aramaeischen im Achaemenidenreich. Litterae Orientales, Orientalischer Literaturbericht, Heft 49 (1932, Leipzig, Otto Harrassowitz), S. 1—10. Նոյնը Հ. Յ. Տաշեանի թարգմանութեամբ եւ դիտողութիւններով՝ Արամերէնի գործածութիւնն Աքեմենեան պետութեան մէջ. Հանդէս Ամսօրեայ, 1933, էջ 209—231: Կը հաղորդեն Խորհրդային Հայաստանի թերթերը, թէ հոն գտնուած են վերջերս արամերէն արձանագրութիւններ:

*նեանց ազդեցութեան տակ՝ պահլաւ–պարսիկ նշանագիրներով*[6] :

*Արամէական, պահլաւ–պարսիկ, ինչպէս նաեւ յոյն եւ ասորի նշանագիրները, որոնք մուտ գտած էին Հայաստան մինչեւ Ե. դար, անզօր էին ընդգրկելու հայերէն լեզուի բազմաձայն հնչիւնները: Եղած են փորձեր, հայերէն նշանագիրներով գրելու յունարէն*[7], *բայց չէ հասած մեզի ոչ–հայերէն նշանագիրներով գրի առնուած հայերէն գրուածք հին շրջանէն :*

2. *«Զի ոչ էր գիր հայերէն լեզուին՝ բազում պակասութիւն լինէր ճշմարտութեան աւանդիցն առ աշակերտեալսն»* (*Սուտ–Կորիւն*, 16) :

*Հեթանոսութեան շրջանին, երբ մեհեաններու մէջ ամենայն ինչ անգիր աւանդութեամբ կ՚ընթանար, հայերէն լեզուի համար սեպհական գրի եւ գրականութեան պէտքը*

---

[6] *Այստեղ կրնանք յիշել Մ. Խորենացւոյ, Ա. 3, տեղիքս. «Բազում գործք արութեան գտանին գործեալ եւ ի մերում աշխարհիս եւ արժանի գրոց յիշատակի, զոր եւ ոչ մի ոք ի նոցանէ (ի հին Թագաւորաց) պէտ յանձին կալաւ մատենագրել...: Այլ ասիցէ ոք արդեօք.* վասն ոչ լինելոյ գիր եւ դպրութիւն ի ժամանակին...: *Այլ ոչ այսուքիկ կարծեցեալ լինի* (!). *քանզի գտանին...* գիր Պարսից եւ Յունաց. *որովք* [*այժմ*] *գիւղից եւ գաւառաց, եւս եւ իւրաքանչիւր տանց առանձնականութեանց եւ հանուրց հակառակութեանց եւ դաշանց* այժմ առ մեզ գտանին անբաւ գրուցաց մատեանք, *մանաւանդ որ ի սեպհական ազատութեան պայազատութիւն»* :

[7] *Կ՚ակնարկեմ հայերէն տառերով գրուած յունարէն պապիրոսը. տե՛ս այս մասին* G. Cuendet, A propos d'un papyrus grec en caractères arméniens. *Հանդէս Ամսօրեայ*, 1838, *էջ* 57—65:

չէր զգացուած: Փոխուեցան պայմանները, երբ մուտ գտաւ Հայաստան քրիստոնէութիւնը: Նոր կրօնը նոր պահանջքներ ներկայացուց: Քրիստոնէութեան հետ արեւմտեան քաղաքակրթութիւնը սկսաւ ներածուիլ երկրին մէջ: Եկեղեցւոյ քարոզիչները, որոնք քրիստոնէական վարդապետութիւնը պիտի մերձեցնէին ժողովուրդին եւ տնկէին անոր սրտին մէջ, արեւմտեան կրթութեամբ զարգացած անձնաւորութիւններ էին, քիչ չատ ծանօթ յոյն եւ ասորի դպրութեանց: Անոնք ստիպուած էին յոյն կամ ասորի քրիստոնէական գրականութենէն ծծել եւ սնանիլ եւ ապա հայերէն լեզուով աւանդել ժողովուրդին, բերանացի թարգմանութեամբ. իսկ ծիսակատարութիւնք տեղի կ'ունենային բնականաբար յոյն կամ ասորի լեզուներով: Դար մը ամբողջ այս պայմաններու մէջ ապրեցաւ Հայոց Եկեղեցին: Օր աւուր կը տարածուէր քրիստոնէութիւնը երկրին մէջ, բայց բարձրական վարդապետութիւնը խոր արմատներ չէր ձգեր ունկնդիրներու սրտերուն մէջ: Ինչ որ կը գրէ Փաւստոս Դ. դարու առաջին կէսին համար, կ'արժէ բովանդակ դարուն համար. «Զի ի վաղնջուց, յորմէ հետէ առին նոքա զանուն քրիստոնէութեանն, լոկ միայն իբրեւ զկրօնս ինչ մարդկութեան յանձինս իւրեանց եւ ոչ ջերմեռանդն ինչ հաւատովք ընկալան... ոչ եթէ որպէս պարտն էր գիտութեամբ յուսով կամ հաւատով. բայց միայն սակաւ ինչ զհանդամանս գիտէին հե-

լէն կամ ասորի դպրութեանց, որք էին հա–
տու ինչ այնմ փոքր ի շատէ: Իսկ որք արտա–
քոյ քան զգիտութիւն արուեստին էին այն
խառնաղանձ բազմութիւն մարդկան ժո–
ղովրդոց՝ նախարարացն եւ շինականու–
թեանն, եթէ զցայգ եւ զցերեկ նստեալ վար–
դապետացն եւ ըստ նմանութեան ամպոցն
իբրեւ զյորդահեղեղ ինչ անձրեւաց սատա–
կութիւն զվարդապետութիւնն ի վերայ հո–
ղէին, ոչ ոք ի նոցանէն եւ ոչ մի ոչ, եւ ոչ
մի բան եւ ոչ կէս բանի եւ ոչ գոյգն ինչ յի–
շատակ ինչ եւ ոչ նշմարանս ինչ զոր լսէինն՝
եւ ոչ կարէին ինչ ունել ի մտի» (Գ. 13):

Մաշտոց վարդապետ, որ հելլէն դպրու–
թեամբ քաջ մարզուած էր եւ ունէր իր
շուրջը դաստիարակուած աշակերտներ, երբ
աւետարանական քարոզութեամբ հաստատ
Գողթն, համոզուեցաւ շուտով, թէ խոպան
հողի վրայ կը վատնէ քրտինք, քանի որ ան–
գրագէտ է ժողովուրդը եւ հնարաւորութիւն
ալ չկայ բանիւ քարոզուածը նաեւ գրաւոր
դնել անոր առջեւ: Ընդհատեց քարոզչու–
թիւնն եւ վերադարձաւ Վաղարշապատ դար–
ման տանելու հայ ժողովրդեան անգրագի–
տութեան:

3. «Հասանէր, կը գրէ Կորիւն, առ սուրբ
կաթողիկոսն Հայոց... Սահակ, զոր պատ–
րաստական գտանէր նմին փութոյ հաւա–
նեալ»: Թէ Հայրապետն եւ թէ Վարդապետը
գրագէտ եւ լեզուագէտ անձնաւորութիւն–
ներ էին, հմուտ յոյն եւ ասորի լեզուներուն:

*Իրենց խորհրդակցութեանց նիւթն էր այժմ հնարել հայերէն լեզուի համար պատշաճ նշանագիրներ։ Թէ ի՞նչ եղաւ իրենց խորհրդակցութեանց արդիւնքը, չգիտենք*[8]*։ Ամէն ձեռնարկութենէ յառաջ ուզեցին ներկայացնել խնդիրը Հայոց թագաւորին եւ անոր հաւանութիւնն առնել։*

4. *«Ազդ առնէին ապա [եւ] զկանխագոյն խնդրելին ինքեանց թագաւորին Հայոց, որոյ անուն կոչէին Վռամշապուհ։ Յայնժամ պատմէր նոցա արքայն վասն առն ուրումն Ասորւոյ, եպիսկոպոսի Արդնի*[9]*, Դանիէլ անուն կոչեցելոյ, որոյ* յանկուցեալ իմն էր[10] *նշանագիրս աղփաբետաց հայերէն լեզուի։*

*Եւ իբրեւ պատմեցաւ նոցա յարքայէ վասն գտելոյն*[11] *ի Դանիէլէ, յօժարեցուցին*[12] *զարքայ՝ փոյթ առնել վասն պիտոյիցն այնոցիկ։ Եւ նա առաքէր զումն Վահրիճ*[13] *անուն, հրովարտակօք* <*հանդերձ*> *առ այր մի երէց, որոյ անուն Հաբէլ կոչէին, որ էր մերձաւոր Դանիէլի Ասորւոյ եպիսկոպոսի։*

---

[8] *Կորիւնի, էջ* 16, *տ.* 17—26 *«Եւ միանգամայն — համբերեալ» յարատեւութիւնն է էջ* 19, *տ.* 1—6 *պարբերութեան։ Կանխած է Կորիւն աւետել իւր ընթերցողներուն, թէ Մաշտոց եւ Սահակ ի վերջոյ յաջողեցան իրենց բարի խորհուրդն ի գլուխ հանել։*

[9] *Տպ. ազնուականի։*

[10] *Տպ. յանկարծ ուրեմն նշանագիրս։*

[11] *Տպ. գրելոյն։*

[12] *Տպ. յօժարեցին։*

[13] *Մ. Խորենացի, Գ.* 53 *ունի հոս. «առաքեաց հրեշտակութեամբ զայր մի պատուական յաշխարհէս եւ հաւատարիմ իւր, Խադունի ազգաւ, Վահրիճ անուն, յոյժ փափագող նորին գործոյ, առ Հաբէլն այն»։ Իսկ Կեղծ Ղ. Փարպեցի,* 14 *կը կարդայ. «առաքեալ*

Իսկ Հաբէլ զայն լուեալ՝ փութանակի հասանէր առ Դանիէլն: Եւ նախ ինքն տեղեկանայր ի Դանիէլէ նշանագրացն[14] եւ ապա առեալ ի նմանէ առաքէր առ արքայն յերկիրն Հայոց. ի Ե. ամի թագաւորութեան նորա ի նա հասուցանէր: Իսկ արքայն հանդերձ միաբանելովքն[15] Սահակաւ եւ Մաշտոցիւ ընկալեալ զնշանագիրսն ի Հաբելէն՝ ուրախ լինէին» (Կոր., 16—17):

Ո՞վ է Դանիէլ: Կորիւն կը պատասխանէ. «է ասորի, եպիսկոպոս ազնուական»: Եթէ Կորիւն կը շեշտէ անոր ազգն «ասորի», աստիճանն «եպիսկոպոս», նկարագիրն «ազնուական», պիտի պահանջուէր իրմէ, որ յայտնէր նաեւ անոր եպիսկոպոսական թեմը. որով պիտի իմանայինք, թէ ո՞ւր կը գտնուէր անիկա 406ին: Այն հանգամանքը, որ Վռամշապուհ Դանիէլեան նշանագիրները ստանալու համար կը դիմէ Հաբէլ երէցի միջնորդութեան, ցոյց կու տայ, որ 1. նա անձամբ ծանօթ չէր Դանիէլ եպիսկոպոսի հետ. եւ թէ 2. Դանիէլ Հայաստանի սահմաններէն

դեսպան զՎահրիճ ոմն անուն կոչեցեալ ի ծնողաց իւրոց հանդերձ հրովարտակաւ առ այր մի երէց Հաբէլ անուն»: Երկու հեղինակներու ալ աղբիւրը Կորիւն է: Ուշագրաւ է «Խադունի ազգաւ» ընթերցուածը, զոր չունին Կորիւն եւ Փարպեցի: Վahrič տիտղոս է քան յատուկ անուն. իսկ Խադունի տոհմը այլուստ անծանօթ: Հմմտ. այս մասին Հ. Յ. Տաշեան, Արշակունի դրամներ, Բ., էջ 256—263, ուր կնիք մը li Pērōč Xadūnĕ breh zi Narschĕ (Ես Պերոժ Խադունի որդի Ներսեհի) այս Վահրիճի վերագրել կ'ուզէ:

[14] Տպ. նշանագրոյն:

[15] Տպ. միաբան սրբովք. տե՛ս վերը՝ (էջ 16) «երանելի միաբանելոցն»:

գուրս կը գտնուէր. այլապէս կարող էր գանիկա ուղղակի արքունիք հրաւիրել. 3. Հարէլ երէց Թագաւորին հրամարտակը կ'ընդունի, կ'երթայ Դանիէլի քով, «տեղեկանայր» եւ նշանագիրներն «առեալ ի նմանէ առաքէր առ արքայն». անձամբ չի տանիր. որովհետեւ, ինչպէս պէտք է ենթադրել, ինքն ալ կը գտնուէր արտաքսման: Այս ըմբռնումը ունեցած է նաեւ Մ. Խորենացի, Գ., 52, երբ զԴանիէլ եպիսկոպոս «ի Միջագետս» կ'ենթադրէ:

Ինձ կը թուի թէ Կորիւն անպատճառ յիշած ըլլալու էր Դանիէլ եպիսկոպոսի թեմը. եւ եթէ այժմ կը բացակայի այն Կորիւնի բնագրին մէջ, պատճառը բնագրին եղծման վերագրելու է: Շատ կասկածելի կ'երեւայ ինձ «եպիսկոպոսի ազնուականի» ընթերցուած:

Կ'առաջարկեմ, ԱԶՆՈՒԱԿԱՆԻ կարդալ կա՛մ (եպիսկոպոսի) ԱՐԶՆԱՐԶԻՒՆ[16], կա՛մ (տանն) ԱՐԶՆԱԿԱՆԻ եւ կա՛մ ԱՐԶՆԻ (ԱՐԶՆԻ): Արզն[17] (Արձն) եւ Արզնարզիւն Աղձնեաց նահանգին գաւառներէն են, որոնք

[16] Արզնարզիւն գաւառն Աղձնեաց երկու անգամ կը յիշուի հայ մատենագրութեան մէջ. Եղիշէ, 10. «ի Կորդուաց եւ ի Դասն (այլ. Գզայն) եւ ի Ծաւդէ (այլ. Ծաւդէից) եւ յԱրզնարզիւն» (Ձեռ. յաղնարագուն). Թովմաս Արծրունի, 81. «Եկն եհաս յԱրզնարզիւն եւ յաշխարհն Մոկաց» (հմմտ. Հիւբշման, Հին Հայոց տեղւոյ անունները, էջ 183):

[17] Արզն կը տարածուէր «Բաթմանուէ մինչեւ Մոզիկկու մօտաւորապէս» (Հիւբշման, անդ, 177): Արզնի մասին մանրամասն տե՛ս անդ, էջ 30—32, 167—169:

Ասորիները *Arzūn (Arzōn)* եւ *Arzūn dĕ'al baita dĕ'wƏstan* կը կոչեն։ Եւ ճշդիւ այս միջոցին կը յիշուի Դանիէլ եպիսկոպոս Արզունի, որ ներկայ էր 410ին Մար Իսահակի եւ 420ին Մար Յաբբալայի ի Տիզբոն գումարած ժողովներուն[18]. հոն էին նաեւ Սամուէլ եպիսկոպոս Արզունի *dĕ'al baita dĕ'wstn*, Դանիէլ եպիսկոպոս Մոկաց (*Mwksāyē*) եւ Աբրահամ եպիսկոպոս տան Ռեհիմէի[19] (*Bēt Rehīmai*), որոնք Մծբինի մետրապոլիտութեան կ'ենթարկուէին։ Աղձնիք 363ին Մծբինի հետ Պարսից անցաւ. ունէր իւր բդեշխը, որ Պարսից իշխանութեան տակ կը կառավարէր աշխարհը. ուստի քաղաքականապէս եւ եկեղեցականապէս անկախ Մեծ Հայոց իշխանութենէն։

---

[18] Das Buch der Synhados, übersetzt und erläutert von O. Braun, Stuttgart 1900, SS. 32, 34, 46. Ասորի Դանիէլ եպիսկոպոսի նոյնութեան Արզունի Դանիէլ եպիսկոպոսի հետ ուշադիր եղած էր արդէն J. Marquart, Über den Ursprung des armenischen Alphabets, Wien 1917, S. 44—46.

[19] Աղձնեաց այս գաւառը, զոր Ամմիանոս Rehimena եւ Զոսիմոս Հրեմենայ (տուն) կ'անուանեն (Հիւբշման, Հին Հայոց տեղւոյ անունները, Վիեննա 1907, էջ 184), անգամ մը միայն կը յիշուի հայ մատենագրութեան մէջ, այն ալ աղաւաղուած ձեւի մէջ, այս պատճառաւ ալ մինչեւ ցայժմ անճանաչելի մնացած. Փաւստոս, Դ. 50, կը գրէ. «Բդեաշխն Աղձնեաց եւ Նոշիրական բդեաշխն եւ (իշխանքն) Մահկերտանն եւ Նիհորական(ի)ն եւ տանն Ռեհիմէին (տպ. Դասարնտրէին. Հիւբշման, անդ, հանգած է Դասն) եւ ամենայն նախարարութիւնն Աղձնեաց եւ զօրն եւ տունն տոհմին Աղձնեաց կողմանն ապստամբեցին յարքայէն Հայոց Արշակայ եւ չոգան եւ կացին առաջի արքային Պարսկաց Շապհոյ»։

Դանիէլ անձա՞մը յօրինած էր յիշեալ նշանագիրները, թէ իբրեւ աւանդ պահած էր իր մօտ: Հաւանականագոյն կ'երեւայ կարծել թէ նա ինքն յերիւրած ըլլայ, վասն զի ի վիճակի է նշանագիրներուն արժէքը բացատրել Հարէլի: Դանիէլ իբրեւ Աղձնեաց եպիսկոպոս ունէր իր հովուութեան տակ բազմալեզու ժողովուրդներ. բացի մեծաթիւ ասորի ժողովուրդէ կային հոն Հայեր, Ուրատացիներ, եւ սահմանի վրայ՝ Սասունցիք, Խութացիք են[20]: Բնականաբար այդ անդրադէտ, թերեւս մասամբ նաեւ հեթանոս ժողովուրդները քրիստոնէութեան շահելու համար հնարած պիտի ըլլայ Դանիէլ քարոզիչներ ուղարկելու անոնց. եւ այս առթիւ խորհած նաեւ անոնց խառնախօս լեզուներու համար նշանագիրներ հնարել, կարենալու համար Ս. Գրոց ինչ ինչ մասեր այդ լեզուներուն թարգմանել: Թոմաս Արծրունի, որ մանր տեղեկութիւններ հաղորդած է մեզի Խութի լեռնարնակ ժողովուրդի մասին, կը գրէ ի մէջ այլոց թէ անոնցմէ մաս մը «վրիպեալք են ի բնական հայրենի լեզուէն». բայց եւ այնպէս կան նաեւ այնպիսիներ, որոնք «գիտեն զՍաղմոսսն զհին թարգմանեալսն վարդապետացն Հայոց, զոր հանապազ ի բերան ունին: Սոքա են ղուեահք Ասորւոց» (էջ 121): Սաղմոսաց այդ «հին թարգմանութիւնը» հաւանօրէն Մաշտոցի թարգմանութիւնը չակ-

[20] Հմմտ. Հիւբշման, անդ, 53—56:

*նարկեր. այլ առեւլի հին մը, որ ըլլալու է Դանիէլ եպիսկոպոսի թարգմանութիւնը, ուստի Ասորեցիներու դաւանաբանութեամբ թարգմանուած բան մը:*

*Նկատմամբ Հարէլ[21] երէցի կ'ըսուի, թէ անիկա «մերձաւոր» մ'եղած է Դանիէլ եպիսկոպոսի, հաւանօրէն նաեւ ինքը ազգաւ ասորի: «Մերձաւոր» հոս առանց տարակուսի «ազգակից, արենակից, ազգական» իմաստով հասկնալու է. այլապէս պիտի սպասուէր, որ Կորիւն առընթեր դնէր «մերձաւոր տեղեաւ», եթէ «գրացի, բնակութեամբ մերձաւոր» իմացնել ուզէր:*

*Երբ կը գրէ Կորիւն թէ Հարէլ «նախ ինքն տեղեկանայր ի Դանիէլէ նշանագրացն», կը յայտնէ միանգամայն, թէ Հարէլ երէց իմաստուն, գրագէտ եւ քիչ շատ հայերէն լեզուին տեղեակ անձ էր որ կը կարողանար տարբ Դանիէլ եպիսկոպոսի բացատրութիւններն նկատմամբ իր հնարած նշանագիրներուն ըմբռնել, եւ անոնց մասին գրով տեղեկագրել Հայոց արքային:*

*Կորիւն որ եւ է ակնարկութիւն չէ ըրած, թէ Հարէլ երէց ի՞նչ առիթով ծանօթացած է Հայոց արքային. նոյնպէս թէ Վռամշապուհ ո՞ւր եւ որմէ՞ առիթ ունեցած է լսելու Դանիէլեան նշանագիրներու գոյութեան մասին: Կեղծ–Ղազար Փարպեցի, հաւանօրէն Կորիւնի պատմելու ձեւէն հեռեւցնելով, կը գրէ թէ*

---

[21] *Հարէլ տարական ձեւն է Արէլ անուան, յաճախ գործածուած Եփրեմի թարգմանութեանց մէջ:*

*ինքն Հաբէլ «աստցեալ էր յառաջագոյն ցարքայ»։ Յամենայն դէպս Հաբէլ երէց անձամբ ծանօթ եղած ըլլալու է Վռամշապուհին, իբրեւ հմուտ, հաւատարիմ եւ պատրաստակամ անձ։ Եւ իրօք ալ արքային հրովարտակն ստանալուն պէս «փութանակի հասանէր առ Դանիէլ»։*

*Ինձ կը թուի, թէ* Հաբէլ *երէց նոյն է* Հիբա *երէցին հետ, զոր Յոյները Իբաս կ'անուանեն*[22]*։ Երկու անուններուս մէջ ունինք Հ եւ Բ նոյն կարգով։ Կորիւնի ընդօրինակողը կարող էր փոքր անուշադրութեամբ իրեն անծանօթ* ՀԻԲԱ *կարդալ* ՀԱԲԷԼ*, ծանօթ անուն մը Ս. Գրքէն. գիտենք որ նոյն գրիչը* Պակիդա *անունն ալ կարդացած էր* Բաբիլաս*։ Բայց Հիբայի* Հաբէլ *փոփոխութիւնը կարող է եղած ըլլալ նաեւ* գիտակցօրէն*. Հիբա 432էն ետքը Միաբնեաներէ իբրեւ հետեւող Նեստորի դատապարտուցաւ*[23]*։* P. Peeters *կը գրէ առ այս. «Իբաս*

---

[22] *Չունիմ կռուան հաստատելու Հիբայի «մերձաւոր» ազգականութիւնը Դանիէլ Արձնի եպիսկոպոսի հետ։ Բայց հետաքրքրական է յիշել, թէ 449ի Եփեսոսի ժողովին գործոց մէջ երկար խօսք կ'ըլլայ Թառանի Դանիէլ եպիսկոպոսի մասին, որ քեռորդին էր Հիբայի (Իբասի). ան կը յիշուի նաեւ 444ի Անտիոքի ժողովին մէջ, «երիտասարդ» հասակի մէջ տակաւին* (Akten der ephesinischen Synode vom Jahre 449, syrisch mit G. Hoffmanns deutscher Übersetzung, herausgegeben von J. Flemming, Berlin 1917, S. 69)*. ուստի չէր կրնար 406ին իբրեւ եպիսկոպոս ի գործունէութեան ըլլալ։*

[23] *Հայ մատենագրութեան մէջ «Նեստորական Հիբայի» անունը մուտ գտած է Պարսկաստանի Միաբնեաներու միջնորդութեամբ, Զ. դարու առաջին տասա–*

չի յիշուիր հայ աղբիւրներու մէջ. եւ հարկ էր որ չյիշուէր. եւ եթէ նոյն իսկ յիշէր զա-նիկա Կորիւն, յետագային անխուսափելիօրէն պիտի ջնջուէր այդ նեստորականին յիշա-տակը Կորիւնի բնագրէն, սկսեալ այն վայր-կենէն, երբ յարեցաւ Հայոց եկեղեցին միա-բնակութեան». Հմմտ. նաեւ վերը, էջ 180:

Այսպէս ալ եղած է: Հիբա անունը ջնջուած է Կորիւնի բնագրին մէջ եւ անոր վրայ գրուած Հաբէլ:

Յանձին Հաբելի Հիբա (Իբաս) երէցն վեր հանելով դիւրըմբռնելի պիտի ըլլայ, թէ ինչո՞ւ Մաշտոց փոխանակ յԱրդն Դանիէլ եպիսկոպոսը փնտռելու, ուղղակի Եդեսիա կ՚իջնայ: Առ այս անշուշտ Հիբայի անունը

---

նեակին. անոնցմէ ուսած կը դրէ Բաբգէն կաթողիկոս իր «առ ուղղափառս ի Պարսս» Ա. թղթին մէջ այս-պէս. «Զայս առեն Նեստորիանոսքն ընդդէմ մեր ու-սուցութեամբ դրոց Դիոդորի... եւ Հաբայի» (Գիրք Թղթոց, 46). եւ առ նոյնս Բ. թղթին մէջ (որ հասած է մեզի 606ին յունարէն բնագրէ թարգմանութեամբ). «Նզովեմք զՆեստորիոս... զԻբա, զԱկակ, զԲարծումէ» (անդ, 50). իսկ 548ին Ներսէս Աշտարակեցի. «Նզո-վեմք... զՀիբա (Ձեռ. զԻքա) եւ զԱկակ» եւն (անդ, 57). եւ Արդիշոյ եպիսկոպոս «զԻբա, զԱկակ...» (անդ, 67). վարձեալ Յովհ. Գաբեղենցի առ Աղուանս թղթին մէջ. «Նզովեմք եւ զԻբա, զԱկակ... որք հնազանդեցան ժողովոյն Նեստորի» (անդ, 83): Պետրոս (Ալեքսան-դրացի՞). «բայց ուստի որք Քաղկեդոնացւոց ժողովն յայտնի յառաջ եկին ի բանս՝ Թէոդորիտոս եւ Յիբաս առաջնորդք նոցա, որք Նեստորի խորհրդակիցք էին համախորհուրդք եւ զուգութեան նորա լուծման յեպիս-կոպոսութենէն հասեալք...» (անդ, 103). յիշենք ի վերջոյ Անաստաս կայսեր «Թուղթն ընդդէմ ամենայն հերձուածողաց», զոր բերաւ Հայաստան Սիմէոն Բեթ-Արշամացի. «Նզովեմք... զՆեստորիոս... զԱնդրէաս եւ զՀիբաս» եւն (անդ, 278):

*մողիչ էր։ Սա բարեկամն էր Հայոց արքային. Թերեւս միաժամանակ նաեւ համբաւով ծանօթ մը Մաշտոցի իբրեւ ուսուցիչ հայ ուսանողներու, որոնք դեգերած էին եւ կը դեգերէին տակաւին անոր հովանւոյն տակ։ Յամենայն դէպս երբ որոշեց Մաշտոց իր մանկտւոյն մէկ մասը ձգել Եդեսիա, աչքի առաջ ունէր Եդեսիոյ «Հայոց եւ Պարսից» Դպրոցը*[24]*, եւ անոր վարիչ Հիբա «Թարգմանիչ» երէցը։*

5. *Ուրախութիւնը, զոր ունեցաւ Սահակ եւ Մաշտոց Դանիէլեան նշանագիրներու ի տես, շատ վաղանցուկ եղաւ։ Ի մերձուստ ուսումնասիրելով զայն՝ գտան անբաւական*[25]*. Կորիւն կը գրէ. «Իսկ իբրեւ ի վերայ հասանէին*[26] *(Սահակ եւ Մաշտոց), թէ չեն բաւական նշանագիրքն ողջ ածել զխեղորայս եւ զկապս Հայերէն լեզուին*[27]*, մանաւանդ զի եւ նշանագիրք իսկ յայլոց դպրութեանց քաղեալք եւ յանկուցեալք*[28] *դիպեցան, յետ այնորիկ դարձեալ կրկին անգամ ի նոյն հոգս դառնային եւ նմին ելս խնդրէին ժամանակս ինչ» (Կոր., 18)։*

*Ասկէ կը տեսնուի, թէ Դանիէլի հնարած նշանագիրները «յայլոց դպրութեանց», այս–*

---

[24] *Այս դպրոցի մասին տե՛ս վերը* 175—182։

[25] *Կորիւն, էջ* 17, *տ.* 19—27 *հատուածը այլուստ մուրուած զետեղուած է այս տեղ. այս մասին խօսած ենք այլուր։*

[26] *Տպ. հասեալ*

[27] *Տպ. լեզւոյն։*

[28] *Տպ. Թաղեալք եւ յարուցեալք։*

ինքն յոյն եւ ասորի նշանագիրներէ փոխառութեամբ կցկցուած էին. բնագրին «թաղեալք եւ յարուցեալք» յայտնապէս աղաւաղութիւն է. ընդօրինակողը քաղեալքը թաղեալք կարդալով յանկուցեալքն ալ յարուցեալք ուղղած է. յանկուցեալք Կորիւնի գրչին տակ «յարմարցուած» իմաստ ունի. այլուր կ՚ըսէ նոյն մատենագիրը թէ Հռուփինոս «զամենայն ընտրութիւն նշանագրացն ... միանգամայն յօրինել եւ յանկուցեալ» (19):

Այն պարագան որ Դանիէլեան նշանագիրք չէին բաւական «ողջ ածել զսիւղոբայս եւ զկապս հայերէն լեզուին», ցոյց կու տայ թէ կը բացակայէին անկէ ձայնաւորները, դոնէ ըստ մեծի մասին: Ասորին իր նշանագիրներուն հիմ ասորական նշանագիրներն առած կ՚երեւայ. հաւանօրէն գրչութիւնն ալ աջէն ձախ կ՚ընթանար:

6. Մաշտոց եւ Սահակ լքելով զանոնք «զարձեալ կրկին անգամ ի նոյն հոգս դառնային եւ նմին ե՛լս խնդրէին ժամանակս ինչ»: Ի վերջոյ «աշխարհահոգ խորհուրդն» կ՚որոշէ զՄաշտոց դաս մը մանկտւոյ հետ ուղարկել Միջագետք:

«Վասն որոյ առեալ երանելւոյն Մաշտոցի դաս մի մանկտւոյ հրամանաւ արքային եւ միաբանութեամբ սրբոյն Սահակայ... խաղայր գնայր ի Ե. ամի Վռամշապհոյ արքային Հայոց եւ երթեալ հասանէր ի կողմանս Արամի, ի քաղաքս երկուս Ասորւոց՝

որոց առաջինն Եղեսիա կոչի եւ երկրորդին Ամիդ անուն» (18) :

Մաշտոց աշակերտներու մէկ մասն Ամիդ եւ միւս մասն Եղեսիա զետեղելով, ինքը իր օգնականներու՝ Յովհաննէս Երզնկացւոյ եւ Յովսէփ Պաղնացւոյ հետ «անտի ի Մամուեստական քաղաքն գումարէր», այն ինքն է Մոպսուեստիա, ուրուն եպիսկոպոսն էր հռչակաւորն Թէոդորոս, բարեկամը Մաշտոց վարդապետին : Առանց տարակուսի Թէոդորոս Մոպսուեստացի տուաւ իրեն լաւ խորհուրդներ եւ օգտակար ցուցմունքներ, հայերէն լեզուի համար նպատակայարմար նշանագիրներ ձեւելու եւ անոր ձայնական հնչումներուն պատշաճ նշանաձեւեր յարմարցնելու : Այս տեղ ի Մոպսուեստիա ի գլուխ կը հանէ Մաշտոց հայերէն այբուբենի գիւտը : Կորիւն կը գրէ . «Այսպէս բազում աշխատութեանց համբերեալ վասն իւրոյ Ազգին բարեաց ինչ օճան գտանելոյ . որում եւ պարգեւէր իսկ վիճակ յամենաշնորհն[29] Աստուծոյ՝ հայրական չափուն[30] ծնանել ծնունդ նորոգ եւ սքանչելի՝ սուրբ աջովն իւրով[31]՝

---

[29] Տպ. «յամենաշնորհողէն», անաղան ժամանակի գրչէ մը մուծուած : Ագաթ., 433 ունի «յամենաշնորհն Աստուծոյ». Հմմտ. նաեւ Վարք Եւագրի, 2. «ամենաշնորհ աջողութիւն» :

[30] Ագաթ., 433 կը կարդայ. «հայրական չափոյն». Իսկ Փաւստ., Գ. 12, էջ 26. «հայրական չափոյն (տպ. չափոցն) նմանեալ ծնունդ» :

[31] Այս պարբերութիւնն գրեթէ ամբողջութեամբ ունինք Ագաթ., 432—433. «այսպէս բազում աշխատութեամբ տարեալ՝ վասն համաշխարհին բարեաց ինչ օճան գտանելոյ. որում եւ պարգեւէր իսկ վիճակ յա-

*նշանագիրս հայերէն լեզուին*[32]*: Եւ անդէն*[33] *վաղվաղակի նշանակեալ, անուանեալ եւ կարգեալ յօրինէր սիւղոբայիւք*[34] *եւ կապօք եւ ձայնատուր*[35] *նշանօք*[36]»:

*Յաջողած էր Մաշտոց յօրինել հայերէն լեզուի համար 36 նշանագիր, կազմել երկբարբառներ, նշանակել «ձայնատուր նշաններ»: Կը մնար տալ նշանագիրներուն ար–*

---

մենաշնորհն Աստուծոյ, հայրական չափոյն ծնանել ծնունդ նորոգ եւ սքանչելի, *պարգեւարաշխ* սուրբ աջովն իւրով»:

[32] *Հատուածիս մէջը կանխած էր Կորիւն յառաջ, էջ 16, տ. 19—24, ուր բնագիրը թէթեւ խանգարուած կ'երեւայ տողերու եսեւառաջութեամբ, զոր կ'ուղղեմ. Մաշտոց եւ Սահակ «միանգամայն յօժարութեամբ գումարեալ հանդերձ աղօթիւք մեծօք (տպ. մեծովք) առ Աստուած կանխէին՝ վասն ամենայն ոգւոյ քրիստոսաբեր փրկութեանն հասանելոյ. եւ զայն առնէին աւուրս բազումս, բազում հարց եւ փորձի եւ քննութեան զանձինս պարապեցուցեալ եւ բազում աշխատութեանց համբերեալ: Ապա եղանէր նոցա պարգեւական յամենաբարին Աստուծոյ յաջողել (տպ. ժողովել) զաշխարհահնոգ խորհուրդն երանելլի միաբանելոցն եւ ի գիւտ (տպ. եւ գիրս) նշանագրոց (տպ. նշանագրոյ) հասանել»:*

[33] *Տպ. անդ:*

[34] *Տպ. սիղոբայիւք:*

[35] *Տպ. չունի «ձայնատուր նշանօք»:* Ձայնատուր *ընտիր դասական բառ է. հմմտ. Արդիւնքն իսկ աղաղակեն եւ ձայնատուր լինին, Ոսկ. Պաւղ., Ա., 139. Մի անձամբ ձայնատուր փորձութեանցն լինիցիս, Ոսկ. Պաւղ., Բ., 485. Ձայնատուրս լինելով եւ ի միմեանս խրախոյս տալով, Վկ. Արեւ., 16. Արդընկէց ակդընկէց ձայնատուր ժամանակաւն, Բ. Մակ., Դ., 14. Զհաւգէտան ասէ եւ զձայնատուրսն, Ոսկ. Ես., 106. Կազմէր փայլատականց նմանութիւնս եւ ձայնատուրս հանդոյն որոտմանց բարբառոց, Եւս. Քրոն., Ա., 372:*

[36] *Պարբերութիւնս «որում եւ պարգեւէր — նշանօք» յառաջ բերած եմ Գ. Տէր–Մկրտչեանի վերակազմած բնագրէն. Արարատ, 1912, էջ 510:*

*տաքին տեսք, յղկել զանոնք գեղագիտօրէն եւ համաչափութեան ենթարկել ըստ պահանջման գրչութեան արուեստի: Ան այս յանձնարարութեան իրեն Հռուփինոս գրիչ:*

7· *«Եւ ապա հրաժարեալ յեպիսկոպոսացն սրբոց*[37] *հանդերձ օգնականօք իւրովք իջանէր ի քաղաքն Սամոսատացւոց, յորում մեծապատիւ իսկ յեպիսկոպոսէն եւ յեկեղեցւոյն մեծարեալ լինէր: Եւ անդէն ի նմին քաղաքի գրիչ ոմն հելլենական դպրութեան Հռուփինոս*[38] *անուն գտեալ, որ զամենայն ընտրութիւնս նշանագրոցն*[39] *զնրբագոյնն, զկարճն եւ զերկայնն, զառանձինն եւ զկրկնաւորն միանգամայն յօրինեալ եւ յանկուցեալ, ի թարգմանութիւն դառնային»: Կը թարգմանուի Առակաց գիրքը, «որ եւ գրեցաւ ձեռամբն*[40] *նորին գրչի, հանդերձ ուսուցանելով մանկունս գրիչս ի նմին դպրութեան»* (*Կոր·*, 19—20):

*Այսպէս ի գլուխ հանեց Մաշտոց Հայկական Այբուբէնի գիւտը:*

8· *Հայերէն նշանագիրներու գիւտին այս պատմութիւնը ջանացինք ուրուագծել միակ ժամանակակից պատմագրի, սքանչելի Կորիւնի խօսքերով, անտեսելով բոլորովին ա–նագանագոյն շրջանի հեղինակներն, ի մէջ այլոց Կեղծ–Ղազար Փարպեցին եւ Մովսէս*

---

[37] *Այսինքն Թէոդորոս Մոպսուեստացին:*
[38] *Տպ· Հռոփանոս:*
[39] *Տպ· նշանագրոյն:*
[40] *Տպ· ձեռամբն այնորիկ:*

*Խորենացին, որոնք թէպէտ զԿորիւն աղբիւր ունեցած են, բայց խեղաթիւրած են անոր խօսքերուն իմաստն եւ ինքնատեղծ յաւելուածներով հեռացած են իրողութենէն: Յստակ ակնաղբիւրին առջեւ նստած չեմ կարօտիր պղտոր ջուրերու: Անոնք, որոնք աշխատանք թափեցին ժամանակակից պատմագրին եւ անապանագոյն աղբիւրներու վկայութիւններն հաշտեցնել, կամ անոնց համաձայնութեամբ հայ նշանագիրներու գիւտի պատմութիւնն հիւսել, սխալատակ եղան: Կորիւն իր պարզախօս պատմուածքին մէջ հաղորդած է մեզի գիւտին պատմութեան հայող կարեւոր կէտերը. մանրամասնութիւնները որքան ալ ցանկալի ըլլան, անհրաժեշտութիւն չեն ներկայացներ:*

*Հայ նշանագիրներու ծագման նուիրուած քննութիւնները, ինչպէս թուով հարուստ, նոյնպէս իրենց եզրակացութիւններով բազմազան հանդիսացան:* 36 *նշանագիրներու ծագումը լուսաբանելու համար գրեթէ նոյնքան թուով ազգերու նշանագիրներ համեմատութեան առին. երեւան բերին հնադարեան նշանագիրներու հետքեր, մասնանշեցին նաեւ յետնադարեան նշանագիրներու ազդեցութիւն հայ նշանագիրներու մէջ. շատ քիչեր մնացին չափաւոր սահմանի մէջ: Ես նպատակայարմար կը համարիմ այստեղ անդրադառնալ այս կարգի քննութեանց: Հ. Աճառեան իր գեղեցիկ աշխատութեան մէջ, «Հայոց գիրը», ներկայացուցած է ար-*

դէն համառօտիւ այդ զանազան տեսութեանց ամփոփումը: Իմ ջանքս պիտի ըլլայ յաջորդ տողերուս մէջ Կորիւնի հետքերով ընթանալով մատնանիշ ընել հայ նշանագիրներու յառաջագայութիւնն եւ կերպաւորումը հայ այբուբենին:

9. Հայաստան չունէր իր սեպհական գրականութիւնը. բայց կային երկրին մէջ գրագէտ դասակարգ մը: Քրիստոնէութիւնը դար մը շարունակ քարոզուած էր հոն. արեւմտեան քաղաքակրթութեան ճառագայթները թափանցած էին հայ սահմաններէն ներս: Ասորագէտ եւ հելլենագէտ եկեղեցականներ կը շրջէին երկրին մէջ աւետարանական քարոզութեամբ եւ աստուածախօս պատգամները կը հնչեցնէին բեմերէն հայերէն լեզուով ի լուր հայ ժողովուրդին: Սերունդներ դաստիարակուած էին քրիստոնէական ոգւով: Հասունցած էր արդէն ժամանակը համաշխարհի համար ընդգրկելու գրականութիւնը, եթէ ժողովուրդին առաջնորդները մերձեցնէին զայն տոհմային լեզուով եւ սեպհական նշանագիրներով:

Նպաստաւոր էր ժամանակը նաեւ քաղաքական տեսակէտով: Ե. դարու սեմոց վրայ անդորրութիւնը կ'իշխէր հայ սահմաններէն ներսն եւ դուրսը: Պարսից եւ Հռովմայեցւոց մէջ լռած էր զէնքերու շաչիւնը: Արշակունեաց գահին վրայ կը բազմէր հայրենասէր եւ լուսամիտ թագաւորն Վռամշապուհ. իսկ հայրապետական իշխանութիւնը

կը գտնուէր Գրիգորի տան մէկ շառաւիղին, Մեծին Ներսէսի որդւոյն Սահակի ձեռքը, որ ինքնին հելլենական կրթութեամբ դաստիարակուած՝ բոլոր ոգւով հետամուտ էր իր հօտին մտաւոր բարգաւաճման: Թագաւորին եւ հայրապետին միջեւ կ'իշխէր կատարեալ համերաշխութիւն:

Երկրին այլ եւ այլ կէտերու վրայ կային վանական հաստատութիւններ, ուսկից կ'ելլէին շրջուն առաքեալներ, աւետարանական վարդապետութիւնը յեղյեղելու ժողովրդեան լսելիքներուն: Անոնց թուին մէջ էր Մաշտոց, որ հաւաքած իր շուրջը թիւ մը հոգելից հոգեկրօն միանձնաւորներու՝ կը հրահանգէ զանոնք, նոր եռանդով ժողովուրդի լուսաւորութեան գործին նուիրուելու:

10. Մաշտոց կարգուած է այժմ քորեպիսկոպոս. իր պաշտօնն էր շրջիլ գաւառներ եւ գիւղեր, քարոզել Աստուծոյ խօսքը եւ լուսաւորել հայ ժողովուրդը: Առած հետը իր աշակերտները կը հասնի Գողթն գաւառը: Ժամանակ մը կը գործէ հոն: Սերմանցանին սերմերը կը հոսեն ապառաժ քարի վրայ, ապարդիւն: Անգրագէտ ժողովուրդին բարձրական վարդապետութեան իմաստը անհասանելի կը մնայ. սաղմոսերգութիւնները, անգիր աւանդուած, տեղ չէին գտներ ժողովուրդին յիշողութեան մէջ: Այստեղ, առաքելական ասպարէզի վրայ, առաջին անգամ կ'անդրադառնայ Մաշտոց, թէ անգրագէտ է ժողովուրդը. կը պակսի հայ լեզուին սեպ-

հական այբուբէն եւ գրականութիւն: Կ'ընդհատէ քարոզութիւնը:

Իր մտածմունքն է այժմ թէ ինչ եղանակաւ կրնայ այս ցաւին դարման տանիլ կամ «իւրոյ ազգին բարեաց ինչ օձան գտանել», այսինքն Ազգը անգրագիտութեան վիհէն ի լոյս կորզել, «վասն ամենայն ուլուց քրիստոսաբեր փրկութեանն հասանելոյ», հնարաւորութիւն տալու ժողովուրդին մայրենի լեզուով լսելու եւ կարդալու աստուածակարդ հրամաններն եւ աւետարանական վարդապետութիւնները: Այս կրկին դրդապատճառները յորդորեցին զինքը անյապաղ մեկնիլ Գողթն գաւառէն եւ հասնիլ Վաղարշապատ, խորհրդակցելու Հայոց հայրապետին հետ:

Բացատրեց Մաշտոց հայերէն նշանագիրներ հնարելու եւ հայերէն գրականութիւն ստեղծելու անհրաժեշտ հարկը: Սահակ տուաւ իր հաւանութիւնը: Կը փութան երկուքն ի միասին դնել հարցը Հայոց Թագաւորի առջեւ. զոր կը գտնեն համակարծիք: Այս քաջալերական էր:

Յայտնի չէ, թէ Մաշտոց եւ Սահակ, երբ ներկայացան Թագաւորին, ունէի՞ն իրենց ձեռքի տակ հայերէն այբուբենի որ եւ է մշակուած նախագիծ: Կորիւն կը գրէ պարզապէս «ազգ առնէին զկանխագոյն խնդրելին». այսինքն իրենց քան զգիւտ գրին կանխագոյն խնդրելին:

Վռամշապուհ այս առթիւ խօսք կ'ընէ Աբրի Դանիէլ եպիսկոպոսի հայերէն նշա-

նշանագիրներու մասին: Նշանագիրները կը բերուին Հայաստան: Մաշտոց եւ Սահակ կ'ուսումնասիրեն զանոնք. եւ կը գտնեն անբաւական. «զի չէին բաւական նշանագիրքն ողջ ածել զսիւղորայս եւ զկապս հայերէն լեզուին»:

Կը տեսնուի ասկէ, թէ Սահակ եւ Մաշտոց ունէին որոշ չափով լեզուագիտական հմտութիւն, գտնելու համար Դանիէլեան նշանագիրներու գործնական արժէքը: Կը ստիպուին Սահակ եւ Մաշտոց լքել Դանիէլեան նշանագիրներն եւ իրենց ոյժի վրայ յեցած «նմին եւս խնդրէին ժամանակս ինչ», այս ինքն ուրիշ ճանապարհով հնարել հայերէն նշանագիրներ:

Աշխարհահոգ խորհուրդը կ'որոշէ, որ Մաշտոց իջնայ Միջագետք եւ հոն յոյն եւ ասորի գիտնականներու խորհուրդով ի գլուխ հանէ հայերէն այբուբենի կազմութիւնը:

11. Հարկ է այս տեղ նկատի առնել Մաշտոցի անձը: Կը հաւաստէ Կորիւն, թէ անիկա «ի մանկութեան տիան վարժեալ հելլենական դպրութեամբ», ապա «կացեալ յարքունական դիւանին»՝ մարզուած է զինուորական հրահանգներու մէջ. բայց յետոյ «լուսաւորեալ եւ թեւամուխ միջամուխ եղեալ յաստուածատուր հրամանացն հանդամանս», կ'ընտրէ եկեղեցական կոչումը եւ կը կարգուի քորեպիսկոպոս:

Իբրեւ քաջ տեղեակ հելլենական դպրութեան, ունէր Մաշտոց լեզուագիտական

հմտութիւն, իբրեւ Տարօնեցի ծանօթ էր մայրենի լեզուին, զոր ապա զինուորական ծառայութեան մէջ եւ առաքելական գործունէութեան ասպարէզի վրայ աւելի ճոխացուցած ըլլալու էր. իբրեւ զինուոր գիտէր դիմագրաւել ամէն դժուարութիւններու, եւ իբրեւ եկեղեցական վառուած էր սուրբ նախանձով ժողովուրդի մտաւոր լուսաւորութեան օժանդակելու: Այս բազմակողմանի կրթութիւնը կը սրէ իր մտքի տեսողութիւնը ոչ միայն նկատելու հեռուները, այլ եւ հնարագիտութեամբ ելք գտնելու կնճռոտ հարցերու մէջ: Դրուած էր իր առաջ պահանջքը, հայերէն լեզուի նազելի հնչիւնները նշանագիրներու կալի եւ կապանքի տակ դնելու: Նա գիտէր, թէ որքան դժուարին գործ է այնպիսի հնչիւններով ճոխ լեզուի մը անկատար նշանագիրներ յարմարցնել, անոր բառերու յօդական հնչիւնները գրով արտայայտել, ամենայն հարազատութեամբ լսելի ընել զանոնք նշանագիրներու տողերու մէջէն ներդաշնակօրէն, «ողջ ածել զսիղոբայս եւ զկապս հայերէն լեզուին»: Յունարէն ալփաբետը ունէր այդ ատակութիւնը. նոյնով պէտք է օժտուած ըլլայ նաեւ հայերէն այբուբենը, զոր յօրինել կը ձգտի:

Կամքը աննկուն էր, տոկունութիւնը՝ անսասան, կարողութիւնը՝ ծննդական, հնարագիտութիւնը՝ բազմահնար: Այս յատկութիւններով զինուած ճանապարհ ելաւ Մաշտոց:

12․ Յանձն առաւ Մաշտոց կարել հեռաւոր ճանապարհ, իջնալ Միջագետք, հարցնելու հմտագոյններու խորհուրդը։ Եդեսիա առանց տարակուսի տեսնուեցաւ Հիրա երէցի հետ։ Անկէ անցաւ Մոպսուեստիա, Թէոդորոս եպիսկոպոսի կարծիքն առնելու։

Այսպէս «բազում հարց եւ փորձի եւ քննութեան զանձն պարապեցուցեալ եւ բազում աշխատութեանց համբերեալ», յաջողեցաւ ի վերջոյ հանել ի լոյս գիւտը «Հայերէն լեզուի նորոգ եւ սքանչելի նշանագիրներուն» եւ այն «սուրբ աջովն իւրով»։

«Նորոգ» էին նշանագիրներն իրենց որպիսութեամբ, որովհետեւ չունէին իրենց նմանը օտար լեզուներու մէջ. «սքանչելի» տեսքովը եւ կատարելութեամբը։ Անոնք նորածին տարիքի մէջ արդէն կ՚երեւցնէին իրենց վրայ հայրական հասակ ծնանելու մտքեր։ Եւ իրօք ալ այդ այբուբենը յօրինուած էր իր մասերու մէջ կատարեալ, նրբութեանց մէջ զարմանալի, ամբողջութեան մէջ ներդաշնակ, հաշուի առնուած լեզուագիտական ամէն պահանջք. միով բանիւ ծնունդ խորհող մտքի, հմուտ լեզուագէտի եւ ճաշակընտիր արուեստաւորի։

13․ Կորիւն կը գրէ, թէ Մաշտոց եւ Սահակ «յետ բազում հարցի եւ փորձի եւ քննութեան» յաջողեցան «ի գիւտ նշանագրաց հայերէն լեզուին հասանել»։ Այս հարցափորձի ընթացքին անոնք նկատի ունէին առանց տարակուսի իրենց գրացի՝ յոյն, ասորի

եւ պարսիկ ժողովուրդները, որոնք տէր էին սեպհական այբուբէնի: Կրնանք այս ազգերու թուին վրայ աւելցնել նաեւ հրեայ ժողովուրդը, որուն զաւակները ամէն քայլափոխին պէտք է պատահէին իրենց, թէ պարսկական եւ թէ հռոմէական հողի վրայ: Մաշտոց, որ ի խնդիր էր հայկական նշանագիրներու, անշուշտ նախապատրաստական շրջանին անխտրականութեամբ ջանաց գաղափար կազմել այդ ազգերու նշանագիրներու մասին եւ անոնց արժէքը, ձեւն ու տարողութիւնը կշռել: Տարողութեան կողմանէ եբրայականն ու ասորականը համազօր էին. բայց կը գանազանուէին ձեւովը: Պարսկականը թէպէտ ճոխ հնչիւններով, բայց տկար էր տարողութեամբ եւ անհրապոյր արտաքնովը. թող այն պարագան, որ Աւեստան այդ նշանագիրներով գրի առնուած էր:

Կը մնար յունականը, որ թէ արեւմուտք եւ թէ արեւելք տարածուած էր, քրիստոնեայ աշխարհի գրականութեան հիմն էր, փորձուած եւ կատարելագործուած աւելի քան հազար տարիէ ի վեր. որով հելլէն փիլիսոփաներն արտայայտուած են եւ եկեղեցւոյ հայրերը խօսած: Հելլենական դպրութեան կարողութիւնն եւ տարողութիւնը ծանօթ էր Մաշտոցի անդստին «ի մանկութեան տիոց»․ անով սնած եւ դաստիարակուած էր իր միտքը: Այս պատճառաւ ալ երկար քննութեան պէտք չեղաւ որոշման գալու համար թէ խնդրելի նշանագիրներու համար դադա–

*վար օրինակ առնելու է հելլենական այբուբենը, որ յեցած էր ձայնական դրութեան վրայ, կարող էր «ողջ ածել զուգորդս եւ զկապս» յունարէն լեզուին:*

*Բայց յունական այբուբենը ունէր միայն 24 նշանագիր. որոնք բաւական չէին հայերէն լեզուի բազմազան հնչիւնները վերընծայելու հարազատութեամբ:*

*Այս դժուարութեան առջեւ բազմահնար արուեստաւորը դիմեց հնարագիտութեան: Իր ի գործ դրած արուեստը կը կայանայ հետեւեալ գծերու մէջ.*

ա. *Յունական նշանագիրները գրեթէ ամբողջութեամբ չահագործեց հայկական նշանագիրներու համար:*

բ. *Բայց գրեթէ ոչ մէկ յունական նշանագիր նոյնութեամբ առաւ իր այբուբենին մէջ: Ձեւափոխեց զանոնք առաւել կամ նուազ չափով:*

գ. *Յունականք ըստ մեծի մասին առ ի չեղ գծերու վրայ հիմնուած էին: Մաշտոց իր հայկականներն ուղղորդ եւ հորիզոնական գծերու վրայ ձեւեց: Իսկ ուր յունականը ուղղորդ եւ հորիզոնական գիծ կ'երեւցնէր, հոն հայկականը բոլորաձեւ կ'ընթանար: Գծերու այս փոփոխութեամբը կը կերպարանափոխուէր նշանագիրներու արտաքինը: Բայց եւ այնպէս զարմանալի ճշդապահութեամբ պահպանուած են յունականին նկարագրական հաստ եւ նուրբ գծերը հայկականին մէջ:*

դ. Ուր յունականին հնչիւնը համապօր էր հայկականին, առնուած է նոյնութեամբ:

ե. Այն հնչիւններու համար, որոնք յատուկ էին հայերէն լեզուին, հնարուած են նոր նշանաձեւեր, ձեւափոխութեամբ յունական մէկ կամ միւս նշանագրին, առանց նկատի առնելու գաղափար օրինակի հնչիւնը (Հ, Ձ, Ճ, Չ եւն):

զ. Երկու յունական նշանագիր, որոնց հնչիւնները կը պակսէին հայերէնի, շահագործուած են ուրիշ հնչիւններու համար (Յ եւ Շ). իսկ յուն. Կ կ'երեւայ թէ անտեսուած է: Ասոր փոխարէն հաշուի առնուած է յունական թուական նշանաձեւ մը (Ջ):

է. Երեք հնչիւններու համար նկատի առնուած են ասորական նմանահնչիւն տառեր (Լ, Խ, Ծ):

Այս եղանակով յաջողեցաւ Մաշտոց ձեւել հայկական հնչիւններու համար 36 նշանագիրներ: Ապա դասաւորեց զանոնք ըստ յառաջադասութեան, աչքի առաջ ունենալով միշտ յունական ալփաբետի շարքը: Կշռեց անոնց թուական արժէքը եւ դրաւ անոնց անունները:

Կը կարօտէին նորաձոյլ նշանագիրները ճարտար ձեռքի մը, որ տաշէր զանոնք եւ յղկէր գեղարուեստական եւ գեղագրական տեսակէտներէ: Այս գործը յանձնուեցաւ Հռուփինոս գրչի ի Սամոսատ:

14. Այս տեղ կարեւոր կը համարիմ քննութեան առնել Կորիւնի արտայայտու–

թեան եղանակը նկատմամբ Մաշտոցի աշխատութեան ձեւին, զոր նա կը կիրարկէ առթիւ հայերէն, վրացերէն եւ աղուաներէն այբուբէններու գիւտին :

ա. «Եւ այնպէս բազում աշխատութեանց համբերելով... որում պարգեւէր իսկ վիճակ յամենաշնորհն Աստուծոյ հայրական չափուն ծնանել ծնունդ նորոգ եւ սքանչելի՝ սուրբ աջովն իւրով, նշանագիրս հայերէն լեզուին : Եւ անդէն վաղվաղակի նշանակեալ, անուանեալ եւ կարգեալ յօրինէր՝ սիւղոբայիւք եւ կապօք եւ ձայնատուր նշանօք» (19) :

բ. «Հոգ ի միտ արկանէր սիրելին Քրիստոսի (Մաշտոց) եւ վասն բարբառոյ հիւսիսական կողմանն. եւ առեալ կարգէր նշանագիրս վրացերէն լեզուին ըստ շնորհացն տուելոց նմա ի Տեառնէ. գրէր կարգէր եւ օրինօք յարդարէր» (25) :

գ. Բենիամին երէց աղուան ազգաւ «եկեալ դիպէր նմա (Մաշտոցի). եւ նորա հարցեալ եւ քննեալ զբարբառս եւ զբանս աղուաներէն լեզուին՝ առնէր ապա նշանագիրս՝ ըստ վերնապարգեւ կորովի սովորութեան իւրում. եւ յաջողութեամբն Քրիստոսի շնորհացն կարգեալ եւ հաստատեալ կշռէր» (29) :

Կը տեսնուի ասկէ, թէ Մաշտոց իր առաջին աշխատութիւնը կ՚ուղղէր 1. «հարցնել եւ քննել», ուրիշ խօսքով «հարցի եւ փորձի եւ քննութեան» ենթարկել լեզուին ձայնաբանութիւնը :

2. «Նշանակել, գրել, կարգել, յօրինել» նոյնիմաստ բառեր են, որոնց միտքն է հնչիւններուն յարմարցնել, պատշաճեցնել նշանաձեւեր կամ նշանագիրներ:

3. «Անուանել». այսինքն նշանագիրներուն տալ անուններ:

4. «Կարգել», միաժամանակ թէ յօրինել է եւ թէ դասաւորել նշանագիրները, յատկապէս անոնց թուական արժէքը ճշդել:

5. «Օրինօք յարդարել» եւ «հաստատեալ կշռել» նշանագիրները նոյն զօրութիւն ունին, ինչ որ կ՚արտայայտէ «յօրինել սիւղոբայիւք եւ կապօք եւ ձայնատուր նշանօք». այն է նշանագիրներու կից կազմել հնչիւններու երկբարբառային դրութիւնը:

«Բազում հարց եւ փորձն եւ քննութիւնը» եւ «բազում աշխատութիւնք». ինչպէս եւ միամեայ դեգերումն ի Միջագետս առիթ աւելին Մաշտոցի տեսակցելու հմուտ անձանց հետ, գաղափարներ փոխանակելու անոնց հետ, եւ առոլ բազմակողմանի ծանօթութիւններ հաւաքելու լեզուներու եւ անոնց սեպհական նշանագիրներու մասին: Այս շրջանին ձեռք բերաւ Մաշտոց փորձառութիւն մը, թափանցելու նշանագիրներ արուեստագործելու գաղտնիքին: Այս փորձառութիւնը Կորիւն կ՚անուանէ «կորովի սովորութիւն»: Շնորհիւ այս վարժութեան կրցաւ Մաշտոց յետոյ նաեւ վրացերէն եւ աղուաներէն լեզուներու համար նշանագիրներ հնարել:

Անոր արուեստին բարձրութիւնը կը նկատենք մենք հայ նշանագիրներու կերպաձեւման մէջ։

15. Հայերէն այբուբենի կարգը ճշգրիտ կը համընթանայ յունական այբուբենի կարգին։ Այս կարգին մէջ Մաշտոց բանասիրական ճշգրտութեամբ մտանանչած է նաեւ նշանագրերու ծագումը յունականէն. կէտ մը որուն ուշադիր չեն եղած մինչեւ այսօր բանասէրները։ Ուշադրութեան արժանի են հետեւեալ պարագաները.

ա. Մաշտոց իւր նշանագիրները դասած է անոնց յառաջադայութեան կարգով։

բ. Նշանագիրներու մեծ մասը յունական նախադաղափարէ է։

գ. Կայ փոքրիկ խումբ մը, 3 թուով, որ ասորական ծագումէ է. ասոնք են լ. խ. ծ. որոնց յաջորդութիւնը ասորականին մէջ է՝ թուական արժէքը առնթեր դրուած. խ (8), լ (30), ծ (90)։ Մաշտոց ուզելով կի թուական արժէքը պահպանել, դասած է լ (30), խ (40), ծ (50)։

դ. ջ նշանագիրը կը յաջորդէ պին, որուն հետ համանօրէն որ եւէ աղերս չունի. հոս նկատի առնուած կ'երեւայ անոր թուական արժէքը յն. Ϙ նշանաձեւին հետ, 900 թուական արժէքով. եւ համանօրէն ծագումն ալ այս նշանաձեւէն յառաջացած է (տե՛ս վերը)։

Ե․ Ր կը յաջորդէ Տ-ին, համանօրէն հոս նկատի առնուած է Ր եւ Տ գրերու արտաքին նմանութիւնը մէկ կողմէն եւ Ռի եւ Րի հեռացումը միւս կողմէն։

Յունական եւ հայկական այբուբեններուն յաջորդութիւնը կը ներկայացնէ հետեւեալ տախտակը․

| | | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| Ա | *A* | | Ի | ˙ | | Մ | *M* | | Ս | C |
| Բ | *B* | | Լ | աս. | ܠ | Յ | *(ω)* | | Վ | Y |
| Գ | *Γ* | | Խ | աս. | ܚ | Ն | *N* | | Տ | *T* |
| Դ | *Δ* | | Ծ | աս. | ܨ | Շ | Ξ | | Ր | P |
| Ե | *E* | | Կ | *K* | | Ո | *O* | | Ց | *T* |
| Զ | *Z* | | Հ | *K* | | Չ | *O* | | Ւ | Y |
| Է | *H* | | Ձ | *K* | | Պ | *Π* | | Փ | *Φ* |
| Ը | *H* | | Ղ | *Λ* | | Ջ | Ϙ(900) | | Ք | *X* |
| Թ | *θ* | | Ճ | *Δ* | | Ռ | *P* | | — | *Ψ* |
| Ժ | *θ* | Թ | | | | | | | — | *ω* |

Այս 36 տառերէն միայն Փ անփոփոխ մնացած է։ Միւսներէն Ր եւ Ո թեթեւ փոփոխութիւն կրած են, այս ինքն Ո բոլորակին վարի կցուածքը բացուած է, նոյնպէս Րի մէջ։ Այս սկզբունքը կը տեսնուի նաեւ Bի մէջ, որ վերածուած է Բ։ Այս խումբին մէջ կրնանք դասել Թ, ծագած Θ էն. հոս Θի բոլորակը վարէն բացուած եւ աջէն դէպի ձախ վեր տարուած եւ կցուած է հորիզոնական գծին հետ, որ այժմ կտրելով աջ սիւնը դէպ ի դուրս կարկառած է։ Այս Թէն ծագած է Ժ, ուր ձախակողմեան սիւնը ի բաց ձգուած է։ Ժի վերի կտուցը յընթացս ժա-

*մանակի յապաւուած է, անշուշտ խուսափելու համար Ծի հետ շփոթութենէ:*

*Ա կ'ենթադրէ յունարէն A, որուն առ ի չեղ սիւնը ծառայած է Աին ձախակողմեան հիմնական սիւն, իսկ երկու նուրբ գծերով տարրակը նոյնութեամբ փոխադրուած է հիմնական սիւնին աջակողմը:*

*E, Z գրերու վերածումը Ե եւ Զ ձեւերու բացատրելի է:*

*Զ-ի կազմութեան սկզբունքով Λ վերածուած է Ղ, ուր առ ի չեղ գծերը ուղղորդ եւ եւ հորիզոնական գծերու վերածուած են: Այն պարագան որ Ղի կը յաջորդէ Ճ, կը թուի ինձ, թէ այն ալ յն. Λ էն ծագած է. Ճ հնագոյն ձեռագիրներու մէջ կը գրուի Δ, այս ինքն առ ի չեղ հիմնական սիւն, ապա նրբագիծ խարիսխ մը, որուն կցուած է ձախ կողմէն առ ի չեղ հիմնական սիւնը խաչաձեւող նուրբ գիծ մը: Λ ունի այս թանձր եւ նուրբ գծերը, բայց կը պակսի հոն նրբագիծ եռանկիւնի խարիսխը: Պատահական է եթովպականին հետ նմանութիւնը:*

*Կ, որուն երկրորդ սրունքը ձեռագրաց մէջ վարէն դէպի ձախ միտում մը ցոյց կու տայ կազմուած է յն. Kէն, ուստի Kի առաջին սիւնը եւ երկրորդին առ ի չեղ թանձր գիծը տուած են Կի երկու սրունքներն եւ նուրբ գիծը կազմած է զօդման գիծ:*

*Մաշտոց Կէն ետքը կը դասէ Հ, նշան, թէ անոր ծագումն ալ K էն է. արդեամբք ալ*

հնագիր Հ-ի մէջ կը տեսնենք ճշդիւ K ի առ ի շեղ կրկին գծերը, իսկ հիմնական ուղղորդ գծիկը դուրս ինկած է:

Հաւանօրէն K էն ծագած է նաեւ Ձ, այնու որ K ի ուղղորդ գիծը վերածուած է կիսաբոլորի եւ անոր վարի ծայրին կցուած է <. այս պատճառաւ ալ Ձ կը յաջորդէ Հ-ին:

Յ առանց տարակուսի յունական ω է. կանգուն դիրքի մէջ: Այս նշանագիրը գետեղուած է Մի եւ Նի մէջ ապահովապէս բաղաձայններու շարքը կիսաձայնաւորով մը ընդհատելու համար:

M եւ N զգալի փոփոխութիւն կրած են Մ եւ Նի մէջ, բայց փոփոխութեան այս ձեւը Մաշտոցի գրչին տակ սովորական երեւոյթ է:

Շ կը համապատասխանէ կարգին մէջ Ξ ի. Մաշտոցի ծանօթ էր անշուշտ, որ Արտաշատ եւն յունական գրութեանց մէջ Αρταξατα, Αρταξης կը գրուէր. ուստի Շ = Ξ:

Չ կը յաջորդէ Ոի, ուստի հաւանօրէն ծագած է յն. ο էն. արդեամբք ալ O բոլորակը վարէն բացուած եւ աւելցուկը կցուած է աջ ծայրը դէպի աջ, այսպէս Չ:

Պ կը համապատասխանէ յն. Π որուն երկու սիւնակները վերածուած են երեքի, որոնք աստիճանաբար կ'երկարին:

Ջ կը յաջորդէ Պէի. բայց անհաւանական կ'երեւայ ինձ, թէ աղերս ունեցած ըլլայ Պի հետ: Ջի թուական արժէքն է 900. իսկ 900ի

համար յոյները նշանաձեւ ունէին Ϙ. որդ այս նշանաձեւերէն կը ստանանք ձեւ մը, որմէ Մաշտոց դիւրաւ կրնար կազմել Զ: Այլազգ հարկ պիտի ըլլար աչքի առջեւ բերել յն. Ξ:

Ռ կրկնագիր / է, թէ ըստ ձեւին եւ թէ ըստ հնչման, ուստի ΡΡ. Մաշտոց Ռ նախապատիւ համարած է քան Ր կարգին մէջ:

Ս յն. C նշանագիրն է վերնահայեաց դիրքով այսպէս ◡ լաւ եւս կրկին դէմ ( ):

Վ հաւանօրէն գետեղուած է հոս դարձեալ բաղաձայններու յաջորդութիւնը ընդհատելու համար. ծագմամբ Վ եւ Ւ կ'ենթադրեն յն. Υ, որ նախ ⊢ եւ ապա վ եղած է:

Տ կ'ենթադրէ յն. Τ որուն սիւնակին վրայ նստող հորիզոնական գծիկի ձախակողմեան մասը կցուած է սիւնին ոտքն դէպի ձախ միտումով: Ուստի Տ:

Այս Τ էն ծագած է Ց, այնու որ ⊓ եղած ◡ եւ սիւնը Ɔ, ապա Ց (հմմտ. Զ):

Ք ծագած է Χ էն, թանձր առ ի չեղ սիւնը կանգուն գրուած եւ առ ի չեղ նուրբ գիծը անոր վրայ հորիզոնական ձգուած:

Այսպէս 36 նշանագիրներէն 32ը իրենց հիմ ունին յունական նախագաղափար:

Իսկ 3ը փոխ առնուած են ասորերէնէ եւ պատշաճեցուած հայկական գրերու նկարագրին. ասոնք են

Լ, ասր. Δ, դէպի աջ ուղղուած:

Խ, ասր. ω, զոր յեցուցած է Մաշտոց սիւնի մը:

Ծ, ու. յ (երր. Ÿ), վերածուած ց :

*Յունարէն ι հայերէնի մէջ սատցած է Ի ձեւը. ինձ կը թուի թէ յաւելուածը ատրա-կան ◡ (երր. ) նշանախեցն է (յոտ, յովտ), որ կցուած է յունական ι ին. առով ստա-ցուած է Ի (նոյն շրջանին յունական ι սովոր չէին գրել նաեւ Ϊ, ուստի կարելի է մտածել նաեւ թէ այդ երկու կէտերէն կազմուած ըլ-լայ յիշեալ յաւելուածական մասը) : Նկատի առնելով, որ ատրականէ փոխ առնուած յի-շեալ երեք գրերը Իին կը յաջորդեն, հաւա-նական կ'երեւայ, թէ Ի ունի ատրականին հետ աղերս մը :*

16. *Նշանագիրներու թուական արժէքը :* — *Մաշտոց իւր նշանագիրները յօրինելու ժամանակ ուշադիր եղաւ նաեւ անոնց թուա-կան արժէքին :*

*Յունական այփաբետը, որ* 24 *նշանագրէ կը բաղկանար, ընդունած էր երեք նշանա-ձեւ իբրեւ յաւելուած, բարձրացնելու հա-մար նշանագիրներու թուական արժէքը : Ստացուած* 27 *թիւը բաժանական էր* 9*ի վրայ* 3 *անգամ, որով երեք տասներորդական միութիւն կարելի էր վերընծայել նշանա-գիրներով. այսպէս* α΄—θ΄ (1—9), ι΄—ϟ΄ (10—90), ρ΄—Ϙ΄ (100—900), *չորունակու-թիւնը նոյնին կրկնութեամբ այսպէս* ͵α—͵θ (1000—9000 *եւն*) :

*Ասորին իւր* 22 *նշանագիրներով կրնար կազմել միայն* 1—400 *թուական արժէքը, չա-*

բունակութեան համար պիտի դիմէր կրկնութեան։

Հայկական հնչիւնները կը պահանջէին աւելի թուով նշանագիրներ։ Մաշտոց հարկադրուած էր գոհացում տալ այս պահանջքին։ Բայց ջանաց ամփոփուիլ որոշ սահմանի մէջ, հաշուի առնելով նշանագիրներու թուական արժէքը. ընտրեց 36 թիւը, որ բաժանական էր 9ով 4 անգամ. եւ կարող էր 4 տասներորդական միութիւն ընդգրկել, այսպէս. Ա—Թ (1—9), Ժ—Ղ (10—90), Ճ—Ջ (100—900) եւ Ռ—Ք (1000—9000)։ Տարունակութիւնը՝ 10·000—900·000 նմանութեամբ յոյնին կարելի էր տալ Ա—Ք։

Բնականաբար այս դասաւորութեամբ անհնարին պիտի ըլլար զուգընթացութիւնը յունականին հետ։ Ուշադրաւ է սակայն, որ 1—5, 8—9, 30, 90, 900 զուգընթաց են. իսկ ρ´ (100), σ´ (200) կը համապատասխանեն Ռ (1000) եւ Ս (2000) գրերուն։ Յունարէն ϟ (90) եւ Ϙ (900) նշանաձեւերուն նմանութիւնը Ջ (900) նշանագրին հետ աչքի կը զարնէ։

17. Հռուփինոս գրիչ։ — Այս 36 նշանագիրները դրաւ Մաշտոց ի Սամոսատ համբաւուած Հռուփինոս գրչի առջեւ, որպէս զի բարեզարդէ զանոնք արտաքին տեսքով եւ գրչական արուեստի կատարելութեամբ։ Նշանագիրները, որոնք անտաշ կերպարանքի մէջ էին, պէտք է տաշուէին, յղկուէին եւ զգենուին գեղարուեստական հանդերձանք.

*մէն մի նշանագիր պէտք է ունենար իւր ինքնուրոյն, ինքնատիպ նկարագիրը:*

*Գրչութեան արուեստը ունէր իր գաղտնիքը: Այլ արուեստ է նշանագիրներ հնարելը, եւ այլ արուեստ զանոնք գործնական կեանքի պայմաններուն յարմարցնելը: Հռոփինոսի գործը պիտի ըլլար հաստատացնել զանոնք եւ գործնական ասպարէզի վրայ դիւրամատոյց ընծայել: Հարկ էր նախ տալ անոնց ձախէն աջ յառաջընթաց ուղղութիւն. բառնալ ամէն արգելք, որ կարող էր կասեցընել գրչին ընթացքը. անկանոն գծերը գրչութեան արուեստի օրէնքներու ենթարկել. ապա զանազանել թանձր եւ նուրբ, կարճ եւ երկար գծերը, որոնք կը կազմեն գրերու նկարագիրը, եւ ուսողական ճշգութեամբ անոնց չափերը ստուգել եւ իրարու հանդէպ կշիռը ներդաշնակել:*

*Կորիւն այս աշխատանքը կ՛ակնարկէ, երբ կը գրէ, թէ Հռոփինոս «զամենայն ընտրութիւնս նշանագրացն՝ զնրբագոյնսն <եւ զթանձրագոյնսն>, զկարճն եւ զերկայնն, զառանձինն եւ զկրկնաւորն միանգամայն յօրինեալ եւ յանկուցեալ»: Այս ինքն գեղագիրն Հռոփինոս խնամով զանազանեց թանձր եւ նուրբ, կարճ եւ երկար գծերը, ըլլան անոնք ինքնակաց կամ զուգընթաց, եւ զանոնք իրարու քաջ պատշաճեցուց եւ ներդաշնակութեան բերաւ:*

*Այս առթիւ ճոխացաւ հայ գրչութեան արուեստը նաեւ պատուագրութեան եւ կի-*

տադրութեան նշաններով, նմանութեամբ յունականին։

«Սիղոբայք եւ կապք եւ ձայնատուր նշանք»։ Դանիէլեան նշանագիրներն անբաւական նկատուեցան, վասն զի «չէին բաւական ողջ ածել զսիղոբայս եւ զկապս հայերէն լեզուին». այս ինքն այդ նշանագիրներն ի վիճակի չէին հայերէն լեզուի առոգանութիւնը հաւատարմութեամբ վերընծայել։ Մաշտոց «յետ բազում հարց եւ փորձի եւ քննութեան» յաջողեցաւ իւր նշանագիրներուն այն առաւելութիւնն ալ տալ. «կարգեալ յօրինէր զանոնք սիւղոբայիւք եւ կապօք եւ ձայնատուր նշանօք»։

Մաշտոց ինչպէս նշանագիրները ձեւելու ժամանակ աչքի առաջ ունէր յունական աղփաբետը, նոյնպէս այս կէտի մէջ իրեն առաջնորդ ընտրեց յունական ձայնաբանական օրէնքին, «սիւղոբայից» կազմութիւնը։ Այս խղճամիտ քննութեամբ մխեցաւ մանրամանր մանրամասնութեանց մէջ, աւելի քան պէտք էր թերեւս։ Հոս հանդէս բերաւ իր գիտնականութիւնն եւ բանասիրական ճշդրտախնդրութիւնը։

Կանոն առնելով յունական աղփաբետը, որոշեց նախ ձայնաւորներն այսպէս.

| | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| α | ε | η | (η) | ῑ | ῐ | ο | υ | (ω) |
| ա | ե | է | (ը) | ի | | ո | ւ | վ |

Կարեւոր համարեցաւ մուծել իւր այբուբենին մէջ ը, որ անհրաժեշտ ձայն մըն էր

հայ վանկական կազմութեան համար. իսկ ω տեղ չունէր հայ ձայնաբանութեան մէջ, զոր դուրս ձգեց եւ փոխարէն մուծեց Յ, որուն գլխաւոր ծառայութիւնն պիտի ըլլար երկարացնել հայ ա, ե, ի եւ ո ձայներուն ուժը (նախադիր եւ վերջադիր):

Այս ձայնաւորներու բաղադրութեամբ կազմեց երկբարբառներ, նմանութեամբ յունարէնին. այսպէս.

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| αι | ει | οι | αυ | ευ | ου | ω |
| այ | եի | ոյ | աւ | եւ | ու | ով |
| ουα | | | | | | |
| ուա | (վա) | ուէ | (վե, վէ) | ուի | ուու | |

Երկբարբառներուս հնչիւնը, որ Ե. դարուն յունականին մերձաւոր էր բազմօք, յընթացս դարերու ենթարկուած է ձայնափոխութեան, առով նաեւ գրչութեան մէջ տեղի ունեցած են այլափոխութիւններ. կը յիշեմ եի = էի, եւ = իւ, եաւ, ուու = ւու եւ ու եւ այլն:

Տեղս թոյլ չի տար միջամուխ ըլլալ երկբարբառներուս ձայնաբանութեան մէջ. մատնանիշ կ'ընեմ հոս Հ. Աճառեանի քննութիւնը, Հայոց գրեր:

Մաշտոց վարդապետ իւր նորագիւտ հայերէն նշանագիրները հրապարակ հանեց 407ին: Այդ յանկարծագիւտ նշանագիրներով գրի առնուած առաջին մատեանն եղաւ Սողոմոնի Առակաց գիրքը: Անցաւ այնուհետեւ գրականութիւնը նորանոր հատորնե-

րով · տարածուեցան անոնց պատճէնները օրինակութիւններով եւ հասան մինչեւ մեզի ։ Ապրեցաւ գիրը 1530 տարի. եւ թարմ է դեռ իր ոյժին մէջ ։

18 · Ժամանակի երկար անջրպետի մէջ ինչպէս քաղաքական կեանքը տեսաւ իր ելեւէջները, նոյնպէս գրականութիւնը ապրեցաւ իր յեղափոխութիւնները · անոնց հետ նաեւ գիրը ։ Դժուար է այսօր գծել գրի զարգացման պատմութիւնը ժամանակագրական յաջորդութեամբ · որովհետեւ ժամանակը չէ հասցուցած մեզի առաջին հինգ դարերէն գրաւոր յիշատակարաններ, նկատի չառնելով քարեայ յիշատակարանները ։ Միակ ձեռագիր մատեանը, որ հնութենէն հասած է մեզի, Լազարեան Ճեմարանի ձեռագիր Աւետարանն է, գրուած 887ին, Սահակ Վանանդեցի գրչին ձեռքով, հաւանօրէն ի Կարս, ուստի ճշդիւ գրի գիւտէն 480 տարի ետքը ։

Այս միջոցը, որ կը պատէ զմեզ 407էն, կրնանք կարկատել միայն քարեայ յիշատակարաններու տուեալներով ։ Ունինք Տիկորի Եկեղեցւոյ արձանագրութիւնը իբր 490էն, Հոփիփմէի Եկեղեցւոյ արձանագրութիւնը 618էն, Բագարանի եւ Մաստարայի արձանագրութիւնները 540էն եւ այլն ։

Համեմատութեան առնելով նշանագիրներու նկարագիրը այս քարեայ յիշատակարաններու վրայ եւ 887ի ձեռագիր Աւետարանի մէջ կը հանինք այն համոզման, թէ

հայերէն գրերը թէեւ ոչ մեծ, բայց զգալի փոփոխութիւն կրած են դարերու ընթացքին։

Յեցած ստացուած արդիւնքի վրայ կրնանք որոշել նշանագիրներու աստիճանական զարգացման փուլերը, որոնք կը կազմեն հայկական այբուբէնին զարգացման ժամանակագրական պատկերը, զոնէ Ձ.—Թ. դարերու համար։ Կարելի է ըսել թէ զարգացման ընթացքը դանդաղ եղած է։ Այս հանգամանքը ենթադրել կու տայ, թէ այբուբէնին այն արտաքին կերպարանքը, զոր կը տեսնենք Ձ.—Ժ. դարերու քարեայ յիշատակարաններու վրայ, եթէ ոչ նոյն, բայց յամենայն դէպս նման էր Ե. դարուն ի գործածութեան եղած այբուբենին։

Պատկերը, զոր կը ստանանք այս եղանակով, կրնայ ծառայել մեր ձեռքը կռուան, ժամանակագրօրէն դասաւորելու նախնեաց ձեռագիրներու այն մնացորդները, որոնք հասած են մեզի թէեւ անթուական, բայց կը կրեն իրենց վրայ խոր հնութեան կնիք։ Խօսքս մագաղաթեայ հատակտորներու վրայ է, որոնք կը տեսնուին յաճախ ձեռագիրներու կողքին։ Երբ այս մագաղաթեայ հատակտորները համեմատութեան կը դնեմ քարեայ յիշատակարաններու հետ, կը կանխեմ ուշադրութիւն հրաւիրել այն հանգամանքի վրայ, որ գրիչը մագաղաթի վրայ կը գործէր այլ պայմաններու մէջ եւ փորագրիչը քարի վրայ կ՚արձանագրէր այլ պայմաններու մէջ։

Բայց եւ այնպէս զարմանալի են երկուքի քով ալ տարած ջանքերը՝ պահպանել նշանագիրներու սեպհական նկարագիրը:

Այս տեսակէտէ ի վաղուց գրաւած էին իմ ուշադրութիւնս այն չորս մագաղաթեայ թուղթերը, որոնք պահուած են իբրեւ պահպանակ Վիեննայի Մխիթարեան Մատենադարանի Թ. 279 ձեռագրին մէջ (Հարանց վարք յամէ 1640): Հատակոտորներս հանուած են հնագիր Աւետարանէ մը եւ կը բովանդակեն Ղուկասի Աւետարանին վերջին մասը՝ ԻԳ, 46—ԻԴ, 53: Գրչութեան ձեւը բազմօք կը տարբերի ծանօթ երկաթագիր ձեռագիրներու գրչութենէն եւ գուշակել կու տայ թէ գրիչը ուրիշ դպրոցէ է, նաեւ ժամանակով շատ հին շրջանի կը պատկանի, քան թուականով ծանօթները, յամենայն դէպս աւելի հին է քան Մոսկուայի Աւետարանը: Ինձ կը թուի, թէ կարելի է հատակոտորներս համարել Է.—Ը. դարէն, եթէ ոչ աւելի հին: Կը տեսնուին հոն Կորիւնի չեշտած նրբայոյն (եւ թանձր), կարճ եւ երկայն գծերը իրենց հարազատութեան մէջ:

Կը ներկայացնեմ այս տեղ Զ.—Թ. դարերու ընթացքին գործածուած նշանագիրներու ձեւերը. համեմատական տախտակի մէջ:

Ա. սիւնը կը պատկերէ յունարէն այբուբենը, այնպէս ինչպէս Դ. եւ Ե. դարերու մէջ երեւան կու գան ձեռագիրներու մէջ ըստ Gardhausenի:

*Բ. սիւնը կը ներկայացնէ Վիեննայի Թ. 279 ձեռագրին այբուբէնը։*

*Գ. սիւնակ, Տիկորի արձանագրութիւնը։*

*Դ. սիւնակ, Բագաւանի արձանագրութիւնը։*

*Ե. սիւնակ, Մաստարա։*

*Զ. Մոսկուայի Աւետարանի այբուբէնը։*

---

ՀԱՄԵՄԱՏԱԿԱՆ ՏԱԽՏԱԿ Զ.—Թ. ԴԱՐԵՐՈՒ ԸՆԹԱՑՔԻՆ ԳՈՐԾԱԾՈՒԱԾ ՆՇԱՆԱԳՐԵՐՈՒ ՁԵՒԵՐՈՒՆ

| 350—450 | Թ. 279 | Տեկոր 490 | Հռիփսիմէ 618 | Կրուճ 668 | Աւետ. 887 | Թ. 456 |
|---|---|---|---|---|---|---|
| α α | Ա Ա | Ա Ա | Ա | Ա | Ա Ա | Ա |
| Β Β | Բ Բ | Բ | Բ | Բ | Բ | Բ Բ |
| Γ | Գ Գ | Գ | Գ | | Գ Գ | |
| Δ Δ | Դ | | Դ | | Դ Դ | |
| Є Є | Ե Ե | Ե | Ե | Ե | Ե Ե | |
| Ζ Ζ | Զ Զ | Զ | Զ Զ | | Զ Զ | Զ Զ |
| Η | Է Է | | Է | Է | Է | ԶԶԷ |
| | Ը | | Ը | | Ը | |
| θ Θ | Թ Թ Թ | Թ | Թ | Թ | Թ Թ | |
| | Ժ Ժ | | Ժ | | Ժ | |
| Ϊ ^ | Ի Ի | Ի | Ի | Ի | Ի Ի | Ի |
| ⅄ | Լ | Լ | | | Լ Լ | |
| ϻ | Խ | | Խ | Խ | Խ Խ | Մն |
| Ϛ Ꮷ | Ծ Ծ Ծ | | Ծ | Ծ | Ծ | |
| Κ Κ | Կ Կ Կ | Կ | Կ | Կ | Կ | Կ |
| | Հ Հ | Հ | | Հ | Հ Հ | |
| | Ձ Ձ | Ձ | Ձ | Ձ | Ձ Ձ | Ձ |
| Λ Λ | Ղ | Ղ | Ղ | Ղ | Ղ | Ղ |
| 1. Աւարի. 2. Երր. | 1. Մոզայիկ Երուսաղեմի. 2. Մաստարա | | | | | |

## ՀԱՄԵՄԱՏԱԿԱՆ ՏԱԽՏԱԿ Զ.—Թ. ԴԱՐԵՐՈՒ ԸՆԹԱՑՔԻՆ ԳՈՐԾԱԾՈՒԱԾ ՆՇԱՆԱԳՐԵՐՈՒ ՁԵՒԵՐՈՒՆ

| 350–450 | Թ. 279 | Տեկոր 490 | Հրիփսիմէ 618 | Արուճ 668 | Աւետ. 887 | Թ. 456 |
|---|---|---|---|---|---|---|
| | Ճ | | Ճ | | Ճ Ճ | |
| Μ Μ | Մ | | Մ | Մ | Մ | Մ Մ: |
| Ω ω | Յ Յ | Յ | Յ Յ | Յ | Յ Յ | Յ:Յ |
| Ν Ν | Ն Ն | Ն | Ն Ն | Ն | Ն Ն | Ն Ն |
| Ξ Ξ | Շ Շ | Շ | Շ | Շ | Շ | Շ |
| Ο Ο | Ո Ո | Ո | | | Ո | |
| | Չ | | | | Չ | |
| Π Π | Պ | Պ | | | Պ | Պա- |
| | Ջ | | | | Ջ Ջ Ջ | |
| Ρ | Ռ | Ռ | | | Ռ Ռ | |
| C C | Ս | | | | Ս | |
| | Վ Վ | Վ | Վ | | Վ | Վ |
| Τ | Տ | Տ | | Տ | Տ | |
| Ρ Ρ | Ր | | | | Ր | |
| Τ | Ց | Ց | Ց Ց | Ց | Ց Ց | |
| Υ | Ւ | Ւ | | Ւ | Ւ | Ւ |
| Φ Φ | Փ | | | | Փ | |
| Χ Χ | Ք | | Ք | | Ք | Քր Ք |
| | 1. Մրէն 2. Մաստարա | | | | | |

## 10․ ՎՐԱԿԱՆ ՆՇԱՆԱԳԻՐՆԵՐՈՒ ԳԻՒՏԸ

1․ Վրաց Տարեգիրքը կը պատմէ, թէ Փառնաւազ թագաւոր «ետ հրաման ամենայն երկրին խօսել զլեզուն Վրաց»։ Այսպէս համաձայն հայերէն թարգմանութեան[1]։ Վրացերէն բնագիրը այս նախադասութեան կը կցէ յաւելուած. «գրոց եւ գնչանագիրան հնարեաց»։ Տարեգրոց հայերէն թարգմանութիւնը կատարուած է ԺԲ․ դարէն ոչ շատ յառաջ. եւ եթէ կը պակսի հոն յիշեալ յաւելուածը, կայ լուրջ պատճառ կարծելու թէ այն՝ վրացերէն օրինակին մէջ յետոյ մուծուած ըլլայ։ Ցամենայն դէպս կը պակսի այսօր մեր ձեռքը որ եւ է յիշատակարան, գրուած վրացերէն լեզուով Ե․ դարէն յառաջ, որ կարենայ հաւատ ներշնչել մեզի, թէ Վրացիները Ե․ դարէն յառաջ, թող թէ Քրիստոսէ երեք դար յառաջ, երբ կ՚ինայ Փառնաւազի առասպելախառն անձնաւորութիւնը, իրենց սեփական նշանագիրներն ունեցած ըլլան։

Զմեզ այս տեղ չի հետաքրքրեր, թէ ինչ լեզու եւ ինչ նշանագիրներ կը գործածէին

---

[1] Համառօտ պատմութիւն Վրաց ընծայեալ Ջուանշէրի պատմչի։ Վենետիկ 1884, էջ 25։

*Վրացիները իրենց դիւանագիտական կամ վարչական յարաբերութեանց մէջ։*

*2. Միակ պատմական վկայութիւնը, զոր ունինք վրացերէն լեզուին սեպհական նշանագիրներու գոյութեան մասին, աւանդած է Կորիւն, կենսագիրը Ս. Մաշտոց վարդապետի, Ե. դարու առաջին կէսին, որուն արժանահաւատութիւնը ամէն կասկածէ վեր է։ Արդ կը գրէ Կորիւն*[2]*.*

*«Դարձեալ յետ ժամանակի ինչ ընդ մէջ անցելոյ հոգ ի միտ արկանէր սրբելին Քրիստոսի (Մաշտոց) եւ վասն բարբառոյ հիւսիսական կողմանցն. եւ առնոյր կարգէր*[3] *նշանագիրս (վասն) վրացերէն լեզուին ըստ շնորհացն տուելոյ նմա ի Տեառնէ. գրէր, կարգէր եւ օրինօք յարդարէր։ Եւ առնոյր ընդ իւր զոմանս լաւագոյն յաշակերտաց իւրոց (եւ) յարուցեալ գնայր իջանել ի կողմանս Վրաց։ Եւ երթեալ յանդիման լինէր թագաւորին, որում անուն էր Բակուր, եւ եպիսկոպոսին աշխարհին, որում անուն Մովսէս։ Եւ առաւելագոյն հնազանդեալ նմա ըստ օրինացն Աստուծոյ՝ թագաւորին եւ զօրացն հանդերձ ամենայն գաւառօքն։ Եւ նորա զիւր արուեստն առաջի արկեալ՝ խրատէր յորդորելով. որոց եւ յանձն առեալ ամենեցուն՝ զխնդրելին կատարել։ Եւ գտեալ զայր մի թարգման վրացերէն լեզուին, որ անուանեալ*

---

*[2] Կորիւնի այս հատուածը յառաջ կը բերեմ վերականգնուած բնագրով. հմմտ. վերադրյն էջ* 133—135*:*
*[3] Տպ. կարգեալ։*

*կոչէր Ջաղայ, այր գրագէտ եւ ճշմարտահաւատ. հրաման տայր այնուհետեւ արքայն Վրաց ի կողմանց կողմանց եւ ի խառնաղանճ գաւառաց իշխանութեան իւրոյ ժողովել մանկունս, տալ ի ձեռս Վարդապետին: Զորս ածեալ արկանէր (Մաշտոց) ի բովս վարդապետութեանն»: Իբրեւ արդիւնք Մաշտոցի գործունէութեան ի Վիրս կը նշէ Կորիւն. «Եւ արդ գնոսս, որ յանչափ ի մասնաւոր եւ ի բաժանեալ լեզուացն ժողովեցան, միով աստուածաբարբառ պատգամաւ*[4] *ի մի ազգ կատարեալ փառաւորիչս միոյ Աստուծոյ յօրինէր»: «Իսկ իբրեւ ընդ ամենայն տեղիս Վրաց կարգէր զգործ աստուածպաշտութեանն՝ այնուհետեւ հրաժարեալ ի նոցանէ դառնայր յերկիրն Հայոց»* (25—26):

*Կորիւն իւր պատմուածքի պարզութեամբը կը ներշնչէ մեզի վստահութիւն ընդունելու իրողութիւնը այնպէս ինչպէս ներկայացուած է: Թէ Մաշտոց եղած է, որ տուած է Վրացիներուն «գրերոց ծանօթութիւն ի պնդութիւն հաւատոց», կը վկայէ* 608*ին նաեւ Աբրահամ կաթողիկոս իւր առ Կիւրիոն Վրաց կաթողիկոս թղթին մէջ*[5]:

---

[4] *Տպ. պատգամօքն:*

[5] *Գիրք թղթոց,* 180. *«մեզ եւ ձեզ հասարակ սերմանեցին զաստուածպաշտութիւն, նախ երանելին սուրբն Գրիգոր, եւ ապա Մաշտոց,* որ ետ *(տպ. եւ) գրոց ծանօթութիւն ի պնդութիւն հաւատոց»:*

Վրաց գրականութիւնը կը լռէ այս մասին :

3 · Մաշտոց Սիւնիքէն անցած էր Աղուանից աշխարհը, որուն քրիստոնեայ բնակչութիւնը հայախօս էր եւ հայածէս : Յաջողած էր հոն համոզել Թագաւորն եւ եպիսկոպոսը, որ ընդունին հայկական նշանագիրներն եւ Ս · Գրքի հայերէն թարգմանութիւնը : Անկէ այցելութիւն մը տուած էր Բաղասական կողմանց · հոն ալ պարտադրած է հայկական նշանագիրները : Ապա վերադարձած է Սիւնիք, մտադրութեամբ «անցանել յաշխարհն Վրաց» (31) : Կ'երեւայ թէ երկար դադար տուաւ Սիւնիք · այս միջոցին նշանագիրներ հնարելու համար · ըստ այսմ հասկնալու է Կորիւնի խօսքերը · «դարձեալ յետ ժամանակի ինչ ընդ մէջ անցանելոյ հոգ ի միտ արկանէր . . . եւ վասն բարբառոյ հիւսիսական կողմանցն · առնոյր կարգէր նշանագիրս վասն վրացերէն լեզուին ըստ շնորհացն տուելոց նմա ի Տեառնէ» : Բնագրին «վասն բարբարոսական կողմանն» ընթերցուածը, զոր ուղղեցի «բարբարոյ հիւսիսական կողմանցն», կարելի է պահել այն իմաստով, որ բուն Վրաստան (Քարթլի), որ վրացերէնախօս էր, տակաւին բարբարոս էր, ուստի անգրագէտ : Կորիւնի արտայայտութեան ձեւը «ըստ շնորհացն տուելոց նմա ի Տեառնէ» իմանալու է «աստուածապարգեւ ընդունակութեամբ» · Մարկուարտ իմաստը խեղաթիւրած կ'ըլլայ, երբ կ'իմանայ · «Ա-

տուծմէ շնորհուած հայերէն գրերու կաղապարին վրայէն կարգուեցան[6]»:

Մաշտոց «առնոյր կարգէր նշանագիրս վասն վրացերէն լեզուին». առանց տարակուսի աչքի առաջ ունէր անիկա հայերէն, յունարէն եւ ասորերէն այբուբենները. եւ ձեռնարկեց գործի յեցած այն փորձառութեան վրայ, զոր ձեռք բերած էր հայերէն նշանագիրները յօրինելու ժամանակ: Իր սկզբունքն էր յօրինել նշանագիրներ այնպիսի նկարագրով, որ յատուկ ըլլայ նկատի առնուած լեզուին, չկրէ փոխառութեան կնիքը: Այսպէս ձեւեց յունական այլփաբետի օրինակի վրայէն հայկականը. իսկ այժմ յունական եւ հայկական այբուբեններու նախագաղափարի վրայէն պիտի յօրինէր վրականը: Կրնար, առանց զգալի դժուարութեան բախելու՝ հայկական նշանագիրները նոյնութեամբ պատշաճեցնել վրական հնչիւններուն, որոնք գրեթէ նոյն ձայնաբանութիւնն ունէին. բայց չուզեց Մաշտոց, որ հայկականը, որուն վրայ այնքան քրտինք թափած էր, ոչ-հայկական լեզուի ծառայէ: Միւս կողմէ կարող էր վիրաւորել Վրացիներու ինքնասիրութիւնը, եթէ փորձէր հայկական նշանագիրները ի սպաս դնել վրացիներէնի:

Մաշտոց նախընտրեց յօրինել նոր նշանաձեւեր:

---

[6] Մարկուարտ Յ., Պատմ. Հայերէն նշանագրերու եւ վարուց Ս. Մաշթոցի. Թրգմ. Հ. Ա. Վարդանեան, 1913, էջ 41:

4. Տեսանք վերագոյն Մաշտոցի գործելակերպը: Նա յունական աղփաբետն իւրացուց ամբողջութեամբ, բայց այլաձեւեց անոնց արտաքինը այնպիսի ճարտարութեամբ, որ անճանաչելի դարձաւ յունական նախագաղափարը. ստեղծեց նորաձոյլ հայկական տառեր: Այլաձեւման օրէնքը գործածեց վրական այբուբենին համար ալ: Նախագաղափար ծառայեց իրեն հայկական իւրակերտ այբուբենը. բայց ունեցաւ աչքի առաջ նաեւ յունականը: Իր հիմունքին մէջ հայկական է վրական այբուբենը. բայց ձեւով աննման հայկականին, թէեւ արտաքուստ կրեն ինչ ինչ նշանաձեւեր հայկականին նմանութիւնը: Մաշտոցի ստեղծագործող միտքը կը փայլի նաեւ վրական այբուբենի վրայ: Երկու այբուբեններու մէկ արուեստագէտի գրչէն ծագումը ցոյց կու տան ի մէջ այլոց նշանագիրներու թիւը՝ 36, գրչութեան ուղղութիւնը եւ երկաթագիր տառաձեւերը:

Առանձին տախտակի մէջ կը ներկայացընեմ վրացերէն լեզուի սեպհական նշանագիրները, առընթեր դնելով համեմատութիւնը հայկականին եւ յունականին հետ: Ես նկատի առած եմ այն երկաթագիր նշանագիրները, զորոնք Մաշտոց հնարած է. ասոնք վրացերէն խուցուրի կ'անուանուին, այն է քահանայական կամ եկեղեցական նշանագիրներ: Դժբախտաբար չունիմ աչքի առաջ հին վրական ձեռագիրներ, որոնցմէ կազմէի Խուցուրի նշանագիրներու ցուցակը իրենց նախ–

*նական կերպարանքի մէջ: Կ'օգտուիմ այն այբուբենէն, զոր կազմած է Բրոսէ*[7] *Պարիսի ձեռագիրներէն օգտուելով. Նշանագիրներու նկարագրական ձեւերը ձեռագիրներու եւ տպագիրներու մէջ զգալի տարբերութիւն ունին:*

*Այս տեղ պէտք է յիշել, որ Խուցուրի երկաթագիրը ապա վերածուած է* խոշոր բոլորգրի, *որմէ զարգացած է Մխեդրուլի (գինուորական) կոչուած բոլորգիրը քիչ շատ շղագրի նկարագրով. վերջինս կ'ըսուի թէ սկսեալ ԺԲ. դարէն գործածութեան մէջ է, որ եւ այսօր ընդունուած է տպագրութեան մէջ:*

*Ստորեւ կը ներկայացնեմ վրացերէն այբուբենը իր երեք ձեւերու մէջ, առոնք են. ա.* Խուցուրի, *բ.* Խուցուրի բոլորգիր, *գ.* Մխեդրուլի: *Առոնք տպագրութեան մէջ ընդունուած նշանագիրներն են, զորոնք համադրած է Ա. Սարուխան:*

[7] Chronique géorgienne traduite par M. Brosset. Paris 1829—1831. Texte géorgien, p. V—VII.

| | | | | |
|---|---|---|---|---|
| Ⴀ | ⴀ | ა | Ա | հ. Ա |
| Ⴁ | ⴁ | ბ | Բ | հ. Բ |
| Ⴂ | ⴂ | გ | Գ | հ. Գ (շրջ.) |
| Ⴃ | ⴃ | დ | Դ | յ. Δ (շրջ.) |
| Ⴄ | ⴄ | ე | Ե | հ. Ե (շրջ.) |
| Ⴅ | ⴅ | ვ | Վ | հ. Վ |
| Ⴆ | ⴆ | ზ | Զ | հ. Զ<br>յ. Z |
| Ⴡ | ⴡ | ჱ | Ը | յ. H<br>հ. Ը |

| | | | | |
|---|---|---|---|---|
| Ⴇ | ⴇ | თ | Թ | յ. Θ հ. Թ |
| Ⴈ | ⴈ | ი | Ի | յ. I հ. Ի |
| Ⴉ | ⴉ | კ | Կ | հ. Կ յ. K |
| Ⴊ | ⴊ | ლ | Լ | հ. Լ յ. Λ |
| Ⴋ | ⴋ | მ | Մ | հ. Մ (շրջ.) |
| Ⴌ | ⴌ | ნ | Ն | հ. Ն |
| Ⴢ | ⴢ | ჲ | Յ | հ. Յ |
| Ⴍ | ⴍ | ო | Ո | յ. O |

| | | | | |
|---|---|---|---|---|
| Ս | պ | პ | Պ | հ. Պ յ. Π |
| Կ | կ | ჭ | Ժ | յ. Ϙ (90) |
| Ժ | ռ | ღ | Ր | հ. Ռ |
| Ն | ն | ს | Ս | հ. Ս յ. Σ |
| Ք | ք | ტ | Տ | յ. T հ. Տ |
| Վ | վ | ჳ | Ւ | յ. Υ հ. Ւ |
| Ռ | պ | უ | Ու | հ. Ու |
| Փ | փ | ფ | Փ | յ. Φ |

| | | | |
|---|---|---|---|
| Ⴡ | ⴡ | ჱ | հ. Ք յ. X |
| Ⴍ | ⴍ | ო | յ. O (70)<br>հ. Ո |
| Ⴎ | ⴎ | პ | յ. Π (80)<br>հ. Պ (800) |
| Ⴏ | ⴏ | ჟ | յ. ϙ (90) |
| Ⴐ | ⴐ | რ | յ. P<br>հ. Ր (1000) |
| Ⴑ | ⴑ | ს | յ. C (200)<br>հ. Ս (2000) |
| Ⴒ | ⴒ | ტ | յ. T (300)<br>հ. Չ |
| Ⴓ | ⴓ | უ | յ. Υ (400)<br>հ. Տ (4000) |

| | | | | |
|---|---|---|---|---|
| Ⴔ | ⴔ | ფ | Ճ | յ. Φ (500)<br>Հ. Յ |
| Ⴕ | ⴕ | ქ | Խ | յ. X (600)<br>(Հ. խ) |
| Ⴖ | ⴖ | ღ | Ղ ղ | յ. Ψ (700) |
| Ⴗ | ⴗ | ყ | Ջ | յ. Ω (800)<br>(Հ. Ջ) |
| Ⴘ | ⴘ | შ | Հ | յ. ϙ (900) |
| Ⴙ | ⴙ | ჩ | ՈՎ | յ. Ω? |
| | | ς. | Ր | |

Նշանագիրներուն սեպհական նկարագիրը տալէն ետքը դասաւորեց Մաշտոց զանոնք այբուբենի կարգին մէջ, այս անգամ քայլ առ քայլ հետեւելով յունական այփաբետի շարքին, զուն ուրեք միայն չեղում ընելով. իսկ այն նշանագիրները, որոնք նոր էին եւ չունէին իրենց համազօրները յունական այբուբենին մէջ, զետեղեց զանոնք ամէնէն վերջը: Համեմատութիւնը հետեւեալն է.

| | | | | | | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| α | 1 | ა | ա | ι | 10 | ი | ի | ϱ | 100 | რ | ռ | 1000 | ჩ | չ |
| β | 2 | ბ | բ | κ | 20 | კ | կ | σ | 200 | ს | ս | 2000 | ც | ց |
| γ | 3 | გ | գ | λ | 30 | ლ | լ | τ | 300 | ტ | տ | 3000 | ძ | ձ |
| δ | 4 | დ | դ | μ | 40 | მ | մ | υ | 400 | ჳ | ւ | 4000 | წ | ծ |
| ε | 5 | ე | ե | ν | 50 | ნ | ն | φ | 500 | ფ | փ | 5000 | ჭ | ճ |
| ϛ | 6 | ვ | վ | ξ | 60 | ჲ | յ | χ | 600 | ქ | ք | 6000 | ხ | խ |
| ζ | 7 | ზ | զ | ο | 70 | ო | ո | ψ | 700 | ღ | ղ | 7000 | ჴ | ղխ |
| η | 8 | ჱ | է | π | 80 | პ | պ | ω | 800 | ყ | կղ | 8000 | ჯ | ջ |
| θ | 9 | თ | թ | | 90 | ჟ | ժ | Ϙ | 900 | შ | շ | 9000 | ჰ | հ |

Ինչպէս կը տեսնուի այս համեմատութենէն, Մաշտոց ոչ այնչափ յունական այփաբետի շարքը նկատի առած է, որչափ յունական այփաբետի թուական արժէքը իր 27 նշանաձեւերով: Որովհետեւ վրական այբուբենը 9 թուով աւելի է, այս 9 նշանագիրներն ալ յօրինած է նմանութեամբ տառանուորներու եւ հարիւրաւորներու՝ հազարաւոր արժէքով: Ըստ այսմ վրական այբուբենի մէջ իբրեւ նշանագիր մուտ գտած են յունական stigmaն (ϛ, նախնաբար Ϝ, վեց) իբրեւ վ, Koppaն (ϙ, 90) իբրեւ ժ, եւ Sampi (կամ Ϙ 900) իբրեւ շ:

*Համեմատութիւնն է հետեւեալը.*

*Տե՛ս պատկերին մէջ Ա.—Բ։*

*Իսկ Գ—Հ յաւելուածական նշանագիրները, որոնք կը պակսին յունարէնին, յօրինուած են նմանութեամբ հարիւրաւորներու այսպէս.*

*Տե՛ս պատկերը, Գ—Հ։*

5. *Մաշտոց վրական նորագիւտ նշանագիրները այս կերպով դասաւորել է եւքը գրաւ անոնց անուններ, ասոնք են.*

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| *ա* | *ան* | *ի* | *ին* | *ր* | *րել* | *չ* | *չին* |
| *բ* | *բան* | *կ* | *կան* | *ս* | *սան* | *ց* | *ցան* |
| *գ* | *գան* | *լ* | *լաս* | *տ* | *տար* | *ձ* | *ձիլ* |
| *դ* | *դան* | *մ* | *ման* | *ւ* | *ւե* | *ծ* | *ծիլ* |
| *ե* | *են* | *ն* | *նար* | *փ* | *փար* | *ճ* | *ճար* |
| *վ* | *վին* | *յ* | *հիե* | *ք* | *քան* | *խ* | *խան* |
| *զ* | *զեն* | *օ* | *օն* | *ղ* | *ղան* | *ղխ* | *խար* |
| *է* | | *պ* | *պար* | *կղ* | *ղար* | *ջ* | *ջան* |
| *թ* | *թան* | *ժ* | *ժան* | *շ* | *շին* | *հ* | *հաե, հե* |

*Գրերու այս* 36 *անուններէն* 10*ը նոյն է գրեթէ հայկական անուններու հետ. ասոնք են (հմմտ. Աճառեան, էջ* 284).

| | |
|---|---|
| *Բան* | *Բեն* |
| *Գան* | *Գիմ* |
| *Ին* | *Ին* |
| *Կան* | *Կեն* |
| *Ման* | *Մէն* |
| *Ռէ* | *Րէ, Ռա* |
| *Ուն* | *Հիւն* |
| *Փար* | *Փիւր* |
| *Հոե* | *Հո* |
| *Հիե* | *Յի* |

6. Կարեւոր են նշանագիրները, լեզուին պանապան հնչիւնները գրաւոր ներկայացնելու համար: Բայց կրկին ձայնաւորներու տուած երկբարբառները վերծայելու համար հարկ էր հաշուի առնել սիւղոբայից օրէնքը: Ինչպէս հայերէնի, նոյնպէս վրացերէնի համար առաջնորդ առաւ Մաշտոց յունարէնի օրէնքները:

Մաշտոց վրացերէն հնչիւններուն մէջ ալ պանազանեց նոյնքան թուով ձայնաւորներ եւ կիսաձայներ, ինչպէս հայերէնի մէջ, ի բաց առնելով ը կիսաձայնը. առոնք են.

ա, ե, է, ի, յ, ո, ւ եւ վ: Ու ձայնին համար նոյնպէս յունական եւ հայկական երկբարբառ ου ուն պահեց: Իսկ յունական ω դարձեալ ով երկբարբառով տուաւ: Յունարէն υ իւ հնչիւնը նաեւ վրացերէնի մէջ ւով կը ներկայացուի:

Յունական երկբարբառներն՝ αι, ει, οι են, ինչպէս հայերէնի, նոյնպէս վրացերէնի մէջ կը կազմուին այ, էյ, ոյ: Իր կարգին ունի վրացերէնը ույ, եւ նման հայերէնի՝ անգլ. Wի հնչումով ուա, ուէ:

Այս կէտերը պէտք է իմանալ, երբ կը գրէ Կորիւն, թէ Մաշտոց «գրէր, կարգէր եւ օրինօք յարդարէր» զնշանագիրս վրացերէն լեզուին:

7. Այսպէս Մաշտոց հանելով ի գլուխ Վրաց այբուբենի կազմը, այնուհետեւ «առնոյր ընդ իւր զոմանս լաւագոյնս յաշակեր–

*տաց խուրոց եւ յարուցեալ գնայր իջանել ի կողմանս Վրաց»: Երկու նպատակ ունէր Մաշտոց. նախ պարգեւել վրացի ժողովուրդին գրի ծանօթութիւնը եւ ապա նոյն աշխարհի մէջ բնակող հայ փոքրամասնութեան մէջ տարածել հայկական գրականութիւնը: Իսկ առ այս դժուարին պիտի ըլլար առնել Վրաց Թագաւորին եւ եպիսկոպոսապետին հաւանութիւնը, եթէ նախահոգ չըլլար գոհացնել վրացի ժողովուրդին գրականութեան պէտքը:*

*Կար երրորդ նպատակ մըն ալ: Կը պահանջէր ժամանակը, որ երեք դրացի քրիստոնեայ ժողովուրդներ, Հայք, Վիրք եւ Աղուանք, սթափէին իրենց քունէն եւ տեսնէին սպառնացող վտանգը, որ մոգակրօնիկ Պարսկաստանէն կը շնչէր: 385ի Հայաստանի բաժանումով նոր սահման ձգուած էր Տիզբոնի եւ Բիւզանդիոնի միջեւ. խաղաղութիւնը կ՚իշխէր երկու պետութեանց մէջ: Քրիստոնէութիւնը Պարսկաստանի մէջ կը հալածուէր. նոյնը՝ Վրաստանի եւ Հայաստանի սահմաններու վրայ կը նկատուէր քաղաքական վտանգ. այնու որ քրիստոնեայ ժողովուրդները յարած էին իրենց աչքերը քրիստոնեայ Բիւզանդիոնի: Հայք այս երեք ժողովուրդներու մէջ կարեւոր դիրքը կը բռնէին: Ուշագրաւ է այս տեսակէտէ Միհրներսեհի դիտողութիւնը, թէ «յորժամ Հայք սերտիւ մեր լինին, Վիրք եւ Աղուանք մեր իսկ են»: Այս համոզմամբ ալ կը յորդորէր*

*Յազկերտ Հայերը, որ հաւանին ընդունիլ Պարսից պետական կրօնը. որովհետեւ «յորժամ դուք իբրեւ զմեզ ճանաչողք ճշմարիտ մեր օրինացս լինիք, Վիրք եւ Աղուանք ընտ մեր եւ ձեր կամս չիշխեն ելանել» (Փարպ., 43—44): Ինչ որ Յազկերտ 40 տարի յետոյ խորհեցաւ, Մաշտոց իւր հեռատեսութեամբ զգաց 407ին: Այս ոտնձգութեան առաջ թումբ գործելու համար փութաց ազգային գրականութիւն ծագկեցնել այդ աշխարհներու մէջ, ծանօթացնել այդ ժողովուրդներուն իրենց հասկանալի լեզուներով քրիստոնեայ Եկեղեցւոյ կարեւոր մատեանները ու սուրբ հարց գործերը, եւ սով ամրապնդել զանոնք քրիստոնէութեան մէջ: Ուստի իր առաքելութիւնն ի Վիրս կը դնէր նաեւ քաղաքական նպատակներ:*

8. *Ուրախալի է որ Վիրք սիրով ընդ առաջ ելան Վարդապետին. Բակուր թագաւոր եւ Մովսէս եպիսկոպոս յանձն առին «զխնդրելին կատարել»: Ոչ միայն յօժարեցան ընդունիլ յանկարծագիւտ նշանագիրներն վրացերէն լեզուին, այլ եւ հաւաքեցին աշակերտներ, բացին դպրոցներ, եւ խնդրեցին Վարդապետէն, որ անձամբ կազմակերպէ դպրոցական դասընթացքները: Եւ Մաշտոց այդ մանկտին «առեալ արկանէր ի բովս վարդապետութեան»: Մաշտոց ունէր իրեն օգնական զՋաղայ, որ էր «թարգման վրացերէն լեզուի». այս ինքն Ջաղայ որ ծանօթ էր հայերէն եւ վրացերէն լեզուներուն, թարգ-*

ման հանդիպացու աշակերտներու եւ Վարդապետին միջեւ: Առանց տարակուսի մեծ նպաստ մատուցին առ այս նաեւ Մաշտոցի այն «լաւագոյն աշակերտք», որոնք ընկերացած էին Վարդապետին:

Կարեւոր կը համարիմ այս տեղ առանձին ուշադրութիւն դարձնել Ջաղայի գործակցութեան:

Կորիւն կը գրէր. «Եւ գտեալ զայր մի թարգման վրացերէն լեզուին, որ անուանեալ կոչէր Ջաղայ. այր գրագէտ եւ ճշմարտահաւատ»: Մաշտոց պատահած է Ջաղայի ի Տփղիս կամ ի Մծխեթա. սա «գրագէտ» էր. չ՚րսուիր, թէ ի՞նչ լեզուի ծանօթ էր, կամ իր «գրագիտութիւնը» ինչ շրջանի մէջ ձեռք բերած էր: Այն ստոյգ է թէ «թարգման է վրացերէն լեզուի», այս ինքն ծանօթ է վրացերէն անգիր լեզուին, եւ որովհետեւ թարգման կը ներկայանայ վրացի մանկտւոյն եւ հայ Մաշտոցի (եւ իր լաւագոյն աշակերտաց) միջեւ, պէտք է ընդունինք, թէ անիկա ծանօթ էր նաեւ հայերէն լեզուին, որ իբր 12 տարիէ ի վեր գրական լեզու էր: Կրնանք հետեւցնել ասկէ, թէ Ջաղայի գրագիտութիւնը կը կայանար հայերէն գրաւոր լեզուի ծանօթութեան մէջ. զոր նա ձեռք բերած ըլլալու է Հայաստանի մէջ: Այս պատճառաւ ալ Մ. Խորենացւոյ տեղիքս, թէ «Մեսրոպայ երթեալ յաշխարհն Վրաց՝ առնէ եւ նոցա նշանագիրս... հանդերձ Ջաղայիւ ոմամբ թարգմանաւ հելլէն եւ հայ լեզուի» (Գ. 54), յեցած

է անձնական ենթադրութեան վրայ, ենթադրութիւն մը որ անհիմն է բոլորովին, անով որ իր աղբիւրն եղած է նոյն այն վկայութիւնն Կորիւնի, զոր տեսանք։ Կորիւն կ՚ըսէ, թէ Ջաղայ «թարգման է վրացերէն լեզուի», եւ հայ լեզուի. հելլէն լեզուի մասին խօսք չկայ։ Իսկ Վարդան Պատմիչ հետեւելով Մ. Խորենացւոյ կը գրէ. «Մեսրոպ անցեալ ի Վիրս՝ առնէ եւ նոցա գիրս ի ձեռն Ջաղելի ումեմն, որ աշակերտեցաւ նմա» (51)։ Այս տեղ «առնէ եւ նոցա գիրս» բանաքաղուած է Մ. Խորենացիէն. իսկ «ի ձեռն Ջաղելի ումեմն» համազօր է նոյնպէս Խորենացւոյ «համդերձ Ջաղայիւ» խօսքին։ Բայց Վարդանի սեպհական է «որ աշակերտեցաւ նմա»։ Վարդան Մաշտոցի աշակերտ կ՚անուանէ այն ամէնքը, որոնք առիթ ունեցած են Վարդապետին հետ աղերսի մէջ ապրիլ. այսպէս Աղուանից նշանագիրները «ստեղծող» Մաշտոց «ձեռօք Բենիամինի՝ որ անտի աշակերտեցաւ նմա» (51)։

Ա. Սարուխան ծանրակշռութիւն տուաւ Վարդանի «ի ձեռն Ջաղելի ումեմն» ընթերցուածին։ «Այս բառը, կը գրէ Ա. Սարուխան [8], վրացերէն է իր կազմութեամբ եւ նշանակում է ճիշդ «ի Ջաղայ» կամ «Ջաղայեցի...»։ Ինձ թւում է, թէ Վարդան պատմիչ նրա այս վրացական ձեւով անունը պէտք է որ քաղած լինի որ եւ է վրացական

[8] Վրաստան եւ Հայերը, էջ 209—210։

*յիշատակարանից, հաւանաբար «Վրաստանի Պատմութիւնից»: ...Արդեօք պարզապէս մոռացմա՞ն կամ անուշադրութեա՞ն արդիւնք է, որ Ջաղելի անունը չկայ Վրացական պատմութեան մեջ հասած գրչագիրների մէջ»:*

*Ա. Սարուխանի ՚այս վարկածը որչափ ուշադրաւ ալ համարինք, բայց եւ այնպէս կը մնայ վարկած, որովհետեւ կը պակսի այլուստ առ այս վկայութիւն: Վարդան եթէ ունեցած ըլլար աչքի առաջ վրական աղբիւր, իր վրացագիտութեամբ պիտի իմանար, թէ Ջաղելի կը թարգմանուի հայերէն* Ջաղեցի: *Այս անունը կը պակսի սակայն Վրաց Պատմութեան մէջ, թէ վրացերէն բնագրին եւ թէ անոր հին հայերէն թարգմանութեան մէջ, որմէ օգտուած է Վարդան այլուր: «Ի ձեռն Ջաղելի ումեմն» պարզ հայերէնով պիտի թարգմանուէր «ի ձեռն ուրումն, որում անուն Ջաղել». եւ եթէ Ջաղելի (Ջաղեցի) ձեւով առնենք՝ պիտի ըսէինք. «ի ձեռն Ջաղեցւոյ ուրումն, որ անուանեալ կոչէր Ա. Ա.»: Կը համարինք թէ լաւագոյն է Վարդանի «Ջաղելի» վրիպակ ընթերցուած նկատել եւ կարդալ «ի ձեռն* Ջաղայի *ուրումն», համաձայն Կորիւնի եւ Մ. Խորենացւոյ ընծայած ընթերցուածներու:*

9. *Կորիւն, որ այս մանրամասնութիւնները հաղորդած է մեզի, կ՚աւելցնէ, թէ Մաշտոց «իբրեւ ընդ ամենայն տեղիս Վրաց կարգէր զգործ աստուածպաշտութեան՝*

*այնուհետեւ հրաժարեալ ի նոցանէ՝ դառնայր յերկիրն Հայոց»:*

*Ժամանակ մը վերջը միւսանգամ կ՚այցելէ Մաշտոց Վրաստան: Կը գրէ Կորիւն. «Դարձեալ եղանէր շրջէր գտեղեօք կարգելովք եւ գլաւատօքն աշակերտելովք աշխարհին զուարթացուցանել, նորոգել, հաստատել. առ որով ժամանակաւ Արձիւղ անուն թագաւորեալ Վրաց. որոյ (°) առաւելապէս պայծառացուցեալ ծաղկեցուցանէր զվարդապետութիւնն: Եւ նորա շրջեալ զամենայն աշակերտելովք՝ պատուիրեալ կալ ի ճշմարտութեանն» (Կոր. 26, 32):*

*Այսպէս Մաշտոց ոչ միայն հիմը դրաւ վրական գրականութեան, այլ եւ հսկեց, որ բարւոք ընթացք առնու գրական նոր շարժումը:*

*Աննպատակ կը համարիմ հոս միջամուխ ըլլալ վիճաբանութեանց մէջ եւ պատասխանել վրացի եւ եւրոպացի կարգ մը գիտուններուն ի մասին իրենց յայտնած պէսպէս կարծեաց վրական նշանագիրներու ծագման շուրջը: Զիս կը զարմացնէ միայն այն պարագան, որ անոնք այս խնդիրը լուծելու համար կը դիմեն Մխեդրուլի կոչուած նշանագիրներու, զորոնք այնքան միամտութեամբ Խուցուրի կոչուած նշանագիրներու գաղափար օրինակը կը համարին, սեմական-պահլաւական ծագումէ, անտեսելով բոլորովին, որ Մխեդրուլին առաջին անգամ ԺԲ. դարէն սկսեալ երեւան կու գայ վրական*

գրականութեան մէջ։ Եւ եթէ Մխեդրուլին ցոյց կու տայ նմանութիւն Խուցուրի նշանագիրներու հետ, այս նմանութիւնը չի կրնար կուռան ծառայել ընդունելու համար թէ հնագոյն Խուցուրին նորագոյն Մխեդրուլիէն ծնած ըլլայ։ Ժամանակագրութիւնը պէտք էր հակառակ եզրակացութեան հասցնել։ Իմ համոզումս է, որ Մխեդրուլին ոչ միայն Խուցուրին եւ անոր անցման երկաթագիր–բոլորգիրն կ'ենթադրէ, այլ եւ հայկական բոլորգրէն փոխառութիւններ կը մատնանշէ, յատկապէս հոն, ուր կը խոտորի Խուցուրիէն։

Օրինակով խօսելու համար կը ներկայացնեմ այստեղ համեմատութիւն մը Մխեդրուլիի եւ հայ բոլորգրի, այժմեան տպագրութեան մէջ գործածուած տառերը նկատի առնելով.

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| ა | ա | ლ | լ | უ | ու | წ | ծ |
| გ | գ | ო | ո | ქ | ք | ჭ | ճ |
| დ | դ | | | ღ | ղ | ხ | խ |
| ვ | վ | რ | ռ | შ | շ | ჯ | ջ |
| ზ | զ | ტ | տ | ჩ | չ | ჰ | հ |
| ჱ | է | ჳ | ւ | ც | ց | ჷ | ը |
| კ | կ | | | | | | |

Այս 25 նշանագիրները իրենց նկարագրական գծերու մէջ առաւել կամ նուազ չափով կը խոտորին Խուցուրիէն եւ կը մերձենան հայ բոլորգրին։ Այս նմանութիւնը անշուշտ պատահական չէ։ Երկու նշանագիրները ժամանակագրօրէն իրարու ժամանակակից են։ Հայ բոլորգիրը կ'ենթադրէ հայ–

կալկան երկաթագիրը: Ուստի ստիպուած ենք ընդունելու թէ վրականը, որ կը հեռանայ Խուցուրիէն եւ կը մերձենայ հայկականէն, իր ծագումը հայկականէն ունի: Փոխառութիւնը ձեւափոխութեամբ կատարուած է. հայկականք մերթ աջէն ձախ. մերձ յորսայս դիրքեր առած են վրականին մէջ. անոնց վրայ աւելցած են գծերու դարձուածքներ, համաձայն վրական զարդասիրիկ ճաշակին: Այս կը տեսնուի մանաւորապէս Լ. Ց, Ռ գրերու մէջ: Հետաքրքրական է ու կազմութիւնը, ուր հայկական ու ստացած է ււ դիրքը:

Զարմանալի պիտի չերեւայ այս նոր փոխառութիւնը, եթէ նկատի առնենք, որ ԺԲ.—ԺԳ. դարերուն զինուորական իշխանութիւնը Հայոց ձեռքն էր, եւ քարտուղարութիւնը առաւելապէս հայ գրիչներու պաշտօնն էր:

# 11. ԱՂՈՒԱՆ–ԳՈԹԱԿԱՆ ԱՅԲՈՒԲԵՆԻ ԳԻՒՏԸ *

## 1.

*Մաշտոց վարդապետի Վարքին մէջ կը պատմէ Կորիւն, թէ Երանելին իբր 420ին մեկնեցաւ Հռոմէական Հայաստան, որպէս զի նորաբողբոջ հայ գրականութեան հաղորդակից ընէ նաեւ «Կէս Ազգն Հայոց», յատկապէս 385ի Հայաստանի բաժանման ժամանակ Հռոմայեցւոց անցած հայկական նահանգները: Անատոլիոս, Արեւելեան բանակին սպարապետը, պատուով ընդունեցաւ հիւսիսական ժողովուրդներու, Հայոց, Վրաց եւ Աղուանից նոր լուսաւորիչը: Իմանալով անոր այցելութեան նպատակը, կարեւոր տեսաւ խնդիրը ներկայացնել Կայսեր եւ սպասել վերին հրահանգին: Արքունիքէն հրաման հասաւ, որ Վարդապետը անձամբ դնէ իր խնդիրները Կայսեր առաջ: Մաշտոց ընկերակցութեամբ Դերջանի Գինթ եպիսկոպոսի Մելիտենէէն կամ Անտիոքէն արքունատուր կառքով կը մեկնի կայսերանիստ մայրաքաղաք: Կը հիւրասիրուի մեծապէս Արքունի–*

---

* *Այս գլուխը լոյս տեսած է «Հանդէս Ամսօրեայ»ի մէջ (1948, էջ 321—341, 449—456) հետեւեալ վերնագրով. «Գոթական նշանագիրներու ծագումը: Հնարողը Վուլֆիլա՞ Գոթաց քորեպիսկոպոսն, թէ Մաշտոց Հայոց վարդապետը: Փորձ մը խնդրոյս լուսաւորութեան»:*

քէն, Եկեղեցիէն եւ Իշխաններէն: Կը մնայ այն տեղ ժամանակ մը: Իր խնդրանքները կ՚արժանանան Կայսեր հաւանութեան: Զատկէն ետքը կը վերադառնայ Մելիտենէ մխանալու իր աշակերտներուն: Արքունի թոշակով կը բացուին դպրոցներ: Ուսուցումը կ՚ընթանայ յառաջադէմ: Հաւանօրէն աւելի քան տարեւոր ժամանակ մը դեգերեցաւ Մաշտոց Հռոմէական Բաժնին մէջ: Ուսուցչական եւ այլ հրահանգչական գործերը հանած ի վախճան, կը պատրաստուէր Վարդապետը վերադառնալու պարսկական Բաժին[1] (հմմտ. վերը, էջ 141—151):

Կորիւն այս բոլոր անցքերը համառօտիւ պատմելէ ետքը, յանկարծ, կարծես անցեալ դէպք մը վերյիշելով, ի մէջ կը բերէ հետեւեալը. «Յայնմ ժամանակի եկեալ դիպէր նմա այր մի երէց, ազուան յազգէ, Բենիամին անուն: Եւ նորա (Մաշտոցի) հարցեալ եւ քննեալ զբարբարոս զբանս ազուաներէն լեզուին՝ առնէր ապա նշանագիրս ըստ վերնապարգեւ կորովի սովորութեան իւրում: Եւ յաջողութեամբ Քրիստոսի շնորհացն կարգեալ եւ հաստատեալ կշռէր: Յետ այնորիկ հրաժարեալ յեպիսկոպոսաց, յիշխանաց աշխարհին եւ յամենայն եկեղեցեաց» կը վերադառնայ Վաղարշապատ[2]:

---

[1] Կորիւն, Վարք Մաշտոցի, ԺԴ. 1—7: Նկատի ունիմ Կորիւնի վերակազմուած բնագիրը, որ անտիպ է տակաւին:

[2] Անդ, ԺԴ. 8—9:

«Յայնմ ժամանակի»․ կը հարցնենք․ Ե՞րբ եւ ո՞ւր: Ցանկալի էր մեզ գիտնալ ոչ միայն ճշգրիտ ժամանակը, երբ տեղի ունեցաւ դէպքս, այլ եւ տեղը, ուր ի գլուխ ելաւ «աղուաներէն լեզուի» այբուբենի գիւտը: Դժբախտաբար Կորիւն իր ուսուցչին կենսագրութեան մէջ սովոր չէ տալ ժամանակագրական եւ տեղագրական ցուցմունքներ ցանկալի մանրամասնութեամբ: Հոս առանց տարակուսի անդրադարձ մը գործած է պատմագիրը յիշելու համար Մաշտոցի գործունէութենէն դէպք մ'աւելի, որ տեղի ունեցած է իբր 420—421 տարիներուն հռոմէական հողամասի վրայ, եւ զոր չէր կրցած յիշատակել հոն՛, ուր անկ էր:

Կորիւն դէպքին ծանօթ է իր մանրամասնութիւններու մէջ․ գիտէ խնդրարկու անձն յանուանէ՝ Բենիամին․ անոր աստիճանը՝ երէց․ անոր ազգը՝ աղուան, այդ ազգին մայրենի լեզուն՝ աղուաներէն․ գիտէ նաեւ անոր այցելութեան նպատակը՝ ստանալ այբուբեն «աղուաներէն լեզուի» համար․ եւ վերջապէս թէ կատարուած է իր խնդիրքը:

Բենիամին երէց, որ այսպիսի խնդրով դիմած է Մաշտոցի, լսած ըլլալու էր անշուշտ թէ ան պատճառ եղած է Կովկասեան քրիստոնեայ ազգերու՝ Հայոց, Վրաց, Աղուանից եւ Բաղասճաց գրականապէս լուսաւորութեան, թէ ան իւրաստեղծ նշանա-

գիրներ բաշխած է Հայոց եւ Վրաց, ուստի եւ հմուտ եւ բազմափորձ էր նշանագիրներ յօրինելու արուեստին: Եւ արդեամբք ալ կը հաստատէ Կորիւն[3], թէ Վարդապետին «բարեգործ համբաւը» հռչակուած էր Հռոմէական Հայաստանի մէջ «յառաջագոյն» արդէն, այսինքն իր հռոմէական հող կոխելէն յառաջ: Վարդապետին յաղթական երթն Կ. Պոլիս եւ վերադարձն անկէ նպաստեցին իր համբաւին հռչակը աւելի չափով տարփողելու ընդհանուր: Բենիամինը այդ սքանչացողներու թուին մէջ հաշուելու է: Ան ոչ միայն հիացող եղած է, այլ եւ բարենախանձ: Վասն զի իր ազգը, որ կը խօսէր «աղուաներէն», թէպէտ քրիստոնեայ էր, բայց կը նկատուէր տակաւին բարբարոս, որովհետեւ չունէր իր սեփական լեզուին համար այբուբեն, ուստի նաեւ գրականութիւն: Ան նախանձախնդիր ազգային վերածնութեան, ազգային մշակոյթին եւ ազգին պատուին, համարձակութիւն կու տայ անձին դիմելու բազմափորձ Վարդապետին եւ խնդրելու անկէ իր լեզուին համար պատշաճաւոր նշանագիրներ:

Ո՞ր կողմէ եկաւ Բենիամին, ո՞ւր պատահեցաւ Վարդապետին եւ ո՞ւր մեկնեցաւ. կը լռէ Կորիւն այս մասին: Կրնանք սակայն վստահաբար ըսել, թէ Բենիամին որովհետեւ երէց էր, պէտք է իր աղուան ժողո-

[3] Անդ, ԺԴ. 1:

վուրդն ալ քրիստոնեայ եղած ըլլար: Ժողովուրդ մը, որ քրիստոնեայ է, կարօտ սեպհական գրի եւ գպրութեան, պէտք է ապրած ըլլայ քաղաքակրթուած ժողովուրդի մը, մշակոյթով բարձր տիրապետութեան մը ազդեցութեան տակ: Եթէ այդ ժողովուրդը երկար տեւողութեամբ վայելած է այդ պետութեան հովանին, հարկ է որ խրացուցած ըլլար անոր մշակոյթն եւ անոր լեզուն. այս դէպքին չէր կրնար ան՝ պահանջքն զգալ իր սեպհական գրականութեան: Եթէ Բենիամին իր ժողովուրդը տակաւին բարբարոս կ'որակէ, որովհետեւ չունէր ժողովրդական լեզուն իր գիրն եւ գրականութիւնը, հարկ է ենթադրել թէ ան դեռ այն ինչ կը սկսէր իր զարթօնքը, այդ ժողովուրդը դեռ իր մայրենի լեզուն կը խօսէր, ամփոփ շրջանի մէջ կ'ապրէր, թէեւ քաղաքակրթուած ժողովուրդի մը ազդեցութեան տակ: Ան կը դիմադրէ դեռ օտարին ազդեցութեան, չ'ուզեր անոր հետ համաձուլուիլ. ճիգեր կը թափէ իր ինքնակացութեան համար, կայ իր մէջ ազգային ինքնագիտակցութիւնը:

Բենիամին երէց, որ այսպիսի խնդրով կը մերձենայ Մաշտոցի, անշուշտ կրթուած, գպրութեան ծանօթ անձնաւորութիւն էր. պատուան ժողովուրդին երէցն է, անոր քարոզիչը. ան պէտք է ծանօթ եղած ըլլայ քրիստոնեայ մշակութային լեզուի մը, յունարէնի կամ ասորերէնի. իր եկեղեցական կրթու—

թիւնը յոյն կամ ասորի լեզուով եւ ուսմամբ առած ըլլայ։ Անշուշտ այս երկու լեզուներէն մին կիրարկեց իբրեւ հաղորդակցական լեզու Մաշտոցի հետ։ Մաշտոց հռոմէական հողի վրայ կը գտնուէր, Կ. Պոլիս կամ Հայկական նահանգներու մէջ. հաւանականագոյն է ենթադրել թէ այս շրջանի մէջ յունարէն լեզուն աւելի նախապատուութիւն կը վայելէր քան ասորականը։

Բայց ի՞նչ ժողովուրդ էր այդ «աղուան ազգը» եւ ո՞ւր անոր բնակավայրը։ Վստահ եմ, թէ ինձ աշխարհագրական անհմտութիւն պիտի չվերագրեն ընթերցողներս, երբ տարօրինակ հարցումս կ'ուղղեմ։ Իցի՛ւ գոյս Կորիւնի յիշեալ տողերուն ինձմէ յառաջ հայ եւ օտար ընթերցողներն ուղղած եւ պատասխանելու հետամուտ եղած ըլլային։ Ամէն ընթերցող «աղուան ազգը» ենթադրած է իր բնիկ հայրենիքի, Աղուանից աշխարհի մէջ. եւ շատ ալ բնական էր այս։ Անբնական էր սակայն «աղուան» երէցի հետապնդումը Մաշտոցի ետեւէն մինչեւ Հռոմէական Հայաստան, մինչեւ Թերեւս եւ Կ. Պոլիս, ի խնդիր նշանագիրներու «աղուաններէն լեզուի»։

2.

Կորիւնի հայ ընթերցողներէն Մովսէս Խորենացի «աղուան ազգով» հասկցած է Աղուանից աշխարհը. եւ որովհետեւ իրեն անըմբռնելի երեւցած է, թէ ինչպէս Մաշ-

տոց հայերէնախօս «աղուան» ժողովուրդին համար ուրոյն նշանագիրներ կրնայ յօրինած ըլլալ, մեկնաբանած է Կորիւնի տեղիքը այն իմաստով, թէ Մաշտոց երթալով Աղուանից աշխարհը, այն տեղ այլալեզու Գարգարացի ժողովուրդին համար հնարած է մասնաւոր այբուբեն: Լսենք իր խօսքերը. «Եւ ինքն (Մաշտոց) յԱղուանս իջեալ առ Արսվաղէն թագաւոր նոցա եւ առ եպիսկոպոսապետն Երեմիա. որոց կամաւ յանձն առեալ զվարդապետութիւն նորա՝ եւ առին մանկունս ընտիրս: Եւ կոչեալ զԲենիամին ոմն շնորհաւոր թարգման, զոր անդանդաղ արձակեաց մանուկն Վասակ Սիւնեաց տէր՝ ի ձեռն Անանիայի եպիսկոպոսի իւրոյ. որովք առեալ գնշանագիրս կոկորդախօս աղխազուր խժական խեցբեկագունին այնորիկ Գարգարացւոց լեզուին: Եւ վերակացու թողեալ զաշակերտ իւր զՅովնաթան, միանգամայն եւ քահանայս կացուցեալ դրանն արքունի՝ ինքն դառնայ ի Հայս» (Գ. 54):

Աւելորդ է բառ փնտռել որակելու համար Մ. Խորենացւոյ համարձակութիւնը այս աստիճան աղաւաղելու Կորիւնի խնդրոյ առարկայ տեղիքին ժամանակագրութիւնը, տեղագրութիւնն եւ առ հասարակ պատմական եղելութիւնը: Մ. Խորենացի «զԲենիամին երէց» կը վերածէ «զԲենիամին ոմն շնորհաւոր թարգման»՝ առանց տարակուսի Գարգարացւոց լեզուին: Ան իր բնակութիւնն

ունի Սիւնեաց աշխարհին մէջ, վասն զի կ'ուղարկէ «մանուկն Վասակ Սիւնեաց տէր» եւ այն «ի ձեռն Անանիայի եպիսկոպոսի իւրոյ»: Անուններս գիտէ ան Կորիւնէն. ուր սակայն Վասակ «մանուկ մը» չէ, այլ մարզպան «կողմանցն Վրաց [4]»: Վասակ «արձակեաց» Բենիամինը «ի ձեռն Անանիայի». Խորենացի ըսել կ'ուզէ, թէ Բենիամին գնաց Անանիա եպիսկոպոսի հետ միասին. վասն զի կ'աւելցնէ անմիջապէս թէ «որովք», ուստի Անանիայի եւ Բենիամինի հետ «ստեղծ (Մաշտոց) գնշանագիրս... Գարգարացւոց լեզուին»: Անհրաժե՞շտ էր Վարդապետին նշանագիրներ ստեղծելու համար եպիսկոպոսին եւ Թարգմանին օժանդակութիւնը: Հոս «Թարգման» փոխառութիւն է Կորիւնէն, որ ԺԳ. 2, պատմելէ ետքը, թէ Մաշտոց Վրաց նշանագիրներ տուաւ, կը գրէ. «Եւ գտեալ զայր մի Թարգման վրացերէն լեզուին, որ անուանեալ կոչէր Ջաղայ, այր գրագէտ եւ ճշմարտահաւատ». ուր «Թարգմանին» դերն եղաւ օգնել Վարդապետին վրացախօս մանուկներուն կարդալ եւ գրել սորվեցնելու ժամանակ: Ուշագրաւ է, որ Մ. Խորենացի նկատի առած է հոս նաեւ Կորիւնի այժմ տեղակորոյս մէկ հատուածը, այն է «գխուժադուժ կողմանս Մարաց, որք... վասն խեցբեկագոյն եւ խոշորագոյն լեզուին

[4] Անդ, Ժ. 2. ԺԲ. 2:

դժուարամատոյց էին[5]»։ Աղուանից աշխարհին մէջ բազմազան ազգեր կ՚ապրէին ինքնուրոյն լեզուներով. անոնց թուին մէջ էին անշուշտ նաեւ «Գարգարացիք». կարելի՞ էր սակայն այդ գարգարերէն լեզուն հոմանիշ համարիլ «աղուաներէն լեզուի» հետ։ Ասոր պատասխանը կը թողում Մ. Խորենացւոյ։ Յամենայն դէպս պատահմունքով չէր որ պատմագիրը Աղուանից աշխարհի բազմալեզու ցեղերէն Գարգարացիները դուրս կարկառած է։ Խորենացի կը գրէր իբր 850ին. այս շրջանին անոնք ակնառու դեր պէտք է խաղացած ըլլան, թերեւս ունեցած նաեւ սեպհական գիր։

Մովսէս Դասխուրանցի, որ կարդացած է Մ. Խորենացւոյ Պատմութիւնը, խօսելով Ս. Մաշտոցի առաքելութեան վրայ, կը գրէ ի մէջ այլոց. Մաշտոց «որ ի Հոգւոյն սրբոյ խնամոցն նշանագիր երից ազգաց առնէր՝ Հայոց, Աղուանից եւ Վրաց... ձգէր զքարոզութիւն աւետարանին յաշխարհն Ուտիացւոց եւ յԱղուանս եւ ի Լփինս եւ ի գաւառն Ջորայ (Ճորայ) եւ յայլազգի ազինս (տպ. ազգին) — զորս գերութեամբ էր ածեալ Աղեքսանդրի Մակեդոնացւոյ եւ նստուցեալ զմեծ լերամբքն Կովկասու — զԳարգարացիսն եւ զԿամիճնիկ Հեփթաղսն դարձուցեալ ի հաւատս՝ զկարգ աստուածպաշտութեան ուսուցանէր... եւ բոլորովին քարոզ եւ ա–

[5] Անդ, ԺԱ. 5։

*ռաքեալ խուժադուժ սարտանեացն լինելով՝* ըստ նոցին բարբառոյ դպրութեան առնէր զնոսա ծանօթս [6]» ։

*Գարգարացիք կամ Գարգառք իբրեւ Կովկասեան ցեղ առաջին անգամ կը յիշէ Ստրաբոն (ԺԱ.), որ հետեւելով Մետրոդորոս Սկեպսիսի եւ Հիփսիկրատէսի կը գրէ, թէ Ամազոնք Գարգարացւոց դրացի են եւ կը բնակին ի ստորոտս հիւսիսոյ կաւկասեան լերանց, որոնք Կերաւնիա կը կոչուին ։ Կ'ըսուի թէ Գարգարացիք Ամազոններու հետ հոս գաղթած են Թեմիսկիւրայէն ։ Հաւանօրէն նոյն Գարգարք են, զորոնք կը յիշէ Փաւստոս (Գ. 7) «Գուգարք» անուամբ, այն հիւսիսական ազգերու թուին մէջ, որոնք կը գտնուէին Սանեսանի Մազքթաց արքայի բանակին մէջ. «Ժողովեաց զամենայն զօրս Հոնաց... Գուգարաց, Ճղբաց, Ծղբաց եւ Բաղասճաց եւ Եգերսուանացն» ։ Մ. Խորենացի Առանի, Աղուանից նախահօր սերունդէն կը բղխեցնէ Գարգարացւոց ծագումը. «Ի սորա զաւակէ ասեն սերեալ զազգ Ուտէացւոց եւ Գարդմանացւոց եւ Ծովդէացւոց եւ Գարգարացւոց իշխանութիւնն» (Բ. 8). եւ կը պատմէ թէ Տրդատ Բ. «ամենայն Հայաստանօք իջեալ ի դաշտն Գարգարացւոց՝ պատահէ Հիւսիսականացն ճակատու պատերազմի». անոնց ա–*

[6] *Պատմութիւն Աղուանից, Ա. 27 (էջ 70 տպ. էմինի)* ։

ռաջնորդն է «Թագաւորն Բասլաց» (Բ. 85[7]) :
Մովսէս Դասխուրանցի թէև Խորենացիէն
քաղելով կը գրէ (Ա. 12) Տրդատ «իջեալ ի
դաշտն Գարգարացւոց պատահէ հիւսիսակա–
նաց սաստիկ պատերազմաւ», բայց այլուր
(Ա. 27), ինչպէս տեսանք, Աղուանից ազգե–
րու թուին մէջ կը յիշէր «զԳարգարսն»:
Թովմաս Արծրունի այս ժողովուրդը Պար–
տաւի մէջ կ'ենթադրէ, յայտնապէս նոյնացը–
նելով Աղուանից հետ. Բուխա «իջանէ ի
դաշտն Գարգարացւոց (այլ ձեռ. Գագա–
րացւոց) եւ երթեալ մտանէ ի քաղաքն մեծ
Պարտաւ» (էջ 177). նոյնպէս Ցխսէ «գնաց
եհաս ի Պարտաւ յաշխարհն Գարգարացւոց».
այս ըմբռնումը «օտարոտի» կը գտնէ Հիւբշ–
ման, այնու որ Պարտաւ Ուտի նահանգի մէջ
էր: Յովհ. Դրասխանակերտցի[8] կ'անուանէ
ազգս «Գուգարք». Աշոտ Ա. «ձեռն զհիւսի–
սական կողմամբք արկեալ ի ծործորս մեծի
լերինն Կովկասու, որ ի հովիտս եւ ի ձորս
երկայնազօգս բնակեալք էին ազգք՝ ընդ
խրեաւ հնազանդեցուցանէր. այլ եւ զաղխա–
տրոյգ բնակիչսն Գուգարաց եւ զելուզակուտ
մարդիկ Ուտի գաւառի առ հասարակ ընդ
ձեռամբ նուաճէր» (էջ 140) : Նոյնպէս Սըմ–
բատ Ա. Նուաճումներ կ'ընէ «մինչեւ ցառ–

---

[7] Հայ մատենագիրներու քով Գուգարք եւ Գու–
գարացիք կը շփոթուին յաճախ Գարգարացիք, Գար–
գառք ժողովուրդի հետ. հմմտ. առ այս Հ. Հ. Համ–
բարեան, Հանդ. Ամս. 24 (1910), 241—242:
[8] Թիֆլիս 1912:

րատ մեծի լերինն Կովկասու, զԳուգարացիս եւ զԾանարս, մինչեւ ցԴուռն Ալանաց» (161)։ Թագաւորն Եգերացւոց Կաստանդին «գնայ զհիւսիսային կողմամբք որ ի ծործորս լերինն Կովկասու, միանգամայն իսկ եւ աշխարհն Գուգարացւոց եւ որք մերձ ի Դրունս Ալանաց բնակեալք են, զի եւ ընդ իւրով ձեռամբ զնոսա նուաճէ» (200)։ «Մեծ քորեպիսկոպոսն, որ պայազատէրն իսկ զմասն Գուգարաց մերձ ի Դրունս Ալանաց» (301/2)։

Հ. Հիւբշման[9] նկատի առնելով այս տեղիքները կու գայ այն համոզման թէ «Գարգարացիք Աղուանից մէկ ցեղն էին ոչ-հայկական լեզուով։ Այս ցեղը տարբեր էր Ուտիի բնակիչներէն. բայց ասոնց եւ Ծովդէացւոց հետ Առանի մէջ կը բնակէին Խորենացւոյ ատեն։ Ըստ այսմ մէտ եմ ասոնց բնակավայրը Ուտիի քովերը, բայց Կուրի արեւելակողմը՝ Շաքիի եւ Շիրուանի կողմերը փնտռել»։ Արդեամբք ալ Սուֆի եւ Շուքրուլահ բ. Շիհար արար պատմագիրները կը յիշեն Կարղար(հ) անուն ժողովուրդ մը, որ Առան աշխարհի կողմերը կը գըտնուի, տարածուած դէպի Դերբենդ եւ Ծով, զոր Յ. Մարկուարտ Աբխազներու հետ նոյնացնել կ՚ուզէ[10]։

---

[9] Հին Հայոց տեղւոյ անունները, Վիեննա 1907, էջ 111—112։

[10] J. Marquart, Osteuropäische und ostasiatische Streifzüge, Leipzig 1903, էջ 173։

3.

«Աղուան ազգ» եւ «աղուաներէն լեզու» կ՚ենթադրեն Աղուանից աշխարհ եւ աղուաներէնախօս ժողովուրդ: Այդպիսի աշխարհ ունինք Հայաստանի դրացիութեան մէջ, որուն ժողովուրդը կ՚անուանուի Աղուանք: Անունս կրնայ արտասանուիլ աղ–ուանք եւ աղվանք[11]: Հայերէն անցած է անունս Յունաց 'Αλβανοί ('Αλβανία, Աղբանիա), համանօրէն աղվան — արտասանութեամբ. նոյնին կայ երկրորդ գրչութիւն մ՚ալ Αλανοι: Պարսիկք, Ասորիք եւ Արաբք կ՚անուանեն աշխարհն եւ ժողովուրդը Առանք, Վիրք՝ Ռանի, որ կիրարկուած է յետնաբար նաեւ հայ մատենագրութեան մէջ (Մ. Խորենացի, Մ. Դասխուրանցի) եւ է. դարէ եւքը Աղուանից իշխանական տունը կոչուած է Առանշահիկ (Դասխուր. Ա. 27): Ասկէ մուտ գտած է Յունաց քով Αριανοί, այն է Առան–ք[11]:

Մ. Խորենացի (Բ. 8) խօսելով հայ նախարարական տուներու դասաւորութեան մասին, զոր կարգադրեց Վաղարշակ թագաւոր, կը գրէ. «Յետ սորա (Մուրացան նախարարութեան) մեծ եւ անուանի եւ բազմաբիւր զարեւելից հիւսիսոյ կողմանն կարգէ կողմնակալութիւն՝ զայր անուանի. . զԱռան, յայս մեծ գետոյն, որ հատանէ զդաշտն մեծ, որ անուանի Կուր . . . զցեղս զայս մեծ եւ ա–

[11] J. Marquart, Eranšahr, 116—117:

նուանի... զգունդս Սիւսական, որ ժառանգեաց զզաշտն Աղուանից եւ զլեռնակողմն նորին զաշտի, ի գետոյն Երասխայ մինչեւ ցամուրն որ ասի Հնարակերտ. եւ աշխարհն յանուն քաղցրութեան բարուց նորա կոչեցաւ Աղուանք. զի աղու ձայնէին զնա: Եւ ի նորա ծննդոց այս Առան անուանի եւ քաջ՝ կարգեցաւ ի պարթեւէն Վաղարշակայ կողմնակալ բիւրաւոր: Ի սորա զաւակէն ասեն սերեալ ազգ Ուտէացւոց եւ Գարդմանացւոց եւ Ծովդէացւոց եւ Գարգարացւոց իշխանութիւնն»: Խորենացի հօս ցոյց կու տայ թէ իրեն ծանօթ են Սիւնեաց եւ Աղուանից աշխարհներու պարսկական յորջորջումները Սիսականի եւ Առանի:

Աղուանից աշխարհը ունի իրեն սահման հարաւէն Երասխ եւ Կուր եւ արեւմուտքէն Ալազան գետերը, հիւսիսէն Կաւկասի Կերաւնեան զօտիներն եւ արեւելքէն Կասպից Ծովը: Հայերէն Աշխարհացոյցը, որ Մ. Խորենացւոյ վերագրուած է յետնագոյն ձեռագիրներու մէջ, կը յիշէ Աղուանից գաւառներէն «Եխնի, Բեխ, Քամբէճան, Շաքէ, Ուտան-ի Մարծպան, եւ Դաշտ-ի Բալասան, այն է Բաղասական[12]: Ունի կ՚ըսէ «եւ այլ գաւառս, զորս ի Հայոց հանեալ է». ասոնք են «Շիկաշէն, Գարդման, Կողթ, Ջաւէ

---

[12] Մ. Խորենացւոյ Մատենագրութիւնք, Վենետիկ 1865, էջ 606: Այս գաւառները, տասել թուով, կը յիշէ նաեւ Ղեւոնդ պատմիչ, Պետերբուրգ 1887, էջ 132:

(Ծաւղէ՞) եւ այլ քան զաւառս մինչեւ ցխառնումն Երասխայ ի Կուր գետ»: Այս գաւառները կը գտնուէին Արցախ եւ Ուտի նահանգներու մէջ, զորոնք նոյն Աշխարհացոյցը դասելով Մեծ Հայաստանի նահանգներու թուին մէջ, առընթեր ծանօթագրած է. «Արցախ յերի կայ Սիւնեաց. գաւառք են ի նմա ԺԲ, զոր Աղուանք ունին» (էջ 609). «Ուտի առ մօտ կայ Երասխայ, ընդ մէջ Արցախայ եւ Կուր գետոյ. ունի գաւառս, զոր Աղուանք ունին՝ եւթն»[13]:

Այս Արցախ եւ Ուտի նահանգները Մեծ Հայոց սահմաններու մէջ էին արդէն Տիգրան Մեծի օրով, ինչպէս կը հաստատեն Պլինիոս եւ Ստրաբոն: Նոյնին վկայ է նաեւ Կուադրատոս. «Հայոց Բակուր Թագաւորը († 112 Յ. Ք.) Արտաշատի եւ Հայոց Ուտի երկրին կողմերը կը գտնուէր... Կուրի քով Ովարացիք (կարդալ՝ Գուգարք) եւ Ուտխացիք կը բնակէին, որոնք Հայաստանի մէկ մասը կը կազմեն»[14]: Նահանգներս Աղուանից անցան 297ին, Հայաստանի Դիոկղետեան բաժանումին: Մինչեւ Ե. դարու վերջերը Աղուանից Թագաւորանիստ քաղաքն էր Կապաղակ Ուտիի մէջ, որուն յետոյ փոխանակեց Պարտաւ, նոյնպէս Ուտիի մէջ, որուն համար կ՚ըսուի թէ Կաւատ Ա. կառուցած ըլլայ իբրեւ սահմանաբերդ ընդդէմ Հոնաց,

---

[13] Անդ, էջ 610: Այս գաւառներու մասին հմմտ. Հիւբշման, անդ, էջ 227—230 եւ 232—234:

[14] Անդ, էջ 21—22, 100—101 եւ 106—112:

Գերմ–Կաւատ անունով[15]: Ուտիի մէջ էր նաեւ Խաղխաղ քաղաքը, որ մինչեւ 297 կը ծառայէր իբրեւ «ձմերոց արքայութեանն Հայոց» (Ագաթ. 21). իսկ 451ին էր պարզ գիւղ մը յերկրին Աղուանից» (Փարպ. 65), թէպէտ Եղիշէ (57) զայն «ձմերոց թագաւորաց Աղուանից» կը ներկայացնէ:

Աղուանից աշխարհ ընդարձակ իմաստով կը համապատասխանէր Արաբական պետութեան «Առան նահանգին»: Իսկ Աղուանք անձուկ իմաստով կ՚ընդգրկէր «Արանշահիկ իշխանութիւն»ը, այսինքն Կուրի եւ Երասխի մէջ գտնուող երկիրը, ուստի Արցախ եւ Ուտի նահանգները Պարտաւ գլխաւոր քաղաքով: Այս անձուկ սահմանին մէջ հայերէնախօս էին Աղուանք, կրօնքով քրիստոնեայ, թէեւ կային հոն նաեւ ցեղեր, որոնք պահպանած էին դեռ իրենց սեպհական լեզուն: Արդիւնքն էր այս հայկական քաղաքակրթութեան, զոր վայելած էին իբր 400 տարի: Քրիստոնէութիւնը ընդունեցան անոնք Ս. Գրիգորի քարոզութեամբ, երբ տակաւին Մեծ Հայաստանի սահմանին մէջ կը գտնուէին Արցախ եւ Ուտի: Քրիստոնէական քարոզութիւնը լսելի եղաւ այս անձուկ սահմանէն դուրս ալ. Ե. դարուն Բաղասական կողմանք ունէին իրենց եպիսկոպոսը: Թէպէտ 297ին այս նահանգները քաղաքականապէս բաժնուեցան Հայաստանէն, բայց չարունակեցին

[15] J. Marquart, Eranšahr, 119. Հիւբշման, անդ 111:

Աղուանք պահել մշակութային կապ Հայաստանի հետ. Աղուանից եկեղեցին մնաց Հայոց վերին իրաւասութեան տակ[16]:

Ունէր Աղուանից աշխարհը իր քաղաքական ինքնակացութիւնը, 297էն ետքը պարսկական գերիշխանութեան տակ՝ պարտական էր զինակից ըլլալ Պարսից Թագաւորին: 370ին Ուռնայր Աղուանից Թագաւոր զինակից Շապուհ Բ.ի՝ կռուեցաւ հայ–յունական բանակի դէմ: Իսկ 415ին, երբ Մաշտոց այցելեց Աղուանից աշխարհ, տարնջականութիւնը վայելեց Արսուաղէն Թագաւորի եւ Երեմիա եպիսկոպոսի: Վերջին Թագաւորը կը Թուի Վաչէ[17], Զ. դարու երկրորդ կէսին: 451ին Աղուանք զինակից էին Հայոց եւ Վրաց ընդդէմ Յազկերտ Բ.ի:

Զաքարիա Հռետորի վերագրուած Եկեղեցական Պատմութեան մէջ ասորի հեղինակը Զ. դարու առաջին քառորդին կը հաղորդէ մեզի այս երեք ազգերու մասին ուշադրութեան արժանի տեղեկութիւններս[18]. «Հիւսիսային կողմը կը գտնուին հինգ հաւատացեալ ժողովուրդներ, որոնք 24 եպիսկոպոս ունին. անոնց կաթողիկոսը իր նիստն ունի Պարսկահայաստանի Դուին մեծ քաղաքի մէջ. անոնց կաթողիկոսին անունն է

---

[16] Հմմտ. Հանդ. Ամս. 1947, էջ 489 եւ շար.:
[17] Հմմտ. Եղիշէ, 153. Մ. Դասխուրանցի, Պատմ. Աղուանից, Ա., 10 (էջ 12 էմին):
[18] Die sogenannte Kirchengeschichte des Zacharias Rhetor, Leipzig 1899, էջ 252—53:

Գրիգոր, արդար եւ անուանի մարդ մը։ Գուրձեալ Վրաստան (Gurzan) երկիրն ի Հայս, յունարէնի նմանող լեզուով մը. անոնք ունին Պարսից թագաւորին ենթակայ գլուխ (մամախալիս) մը։ Գուրձեալ երկիրն Աղուանից (Arran), նոյնպէս Հայոց աշխարհին մէջ, սեպհական լեզուով. հաւատացեալ եւ մկրտուած ժողովուրդ մը, որ ունի Պարսից թագաւորին ենթակայ գլուխ (Մեծ Իշխան) մը։ Գուրձեալ երկիրն Սիսական սեպհական լեզուով, հաւատացեալ ժողովուրդ մը, որուն մէջ կը բնակին նաեւ հեթանոսներ։ Երկիրն Բաղասական (Bazgun) սեպհական լեզուով, որ կը հասնի մինչեւ Կասպից ծովու դուռը, որոնք Հոնաց երկրի մէջ են»։

Հետաքրքրական են այս տեղեկութիւնները այն տեսակէտէ, որ ոչ միայն կը շեշտեն յիշեալ հինգ ժողովուրդներու կախումը Դունոյ կաթողիկոսարանէն, այլ եւ կու տան քաղաքական դրութիւնը այդ երկիրներու, որոնք զրկուած են թագաւորներէ եւ կը կառավարուին Իշխաններէ, Պարսից ենթակայ։ Հոս մեզի համար աւելի կարեւոր է Սիսականի, Աղուանից երկրի եւ Բաղասականի մէջ խօսուած լեզուներու յիշատակութիւնը. դժբախտաբար, սակայն, չէ հաղորդուած անոնց սեպհական յատկութեանց վրայ մանրամասնութիւն, գէթ այն չափով, ինչպէս կը յատկանշէ վրացերէնի նկարագիրը։ Մեզի այլուստ ծանօթ չէ Սիւնեաց աշխարհի «սեպ-

հական լեզուն»․ անոնք կը խօսէին հայերէն, թէեւ ըլլայ այն ինքնուրոյն գաւառաբարբառ մը։ Նոյնպէս քրիստոնեայ Աղուանները պաշտօնական լեզու ունէին հայերէնը, նոյնը կրնայ ըսուիլ նաեւ Բաղասականի համար։ Այսու ժխտուած չ՚ըլլար ի հարկէ, թէ չկային այս երկիրներու մէջ սեպհական լեզուներով ցեղեր։ Արդէն Թէոփանէս Մետիլինեցի[19] գրէր, թէ Աղուանից աշխարհի մէջ կը խօսուէին աւելի քան 26 լեզուներ, ուստի նոյնքան ալ ցեղեր, որոնք կը կազմէին այդ հիւսիսական կողմանց ժողովուրդներու համագումարը։ Շատ ուշ, Ժ․ դարու արաբ պատմագիրներու՝ այսպէս Իստախրիի քով կը գտնենք յիշատակութիւն, թէ Պարտաւի մէջ կը խօսուի յատուկ լեզու մը՝ առաներէն[20]։ Խնդիր կրնայ ըլլալ սակայն, թէ արաբ հեղինակներդ ունէի՞ն լեզուաքննական հմտութիւնը զանազանելու արմաներէնը արրանէրէնէ։ Ուրիշ կողմէ ծանօթ են մեզի գրաւոր յիշատակարաններ Պարտաւէն, որոնք գրուած են հայերէն, այսպէս իրր 610էն Ամարասի Մխիթար եպիսկոպոսի թուղթն առ Աբրահամ Հայոց կաթողիկոս, ուրիշ թուղթեր, ճառեր, պատմական եւ աստուածաբանական գրուածքներ Զ․—Թ․ դարերէ, յատկապէս յիշելու արժանի է նմաններ Ժ․ դարէն, ամէնն ալ չարագրուած հայերէն։

Եւ առ հասարակ գոյութիւն ունէ՞ն

19 Մարարոն, ԺԱ։

20 Marquart, անդ 117․ Հիւբշման, անդ 112։

Աղուանից աշխարհին մէջ տիրապետող աղուանի ցեղ եւ աղուանէրէն լեզու. եւ ո՞րն էր Թէոփանէսի յիշած այն 26 լեզուներէն: Ղազար Փարպեցի կը պատմէ թէ Վարդան Մամիկոնեան 451ին երբ իր գունդով հասաւ Աղուանից աշխարհը, յառաջացաւ միջամուխ մինչեւ «ի Պահակ Որմոյն (կարդա՛լ ի պահակ Իւրոյն), որ է ընդ մէջ իշխանութեանն Աղուանից եւ Հոնաց... զՊահակն յանձն առնէին թագաւորազնի միում Աղուանի, որում անուն էր Վահան» (էջ 66): Այդ «աղուան» Վահանն եթէ թագաւորազն էր, ըլլալու էր եթէ ոչ Ալանաց (տե՛ս վարը, էջ 337), գոնէ Առանշահէն Աղուանից թագաւորի արիւնէն. իսկ Առանշահէն այն թագաւորն էր, որ իբր 415ին աստնջականեց Մաշտոց վարդապետն եւ շնորհեց իրեն ամէն աջակցութիւն բանալու Աղուանից աշխարհին մէջ դպրոցներ եւ ուսուցանելու «աղուան» մանկտոյն հայերէն գիր եւ հայկական դպրութիւն: Այն ժամանակ թագաւորանիստ քաղաքն էր Կապաղակ Ուտի նահանգին մէջ, ուստի «աղուան» հարկ է նկատել Ուտեցիները, որոնք թէ հայերէն կը խօսէին եւ թէ իրենց ուրոյն բարբառն՝ ուտերէնը: «Աղուան» այլ եւս աշխարհագրական անուն էր եւ ոչ ազգի անուն:

Որչափ ալ ուզենք այդ բազմալեզու աշխարհին մէջ մէկ կամ միւս ցեղի լեզուն գերիշխող ենթադրել, բայց հարկ է այդ աշխարհին ամէնէն աւելի քաղաքակրթուած նահանգները Ուտի եւ Արցախ համարել, որոնք

քրիստոնեայ էին եւ 400 տարի Մեծ Հայաստանի մաս կազմած էին. Հասարակաց լեզուն հայերէնը ճանչցուած էր, եկեղեցական պաշտամունքները հայերէն լեզուով կը կատարուէին: Այդ անձուկ իմաստով Աղուանից աշխարհը ոչ միայն չորս դար Մեծ Հայաստանի հովանույն տակ ապրած էր եւ անոր մշակոյթով սնած, այլ եւ ազգախառնութեամբ կապուած անոր հետ, կրօնքով եղբայրացած, նոյն լեզուով անոր հետ կենցաղավարած, թէպէտ յետոյ քաղաքականապէս անկէ բաժնուած, բայց եղած է անոր բախտին բախտակից, անոր հետ դաշնակից եւ դրացիութեամբ հաղորդակից, ինչպէս երբեմն նոյնպէս եւ այսօր: Զէ լսուած պատմութեան մէջ, թէ այս կրկին նահանգները իրենք զիրենք երբեք ոչ-հայ դաւանած ըլլան: Ե. դարուն Գուգարք, Արցախ, Ուտի, Փայտակարան եւ Հռոմէական Հայաստան ազգագրական տեսակէտով կը նկատուէին մասեր հայ ժողովուրդի մեծ գանգուածին, չար բախտով միայն զատուած անկէ, միաանգամ միացած եւ դարձեալ բաժնուած: Հայ ըմբռնումով Մեծ Հայաստան գաղափարի սահմաններուն մէջ են անոնք:

Այս գիտակցութեամբ այցելած էր Մաշտոց 415ին Աղուանից աշխարհ, հաղորդակից ըլլալու զայն նորաստեղծ հայ գրականութեան արգասիքներուն:

4.

408ին գտաւ Մաշտոց հայ նշանագիրներն եւ հիմ դրաւ հայ գրականութեան: Երբ ձեւ եւ կերպարանք առաւ հայ գրականութիւնը, արմատ արձակեց հայ հողին վրայ, Մաշտոց նոյնին անդրադոյն մշակումը յանձնելով Ս. Սահակայ, ինքը խումբ մը աշակերտներով մեկնեցաւ Գողթն եւ Սիւնիք եւ անկէ Աղուանից աշխարհը, ապա Գուգարք՝ տարածելու հայ գիրն եւ մատչելի ընելու նորածնունդ գրականութիւնը հայախօս ժողովուրդներուն: Ի մասին Աղուանից այսպէս կը գրէ Կորիւն. «Եւ ապա յետ այնորիկ հրաժարեալ ի նոցանէ (այսինքն ի Սիւնեաց)՝ գնայ ի կողմանս Աղուանից. եւ երթեալ իջանէր յաշխարհն: Եւ հասեալ ի Թագաւորական տեղին՝ տեսանէր զսուրբ եպիսկոպոսն Աղուանից, որում Արսվաղէն անուն, ամենայն ազատօք հանդերձ: Որոց առաւել պատրաստակութեամբ ընկալեալ վասն անուանն Քրիստոսի: Ապա հարցեալ ի նոցանէ՝ առաջի եդեալ վասն որոյ եկեալն էր: Եւ նոցա երկոցունց զուգանայն՝ եպիսկոպոսին եւ թագաւորին՝ յանձն առեալ դպրութեանն հնազանդելոյ: Տային եւս հրաման ի գաւառաց գաւառաց եւ ի տեղեաց տեղեաց իշխանութեանն իւրեանց բազմութիւն մանկտւոյ յարուեստ դպրութեանն ածել եւ գումարել ըստ արժանաւոր եւ պատեհ տեղեաց՝ դասս դասս, եւ դարմանս եւ ռոճիկս

կարգել: Իսկ իբրեւ հրամանն այն արդեամբք եւ գործովք յանկ ելանէր, ապա այնուհետեւ երանելոյն Երեմեայ եպիսկոպոսի ի ձեռն առեալ վաղվաղակի դաստուածեղէն Գրոց թարգմանութիւնս՝ ի գործ արկանէր», այս ինքն Ս. Գրքի հայերէն թարգմանութիւնը կը կարգայ ի լուր ժողովուրդին: Ագուանքէն կ'անցնի Մաշտոց ի կողմանս Բաղասական, ուր Մուշեղ եպիսկոպոս ձեռնտու կ'ըլլայ իրեն. եւ կ'այցելէ այս առթիւ «ի կողմանս Մարաց», հաւանօրէն Փայտակարան: Իր աշակերտներէն մէկ քանին «վերակացու կողմանցն կացուցանէր» եւ ինքը Գարգմանքի վրայէն կ'անցնի «ի կողմանս Վրաց», ուր Վասակ Սիւնի իբրեւ մարզպան Վրաց ամէն դիւրութիւն կ'ընծայէ իրեն. անկէ ալ կը շարունակէ ճանապարհը միջամուխ Վրաց աշխարհ: Այս երկայնաձիգ ճանապարհէն վերադարձին կը ձեռնարկէ ուրիշ ուղեւորութեան մ'ալ, որ կը տանէր զինքը Հռոմէական Հայաստան — Կ. Պոլիս:

Պատմութեան այս ընթացքէն բացայայտ կը տեսնուի, թէ Մաշտոց գնաց Ագուանից աշխարհ ոչ թէ անոնց սեպհական այբուբեն տալու, այլ հայերէնախօս քրիստոնեայ ժողովուրդին ծանօթացնելու հայ գիրն եւ հայ գրով եւ լեզուով ստեղծուած գրականութիւնը, յատկապէս Աստուածաշունչի հայերէն թարգմանութիւնն եւ այլ պաշտամանց գիրքերը: Ինչ որ կը գրէր Կորիւն նկատմամբ Վրաց, թէ Մաշտոց տալով անոնց սեպհական

գիր եւ սեպհական՝ վրացերէն լեզուով գրականութիւն, «զնոսա, որ յայնչափ ի մանաւոր եւ ի բաժանեալ լեզուացն ժողովեցան, մէով աստուածաբարբառ պատգամօք մի ազգ կատարեալ՝ փառաւորիչս մէոյ Աստուծոյ յօրինէր», նոյնը կ'արժէ նաեւ Աղուանից համար. բազմացեղ, բազմալեզու ժողովուրդներն երկրին, որոնք ընդունած էին քրիստոնէութիւնը, քրիստոնէական եւ ցեղային դաստիարակութեամբ պիտի ըլլային հայախօս, պահելով հանդերձ ընտանեկան, մայրենի լեզուները, իւրաքանչիւրն իր յարկին տակ: Արդեամբք ալ կը գրէ Կորիւն, թէ ծանօթանալով հայ գրին եւ հայ գրականութեան «անդրէն յական թօթափել վայրենամիտք եւ դատարկասունք եւ անասնաբարոյ աշխարհաբնակքն Աղուանից մարգարէագէտք եւ առաքելածանօթք եւ աւետարանաժառանգք լինէին եւ ամենայն աւանդելոցն Աստուծոյ ոչ ինչ անտեղեակք» (ԺԱ. 3):

Այս խորհրդածութիւնները կը ստիպեն զմեզ ըսելու, թէ Մաշտոց Վարդապետ քրիստոնեայ աղուան ժողովուրդի համար մանաւոր այբուբեն չէ յօրինած եւ հայկական շահերն ալ թոյլ չէին տար քաղաքագէտ եւ հայրենասէր Վարդապետին նման քայլ մ'առնելու: Իսկ ոչ-քրիստոնեայ տարրը տակաւին չէր գտնուեր զարգացման այն բարձրութեան վրայ, որ պահանջէ զգալ գրի եւ գրականութեան: Եւ կարելի ալ չէ ցոյց տալ այդ բազմալեզու աշխարհէն ցեղ մը, որուն լեզուն

գերիշխող նկատուած ըլլար այն տեղ եւ այսպէս ատակ գրական լեզուի։ Ապացոյց ասոր չգոյութիւնը որ եւ է թղթի բեկորի կամ արձանագրութեան այդ լեզուով եւ գրով Աղուանից աշխարհի մէջ։

5·

Բայց եւ այնպէս վերջերս խօսք եղաւ հրապարակի վրայ, թէ գտնուած է Էջմիածնի Մատենադարանի մէջ «աղուաներէն» այբուբեն։ Նման գիւտեր եղած էին աւելի յառաջ ալ։ Թէպէտ ինձ անմատչելի են այս նորագիւտ «աղուաներէն» այբուբենի մասին լոյս տեսած գրութիւնները, բայց եւ այնպէս ունեցած եմ պատեհութիւնը տեսնելու այդ «աղուաներէն» այբուբենը իր սկզբնագրի մէջ։

1924 Ապրիլ—Մայիսին կը գտնուէի Մոսկուա· այս առիթով տուած էի այցելութիւն մը ուսուցչապետ Լեւոն Մսերեանցի· իր քով գտած էի խումբ մը հայերէն ձեռագիրներու· անոնցմէ Թ· 11 ժողովածոյ ձեռագիր մըն էր, գրուած 1436—1440 տարիներուն Թովմաս Մեծոփեցւոյ եւ իր աշակերտ Յովհաննէս Արճիշեցւոյ գրչութեամբ։ Թղ· 106ա—151բ կը բովանդակէր գրուածքս·

«Յաղագս իմաստութեան անվարժ ազգաց ուսման, արարեալ Թովմաս վարժապետի ի խնդրոյ աշակերտաց իւրոց»։ Կը սկսի եւ կ՚աւարտի այսպէս· «Պարտ է գիտել ուսումնասիրաց եւ բանասիրաց անձանց, զի գիրն

անմարմին է...: Զնուաստ վարդապետս Թովմա յիշեա ի Տէր»:

Ձեռնարկ մըն է մանկանց կարդալ–գրել ուսուցանելու. կու տայ համառօտիւ գրի գիւտի պատմութիւնը, գրերու աստուածաբանական, թուական եւ համադրական իմաստները, կը ցուցադրէ այբուբեններն Եբրայեցւոց, Յունաց, Ասորւոց, Հռովմայեցւոց որ է դաղմատ (լատիներէն), Վրացւոց, Աղուանից (թղ. 142ա), Խպտաց, Հնդկաց, «Տաճկերէն է Մուղալ»: Կը յաջորդէ Սուրբ Աստուածը յունարէն, ասորերէն եւն: Թղ. 119ա—120 «Դաւթի անյաղթ փիլիսոփայի. Այրն զԲէն ծնանի, Բենն զինքն ծնանի...»: Թղ. 124բ—151բ. Եւ այս են գլուխք վերծանութեան...: Մեկնութիւն գլխոց վերծանութեան եւ այլն:

Այս այբուբեններու շարքին տեսնել «Աղուանից» նշանագիրներ, անակնկալ պատճառեց ինձ. խնդրեցի Ուսուցչապետէն թոյլ տալ ինձ լուսանկարել այդ այբուբենը, պարապով համեմատական ուսումնասիրութեան մ'ենթարկելու անոր որպիսութիւնը: Բայց չգիջաւ Մսերեանց, առարկելով, թէ ինքը մտադիր է ուսումնասիրել զայն: Բայց չիրականացուց այդ մտադրութիւնը: Իր մահէն ետքը անցած է ձեռագիրը Էջմիածնի Պետական Ձեռագրատուն ընդ համարաւ 7117: Այս Ձեռագիրն է, զոր տեսած է հայերէնագէտ Իլիա Վ. Աբուլաձէ Էջմիածին եւ փութացած է ի տես «Աղուանից» նշանագիրներու տեղե–

կուլթիւններ հաղորդել իր ուսուցչապետին՝ Մ. Ճանիճէի ի Տփղիս: Ինձ անծանօթ կը մնայ, թէ Մ. Ճանիճէ յաջողա՞ծ է առեղծուլ անոր գաղտնիքը, գտնել կուկասեան որ եւ է ժողովուրդի քով համապատասխան նշանագիրներ: Բայց այս առիթով գրած է G. Dumezil, Une chrétienté disparue. Les Albaniens de Caucase: Mélanges Asiatiques 1940, p. 125—132, համարելով այնպէս, թէ այդ «նորագիւտ» աղուաներէն այբուբենը աղուաներէնախօս քրիստոնեայ ժողովուրդի մը կը պատկանէր:

Յիշեմ այս տեղ կանխագոյն գիւտերն ալ:

Eugène Boré, Correspondance et mémoires d'un voyageur en Orient, t. II. Paris, 1840, p. 34—53 տեղեկագիր մ'ունի, ուղղած 14 Հոկտ. 1838 առ Ակադեմիա. ուր նկարագրելով իր անցուցած օրերն Էջմիածին, կը հաղորդէ ինչ ինչ Էջմիածին տեսած ձեռագիրներու մասին, ի մէջ այլոց «հին եւ դեղնած թուղթի մը» մասին, որ ծառայած է իբրեւ պահպանակ նոյնպէս հին ձեռագրի մը: Թէ ի՞նչ ձեռագիր էր այն, չի յիշուիր յանուանէ: Այս պահպանակը կը ներկայացնէ անծանօթ այբուբեն մը 38 (40) նշանագիրներով, որուն կը յաջորդեն 12 նշանաձեւեր կենդանաբերի (zodiaque) եւ երկու տող նախադասութիւն մը այդ այբուբենով: Ե. Բորէ համարած է այդ այբուբենը, զոր նմանահանութեամբ ներկայացուցած է (էջ 50), աղուաներէն: Թէ ձեռագրին մէջ կա՞ր ակնար-

կութիւն այս մասին, խօսք չ'ընէր · կը գրէ պարզապէս · „Je suis heureux d'annoncer à votre savante assemblée que j'ai retrouvé ce même alphabet (այսինքն աղուաներէն լեզուի, զոր հնարած էր Մեսրոպ) sur une feuille vieille et jaunie, servant à couvrir un manuscrit, lui même fort ancien", եւ կ'աւելցնէ · „et je le crois d'autant plus authentique, que par le nombre et la disposition des lettres, correspondant avec exactitude aux caractères de l'alphabet arménien, il semble effectivement l'ouvrage du même inventeur" (p. 49). Բայց Ն. Բորէ մոլորութեան մէջ կը գտնուի : Ամբողջը հայերէն ծածկագրութիւն մ'է, որ չէ «հայերէն նօտր գիրը»՝ ինչպէս համարած է Հ. Աճառեան[21], հետեւելով Խ. Ստեփանէի[22], բայց նօտրագրի հիման վրայ կազմուած կ'երեւայ : Վերջին երկու տողերը կը կարդացուին : «Թ՝ տառի վերջն խաչ նաւին գրն(ե)ցի ՌՃԾ» (= 1701), ուստի այնքան ալ «հին» չ'երեւար ձեռագիրը :

1886ին նման գիւտի մ'առջեւ գտնուած է Ն. Քարամեանց : Ի Մինխէն մասնաւորի մը քով տեսած է ձեռագիր մը, Յովասափ Սեբաստացւոյ գրչէն (1564է), որ այժմ Բեռլինի Պետական Մատենադարանի Ms. orient. quart. 805 ձեռագիրը կազմած է, ուր (Թղ.

[21] Հայոց գրերը, Վիեննա 1928, էջ 479—480:
[22] Մ. Խորենացւոյ Պատմութիւն Հայոց, աշխարհաբար թարգմանութիւն: Բ. տպ., Պետերբուրգ 1898, էջ 485/6, ծան. 750:

103բ) երեւան բերած է «Գիր Աղուանից», նոյնպէս երկու տող ծածկագրութիւն մը, եւ փութացած է արեւելագէտներու ուշադրութեան յանձնել յօդուածով մը. N. Karamianz, Einundzwanzig Buchstaben eines verlorenen Alphabets: Zeitschrift der deutschen Morgenländischen Gesellschaft 40 (1886) 315—319. Քարամեանց յիշեալ երկու տողերու մէջ, նմանահանութեամբ՝ Հանդ. Ամս. 17 (1903) 334, գտած է 21 զանազան նշանագիրներ, զորոնք համարած է աղուաներէն այբուբենի մասեր: Բայց Յ. Մուրատ (Հանդ. Ամս. անդ, էջ 334—335) ճշդիւ նկատեց, թէ այն ոչ այլ ինչ է, եթէ ոչ «խորհրդով այլաձեւեալ եւ յերիւեալ խոկական հայերէն նշանագիրք». ուստի հարկ է դնել զայն «ի կարգի ծածկագրաց»:

Այսօրինակ ծածկագիրներու շարքին պէտք է դասել նաեւ այն ծածկագիր այբուբենը, «Այս Յոհաննայ գիրն է» խորագրով, զոր ուղարկած էր մեզ Յ. Բայբուրդցի (յԱխլցխա) հանելով փոքրիկ նօտրագիր թղթեայ տետրակէ մը:

Հ. Աճառեան «Աղուանից գիր» կը համարի աղաւաղուած ձեւ մը «Աղուանագիրի». «Հաստատապէս կրնանք ըսել, թէ մեր զանազան ձեռագիրներու մէջ յիշուած «աղուաներէն» գրերը աղուանագիր բառի հետ չփոթութեան արդիւնք են» (էջ 480): Բայց ի՞նչ ծագում ունի «աղուանագիրը», որով իմացուած է ծածկագիրը:

Յիշենք այս տեղ Աղուաներէն նշանագիրներու մասին ակնարկութիւն մ'ալ։ Հեթում Պատմիչ, տէրն Կոռիկոսի, իր «Թատարաց գրքին» մէջ, զոր գրեց 1305ին, իբրեւ յիշողութիւններ իր ճանապարհորդութենէն դէպի Թաթարաց աշխարհ, խօսելով Հայ-Աղուանքի մասին, կը հաղորդէ ի մէջ այլոց, ըստ թարգմանութեան Հ. Մ. Աւգերեանի. «Ունին նշանագիրս արամեանս (հայերէն) եւ այլ եւս, որ ասին հալօյեն[23]»։ Այս թարգմանութիւնն է լատին բնագրին, որ կը կարդայ (Ա. 9). Letteras habent diversas; quedam dicuntur littere armenice, alie vero Aloen (var. Haloen[24]). իսկ գաղղիերէն բնագիրն ունի (Ա. 9). Letres ont diverses, car les unes sunt dites letres armenoises, les autres letres aloen[25]). Հոս aloen առանց տարակուսի Աղուաներէնն է, զոր նաեւ Բ. 4. կը յիշէ իբրեւ մասն Հայոց։ Գաղղիացի հրատարակիչը կը ծանօթագրէ առ այս. «Հաւանօրէն խօսքը ուիղուր այբուբենի մասին է, որ կազմուած է ասորականէն եւ կը պատկանի Ալաններու կամ Al Lan ժողովուրդին, ծագումով Թուրք» (անդ. ծան. 6)։ Այս տեսակէտէ ուշագրաւ է Զա–

[23] Հեթում պատմիչ Թաթարաց յեղեալ ի լատին օրինակէ ի հայ բարբառ ի ձեռն Հ. Մ. Աւգերեան, Վենետիկ 1842, էջ 14։

[24] Recueil des historiens des croisades. Documents arméniens, t. II (Paris 1906) pag. 268.

[25] Անդ, էջ 128։

քարիա հռետորի[26] այն տեղեկութիւնն ալ, թէ «Հոները քան եւ աւելի տարի յառաջ իրենց լեզուով գրքեր հրապարակ բերին»․ այսինքն Արանի (Աղուանից) Կարդուչա եպիսկոպոսը 507ին կամ 508ին երեք քահանաներով եւ ուրիշ չորս անձերով Հոնաց աշխարհը կ'երթայ, յայն կոյս Ծորայ պահակին, լեռան ճանապարհով, եւ հոն կը քարոզէ հռոմայեցի գերիներուն, դարձեր կ'ընէ նաեւ Հոներէն եւ կը գրէ հոներէն լեզուով գրքեր։ Մարկուարտ այս Հոները կ'ուզէ նոյնացնել Խազիրներու հետ[27]։ Կարդուչա թէ ու այս ի՞նչ նշանագիրներ գործածեց, յայտնի չէ։ Նա, սակայն, իբրեւ եպիսկոպոս Աղուանից իր տրամադրութեան տակ միայն հայերէն այբուբենը կրնար ունենալ։ Եւ ի՞նչ անպատեհութիւն կայ մտածելու, թէ տակաւին առանց դպրութեան ժողովուրդին հայ նշանագիրները սորվեցուցած ըլլայ։ Նման առաքելութիւն մ'ալ կը յիշէ Աղուանից պատմիչը, որ կատարած է Իսրայէլ Մեծկողմանց եպիսկոպոս 681—682ին ի Վարաչան, եթէ առհասարակ հաւատալի համարինք[28]։

6․

Վերադառնանք մենք Բենիամին երէցին, որ էր «աղուան յազգէ»։ Եթէ սա Աղուանից

---

[26] Die sogenannte Kirchengeschichte, էջ 254—55։

[27] Marquart, Streifzüge, էջ 191, ծան.։

[28] Պատմութիւն Աղուանից, Բ., 40—45։

*աշխարհէն էր եւ գացած է Մաշտոց վարդապետին, երբ նա կը գտնուէր ի կողմանս Յունաց, խնդրելու իր բարբարոս աղուաներէն լեզուի համար ուրոյն, ոչ-հայերէն նշանագիրներ, պէտք հարցնենք, թէ այդ երէցը իր խնդիրքը ինչո՞ւ չէ ներկայացուցած Վարդապետին ա՛յն ժամանակ, երբ նա անձամբ գացած էր Աղուանից աշխարհը։ Բենիամին եթէ աղուան երէց էր, ապա իր ժողովուրդն ալ քրիստոնեայ էր, եւ իր եպիսկոպոսապետն ալ ըլլալու էր Երեմիա։ Եթէ աղուաներէ՛ն լեզուի համար նշանագիրներ խնդրած է, ինչո՞ւ այդ պահանջքը չէին զգացած Աղուանի՛ց թագաւորն Արսվաղէն եւ իր կարգին Աղուանի՛ց եպիսկոպոսապետն Երեմիա կամ թէ Բաղասականի եպիսկոպոսն Մուշեղ։ Կորիւն, ընդհակառակն, յայն եւ բացայայտ խօսքերով կը հաստատէր, թէ անոնք ոչ միայն գրկաբաց ընդունեցան հայերէն նշանագիրներն եւ բացին դպրոցներ, որպէս զի նոյն նշանագիրներով դաստիարակուի մատղաշ սերունդը։ Եթէ Կորիւն իբր 442ին, երբ կը գրէր իր գրքոյկը, սքանչանքով կը նկարագրէր Աղուանից մշակութային բարգաւաճումը շնորհիւ հայ նշանագիրներուն եւ հայերէն գրականութեան, ի՞նչպէս հաւատանք թէ Մաշտոցի անկէ, Աղուանից աշխարհէն մեկնելէ ետքը, հոն պահանջք զգացուած ըլլայ «աղուաներէն» լեզուի համար ուրոյն գիր ունենալու եւ այս նպատակով Մաշտոց վարդապետի պատգամաւորութիւն ուղարկուած,*

երբ նա արդէն ի կողմանս Յունաց գացած էր։ Այնպէս ստիպի՞չ էր խնդիրը, որ պատգամաւորը անցնէր հռոմէական սահման փնտռելու համար Վարդապետը։ Եւ ո՞րն յանձնարարութեամբ կ՚երթար, Թագաւորի՞ն թէ եպիսկոպոսապետին։ Իսկ Մաշտոց համոզուեցա՞ւ դիւրաւ, թէ քրիստոնեայ աղուան ժողովուրդի համար անհրաժեշտ է հայթայթել ուրոյն նշանագիրներ։

Յամենայն դէպս անհրաժեշտ հարկ կարելի չէ տեսնել։ Հայերէն ճոխ այբուբենը, որ միանգամ մուտ գտաւ Աղուանից Թագաւորանիստ քաղաքը, ընդունակ էր գրով արտայայտելու կաւկասեան միւս լեզուներու հնչիւններն ալ, ճիշդ այնպէս, ինչպէս յետոյ Թաթարահայերն ու Տաճկահայերը կրցան արտայայտուիլ նոյն այբուբենով Թաթարերէն եւ տաճկերէն–թուրքերէն, առանց կարեւոր դժուարութեան բախելու. եւ ունինք այսօր բաւական ճոխ գրականութիւն հայատառ Թաթարերէն եւ տաճկերէն գրքերու։ Տարբեր էր հարցը Վրաց քով։ Մաշտոց մինչ Գուգարքի մէջ, որ կիսով հայերէնախօս էր, կրցաւ մուծել հայ գրերը, բուն Վրաստանի, Քարթլիի համար, ուր էր Վրաց Մայրաքաղաքը, ուրոյն լեզուով եւ ազգակից բարբառներով, հարկ տեսաւ առանձին նշանագիրներ յօրինել։

Կը ստիպեն զմեզ այս խորհրդածութիւնները Բենիամին երէցն «աղուան յազգէ» ո՛չ-աղուան նկատել եւ առհասարակ այդ «ա–

ղուան ազգը» ոչ-աղուան ժողովուրդ համարիլ: Ինքնին կը հետեւի ասկէ, թէ կա՛մ Կորիւնի քով «աղուան» եւ «աղուաներէն» խանգարում կրած է եւ կամ «աղուան» անունով ոչ-աղուան ժողովուրդ մը կ'իմանայ Կորիւն:

Հայ Մատենագիրներու քով յաճախ կը շփոթուին Աղուան եւ Աղան (Ալան) ժողովուրդներու անունները, մասամբ անուններու նմանահնչութեան եւ մասամբ ժողովուրդներու դրացիութեան պատճառաւ:

7.

Ալան ժողովուրդը պատմութեան մէջ երեւան կու գայ նախաքրիստոնէական Ա. դարուն: Ինչպէս Ամմիանոս կը վկայէ, Հիները այս ժողովուրդը կ'անուանէին «Մազգութք» (Massagetae)· այս անունը ծագած է հաւանօրէն massajaka «ձկնակեր» բառէն· իսկ Մազգութ ժողովուրդի բուն անունը եղած ըլլալու է Տուիրեա, որ Քրիստոսէ յառաջ Բ. դարուն կը բնակէր Արալ լճի ափին: Երբ երանեան վաչկատուն ցեղերը, հաւանօրէն Ձկնակերք կոչուածները, նոր համախմբուեցան «Աորսք» անուան տակ եւ կազմեցին լեռնականներու հզօր պետութիւն մը, որ կը տարածուէր Արալ լճէն մինչեւ Տանայիս (Դոն), հին անունը տեղի տուաւ «Ալան» յորջորջումի: Պատմութեան մէջ սակայն դեռ երկար ապրեցաւ «Մազգութ» անունը իբրեւ հաւաքական յորջորջում այն լեռնական ցե-

զերու, որոնք յընթացս Ա.—Զ. դարերուն երեւցան կուկասեան թատերաբեմի վրայ[1]:

Այս Ալաններէն հատուած մ'իջաւ Խրիմ, ուր ապա խառնուեցաւ Գոթերու հետ: Ուրիշ մաս մը անցնելով Կասպից դուռը՝ հաստատուեցաւ յայսկոյս, ընդ մէջ Կասպից ծովու եւ Երասխի: Արդէն Ա. դարուն (Ն. Ք.) գրաւած էին բատ մեծի մասին Կասպից ծովի եզերքներն եւ տուրեւառիկ վաճառականութեան մէջ էին Հայոց եւ Մարաց հետ: Կ'ընդունէին անոնցմէ հնդկական եւ բաբելական վաճառքներ[2]: Անոնց հետ առաջին անգամ բախում ունեցաւ Պոմպէոս Միհրդատեան պատերազմի ժամանակ եւ վանեց զիրենք մինչեւ Կասպից ծով: Ապա ընդհարուեցաւ անոնց հետ Վենտիդիոս՝ Անտոնիոսի նուիրակը: Տիբերիոսի օրով Վիրք եւ Ազուանք ազատ անցք տուին անոնց, որպէս զի ի նպաստ Հռովմայեցւոց աւարառեն Հայաստանն եւ պարթեւական հողերը: Ներոն կը ծրագրէր անոնց դէմ արշաւանք մը: 74ին Ալանները աւարառու իջան Մարաստան (Ատրպատական) եւ Հայաստան. անոնց դէմ ելաւ Տրդատ Ա. Հայոց թագաւոր[3]: 134ին Վրաց Փարսման թագաւորին սադրանքով միւսանգամ աւարառեցին անոնք Ազուանից, Մարաց եւ Հայոց աշխարհները:

---

[1] J. Marquart, Eranšahr, 155—157.

[2] J. Marqwart, Iberer und Hyrkanier: Caucasica, 8 (1931), էջ 92.

[3] Յովսեփեան, Հնախօսութիւն, ԺԸ, 97—98:

Յայսկոյս Կասպից դրան հաստատուած Ալանները («Մազքութք») Պարթեւներու ազդեցութեան տակ էին, եւ ինչպէս գիտէ Տակիտոս (Բ. 68), ունէին 19ին (յ. Ք.) իրենց սեպհական թագաւորն արշակունի տունէն. եւ այս հանգամանքով իր յաջորդներն ալ կը նկատուէին արշակունի եւ իբրեւ այսպիսի «եղբայր» հայ արշակունի թագաւորներու[4]: Այսպիսի պայմաններու մէջ կարելի է ենթադրել նաեւ հայ եւ ալան արշակունի թագաւորներու ազգախառնութիւն: Եւ կը համարիմ թէ այսպիսի դէպք մը իրեն նիւթ ունի Սաթենիկի հարսնութեան հին երգը, հաւանօրէն Ա. դարու առաջին կէսէն[5].

Հեծաւ արի արքայն Արտաշէս
ի սեաւն գեղեցիկ,
Եւ անցեալ որպէս զարծուի
սրաթեւ ընդ գետն,
Եւ ձգեալ զոսկէաւղ շիկափոկ պարանն
ընկէց ի մէջքն աւրիորդին Ալանաց,
Եւ շատ ցաւեցոյց զմէջքն
փափուկ աւրիորդին <Ալանաց>:

Այս «Մազքութ»-Ալան ժողովուրդին թագաւորն էր Սանեսան, որ իբր 270ին արշաւեց Հայաստան: Իրեն դէմ ելաւ Վաչէ Մամիկոնեան, որ խորտակեց «զզօրսն Ալանաց եւ Մազքթացն[6]» եւ մնացորդները

[4] Հմմտ. Հանդ. Ամս., 1947, էջ 572—573:
[5] Մ. Խորենացի, Բ., 50:
[6] Տպ. Մազքթացն:

«Հալածականս տանէին մինչեւ յաշխարհն Բաղասճայ[7]»: Այս Ալանները 572ին կը յիշուին իրենց Սարոսիոս թագաւորին հետ Կասպից դրան մօտերը իբրեւ բարեկամ Հռոմայեցւոց[8]: Իսկ յետոյ Ալանք եւ Սաբիրք Հռոմայեցւոց Կուրսոս եւ Թէոդորոս զօրավարներէ յայսկոյս Կուրի տեղափոխուեցան (578)[9]:

Գ. դարու վերջերը, երբ Հոները ուժեղացած՝ տապալեցին Ալաններու աշխարհը արիւնհեղութեամբ, իրենց հետ խառնելով վերապրած Ալանները իբրեւ զինակից, արշաւեցին դէպի Հռոմէական սահման: Մասն հռոմէական հողամասեր, փոփոխակի յաջողութիւններով: Ժամանակի ընթացքին խառնուեցան Գոթ-վանդալական ցեղախումբերու, զորանք նուաճած էին Հոնական ցեղերը: Մաս մը մտաւ Հռոմէական ծառայութեան մէջ իբրեւ վարձկանազօր: Կ՚ըսուի թէ Գրատիանոս կայսր հռոմէական բանակին մէջ ծառայող վարձկանազօրքին մասնաւորապէս Ալան ցեղէ զինուորները կը սիրէր[10] եւ զանոնք բարձր պաշտօններու կը բարձրացնէր: Այս նախապատուութիւնը թերեւս անոր համար էր, որ, ինչպէս Ամմիանոս (Լ. 2) կը վկայէ, Ալանները համեմատութեամբ Հոներու աւելի բարեկիրթ էին եւ նրբացած կեն-

---

[7] Փաւստոս, Գ., 7:
[8] Մենանդր, Հատակոտորք, էջ 282, 301:
[9] Անդ, էջ 394:
[10] Victor, epit. 17, 47.

ցաղով: Մեծ թուով ալան վարձկանագոր կը գտնուէր նաեւ Արեւելեան Հռոմէական Պետութեան բանակին մէջ: Թէոդոս Մեծի օրով կը յիշուի «Սաուլ զօրավարն յԱլանաց[11]» եւ Թէոդոս Փոքրի օրով Արդաբուր եւ Ասպար զօրավարները:

Այն Ալանները, որոնք հաստատուած էին ի Տաւրիս (Ղրիմ), կը խօսէին «տաւրիերէն»· յետոյ, երբ ազդեցիկ եղան հոն Գոթերը (Բորանեանք) եւ իրենց լեզուն տիրապետող եղաւ, անշուշտ նաեւ Ալաններէն մաս մը ենթարկուեցաւ անոնց ազդեցութեան[12]: Հոնաց հետ դէպի Իտալիա արշաւող Ալանները, նուաճուելով Գոթերու եւ Վանդալներու տակ, ստիպուեցան զինակցիլ անոնց եւ իւրացուցին գոթերէն լեզուն: Այսպէս նաեւ այն ալան վարձկանագորը, որ Գոթերու հետ խառն ծառայեց Արեւելեան Պետութեան բանակին մէջ: Թէ ի՞նչ էր ընիկ ալան ժողովուրդի սեպհական լեզուն, ծանօթ չէ որ եւ է յիշատակարանով[13]: Անոնք ըլլալով սկիւթական ժողովուրդ, ունէին հաւանօրէն կովկասեան ազգերու ազգակից լեզու մը,

---

[11] Յովհ. Անտիոքացի, 119 (հրտ. de Boor)· Զոսիմ. Դ. 57: Հմմտ. Justi, Iranisches Namenbuch, 292 եւ 313 (Sul):

[12] C. Müller, Fragm. hist. gr. V, 1, 181—182. Հմմտ. J. Marquart, Osteuropäische und ostasiatische Streifzüge, Leipzig 1903, S. 363—364.

[13] Վարդան Արեւելցի Մեկնութիւն Ծննդոց (Վիեննա, Թ. 482, Թղ. 56ա) կը համարի Ալան (այլ ձեռ. «աղուան») լեզուն «գեղեցկադարդ»:

գոր արդի պատմագէտ եւ լեզուաբան գիտունք օսէթերէնը կը համարին[14] :

8·

Սկիւթական եւ սարմատական ժողովուրդներու խուժումը դէպի Ատրպատական, Հայաստան եւ Փոքր Ասիա սանձահարելու համար վաղ ժամանակ յառաջ խորհած են այդ երկիրներու տիրապետող մեծ պետութիւններ՝ դոներ կանգնել եւ պահակներ դնել գլխաւոր անցքերու առաջ: Այդ անցքերէն մին կը բացուէր դէպի Վրաստան եւ միւսը դէպի Աղուանից աշխարհ: Առաջինը ծանօթ է այժմ Դարիալ եւ երկրորդը Դարբանդ արաբական անուններով:

Դարիալ (Դարի Ա–Լան) նոյն է հնոց «Դուռն Ալանաց» անուանակոչութեան հետ, իսկ Դարբանդ՝ Կասպից դուռն է: Հիները սակայն սովոր էին կոչել այս դոները յանուն այն հզօր ազգերու, որոնք կը սպառնային ժամանակ առ ժամանակ խորտակել այդ դուռները, ինչ որ երբեմն կը յաջողէր: Այսպէս Դարբանդ կ՚անուանուի Դուռն Կասպից, Դուռն Ալանաց, Դուռն Հոնաց, Իւրոյ (Վիրոյ) պահակ, Ճորայ պահակ եւ այլն, մինչ Դարիալի անցքի համար անուն մը միայն ծանօթ է՝ «Դուռն Ալանաց» (ա՞յս Մեքան Դուռն):

---

[14] Ալանաց մասին հմմտ. E. Täubler, Zur Geschichte der Alanen: Klio 9 (1909), 14—28:

Որովհետեւ վերջինս յատուկ էր երկու դուռներու ալ, կրնանք հետեւցնել ասկէ, թէ նոյնպէս միւս անունները, յատկապէս «Կասպից դուռն» եւ «Հոնաց դուռը» պէտք է գործածուած ըլլան հին ժամանակները Դարիալի համար ալ, ուստի ոչ վրիպակաւ[15] յատկացուած է «Կասպից դուռ» յորջորջումը Դարիալի համար ալ: Կասպք ժողովուրդը պէտք է նախաքրիստոնէական դարերուն, ուստի Ալաններէ շատ յառաջ երեւցած ըլլայ յոյնկոյս այդ դռներու եւ ի վերջոյ խորտակած եւ թափանցած յայսկոյս:

Հայ պատմագիրներու քով «Ալանաց դուռ» առ հասարակ իմացուած է Կասպից Դուռը, որ է Դարբանդ: Ագաթանգեղոսի խմբագիրը կը յիշէ երեք անուններն ալ, երբ կը գրէ, թէ Ս. Գրիգոր աւետարանեց քրիստոնէական հաւատքը Հայաստանի մէջ «ծագաց ի ծագս» եւ թուելով Հայաստանի սահմանները, հիւսիսարեւելեան կողմանց համար կը գրէ. «Մինչ ի սպառ [ի սահմանս Մասքթաց, մինչեւ ի դրունս Ալանաց մինչ] ի սահմանս (Ե ձ. եւ յն. մինչեւ ի դրունս) Կասպից ի Փայտակարան քաղաք արքայութեանն Հայոց» (էջ 430): Հոս «Դրունք Ալանաց» եւ «Դրունք Կասպից» համանիշ են: Խոսրով Ա. (իմացիր՝ Տրդատ Բ.) կը հրամայէ «բանալ զդրունս Ալանաց եւ զՃորայ (այլ ձձ. եւ յն. զիւրոյ) պահակին,

[15] J. Marqwart, Iberer und Hyrkanier, S. 79.

հանել զզօրս Հոնաց, ասպատակ դնել ի կողմանս Պարսից» (էջ 16)։ Նաեւ հոս «Դրունք Ալանաց» եւ Ճորայ (լաւագոյն Իւրոյ = Վիրոյ) պահակ հոմանիշ են, իսկ «Հոնաց» իմանալու է «Ալանաց», վասն զի 226ին տակաւին հրապարակ չէին ելած Հոները։ Մովսէս Խորենացւոյ վերագրուած Աշխարհացոյցին մէջ (էջ 604) կ'ըսուի, թէ ի Սարմատիա կը գտնուին «Ալանք (այլ ձձ. Աղուանք)... Հոնք, Ափուլք, Ծանարք, յորում Ալանաց (այլ ձձ. Աղուան) դուռն եւ Ծեքան դուռն»։ Հոս նկատուած շփոթումը «Ալան» եւ «Աղուան» անուններու կը նկատուի նաեւ յոյն եւ լատին պատմագիրներու քով (Alani եւ Albani)[16]։ Ե. դարու վերջերն կամ Զ. դարու սկիզբը կ'ըսուի թէ Վահան Մամիկոնեան «եւ զԱլանս արդելական արար[17]»։ Հոս խօսքը միայն Կապից Դրան մասին կրնայ եղած ըլլալ, եւ «Ալանք» անուան տակ Հոները իմանալու է։ Յեսուայ տարրի կը յիշէ այս շրջանին տեղի ունեցած Հոնական ասպատակութիւն մը։ Թէ Կապից Դուռը «Ալանաց» դէմ կանգնուած էր, կը գտնենք նաեւ երանեան գրոյցներու մէջ, Սպանդիատ Ալաններու դէմ մղած պատերազմի ժամանակ կը յառաջանայ մինչեւ Ճոռ եւ հոն կը կառուցանէ «Ալանաց պահակը». այս գրոյցներու մէջ նաեւ Կապից ծովը «Ալանաց ծով»

16 Th. Mommsen, Römische Geschichte, V, 405.
17 Ստ. Ասողիկ, էջ 82. հմմ. Գանձակեցի, 21։

*կը կոչուի*[18]: 1682*ին Վլաս եպիսկոպոս կը ներկայացնէ ինքզինքը «բուն աշխարհաւ Ալանաց, քաղաքաւ Շամախի ըստ պարսկական լեզուի»*[19]: *Իբն Խորդադ կը յայտնէ, թէ Ալանաց Թագաւորը տիտղոս կը կրէր «Բագասական շահ յԱտրպատական*[20]»:

9.

*Թանսարի նամակին մէջ կ՚ըսուի թէ «Ոչ ոք, որ չի պատկանիր մեր տան, իրաւունք ունի թագաւոր տիտղոսը կրել, բացի այն հրամանատարներէն, որոնք կը գտնուին Ալանաց երկրի, Արեւմտեան, Արեւելեան եւ Կաբուլի կողմերու զօրքերուն գլուխը*[21]»: *Այս չորս «կողմանց» կողմնակալները կը համապատասխանեն հայ չորս բդեշխութեանց: Հաւանօրէն այսպիսի «Ալանաց երկրի» բդեշխ կամ թագաւոր էր նաեւ պարսիկ այն զօրավարը, որ կը կրէր «Ադանայոզան» անունը*[22], *ուր* –ոզան *պատուանունական ածանց մըն է, որ յետոյ կը տեսնենք նաեւ* Ռազմի–ոզան *տիտղոսի մէջ, զոր կը կրէր պարսիկ Խորեան զօրավարը Խոսրով Բ. Պարուեզի օրով* (605). *Հոս* Ադան– *նոյն է Ալան անուան հետ: Այս էր հնագոյն ուղղագրութիւնը ալան ցեղանունին, համեմատէ նաեւ Ադան* (*Արծրունի*),

[18] Marquart, Die Iberer, 86—87.
[19] *Էջմիածին*, Թ. 2613, *թղ.* 892*ա*:
[20] Marquart, Eranšahr, 120.
[21] A. Christensen, L'Iran sous les Sassanides, Copenhague 1936, p. 60, 367.
[22] **Փաւստոս**, Դ., 38:

*Ջանդ–ալան յՍստան տանէն*[23]. *Ալանա-դրոչ* (*Փաւստ*. Դ. 2)։ «*Ալան*» *ուղղագրութիւնը ցեղանունս կը գտնեմ Հայ մատենագրութեան մէջ երկիցս գործածուած*. «*Մարք, Աղուանք, Լփինք, Ալանք, Ամազոնք, Ճիղբք, Մասքութք, Հայք, Վիրք, Եգերացիք*» *են*[24]. *եւ Թովմաս Արծրունի* (*էջ* 284). «*Ալանաց դուռն*»։ *Չեմ տարակուսիր, որ Ե.—Ժ. դարու ձեռագրաց մէջ միայն այս* «*ալան*» *ուղղագրութիւնը տիրական եղած ըլլայ*։ *Այս* «*Ալան*» *ուղղագրութեան պատճառաւ ալ* «Ալանաց *դուռն*» *յաճախ կարդացուած է* «Աղուանից *դուռն*», *ինչպէս տեսանք վերագոյն*։

*Ղ. Փարպեցւոյ* (*էջ* 66) *այն տեղիքը, ուր կ՚ըսուէր, թէ Վարդան Մամիկոնեան իր գունդով երբ Հասաւ Իւրոյ պահակը*, «*զպահակն յանձն առնէին Թագաւորազնի միում* աղուանի, *որում անուն էր Վահան. եւ զնոյն արձակէին դեսպան ի Հոնս*», *կը թուի ինձ այժմ, թէ նոյնպէս* «*ալան*» *իմանալու է, ուստի* «*Թագաւորազն մի*» *Ալանաց Թագաւորին, որ կ՚իշխէր Պահակի այս կողմը հաստատուած Ալաններուն*։ *Այն հեռաւորութեան մէջ* «*ալուան Թագաւորազնի*» *մը լոկ* «*յանձն առնել*» *Պահակը անիմաստ պիտի ըլլար, եթէ ան չունենար իր ձեռքի տակ բաւականաչափ պահակապաններ իւր ցեղէն*։

[23] *Ղ. Փարպեցի*, 61։

[24] *Անանուն ժամանակագրութիւն. հրտ. Հ. Բ. Սարգիսեան, Վենետիկ* 1904, *էջ* 5։

Զարմանալի չէ ուրեմն, եթէ հաստատենք, թէ նոյն երեւոյթը նաեւ Կորիւնի բնագրին մէջ տեղի ունեցած է, նախնական «աղան» եւ «աղաններէն» արտագրուած է օրինակողներէն «աղուան» եւ «աղուաներէն»: Ուստի Բենիամին երէց էր «աղան յազգէ» եւ խնդրած է գիր «աղաններէն» լեզուի համար: Այս պատգամաւորութիւնը յանձնուած էր իրեն առանց տարակուսի բարձրագոյն կողմէ, այսինքն կամ ազգով ալան Արդաբուրի եւ կամ անոր որդւոյն՝ Ասպարի կողմէ, որոնք 420ին Կ. Պոլիս զինուորական բարձր դիրքեր գրաւած էին «բարբարոսական բանակին» մէջ, որ կազմուած էր յատկապէս Գոթերէ եւ անոնց հետ խառնուած Ալաններէ:

10·

Գոթերու նախնական հայրենիքը Սկանդինաւիա էր: Անկից եկած են ութը գերմանական ցեղեր: Անոնք գաղթելով հանդիպակաց ցամաքը՝ բնակեցան Վիստուլի (Վայքսելի) կղզիաձեւ դելտան, ուր կը գտնուէին Գեպիդք: Քրիստոսէ ետքը Բ. դարուն սկսան կամաց կամաց տարածուիլ դէպի Դնիեպեր: 238էն յառաջ, երբ առաջին բախումն ունեցան Հռոմայեցւոց հետ, պէտք է գոթ ժողովուրդը ամբողջութեամբ Պոնտոս հաստատուած ըլլար: Դակիայի (Տրանսիլվանիայի) սահմաններէն մինչեւ Դոնի ափերը կը տարածուէին Գոթերը: Այս շրջանին կ՚իյնայ գոթական ժողովուրդի գանգուածին երկու քա–

ղաքականապէս ինքնակալ ցեղերու բաժանումը, որոնց սահմանը Դնիեպէր կը կազմէր. Ա. Ոստրոգոթք (Գրեւտունգներ)՝ Արեւելք, եւ Բ. Վիսիգոթք (Տերվինգներ)՝ Արեւմուտք: Այս բաժանումը կ'ենթադրէ Ոստրոգոթա թագաւորի անունը, որ Գ. դարու վերջերը ապրած ըլլալու է:

Անկէ յառաջ գոթական ուրիշ ցեղ մը՝ Բորաններ, իջան Խրիմ, ուր հանդիպեցան Հերուլներու եւ Ալաններու. վերջիններս ենթարկուեցան անոնց ազդեցութեան: Անկէ ծագում առին Խրիմեան Գոթերը, որոնք պարտադրեցին թերակղզւոյն իրենց լեզուն:

Յոյն եւ լատին հեղինակներ սովոր են կոչել այս գերման-գոթական ցեղախումբերը ընդհանուր անունով «Սկիւթք» եւ «Սարմատք»: Բայց Գ. եւ յատկապէս Ե. դարուն կը յիշեն զանոնք «Գոթ» եւ «Վանդալ» անուններով: Իսկ Գոթերը իրենք զիրենք կ'անուանեն Gutans կամ Gutos, անկէ առ Պլինեայ Gutones եւ առ Տակիտեայ Gotones, Պտղոմէոս գիտէ՝ Γ(ο)υθωνες, այլք՝ Γότθοι. Հայ մատենագրութեան մէջ կը ներկայանայ անունս Գութ, Գուդ եւ Գունդ ձեւերով. այսպէս Կիւրեղ Երուսաղեմացւոյ Կոչումն Ընծայութեան գործին մէջ. «Վկայեն Պարսիկք եւ Գուդք եւ ամենայն խուժադուժ ազգք հեթանոսաց» (Ժ. էջ 176). «Տես զՊարսից աշխարհն, զՀնդկաց աշխարհն, զԳթաց, զՍաւրոմատաց» (տպ. զՍուրոմատաց. ԺՁ. էջ 354). Ագաթանգեղոս. «Իշխանն Գդաց

(այլ ձձ. Գթաց, Գնդաց, էջ 26, 4) եւ «թագաւորին Գդաց» (այլ ձձ. Գթաց, Գնդաց, էջ 28, 9). Սեբէոս, էջ 14. «Գթաց». Մ. Խոր. Բ. 76 եւ Գ. 29 Գունդք. Գնդացն: Աշխարհացոյց. «Գերմանիա... ունի ազգս է. յորոց մին Գունդք» (այլ ձձ. Գութք). «Թրակիա... յորում են Սկլաւային ազգք. որոց փոխանակ մտին Գունդքն» (այլ ձձ. Գութքն, 596). Ովկիանոս ...առնէ երկու կղզիս... եւ կղզի մի այլ Սկանդէ անուանի, յորում Գուդք (այլ ձձ. Գութք) լեալ է» (591): Այսպէս նաեւ Մ. Ուրհայեցի. «աշխարհ Գնդաց» (118, 237): Վարդան Արեւելցի իր Ծննդոց Մեկնութեան (Վիեննա, Թ. 482, թղ. 56ա) եւ Պատմութեան մէջ (էջ 12) խօսելով ազգաց լեզուներու յատկանշականներու վրայ, կը գրէ. «Սպառնական՝ Հոնն... գեղեցկադարդ (կամ՝ գեղեցկաձեւ)՝ Ալանն (Վիեննայի Թ. 177. «ադուանն»), ծաղրական՝ Գունդն (Թ. 177 «Գութն»): Առանց տարակուսի «Գունդ» ի մէջ -ն- աւելադրական է, մուծուած դի պատճառաւ. ընտրելագոյն ձեւն է Գութ, սեռ. Գթաց: Ես կը կիրարկեմ այժմ ընդունուած «գոթ» ձեւը:

Կազմած ցեղակիցներէ դաշնակցութիւն մը՝ սկսեալ 238էն խուժեցին Գոթերը Դանուբեան երկիրներ՝ Դակիա, Միւսիա եւ Թրակիա, եւ մղեցին կատաղի կռիւներ Գորդիանոս, Դեկոս, Գաղղիենոս, Կղաւդիոս եւ Աւրելիանոս կայսրներու հետ: Գալով ընդ ցամաք եւ ընդ ծով կ'ասպատակէին, կ'աւա-

րէին եւ կը գերփէին հռոմէական նահանգները, միջամուխ մինչեւ Փոքր Ասիա եւ Յունաստան: Հազիւ կէս դար դադար առած՝ կռիւները սկիզբ առին միւսանգամ. Կոստանդիանոս յաղթական կռիւներով վտարից զանոնք Թրակիայէն եւ Միւսիայէն: Անոնք, որոնք ինքնակամ ենթարկուեցան կայսեր՝ իբրեւ վարձկանազօր առնուեցան հռոմէական բանակին մէջ: Ագաթանգեղոսի Պատմութեան մէջ աւանդուած է դէպքս. «Յաւուրս ժամանակացն այնոցիկ զօրաժողով լինէր իշխանն Գթաց. եւ բազում գունդս զօրաց ժողովեալ՝ գայր տալ մարտ պատերազմի ընդ իշխանին Յունաց» (Դիոկղետիանոսի). կայսեր փոխարէն Տրդատ, Հայոց թագաժառանգը կ'ելլէ անոր դէմ մրցութեան «կայսերակերպ», եւ «ձերբակալ արարեալ՝ ածեալ յանդիման առաջի կայսերն կացուցանէր (էջ 26—29): Դէպքս կարող էր միայն Գաղղիենոսի օրով պատահած ըլլալ, եթէ ուզենք պատմական համարել:

376ին տեղի ունեցաւ հոնական արշաւանքը, որ կործանեց՝ Արեւելեան Գոթերու պետութիւնը. վերապրողները զինակցեցան Հոներու հետ: Իսկ Արեւմտեան Գոթերու գլուխը՝ Աթանարիկ քաշուեցաւ Սարմատեան լեռները. բայց յետոյ հալածուած իրեններէն՝ դիմեց Թէոդոս Մեծին, որ 11 յունուար 381ին մեծ շուքով ընդունեցաւ զինքը կայսերական մայրաքաղաք, ուր եւ մեռաւ նոյն ամսոյն 25ին: Յաջորդ տարին (3 հոկտ. 382)

խաղաղութիւն կնքեց Թէոդոսի հետ Ֆրիդիգեռն Արեւմտեան Գոթերու առաջնորդը եւ իրաւունք տուաւ գաղթելու ի Թրակիա, պայմանաւ որ պարապին հոն հողամշակութեամբ, իսկ պատերազմի դէպքին զօրք տան կայսեր։ Երբ վախճանեցաւ Թէոդոս կայսր, Ալարիկ, որ յաջորդած էր Աթանարիկի, իր արեւմտեան Գոթերով ասպատակեց Յունաստան, անցաւ Իտալիա, բայց յաղթուեցաւ Ստիլիկոնէն (403)։ Ալարիկ միւսանգամ երեւցաւ Իտալիա (408). ապա մտաւ Գաղղիա եւ անկէ Սպանիա։ Ոնորիոս կայսր զիջաւ տալ անոնց Ակուիտանիան, ուր Վալլիա հիմնեց Արեւմտեան Գոթերու Տոլոսեան պետութիւնը (419)։ Իր յաջորդն քաջն Թէոդորիկ զինակցելով Հռոմայեցւոց՝ դիմադրեց Ատտիլայի (451). թէպէտ յետս մղեց թշնամին, բայց ինքն ինկաւ պատերազմի դաշտին վրայ։

11.

Արեւելեան Հռոմէական Պետութեան մէջ վաղ մուտ գործած էին Գոթերը, ըլլայ իբրեւ գերի, ըլլայ իբրեւ վարձկանազօր եւ ըլլայ իբրեւ գաղթական։ Կոստանդիանոս Մեծ ունէր իր բանակին մէջ խուժադուժ ազգեր. անոնց մէջ նաեւ Գոթեր։ Վաղէս կայսր մղեց անոնց դէմ պատերազմներ, վերջին անգամ Ադրիանուպոլսի առջեւ. Թէոդոս Ա. շարունակեց կռիւները։ Ինչպէս Վաղէս թոյլ տուած էր, որ մաս մը Գոթեր գաղթեն ի Միւսիա, նոյնպէս Թէոդոս Ա. 386ին հիւրընկալած էր

գոթական ցեղեր եւ հաստատած Փոքր Ասիա, ի Նակոլիա Փռիւգիոյ եւ կազմած անոնցմէ հեծելազօր մը: Անոր հրամանատարն էր 399ին Տրիբիգիլդ կոմս: Գոթ էր նաեւ Գայնաս, որ նոյն շրջանին կայսերական բանակին հրամանատարն էր, իսկ այդ բանակին կարեւոր մէկ մասը կը բաղկանար Գոթերէ: «Հռոմէական պետութեան մեծ վտանգ կը սպառնար, կ՚ըսէ Ծմիդտ, այն իրողութենէն, որ օր աւուր հռոմէական բանակի մէջ կ՚առնուէին արեւմտեան գոթական վարձկանազօրներ: Ասոնք, թէպէտ կտրուած էին իրենց ժողովուրդէն, բայց զինակից ըլլալով, թէ այդ բանակին կարեւոր տարրը իրենք կը կազմէին, կը զգային իրենք զիրենք հպարտ եւ կը ձգտէին իրենց կորզել պետութեան ղեկը: Վտանգաւոր էին անոնք նաեւ այն տեսակէտէ, որ կար անոնց եւ Յունաց մէջ կրօնական խտիր»:

Թէ ի՛նչ աստիճանի հասած էր վտանգը պետութեան համար, բացորոշ հրապարակի վրայ դրաւ Սինեսիոս Կիւրենացի փաստաբանը, որ 399ին իր «Վասն թագաւորութեան» ճառին մէջ, զոր խօսեցաւ Արկադիոս կայսեր ներկայութեան. «Պետութեան պաշտպանութիւնը Հռոմայեցիք պէտք է միւսանգամ իրենց ձեռքը առնեն եւ չհանդուրժեն, որ մորթազգեստ Սկիւթացիք հրապարակ գան հռոմէական զինուորական տարազի մէջ կամ հռոմէական աւագանւոյն հետ միասին նստած պետութեան հարցերու մասին խորհրդակցին... : Բարբարոսները պէտք է կամ իբրեւ

անապատներ Հռոմայեցւոց համար հողեր մշակեն եւ կամ վերադառնան յայնկոյս Դանուբի եւ ըսեն այն տեղ բնակող ժողովուրդներու, թէ Թէոդոսէն ցոյց տրուած երբեմնի հանդուրժողութիւնը տեղի տուած է այժմ ուրիշ ըմբռնումներու»:

Ասոր հետեւութիւնն եղաւ, որ Գայնաս բարձրացուց յայտնապէս ապստամբութեան դրօշը, միացաւ վտարանջած Տրիբիգիլդի հետ եւ Փոքր Ասիա գերփելէ ետքը քալեց Քաղկեդոնի վրայ: Հոս բանակցութիւն մը կայացաւ իր եւ կայսեր մէջ. ինքն էր որ թելադրեց հաշտութիւնը. կայսրը խոստացաւ իրեն եւ իր զինակիցներուն լիուլի ներողամտութիւն, բաց աստի պատուեց զինքը magister militum praesentalis բարձր աստիճանով: Կայսրը իր պահանջքին վրայ հեռացուց հռոմէական ազգային կուսակցութենէն երեք ականաւոր դէմքեր, անոնց թուին մէջ էր Աւրելիանոս: Այսպէս վերադարձաւ Գայնաս Տրիբիգիլդի հետ Կ. Պոլիս: Վերջինս վախճանեցաւ քիչ յետոյ: Իսկ Գայնաս մտաւ մայրաքաղաք ինչպէս տէր Արեւելեան Պետութեան (400ի սկիզբը): Իր իշխանութիւնը յեցած էր գոթական զօրքի վրայ. վասն զի ոչ-գոթական զօրքը, ինչպէս նաեւ կայսերական անձնապահներու գունդը հեռացուցած էր քաղաքէն: Բռնատիրութեան մէկ արտայեղումն էր ի մէջ այլոց այն, որ պահանջեց Կայսրէն, որպէս զի արիանոսեան դաւանութեան հետեւողներուն եկեղեցի մը յատկացուի. մեծ

*աշխատութեամբ միայն յաջողեցաւ Յովհաննէս Ոսկեբերան եւ կեցնել զինքը այս մտածմունքէն (Թէոդորետ. Ե. 32):*

*Բայց իր բռնատիրութիւնը պիտի գտնէր չնախատեսուած վերջ: Երբ յաջողութիւն չգտան իր բռնապետական այլ եւ այլ ծրագիրները (դրամատուները կողոպտել, կայսերական պալատը հրդեհել), օր մը յանկարծ առած բանակին մեծագոյն մասը հեռացաւ քաղաքէն. ինչ որ իրարանցում պատճառեց քաղաքին մէջ. քաղաքացիները աճապարեցին գրաւել քաղաքին դռները եւ քաղաքին մէջ մնացած Գոթերը կոտորել տուին անոնց ազգակիցներու ձեռքով* (12 *յուլիս* 400)*: Գայնաս այժմ Կայսեր կողմէ թշնամի հրատարակուեցաւ. Ֆրավիտա եւ Երիուլֆ, որոնք այս միջադէպին կայսեր հաւատարիմ գտնուած էին, հրաման ստացան հետապնդել թշնամին: Գայնաս սպանուեցաւ յայնկոյս Դանուբի, ուր ապաստանած էր* (401)*:*

*Թէոդոս Բ.ի օրով անուանի զօրավար հանդիսացաւ Արդաբուր, ծագումով Ալան, որուն որդիներն եւ թոռները իրենց կարգին ընթացս Ե. դարուն մատուցին տէրութեան կարեւոր ծառայութիւններ:*

*Դաւանութեամբ արիանոսեան էր Արդաբուր:* 421*ին Թէոդոս Բ.էն անուանուեցաւ հռոմէական բանակին հրամանատար նոյն տարւոյն հրատարակուած պարսկական պատերազմին: Արդաբուր նախայարձակ մտաւ*

Աղձնիք, զարկաւ Պարսից Անմահից բանակը: 424ին յանձնուեցաւ իրեն իր որդւոյն Ասպարի հետ գլուխ անցնիլ հռոմէական բանակին ընդդէմ Յովհաննէս բռնաւորին: 427ին անուանուեցաւ հիւպատ: Կ'ըսուի, թէ Մարկիանոս, որ յետոյ կայսր հռչակուեցաւ, նախնաբար Արդաբուրի ձեռքի տակ կը ծառայէր:

421ին, երբ Արդաբուր Մծբինը կը պաշարէր, իր որդին Ասպար արքունիքի հովանաւորութեան տակ էր: Կանդիդոս զինքը «ազգով ալան» գիտէ[25]. իսկ Յորդանէս՝ գոթ[26]: Ծնած է 387ին: Արդէն հօրը կենդանութեան գլուխն էր «Բարբարոսական բանակին». 431ին բանակով մը ուղարկուեցաւ յօգնութիւն Բոնիփակիոսի ընդդէմ Վանդալներու՝ փրկելու համար Ափրիկէն: Այնտեղ մշակեց բարեկամական յարաբերութիւններ Գենսերիկոսի հետ, ուր եւ մնաց ժամանակ մը: 434ին կարգուեցաւ արեւմտեան հիւպատ: Մարկիանոսի օրով անուանուեցաւ արեւելեան բանակի ստրատելատ, ապա նաեւ պատերազմիկ զօրաց ընդհանուր հրամանատար:

Իմանալու համար Ասպարի դերին կարեւորութիւնը, պէտք է աչքի առաջ ունենալ հռոմէական կայսրութեան ահաւոր դրութիւնը Մարկիանոսի մահուան (457 յունուար) ժամանակ: Վաղենտինիանոս Գ., Թէոդոսեան

[25] Exzerpte e Candidi historia, 472 (ed. Bonn).
[26] Jord. Get. 45, 239.

*տան վերջին շառաւիղը, սպանուած էր 455ին։ Աւետոս, Արեւմտեան Գոթերու պաշտպանեալը, հեռացած էր 17 Հոկտ. 456։ Ոչ Արեւելք եւ ոչ Արեւմուտք կայսր կար։ Բոլոր ոյժը Բարբարոսական բանակի ընդհանուր հրամանատարի ձեռքն էր, Իտալիոյ մէջ գոթ Ռիկիմերի եւ Կ. Պոլիս ալան Ասպարի։ Ռիկիմեր չէր կրնար համաձայնիլ Հռոմի ծերակոյտին հետ։ Իրեն հետ բանակցութեան մէջ էր Ասպար։ Ռիկիմեր ծիրանին Ասպարի կ'առաջարկէր. իսկ սա կը մերժէր ընդունիլ զայն «այն չար հետեւութիւններու համար, որոնք կրնային ծագիլ իր ընտրութեամբ»[27]։ Բիւզանդական գահի վրայ բարձրացաւ Լեւոն Ա.* (457—474)։ *Ասպար եւ իր որդին Արդաբուր* 471*ին սպանուեցան կայսեր հրամանով։*

## 12.

*Քրիստոնէութեան քարոզութիւնը Գոթերու մէջ պէտք է Գ. դարու գոնէ երկրորդ կէսին սկսած ըլլայ։ Նիկիոյ* 325*ի ժողովին ներկայ եպիսկոպոսներու թուին մէջ կը յիշուին Թէոփիլոս եպիսկոպոս Գոթաց աշխարհին* (Gothia) *եւ Կադմոս եպիսկոպոս Բոսփորոսի։ Այս թեմերը անշուշտ տաւրիական Թերակղզւոյն վրայ փնտռելու է։ Առաջինը հաւանօրէն Տոմիի թեմն է։ Թէ այս*

[27] L. Schmidt, Geschichte der deutschen Stämme bis zum Ausgange der Völkerwanderung, I. Berlin 1904.

*քաղաքներու մէջ կային քրիստոնեաներ, տարակուսի տակ չի կրնար ձգուիլ. բայց անկէ կարելի չէ հետեւցնել թէ անոնք Գոթեր էին. վասն զի այն քաղաքները յունական էին: Ստոյգ է, սակայն, թէ 325էն յառաջ արդէն Գոթերու մէջ կային քրիստոնեաներ. Կիւրեղ Երուսաղեմացի կը յիշէ 350ին գոթ մարտիրոսներ*[28]*: Դ. դարու վերջերը Բոսպորոսի եպիսկոպոսն էր Ունիլա, որ 403ին վախճանելով, Մոդուարիոս սարկաւագ կ՚ուղարկուի Կ. Պոլիս յաջորդ մը խնդրելու համար*[29]*:*

*Եպիփան Կիպրացի*[30] *կը գրէ, թէ հերձուածողն Աւդիոս երէց Միջագետացի աքսորուած ի Սկիւթիա, անդրդանուբեան երկիրներ քարոզած է քրիստոնէութիւն, անշուշտ իր հերձուածամիտ վարդապետութեամբ: Դ. դարուն կը տեսնուին հոն երկու Կապպադովկացի ծագումով առաքեալներ. Եւտիքէս Նիկիական հաւատով եւ Վուլֆիլա արիանոսեան դաւանութեամբ: Կազմակերպուած համայնքներ գոյութիւն չունէին հոն տակաւին. քաղաքներու եւ գիւղերու մէջ ցրուած փոքրաթիւ խումբերը նկատելու է*

---

[28] A. Harnack, Die Mission und Ausbreitung des Christentums in den ersten drei Jahrhunderten, II. (Leipzig 1906), S. 203.

[29] *Յովհ. Ոսկեբերանի Թուղթ ԺԴ:*

[30] *Ընդդէմ հերձուածոց*, 70 (Migne, P. G. 42, 372): *Հմմտ. հայ. Թարգմանութիւնն «Հերձուածողք երեւելիք. ԿԸ. Աւդիանոսք». Հրտ. Հ. Յ. Տաշեան, Մատենագրական մանր ուսումնասիրութիւնք, Ա.* (*Վիեննա* 1895), *էջ* 141:

մասամբ ընիկներէ եւ մասամբ նորադարձ գոթերէ կազմուած։ Անոնց մասին ինչ ինչ տեղեկութիւններ կը գտնենք վկայաբանութիւններու մէջ[31]. աւելի ամփոփ Փիլոստորգիոս Գամրացւոյ Եկեղեցական Պատմութեան մէջ[32], որմէ քաղուածքներ հաղորդած է մեզի Փոտ պատրիարք իր Մատենադարանին մէջ։ Յառաջ կը բերեմ անկէ հատուածս․

«Ընդ այս ժամանակս (այսինքն Կոստանդիանոս Մեծի օրով), ասէ Փիլոստորգիոս, բերեալ իցէ Ուրփիլայ ի հռոմէական այսր՝ ի Սկիւթացւոց անտի այժմ Գութք (Gethı) կոչեցելոց, բնակելոցն յայնկոյս Իստերի (Դանուբ գետոյ) բազում ժողովուրդս, որք ի պատճառս հաւատոյ հալածեալ էին ի հայրենի աշխարհէն։ Եթէ զիարդ եկն ժողովուրդս ի քրիստոնէութիւն, պատմէ զայն եւ օրինակի։ Առ թագաւորութեամբ Վաղերիանու եւ Գաղղիենեայ Սկիւթացիք, որ յայնկոյս Իստերի բնակէին, խաղացին եկին մեծաւ ամբոխիւ ի հռոմէական այսր, ասպատակ սփռեցին զկողմամբք Եւրոպայ, անցեալ այնուհետեւ յԱսիա՝ ի Գաղատիա եւ ի Գամիրս՝ վարեցին զբազումս ի գերութիւն հանդերձ կղերիկոսօք ոմամբք, եւ դարձան մեծաւ աւարաւ յետս։ Քրիստոնեայքն որ գերե-

---

[31] H. Delehaye, Saints de Thrace et de Mésie: Analecta Bollandiana, 31 (1912), 161—300.

[32] Philostorius' Kirchengeschichte, հրտ. J. Bidez, Leipzig 1913.

ցան բնակեալք խառն ընդ բարբարոսս՝ դարձուցին ոչ սակաւս ի հեթանոսաց անտի ի հաւատս: Յայնոսիկ, որ ի գերութիւնն վարեցան, էին եւ նախնիք Ուրփիլայ, զամիրք յազգէ, ի գեղջէն որ անուանեալ կոչի Սագադոլթինա[33] մերձ ի քաղաքն Պառնասոս: Արդ այրս այս Ուրփիլաս էր առաջնորդ գաղթականութեան հաւատացելոց եւ առաջին եպիսկոպոս նոցա: Եւ եղեւ նա այսպէս: Յաւուրս Կոստանդինայ առաքեալ ընդ այլս ոմանս հրեշտակութեամբ յիշխանէն ժողովրդեան — զի բարբարոսքն որ անդն էին, նուաճեալ էին ընդ կայսերբ — (եւ) յԵւսեբեայ եւ յեպիսկոպոսացն ժողովելոց առ նմա ձեռնադրեցաւ (Ուրֆիլա յեպիսկոպոս) վասն քրիստոնէից, որ ի Գոթացւոց աշխարհին էին: Եւ որպէս նա յայլ ամենայն իրս վասն նոցա հոգ յանձին ունէր, այնպէս հնարեաց նա եւ սեպհական նշանագիրս եւ թարգմանեաց յիւրեանց լեզու զսուրբ Գիրս, բաց ի գրոցն Թագաւորաց, զի այսոքիկ ճառէին զպատմութենէ թագաւորաց, այլ ժողովուրդն այն պատերազմասէր կարօտէր առաւել սանձի (առ ի կարճելոյ) զյօժարութիւնն ի պատերազմ՝ քան խթանի: Իսկ կայսրն նոցա զժողովուրդն, որ եկեալ էր ինքնակամ կամօք, ի կողմանս Միւսիայ. ուր ամենեքին յօժարէին եւ ունէին զՈւրփիլաս բազում մեծարա-

[33] Սագադոլթինա գիւղի մասին հմմտ. S. Salaville, Echos d'Orient 14 (1912), 61—63. Նորագիւտ արձանագրութիւն մը կը ճշդէ տեղւոյս դիրքը:

նօք, մինչեւ կոչել զնա Մովսէս մերոյ ժամանակի: Իսկ նա (Փիլոստորգիոս) գովէ յոյժ զայրս եւ գրէ, եթէ նա եւ որ զնովաւ էին՝ զհօր (զՓիլոստորգեայ) զհերետիկոսական զհաւատոյն ունէին»:

Փիլոստորգիոսի այս տեղեկութիւնները շատ թոյլ են եւ անճշդութիւններով հարուստ: Չենք կրնար պատճառը միայն Փոտի համառօտութեան վերագրել:

ա.) Գոթական արշաւանքը դէպի Գամիրք ըստ պատմագրիս տեղի ունեցած է Վաղերիանոսի եւ Գաղղիենոսի օրով. ուստի 253—268 տարիներուն: Նորագոյն պատմախոյզներէն ոմանք կը նշանակեն 258, այլք 264 եւ դարձեալ ուրիշներ 267ին: Այն ստոյգ է միայն, որ Դանուբեան Գոթերը երբեք Գամիրք միջամուխ չեղան: Լ. Շմիդտ նկատի ունենալով իրողութիւնս, ակնարկուած արշաւանքը Ղրիմի Գոթերու կը վերագրէ, որոնք Տրապիզոն ցամաք ելլելով մինչեւ Գամիրք յառաջացած պէտք է ըլլան: Եւ հաւանական է: Փիլոստորգիոս, որ Վուլֆիլայի նախածնողաց (պապի) մասին այս տեղեկութիւնը կը հաղորդէ, կ՚անգիտանայ բոլորովին Վուլֆիլայի ծնողքը, ծննդավայրն եւ անոր կեանքը եպիսկոպոսութենէն յառաջ: Եթէ ըստ Շմիդտի Վուլֆիլայի պապը ուրիշ Գամրացիներու հետ գերի վարուած է, պէտք է տարուած ըլլայ ի Գոթիա Ղրիմի: Այս տեղ այ ծնած ըլլալու է Վուլֆիլա: Այս տեսակէտէ կարեւորութիւն կը ստանայ Սոկրատի

այն վկայութիւնն[34], թէ Վուլֆիլա Գոթիայի Թէոփիլոս եպիսկոպոսի աշակերտած ըլլայ, Վուլֆիլա ծնած է 311ին. Նա կարող էր ուսանել առ ոտս Թէոփիլոսի, որ 325ին Նիկիոյ ժողովոյն հաւատոյ հանգանակին տուած է իր ստորագրութիւնը, 320էն 341, եւ անոր ձեռքէն առած ըլլալ ընթերցողութեան փոքր աստիճանը: Ինձ կը թուի թէ Փիլոստորգիոս Վուլֆիլայի նախաձնողաց Սաղագոլթինայէ գերեվարութիւնը Անդրդանուբեան Գոթիա ենթադրաբար հետեւցուցած է: Իրեն ծանօթ եղած ըլլալու են գամրացի Ս. Եւտիքէսի առաքելական գործունէութիւնն Անդրդանուբեան երկիրներ եւ նահատակութիւնն[35], ինչպէս եւ նշխարաց փոխադրութիւնը Ս. Բարսղի օրով, թերեւս նաեւ անոր նշխարաց ի Սաղագոլթինա վայելած յարգութիւնը, թէեւ այս մասին որ եւ է յիշատակութիւն չէ ըրած, գոնէ մեզ հասած քաղուածքներու մէջ: Այդ սուրբ վկայն Նիկիոյ հաւատին քարոզիչն էր, ուստի ոչ հաճելի անձ մը պատմագրին համար: Բայց ի՞նչ ճանապարհով հասած էր Եւտիքէս մինչեւ անդրդանուբեան երկիր: Այս տեղ ենթադրած պիտի ըլլայ, թէ Գոթերը ասպատակելով Գամիրք, անկէ

[34] Սոկրատ, Եկեղ. Պատմ. Բ. 41: Հմմտ. W. Luft, Studien zu den ältesten germanischen Alphabeten, Güterloh 1898, S. 64.

[35] H. Delehaye, անդ: J. Mansion, Les origines du christianisme chez les Gots: Anal. Boll. 33 (1914), 5—30.

գերիներ բերած ըլլան, անոնց թուին մէջ նաեւ Եւտիքէսի եւ Վուլֆիլայի նախածնողները։ Սաղագոյթինա այս դէպքին կարող էր Եւտիքէսի նախածնողաց հայրենիքն ալ եղած ըլլալ։ Ասոնք ենթադրական կէտեր են, որոնց վրայ կարելի չէ պնդել, բայց ստուգութենէ հեռու ալ չեն երեւար։ Վուլֆիլա արխանոսեան այսու կը հակադրուէր Եւտիքէս ուղղափառի, վերջինս կը նահատակուի, իսկ Վուլֆիլա իբրեւ Մովսէս իր ժողովուրդի գլուխը անցած Աւետեաց երկիրը կը դիմէ։

բ.) Եթէ Վուլֆիլայի նախնիք (պապը) Գամրաց Սաղագոյթինա գիւղէն էին, կարողէին անոնք թէ գամիր եւ թէ հայ ըլլալ։ Յունական ազդեցութիւնը անտարակոյս մեծ եղած է Կապպադովկիայի վրայ, բայց յատկապէս մեծ քաղաքներու մէջ։ Դժուարաւ կարելի է ըսել, թէ յոյն լեզուն նաեւ գիւղերու մէջ թափանցած ըլլայ։ Տակաւին 216ին Գամրաց ինչ ինչ բերդեր Հայաստանի մաս կը կազմէին։ Կար հոն հայերէնախօս ժողովուրդ։ Թերեւս նաեւ Սաղագոյթինա։ Եւ եթէ անկէ քրիստոնեայ գերիներ վարուեցան Գոթաց աշխարհ, կարող էին անոնք նաեւ հայերէնախօս եղած ըլլալ, ուստի նաեւ Վուլֆիլայի նախածնողք։ Վուլֆիլա = Գայլիկ, կը յիշեցնէ հայ. Եզնիկ, Կորիւն, Ընձակ անունները։ Անունս Վուլֆիլա (նաեւ Վուրֆիլա), նուազականը գոթ. vulfs, գերմ.

Wolf, պրսկ. gurg[36] հայ. գայլ բառէն, կը յառաջագայի սանս. vṛka- արմատէն[37]:

գ.) «Հրեշտակութեամբ առաքեալ յիշխանէն ժողովրդեան» առ Կոստանդին: Այս «իշխանն ժողովրդեան» կարող է հաւատարապէս թէ Անդրդանուբեան եւ թէ Արիմի Գոթերու մասին իմացուիլ: Յամենայն դէպս Անդրդանուբեան Գոթերու հպատակութիւնը կայսեր անհաւանական է: Բայց Արիմի ծովեզերեայք առոյգ կը գտնուէին կայսեր իշխանութեան տակ: Հրեշտակութեան նպատակը չէ բացատրուած: Հրեշտակները քրիստոնեայ կ'երեւան: Գիտենք որ Վուլֆիլա ներկայացած է Կ. Պոլսոյ եպիսկոպոսին՝ Եւսեբիոսի եւ անոր շուրջը հաւաքուած եպիսկոպոսներու, որոնք կը ձեռնադրեն զինքը (341) Անդրդանուբեան Գոթերու (քոր)եպիսկոպոս: Ա՞յս էր հրեշտակութեան խնդրանքը: Վուլֆիլա գալով Արիմէն կարող էր ծանօթ ըլլալ տունէն արդէն յունարէնի եւ գոթերէնի:

դ.) Աւքսենտիոս, որ Դորոստորիումի արիանոսեան եպիսկոպոսն էր եւ Վուլֆիլայի աշակերտը, կը պատմէ թէ Վուլֆիլա եպիսկոպոս ձեռնադրուեցաւ երեսնամեայ, երբ տակաւին ընթերցող էր[38]: Այս հաշուով ծնունդը կ'իյնայ իրր 311ին:

---

[36] Հմմտ. նաեւ «Վուրկ եղբայր Լփնայ Թագաւորի». Ղ. Փարպ. 66:

[37] Հ. Աճառեան, Արմատական հայերէն Բառագիրք. Բ., էջ 52:

[38] Fr. Kauffmann, Aus der Schule des Wulfila: Auxentii Dorostorensis epistula de fide vita

ե.) «*Ժամանակագրական դժուարութիւնք, որոնք կը պատճառեն այս տեղեկութիւնները, լաւագոյնս կը լուծուին, եթէ անջատենք հրեշտակութիւնն եւ եպիսկոպոսական ձեռնադրութիւնը, առաջինը Կոստանդիանոսի* († 337) *կենաց վերջին տարիներուն եւ երկրորդը Կոստանդինի օրով դնենք: Եւ որովհետեւ Եւսեբիոս մեռաւ* 341*ին, կ'ունենանք* terminus ad quem: *Կրնայ ըլլալ որ ձեռնադրութիւնը տեղի ունեցած ըլլայ* 339—340*ին, վասն զի Եւսեբիոս Կ. Պոլսի եպիսկոպոս կարգուեցաւ եւ այս պատճառաւ արիանոսամիտ եպիսկոպոսները մայրաքաղաք կանչուած էին: Բայց աւելի հաւանական է, որ ձեռնադրութիւնը* 341 *ամառը Անտիոքի եկեղեցօրհնէքի ժամանակ տեղի ունեցած ըլլայ*»:

զ.) *Վուլֆիլա յայնկոյս Դանուբի Գոթաց աշխարհի առաջին եպիսկոպոսն էր, այն ժամանակ անշուշտ քորեպիսկոպոս. առանց հաստատուն եպիսկոպոսական աթոռի:*

«*Ինչպէս կը հաղորդէ Աւքսենտիոս, Վուլֆիլա եօթը տարի արդիւնաւէտ գործունէութիւն ունեցաւ իր համայնքին մէջ, հակառակ այն ամէն հալածանքներու, որոնք յարուց հեթանոս Գոթերու դատաւորն Աթանարիկոս: Կրեց բազմապիսի նեղութիւններ. ի վերջոյ ստիպուած որոշեց իրեն-*

---

et obitu Wulfilae im Zusammenhang der dissertatio Maximini contra Ambrosium herausgegeben. Straßburg 1899.

ներով անցնիլ յայսկոյս Դանուբի: Վաղէս կայսր տուաւ անոնց Ստորին Մեւսիայի մէջ հողեր, Հեմուս լերան ստորոտը, ոչ շատ հեռու Նիկոպոլիսէն, միաժամանակ կարգեց զՎուլֆիլա եպիսկոպոսը անոնց առաջնորդ, այսինքն դաստաւոր Գոթաց: Ըստ Աւքսենտիոսի 33 տարի եւս գործեց Վուլֆիլա հռոմէական հողի վրայ իբրեւ եպիսկոպոս եւ մասնակցեցաւ այլ եւ այլ ժողովներու. ստոյգ գիտենք, թէ ան ներկայ էր 360ին Կ. Պոլիս գումարուած ժողովին, որուն հաւատոյ դաւանութեան տուած է իր ստորագրութիւնը:

Բ.) «Սոկրատ կը պատմէ, թէ Ֆրիտիգեռն, Գոթաց գլխաւորը, գժտած Աթանարիկի հետ՝ փախած է հռոմէական սահման եւ Վուլֆիլայի միջնորդութեամբ Վաղէսէն օգնական զօրք առած՝ յաղթած է Աթանարկին: Անորոշ է, թէ այս անցքը ժամանակագրական ի՞նչ աղերսի մէջ կը գտնուի այն դաշինքին հետ, որ կնքուեցաւ (369) Վաղէսի եւ Աթանարիկի միջեւ: Կ՚ըսուի թէ Ֆրիտիգեռն այս օգնութեան համար ի շնորհակալութիւն՝ իր Գոթերուն հետ կայսեր հաւատքն ընդունած ըլլայ: Վուլֆիլա Ֆրիտիգեռնի հետ եկողներու դարձին գործակցած եւ յարձակմամբ Աթանարիկի սահմանին վրայ արիւնալից հալածանքներու առիթ ընծայած ըլլայ: Ինչ ալ ըլլայ այս պատմուածքը, այն ստոյգ է յամենայն դէպս, թէ 369էն մինչեւ գոնէ 372 անդրդանուբեան Գոթաց աշխարհին մէջ քրիստոնեաներու դէմ

մեծ հալածանք յարուցուած է, որուն մէջ Արիանոսեանք եւ թէ ուղղափառները հաւասարապէս ենթարկուած են :

Բ · «Աւքսենտիոսի համաձայն, որուն տեղեկութիւնները կը լրացնէ Մաքսիմինոս, Ակուիլեայի ժողովէն (3 սեպտ · 381) ետքը Վուլֆիլա Պալլադիոսի եւ Սեկունդիանոսի հետ Թէոդոս կայսեր գացած է խնդրելու, որ երկու եպիսկոպոսներուս վերահաստատութեան համար ժողով մը գումարուի : Իր խնդիրքը լսուած է : Այս ուղեւորութիւնը պէտք է տեղի ունեցած ըլլայ 381ին կամ 382ին : Յիշեալ ժողովքին մասնակցելու կը հրաւիրուի Վուլֆիլա կայսեր կողմէ : Կը հասնի Կ · Պոլիս · բայց կը վախճանի քիչ յետոյ, մահուան անկողնոյն մէջ հաւատոյ դաւանութիւն մը տալէ ետքը : Այս դաւանութեան պատճէնը պահած է մեզի Աւքսենտիոս : Յուղարկաւորութիւնը կը կատարուի մեծաթիւ բազմութեան մասնակցութեամբ : Ժողովը կը կայանայ 383 յունիս—սեպտեմբերին Կ · Պոլիս : Կայսրը կը յուսար թէ վիճական հարցերը հարցաքննութեան առնուելով լուծում մը պիտի գտնեն. այս նպատակով թէ ուղղափառ եւ թէ հերձուածող եպիսկոպոսներ հրաւիրուած էին ժողովին : Վիճաբանութիւնը տեղի չունեցաւ :

«Իր եկեղեցական եւ քաղաքական գործունէութեան կից ծաւալեցուցած է Վուլֆիլա նաեւ գրական գործունէութիւն : Ան ծանօթ էր գոթերէն, յունարէն եւ լատիներէն լե-

ղուներու. ինչպէս կը վկայէ Աւքսենտիոս, «բազում ճառս եւ յաճախ մեկնութիւնս ցանկացողաց յօգուտ եւ ի շինութիւն, իւր ի յաւիտենական յիշատակ եւ ի վարձս զկնի իւր եթող[39]»: Այս գրուածքներէն ոչ մին հասած է մեզի:

13.

Փիլոստորգիոս, Սոկրատ եւ Սոզոմենոս կը պատմեն միաբան, թէ Վուլֆիլա հնարած է գոթերէն նշանագիրներ եւ թարգմանած է Ս. Գիրքը: Բայց զարմանալի է, որ Աւքսենտիոս, Վուլֆիլայի աշակերտն եւ հիացողը որ եւ է ակնարկութիւն չէ ըրած այս մասին: Բարբարոս ազգի մը լեզուին համար նշանագիրներ ստեղծել, առանց դպրութեան ժողովուրդի մը ազգային գրականութիւն տալ եւ Ս. Գիրքը գոթերէնի թարգմանել անհատի մը գործունէութեան մէջ այնպիսի արդիւնագործ վաստակներ եւ պարծանքի կոթողներ են, որ այդ անձին անունն իսկ յիշող մը, թող թէ երախտագիտութեամբ անոր գովքն հիւսող աշակերտ մը չէր կրնար անոնց առջեւէն առանց գլուխը խոնարհեցնելու անցնիլ: Եւ եթէ Աւքսենտիոս լռած է այս մասին, հարկ է այս լռութենէն համարձակ հետեւցնել argumentum a silentio: Եւ սակայն W. Streitberg, ձայնակցելով ուրիշ-

[39] W. Streitberg, Gotisches Elementarbuch, Heidelberg 1910, էջ 20—21: Անկէ են Ե.—Թ. հատուածները

*ներուն՝ կը շարունակէ ըսելով. «Հակառակ մեր գլխաւոր աղբիւրին՝ Աւքսենտիոսի լռութեան, կարելի չէ իրաւամբ տարակուսի տակ ձգել, թէ այն անանուն մեզի հասած գոթական Աստուածաշունչի թարգմանութեան մը հատակոտորները, Վուլֆիլայի գործը չըլլան»:*

*Լսենք այժմ այն վկայութիւնները, զորոնք կու տան յոյն եւ լատին եկեղեցական պատմագիրները գոթական նշանագիրներու գիւտին եւ գոթերէն Աստուածաշունչի թարգմանութեան մասին:*

1. *Փիլոստորգիոս, Պատմ. Եկեղ. Բ.* 5 (*տե՛ս վերագոյն* § 12).

*Καὶ γραμμάτων αὐτοῖς οἰκείων εὑρετὴς καταστὰς, μετέφρασεν εἰς τὴν αὐτῶν φωνὴν τὰς γραφὰς ἅπασας.*

2. *Սոկրատ. Պատմ. Եկեղ. Դ.* 33 (*հրտ.* Hussey).

*Τότε δὲ καὶ Οὐλφίλας ὁ τῶν Γότθων ἐπίσκοπος, γράμματα ἐφεῦρε Γοτθικά καὶ τὰς θείας γραφάς εἰς τὴν Γότθων μεταβαλὼν, τοὺς βαρβάρους μανθάνειν τὰ θεῖα λόγια παρεσκεύασεν.*

*«Յայնժամ եւ Ուլփիլաս Գոթաց եպիսկոպոս գիր հնարեցաւ գոթական եւ զաստուածային զԳիրսն ի Գոթացն լեզու փոխելով, բարբարոսացն ուսուցանել զաստուածային բանս յորդորեաց». Սոկրատ, Պատմ. Եկեղ. Հին Հայ Թարգմանութեամբ. Հրտ. Մ. Վ. Տէր-Մովսէսեան, Էջմիածին,* 1897, *էջ* 389.

3· *Սոզոմենոս, Պատմ. Եկեղ. Զ.* 37 (*Հրտ.* Hussey)·

*Πρῶτος δὲ γραμμάτων εὑρετὴς αὐτοῖς ἐγένετο, καὶ εἰς τὴν οἰκείαν φωνὴν μετέφρασε τὰς ἱερὰς βίβλους.*

*«Առաջին հնարող նշանագրոցն նոցա եղեւ. եւ ի սեպհական լեզու թարգմանեաց զսուրբ Գիրս»:*

4· *Վկայաբանութիւն Ս. Նիկետայ*· Analecta Bollandiana, 31 (1912), *էջ* 211 (*Հրտ.* H. Delehaye)·

*Τότε δὲ καὶ Οὐρφίλας ὁ τῶν Γότθων ἐπίσκοπος... γράμματα ἐφεῦρεν γοτθικὰ καὶ τὰς θείας γραφὰς εἰς τὴν τῶν Γότθων γλῶσσαν μεταβαλών...*

*«Յայնժամ եւ Ուրփիլաս եպիսկոպոս Գոթաց... հնարեաց գոթական նշանագիրս եւ զաստուածեղէն Գիրս ի լեզու Գոթաց թարգմանեաց եւ կարգեաց զի եւ այլ բարբարոսք զաստուածեղէն բանսն ուսցին»:*

*Նոյնը Մետափրաստեան խմբագրութեամբ* Acta Sanctorum Sept. V. 41:

5· Կասիոդորոս († 580), h. t. VIII, 13·

Tunc etiam Vulphilas Gothorum episcopus litteras gothicas adinvenit et scripturas divinas in eam convertit linguam.

6· *Յորդանէս*, Getica, c. 51. (Ulfilas) qui eis dicitur et litteras instituisse.

7· *Իսիդոր*, Historia Gothorum (Migne P. L. 83, 1060):

Tunc Gulphilas eorum episcopus gothicas litteras adinvenit (var. condidit), et scripturas Novi ac Veteris Testamenti in eodem linguam convertit.

8. Walahfried Strabo (✝ 849), de rebus eccl. 7 (Migne, P. L. 114, c. 927).

Gothi, qui et Getae, eo tempore, quo ad fidem Christi, licet non recto itinere, perducti sunt, in Graecorum provinciis commorantes nostrum, id est Theogentis divinos libros in suae locutionis proprietatem transtulerunt, quorum adhuc monumenta apud nonnulos habentur.

*Այս տեղիքներէն առաջին երեքը կը պատկանին երեք Եկեղեցական Պատմութեան գրող աշխարհիկ հեղինակներու, որոնք ծաղկած են Ե. դարու առաջին կէսին. Փիլոստորգիոս աւարտած է իր գործը իբր 433ին, միւս երկուքը 439ի դէպքերու յիշատակութեամբ: Սոզոմենոս աչքի առաջ ունեցած է Սոկրատի Եկեղ. Պատմութիւնը. Թէ վերջինիս ծանօթ եղա՞ծ է Փիլոստորգիոսի աշխատութիւնը, չէ ապացուցուած, բայց հաւանական կ'երեւայ այն գոնէ մեզ հետաքրքրող տեղիքին մէջ: Զարմանալի է, որ ուրիշ ժամանակակից պատմիչ մը՝ Թէոդորետոս որ եւ է խօսք չէ ըրած գոթական նշանագիրներու գոյութեան եւ Ս. Գրքի գոթերէն թարգմանութեան մասին, թէպէտ անծանօթ չեն եղած իրեն ոչ Վուլֆիլայի անձն եւ ոչ ալ Գոթերու*

ներկայութիւնն ի Կ. Պոլիս: Ս. Նիկեատսի Վկայաբանութեան վերջիչեալ տեղիքը յետամուտ է, առնուած Սոկրատէն[40]: Կասիոդոր եւ Իսիդորոս կախում ունին Սոկրատէն, Յորդանէս՝ Կասիոդորէ. ուշագրաւ է վերջնոյս ասութեան ձեւը. «Կ՚ըսուի թէ ան (Ուրֆիլա) անոնց (Գոթերու) գիր տուած ըլլայ»: Իսկ Վ. Ստրաբոյ կ՚անդրադառնայ առհասարակ այդ նշանագիրներու հեղինակին անունը:

Ըստ այս առանձին կարեւորութիւն կը ստանայ հոս Փիլոստորգիոսի վկայութիւնը, այնու որ առաջին անգամ ինքը հրապարակ դրած կ՚ըլլայ Վուլֆիլայի անունը իբրեւ «հնարիչ» գոթական գրերու եւ թարգմանիչ գոթերէն Աստուածաշունչի: Այս դէպքին ինքնին հարց կը ծագի, թէ ի՞նչ աղբիւրէ քաղած է պատմագիրս իր տեղեկութիւնները: Վերագոյն տեսանք, թէ Փիլոստորգիոսի հաւաստումները Գոթերու առաջին եպիսկոպոսի մասին անորոշ էին, աղքատ բովանդակութեամբ, ի լրոյ գրուած, առանց ժամանակագրական ճիշդ ցուցմունքներու: Միւս կողմէ, իր Փոտէն արդէն նկատուած կողմնապահութիւնը, որով ամենայն ինչ արիանոսեան տեսակէտէ կը դատէ, «սակաւ ինչ կասկածելի կ՚ընէ իր հաւաստումներու արժանահաւատութիւնը[41]»: Փոտ չի քաշուիր նոյն իսկ «ստախօս» անուանելու

---

[40] Հմմտ. H. Delehaye, անդ, էջ 282--285:

[41] O. Stählin: W. von Christ, Geschichte der griechischen Literatur[5] (München 1913), II, S. 1196.

*զինքը։ Այն իսկ, որ պատմագիրը իր անչափ փառաբանելովը զՎուլֆիլա զայն «աստուածացնելու» իսկ կը ձգտի, կասկած կ'արթնցնէ մեր մէջ, թէ արդեօք ամբողջութեամբ իրեն չէ՞ վերագրած նաեւ գոթական նշանագիրներու գիւտն եւ Աստուածաշունչի թարգմանութիւնը։ Յամենայն դէպս ուրիշ գովասան մը, Վուլֆիլայի աշակերտն Աւքսենտիոս (իբր 390ին) որ եւ է ակնարկութիւն չէ ըրած իր ուսուցչին այս փառապանծ ստեղծագործութիւններու մասին։ Դեռ 403ին կ'անգիտանայ զանոնք նաեւ Ս. Յերոնիմոս։*

14.

*Այն համոզումը, զոր կազմած էին Փիլոստորգիոս, Սոկրատ եւ Սոզոմենոս իբր 435ին, ի մասին գոթական նշանագիրներու հնարողին եւ գոթերէն Ս. Գրքի թարգմանչին, մնաց համոզում նաեւ յաջորդ դարերուն մինչեւ մեր օրերը։ Ոչ ոք հարց դրաւ, թէ Վուլֆիլա ատա՞կ էր այսպիսի ձեռնարկութեան մը եւ գոթ ժողովուրդը իբր 370ին հասա՞ծ էր մշակոյթի այն բարձրութեան, որ պահանջք ներկայացուցած ըլլար սեպհական գիր եւ ազգային լեզուով Աստուածաշունչի թարգմանութիւն մ'ունենալու։*

1. *Սկանդինաւիոյ այն բազմաթիւ գոթ ցեղերը, որոնք անցան Գերմանիա եւ խառնելով իրենց հետ ուրիշ գերմանական ցեղեր իջան Անդրդանուբեան երկիրներ, յառաջա-*

ցան Իտալիա, Դակիա, հասան մինչեւ Գաղղիա եւ Սպանիա, մինչեւ Ափրիկէ, կամ հաստատուեցան Թրակիա, Միւսիա եւ Փռիւգիա, ունէին անշուշտ բազմատեսակ բարբառներ, եւ ապրեցան ուրոյն խմբաւորումներով: Անոնք հեթանոս էին. եւ մնացին այնպէս, ըստ մեծի մասին, մինչեւ Ե. դարու վերջերը: Գ.—Դ. դարուն անոնք երկու անջատ պետութիւններու բաժնուած, կ'ապրէին իրարու հանդէպ թշնամութեամբ: Հոնական արշաւանքը վերջ տուաւ այդ պետութիւններու: Գոթերէն մաս մը գինակցեցաւ անոնց: Ուրիշներ ցրուեցան. ոմանք մտան հռոմէական ծառայութեան մէջ թէ Արեւմուտք եւ թէ Արեւելք: Այսպէս չկրցաւ Գոթ ժողովուրդը համախմբուիլ եւ նստակեաց կեանք ապրիլ, կազմակերպուիլ եւ իր մշակոյթն ստեղծել: Այսպիսի պայմաններու մէջ անօգուտ էր խորհիլ գրի եւ գրականութեան մասին:

2. Անդրդանուբեան երկիրներու մէջ քրիստոնէութիւնը տակաւին իր նուաճումներն չէր ըրած: Նորադարձ քրիստոնեաները, որոնք գոթական արշաւանքէ յառաջ եւ յետոյ երեւցան հոն, իրենց սակաւութեան պատճառաւ չունէին կազմակերպուած եկեղեցիներ: Նաեւ բաժնուած էին անոնք դաւանական դաւանութեանց, Աւխդեանք, Արիանոսեանք եւ Կաթողիկեայք: Անոնք ալ վայրավատին ցրուեցան, նաեւ ըստ մասնէ նահատակուեցան, երբ Աթանարիկ յարուց անոնց դէմ հալածանք:

3. Այս շրջանին էր, որ Վուլֆիլա իբրեւ առաջին քորեպիսկոպոս Գոթերու ուղարկուեցաւ Անդրդանուբեան երկիրներ (341): Տեղի տալով հալածանաց՝ առաւ իր ժողովուրդն, յայտնի չէ ի՛նչ թուով, եւ անցաւ Միւսիա (350): Նորադարձ եւ նորագաղթ ժողովուրդս, կոչուած Փոքր Գոթք, նոր հայրենիքի մէջ պարապեցաւ հողամշակութեամբ: Իսկ Վուլֆիլա, որ միաժամանակ թէ՛ արիանոսեան էր եւ թէ՛ հոգեմարտ ապրեցաւ միջամուխ աստուածաբանական վէճերու մէջ. կը հեղինակէր յունարէն եւ լատիներէն ճառեր, ոչ ի լուսաւորութիւն իր նորադարձ ժողովուրդին, այլ ի հակաճառութիւն կաթողիկեայց, եւ ժողովքէ ժողով կը վազէր ուժ տալու իր կուսակցութեան: Ան անձնատուր եղած էր, կը գրէ Kaufmann[42], այն հարցերու եւ վէճերու, որոնցմով կլանուած էին Հռոմէականք. իրեն համար ոչ ժողովուրդ գոյութիւն ունէր եւ ոչ տէրութիւն. իրեն համար կար միայն եկեղեցի. օտարացած էր իր ժողովուրդին, բայց «համագոյական» բառը կը բոնկցնէր արիւնը սրտին մէջ: Այսպէս նաեւ իր աշակերտները՝ Աւքսենտիոս, Սելենաս եւ այլք, որոնք Ամբրոսիոսի եւ Աւգոստինոսի հետ կը չափուէին աստուածաբանական նուրբ հարցերու շուրջ լատիներէն գրուածքներով: Գոթ ժողո-

---

[42] Georg Kaufmann, Deutsche Geschichte, I. Leipzig 1830, S. 234.

*վուրդը սակայն պարզախօս քարոզիչներու կը կարօտ էր։*

4. *Կ'ըսուի թէ Վուլֆիլա լեզուներու հմուտ աստուածախօս եւ հռետորաբան էր։ Այս հանգամանքները լոկ բաւական չէին ի մինակի ընելու գինքը բարբարոս լեզուի մը համար գիր հնարելու։ Առ այս կը պահանջուէր արուեստի մասնագիտութիւն, որ չէր կրնար անջան ձեռք բերուիլ։ Եւ եթէ ուշի ուշով նկատի առնենք այն գոթական այբուբենը, զոր ունինք այսօր մեր առաջ, պիտի տեսնենք անոր վրայ մասնագիտօրէն աշխատող միտք մը, հանճարեղ արուեստագէտ մը, որ թէ լեզուական յատկութեանց հմուտ է եւ թէ գիր յօրինելու գաղտնիքին ծանօթ. ան յունարէնագէտ է, բայց չ'երեւար թէ նաեւ լատին լեզուն կը խօսի եւ կը գրէ։*

5. *Աւքսենտիոս, որ հիացող մ'եղած է իր ուսուցչին վրայ, որ անոր գովքն հիւսած է եւ աստուածաբանական եւ լեզուագիտական հանճարն պանծացուցած, խօսք չէ ըրած թէ ան նաեւ գոթերէն լեզուի համար նշանագիրներ յօրինած եւ Աստուածաշունչը գոթերէնի թարգմանած ըլլայ։ Անշուշտ այսպիսի վաստակներ, որոնք տարիներու աշխատանք արժած պիտի ըլլան, եւ գոթ ժողովուրդի համար անմոռանալի երախտիք, պիտի գնահատէր գերազանց չափով բարձր քան անոր ճառերն ու քարոզները։ Սակայն եւ այնպէս անյիշատակ թողուցած է զանոնք, վասն զի իրեն անծանօթ եղած են այսպիսի*

վաստակներ իր ուսուցչին ձեռքէն: Այս լութինը կը մատակարարէ մեզի «ի լութենէ տպագրոյց», որ իր արժէքով աւելի բարձրաբարբառ է, քան Փիլոստորգիոսի եւ այլոց իրր 50—70 տարի ետքը տուած վկայութիւնները: Այս ապացոյցը կ՚ամրապնդէ Ս. Յերոնիմոս իր առ Սունիա եւ Փրետալա գրած թուղթին մէջ[43], ուր այս երկու ազնուական ծագումէ գոթ կրօնաւորներու հարցումներուն ի մասին Սաղմոսարանի ինչ ինչ տեղիքներու՝ պատասխաններով կը բացագանչէ. Quis hoc crederet, ut barbara Getarum lingua hebraicam quaereret veritatem (Ո՞ յայս հաւատացէ, եթէ Գեթաց բարբարոս լեզու զեբրայական ճշմարտութիւն ի հարց եւ ի փորձ արկցէ): Թուղթս գրուած է 403ին. յիշեալ հարցասէրք յունարէն բնագիրն ունին իրենց առջեւ. որուն մութ տեղիքներու լուծումը կը խնդրեն: Ուստի այս տարւոյն ակուին barbara lingua է գոթերէնը, վասն զի չունի իր այբուբենը եւ իր գրականութիւնը:

6. Զեմ ըսեր, թէ Փիլոստորգիոսի եւ եւ այլոց տեղեկութիւններն ի հիմանց սխալ են, այլ թէ սխալած են անոնք, երբ Գրի գիւտն եւ Ս. Գրքի Թարգմանութիւնը Վուլֆիլայի ընծայած են: Ատոնց տարբերակուսի երբ կը հեղինակէին անոնք իրենց Պատմագրքերը, կային հրապարակի վրայ թէ Գիրն եւ թէ Թարգմանութիւնք:

7. Թէ՛ գոթական այբուբենը, որ յեցած

[43] Թուղթ ճԶ. Migne. P. L. 22, 837—867.

է յունականին վրայ, եւ թէ՛ Աստուածաշունչի գոթերէն թարգմանութիւնը, որ կատարուած է Կ. Պոլսոյ շրջանին մէջ տարածուած յունարէն բնագրէ, ցոյց կու տան, թէ դրի գիւտն եւ Աստուածաշունչի թարգմանութիւնը տեղի ունեցած է Արեւելեան Հռոմէական պետութեան մէջ, ըստ ամենայն հաւանականութեան անոր մայրաքաղաքին մէջ: Եւ արդարեւ միակ տեղն էր մայրաքաղաքս, ուր կային գոթ–ալան ժողովուրդի մեծ բազմութիւն եւ ընտրանի հասարակութիւն: Ունէին զինուորութեան մէջ ստիճանաւորներ, աւագանւոյն թուին մէջ մեծարոյ ներկայացուցիչներ, եւ ընկերական կեանքի մէջ բարեկիրթ քաղաքացիներ: Տեղական գպրոցները մէջ կ՚ուսանէին անշուշտ նաեւ գոթ եւ ալան ուսանողներ. եւ եկեղեցական կոչման հետամուտները կ՚ընդունէին իրենց կրթութիւնը յունարէն գրքերու վրայէն: Այսպէս Սուննիա եւ Փրետալա, որոնք կ՚ուսումնասիրեն Սաղմոսարանը յունարէն բնագրով: Անոնք, որոնք արեւմուտքէն եկած էին, ազդուած էին լատինախօս ժողովուրդներէ, եւ փոխ առած գոթերէնի մէջ լատին, ըստ մեծի մասին ոչ–եկեղեցական բառեր: Իր կարգին յունական միջավայրը տուաւ անոնց յունարէն բառեր. այս փոխառութիւնները քրիստոնեայ Գոթերու քով առաւելապէս եկեղեցական գործածական բառերէ կը կազմուէին [44]:

[44] Harnack, անդ, էջ 203 ծան.:

Քրիստոնեայ Գոթերու մեծագոյն մասը արիանոսեան էր։ Երբ արթնցաւ անոնց մէջ ազգասիրութիւնը, երբ զգացին թէ զինուորական ոյժը առաւել չափով իրենցմէ կը բաղկանայ, հռչակեցին արիանոսութիւնը ազգային կրօն։ Բայց չունէին հրապարակային եկեղեցի մայրաքաղաքին մէջ։ Յովհաննէս Ոսկեբերան չահելու համար զանոնք կաթողիկէ եկեղեցւոյ, յատկացուց յունական եկեղեցիներէն մին կաթողիկէ Գոթերու, ձեռնադրեց անոնց համար երէցներ, սարկաւագներ եւ ընթերցողներ։ Նա ինքը անձամբ կ՚այցելէր այդ եկեղեցին, ներկայ կ՚ըլլար գոթերէն պաշտամանց, կը քարոզէր յունարէն եւ (թարգմանի բերնով) գոթերէն։ Այն ուշադրութիւնը, զոր դարձուց Ոսկեբերան Գոթերուն, կրնանք ենթադրել թէ չարունակեցին նաեւ իր յաջորդները։

8. Գոթերէն լեզուն չունէր տակաւին իր սեպհական գիրն, ուստի նաեւ գրականութիւնը։ Թէ փորձեր եղա՞ծ են յունարէն գրերով գոթերէն արտայայտուելու, չգիտենք։ Բայց գիտենք, թէ Եկեղեցւոյ մէջ հոգեւոր պաշտամունք կը կատարուէին գոթերէն լեզուով։ Այս տեղի կ՚ունենար հաւանօրէն յունարէնի եւ գոթերէնի հմուտ պաշտօնեաներէ, որոնք վարժած էին յունարէն բնագրէ անգիր գոթերէն թարգմանելու։ Այսպէս կը հնչուէին նաեւ Աստուածաշունչի ընթերցուածները ունկնդիրներու ականջին։ Այս հրահանգը չարունակուած տարիներով,

դոնէ 390—420, նպաստեց միաժամանակ գոթերէն անմշակ լեզուին մշակման, որով ընդունակ եղաւ ապա արտայայտելու Աստուածաշունչի եւ քրիստոնէական վարդապետութեան նուրբ մտքերը, երբ սեպհական գրով ձեռնարկուեցաւ թարգմանել Ս. Գիրքն եւ այլ եկեղեցական պաշտամանց մատեանները: Առ այս համեմատութեան օրինակ կարելի է առնել հայերէն լեզուն. որ մինչեւ 408 տակաւին բարբարոս, առանց դպրութեան, երբ հայերէն նշանագիրներու գիւտով գրական լեզուի կիրարկուեցաւ, հանդիսացաւ դասական կատարելութեամբ պերճացած: Վասն զի երկար տարիներ, աւելի քան երկու դար ծառայած էր Աստուածաշունչի եւ Պաշտամանց անգիր թարգմանութեան Եկեղեցիներու մէջ եւ տանին, յունարէն կամ ասորերէն ընագիրներու վրայէն: Գոթերէնը բախտը չունեցաւ այսքան երկար դարբնուելու եւ տաշուելու, յղկուելու եւ կոկկուելու. ուստի եւ զարմանալի չէ, եթէ լեզուի եւ թարգմանութեան անհարթութիւններ տեսնուին հոն, եթէ թարգմանչին մատենագրական վաստակը նուազ գնահատուի [45]:

9. Արեւելեան եւ Արեւմտեան Գոթերու եւ ցեղակից ազգերու մէկ մասին համախմբումը Արեւելեան Հռոմէական Պետութեան մէջ, անոնց քաղաքական եւ զինուորական գիրքն եւ այն բարձր պաշտօնները, գո-

---

[45] Fr. Kauffmann, Z. f deutsche Philologie, Bd. 30, S. 183.

*րոնք պղեցած էին արքունիքի եւ բանակին մէջ, հրահրեցին անոնց ինքնասիրութիւնը եւ արծարծեցին անոնց ազգային ինքնագիտակցութիւնը։ Այս բոլոր շարժման ոգին էր Ասպար, որ յայտնի եւ ծածուկ անդադար յարաբերութեան մէջ էր Արեւմտեան Գոթերու հետ։*

*Արեւելեան Հռոմէական Պետութիւնը Թէոդոս Բ.ի* (408—450) *օրով երկար ժամանակ ըմբոշխնեց խաղաղութիւն։ Պատերազմները երկրին մէջ եւ սահմաններու վրայ դադրած էին։ «Բարբարոսական բանակի» պատերազմատենչ ոգին անգործութեան այս տարիներուն նուաճուած եւ գինաթափուած էր։ Այս դրութիւնը նպաստեց, որ անոնք իրենց ոյժը ազգային մշակոյթին ի սպաս դնեն։*

10. *Այս եւ նման խորհրդածութիւններ կը ստիպեն գիս լքել այն ընդհանուր համոզումը, թէ Վուլֆիլա եղած ըլլայ գոթական այբուբենի հնարողն եւ գոթերէն Աստուածաշունչի մասերու թարգմանիչը իբր* 370*ին։*

*Եւ որովհետեւ կայ հրապարակի վրայ գոթական Այբուբեն, պէտք է ան նաեւ իր հնարողն ունեցած ըլլայ։ Եւ վասն զի այս Այբուբենը իր մէն մի մասերով յօրինուածական կառուցուածք մը կը ցուցադրէ, կ՚ենթադրէ համապատասխան չափով գրագէտ եւ հնարամիտ վարպետ մը։ Ո՞վ կարող է եղած ըլլալ ան։ Պատասխանը կու տայ ժամանակակից կենսագիր մը՝ Կորիւն վար-*

դասպետ, որ գրած է 442ին իր ուսուցին՝ Ս. Մաշտոցի կենսագրութիւնը հրամանաւ Յովսէփ կաթողիկոսի եւ խնդրանօք իր աշակերտակիցներու:

15.

Մաշտոց, ծննդեամբ Տարօնի Հացեկաց գիւղէն, հրահանգուած էր յունական դպրութեամբ, հաւանօրէն Անտիոք, ուր կ'ուսուցանէր Լիբանիոս, իբրեւ աշակերտակից Թէոդորոս երէցի (որ յետոյ Մոպսուեստիայի եպիսկոպոս եղաւ), որ եւ գրեց Մաշտոցի խնդրանքով՝ ընդդէմ Պարսից Բեչին: Վերադառնալով հայրենիք՝ մտաւ զինուորական ծառայութեան մէջ (իբր 386), գործեց իբրեւ դիւանադպիր: Ապա նուիրուեցաւ եկեղեցւոյ սպասաւորութեան, կարգուեցաւ քօրեպիսկոպոս («վարդապետ»), հաւաքեց իր շուրջ հոգեկրօն անձինք եւ ելաւ շրջելու աւետարանական քարոզութեամբ գաւառէ գաւառ: Թանձր տգիտութիւնը, զոր կը նշմարէ յատկապէս ծայրագաւառներու մէջ, կը համարի արդիւնք անգրագիտութեան. որովհետեւ չունէր տակաւին հայ լեզուն իր գիրն եւ գրականութիւնը: Կը դառնայ Վաղարշապատ խորհելու Ս. Սահակ կաթողիկոսի հետ դարման տանելու համար անգրագիտութեան: Հարցը կը դրուի նաեւ Վռամշապուհ թագաւորի առաջ, որ խօսք կ'ընէ հայկական այբուբենի մը մասին, որ կը գտնուի ասորի Դանիէլ (Արդնի) եպիսկոպոսի քով: Կը բերուին

այդ նշանագիրները, բայց փորձը ցոյց կուտայ, թէ անբաւական են անոնք հայ լեզուի ճշգրիտ արտայայտութեան համար: Կը յանձնարարուի Մաշտոցի, որ ինքն Միջագետք եւ խորհրդակցի յոյն եւ ասորի իմաստուններու հետ: Իր հարցաքննութիւնները կը յանգին այն, թէ հայ լեզուին համար պատշաճագոյնն է հիմ առնել յունական ալփաբետն, լրացնել զայն փոխառութիւններով ասորականէն, իսկ հայոյն ինքնայատուկ հնչիւններու համար կերտել նոր նշանաձեւեր ածանցելով յունական որ եւ է նշանաձեւէ: Այս սկզբունքով փոխ առաւ Մաշտոց յունական ալփաբետէն 18, ասորականէն 4 եւ լրացուց թիւը 14 նոր նշանաձեւերով, ուստի ընդ ամէնը 36 (9 × 4) նշանագիրներ: Ամբողջը դրաւ ապա գեղագրիչ Ռուփինոսի (Հռոփանոս) վերաքննութեան տակ, որ գրչութեան արուեստի օրինաց համաձայն կոկկեց, յղկեց եւ գեղազարդեց զանոնք, ապա սորվեցուց Մաշտոցի հետը բերած աշակերտներուն գրչագրութեան արուեստը, եւ առ ի փորձ գրի առնուեցաւ Սողոմոնի Առակաց գիրքը, զոր Մաշտոց թելադրեց: Փորձը ցոյց տուաւ, որ ամէն մասամբ յաջող էր այբուբենը եւ ընդունակ ճշդիւ արտայայտելու հայ հնչիւնները գրով (408):

Մաշտոց վերադարձաւ իրեններուն հետ Հայաստան: Անձամբ ղեկավարեց նոր բացուած դպրոցները (408—415): Ապա առած հետը աշակերտներ անցան Սիւնեաց եւ

Աղուանից աշխարհները տարածելու նորագիւտ գիրն եւ նորակերտ գրականութիւնը։ Հոգաց նաեւ վրացերէն լեզուի համար ինքնուրոյն նշանագիրներ (թուով 9 × 4 = 36). անձամբ այցելեց Վրաստան եւ առաջնորդեց բանալու դպրոցներ եւ թարգմանելու Աստուածաշունչը հայերէն բնագրի վրայէն։

Վերադառնալով Վաղարշապատ, հրաման առաւ անցնիլ նաեւ Հռոմէական Հայաստան, հոն եւս տարածելու համար հայ գրականութիւնը։ Արեւելեան բանակին հրամանատարն էր այս միջոցին Անատոլիոս. որ կարեւոր համարեց Մաշտոց վարդապետի խնդիրքը ներկայացնել Արքունիք. ուսկից հրահանգ հասաւ, ուղարկել վարդապետը արքունատուր կառքերով Կ. Պոլիս։ Ներկայացաւ Մաշտոց Աւգոստականաց՝ Թէոդոս Բ.ի եւ անոր քրոջ իմաստուն Պուղքերեայ։ Մայրաքաղաքին հայրապետն էր Ատտիկոս (405—425)։ Իր ժամանումն Կ. Պոլիս հարկ է դնել ոչ ուշ քան 420։ Մաշտոց մնաց կայսերանիստ քաղաքը մինչեւ Զատիկ «մեծարեալ յԵկեղեցւոյն եւ յԱրքունեաց եւ ի պատուական Իշխանաց քաղաքին[46]»։

Զարմանալի է արդարեւ յոյն եկեղեցական պատմիչներու շրջահայեցութիւնը, որոնք Կ. Պոլիս նստած պատմագիրքեր կը շարադրեն, առ այս դիւաններ կը պրպտեն,

[46] Կորիւն, ԺԴ., 3։ Մաշտոցի կենսագրութիւնը տուած եմ ընդարձակ Հանդ. Ամս., 49 (1935), 505—550 = առտ, էջ 95—173։

հին եւ նոր աղբիւրներէ պատմական նիւթեր կը մուրան, իսկ իրենց չուրջը կատարուած դէպքեր կ՚անտեսեն։ Կ. Պոլիս երբ Կաւկա–սեան ազգերու լուսաստուն կ՚այցելէ, երկու բարբարոս ազգերու համար սեպհական նշա–նագիրներ հնարողը անձամբ իրենց կու գայ, ամբոխներով իրենց մէջ հիւր կը մնայ, նոյն իսկ իրենց քաղաքին մէջ երրորդ բարբարոս ժողովուրդի մը՝ Գոթերու համար այբուբեն կը հնարէ, եւ սակայն ոչ կ՚իմանան եւ ոչ ալ կը հետաքրքրուին. փոխանակ Հիւսիսի քրիստոնեայ ժողովուրդներու անցեալի եւ ներկայի մասին միակ իրազէտ ճշգրիտ տե–ղեկութիւններ խնդրելու կը բաւականանան Ռուփինոսը օրինակելով։

16.

Հիւսիսային կաւկասեան քրիստոնեայ ժո–ղովուրդներու՝ Հայոց, Աղուանից եւ Վրաց զարթօնքը եւ մայրենի լեզուներով նոր գրա–կանութեան արագ ծաղկումը անշուշտ Հիւ–սիսի համբաւաբերները նօթձեցին Ալաննե–րու յԱրեւմուտս։ Եւ եթէ այս շարժման ոգին անձամբ իրենց կու գայ եւ ժամանակ մը իբրեւ հիւր Արքունիքի, Եկեղեցւոյ եւ Իշխանաց կը պատուի եւ կը մեծարուի, կա–րելի չէ մտածել, թէ ալան–գոթ ազգայնա–կանք այս առիթը թողուին որ անցնէր, ա–ռանց պաշտօնապէս կամ անպաշտօն հարցը–նելու, թէ ի՞նչպէս կարող է նաեւ ալան–գոթ

*ժողովուրդը գտնել իր ձերբազատութիւնը յունական մշակոյթի միահեծան իշխանութենէն եւ սեպհական լեզուով ազգային գրականութիւն ծաղկեցնել: Ժամանակը շատ նպաստաւոր էր առ այս: Առանց տարակուսի այսպիսի ձեռնարկ մը ամենայն ոյժով պիտի քաջալերէին Արդաբուր եւ Ասպար:*

*Ահա այս միջավայրէն դուրս ելաւ Բենիամին երէց, ազգով ալան, լեզուով գոթ, եւ մօտեցաւ Մաշտոցի, հարցնելու թէ ի՛նչ ճանապարհով հնարաւոր է իրականացնել այս ազգային փափագը:*

*Վերագոյն տեսանք, որ «աղուան» Կորիւնի գրչին տակ համանիշ է «աղան» կամ «ալան» ժողովուրդի անուան, որ համաձուլուած Գոթերու հետ, կը նկատուէր նաեւ Գոթ: Այսպէս նաեւ «աղուաններէն» պէտք է իմանալ «աղաններէն» կամ «ալաններէն», որ Ե. դարու ընթացքին Կ. Պոլսոյ մէջ նոյնիմաստ էր «գոթերէնի» հետ, այնու որ Ալաններն ալ ընդունած էին զայն իբրեւ հասարակաց լեզու: Մինչ Գոթ կամ Գութ ժողովուրդը անուամբ միայն ծանօթ էին Հայոց, Ալանները իբրեւ Կովկասեան լեռնականներ դրացիութեան մէջ էին Հայոց հետ եւ երթեւեկութեամբ անոնց հետ հաղորդակցութեան մէջ: Ուստի զարմանալի չէ որ Կորիւն նախասիրած է գոթերէն լեզուն «աղուաններէն» կամ ալաններէն կոչել, այնու որ Բենիամին, որ ինքզինքը ալան ներկայացուցած է, իր բարբառն ալ ալաններէն համարուած*

է : Այս Ալաններէն ոմանք հաւանօրէն նախնաբար ծագումով Կովկասի Ալաններէն էին, յայսկոյս Կասպից դրանց հաստատուած, ինչպէս Արդաբուր եւ Ասպար անունները ցոյց կու տան, որոնք պահլաւական կը հնչուին : Հանդիպեցանք վերագոյն նաեւ Վահան աղուան (ալան) Թագաւորազնի, նոյնպէս պարթեւական յորջորջմամբ :

Բենիամին երէց հաւանօրէն այն Ալանութերու յատկացուած եկեղեցւոյ պաշտօնեաններէն էր, որոնք ձեռնադրուած էին Յովհ. Ոսկեբերանէն :

17·

«Մաշտոցի այբուբենը, կ՚ըսէ J. Marquart[47], հնարողին քով այնպիսի զարմանալի ծանօթութիւն կ՚ենթադրէ հայ լեզուի ինքնայատուկ ձայնական դրութեան, որ լի է բաղաձայներով, այնպէս որ չենք կրնար զլանալ անոր մեր մեծ հիացումը, նոյն իսկ եթէ ան գոհածած ըլլար օտար այբուբեն մը հայերէնի յարմարցնել եւ քանի մը նշանագիրներու միայն յաւելումով նոյնը ճոխացնել»: Այս հիացումը կրնանք ամենայն իրաւամբ երեքպատկել, նկատի առնելով, որ ան նաեւ իրեն անծանօթ վրացերէն եւ գոթերէն լեզուներու համար սեպհական նշանագիրներ ստեղծած է, ընդ ամէնը (36 + 36 + 27) 99 նշանաձեւերով :

---

[47] Պատմութիւն հայերէն նշանագիրներու, Վիեննա 1918, էջ 9:

*Մէկ հանճարեղ Միտք գործած է այս երեք այբուբեններու վրայ[48]: Մէկ արուեստանոցէ ելած են երեքն ալ: Ամէնուն հիմը յունարէն այփաբետն է: Հնարողը իր փորձառութիւնը ձեռք բերած է հայերէն այբուբենը հնարելու ժամանակ: Հայերէնի բազմազան ձայնական եւ բաղաձայնական հնչիւնները ճշդելու եւ դասաւորելու համար, ինչպէս նաեւ ձայնաւորներն եւ կիսաձայները իրարու հետ եւ բաղաձայներու յարաբերութեամբ զօդելու եւ անջատելու համար խորհրդակցած պէտք է ըլլայ Մաշտոց Միջագետքի յոյն եւ ասորի լեզուագէտ եւ քերական գիտուններու հետ: Ի սկզբանէ անոր հոգ պատճառած էր իրեն «սխզորայից», այն է կապի եւ զօդի հարցը: Այս եւ նման զուտ լեզուագիտական խնդիրներու լուծումը նպաստեց իրեն առաւել չափով ձեռք բերելու լեզուագիտական եւ քերականական հմտութիւն: Երբ լուծուեցան այս խոչընդոտները եւ ձեռնարկեց հնչիւններուն համար նշանագիրներ պատրաստելու, հանդէս բերաւ ան մասնագէտ արուեստագէտի փորձառութիւն, զոր Կորիւն կ՚անուանէ «կորովի սովորութիւն»:*

*Այս փորձառութեամբ կրցաւ Մաշտոց հայերէն այբուբենէն ետքը յօրինել վրացե—*

[48] *Հմմտ. Հ. Ն. Ակինեան, Հայ այբուբենի գիւտը, Հանդ. Ամս.*, 52 (1938), 289—318 *եւ Վրական նշանագիրներու գիւտը, անդ, էջ* 319—333: *Տեսատ, էջ* 227—293: *Հմմտ. նոյն՝ Հայ ստեղծագործող Միտքը, Հայ Մշակոյթի օր, Փարիզ*, 1932, *էջ* 41—48:

րէնի համար յատուկ նշանագիրներ. ի վեր– ջոյ, երբ խնդրուեցաւ իրմէ, պատշաճեցոյց նաեւ գոթերէնի համար սեպհական այբու– բեն:

Մաշտոց յունարէնի եւ ասորերէնի ծա– նօթ՝ կատարելագոյն դասու յունական այ– բուբենը (27 նշանաձեւով), զոր նմանու– թեան կաղապար ընտրեց երեք բարբարոս– կան լեզուներու համար ալ, հետեւեալ սկըզ– բունքներու վրայ յեցած.

ա. Այն յունական տառերը, որոնք հըն– չումով նոյն են յիշեալ լեզուներէն մէկուն կամ միւսին, փոխ առնել անայլայլ:

բ. Տառեր, որոնց հնչիւնը չի համապա– տասխաներ ճշգիւ, ենթարկել թեթեւ փոփո– խութեան:

գ. Այն տառերը, որոնք ինքնայատուկ են այն լեզուի միայն, ձեւափոխելով յարմարց– նել որ եւ է հնչիւնի:

դ. Ի հարկին յունական որ եւ է նշանա– գիրէ նոր նշանաձեւեր յերիւրել սեպհական հնչիւններու համար:

ե. Պահպանել ըստ կարելւոյն յունական այբուբենի կարգը եւ նշանագիրներու թուա– կան արժէքը:

Յունական այբուբենի թուական արժէքն է՝ միաւոր, տասնաւոր եւ հարիւրաւոր (9 × 4 = 36). Նոյնպէս գոթականին. իսկ Հայոցն եւ Վրացը միութեամբ մ'աւելի:

## 18.

Մաշտոց գոթերէն լեզուի հնչիւնները ուսումնասիրեց ալան Բենիամինի արտասանութեան համաձայն եւ պատշաճեցուց անոնց նշանագիրներ «ըստ կորովի սովորութեան իւրում»: 14 նշանագիր եւ երկու թուական նշանաձեւ անփոփոխ առաւ յունական այբուբենէն, իսկ 11 նշանագիր նոր ձեւեց, մաս մը թեթեւօրէն (b, o), ուրիշներ ծանրօրէն (t', r, s, f) ձեւափոխելով եւ մաս մ'ալ ձեւափոխութեամբ պատշաճեցնելով նոր հնչիւններու (q, h, j, u, hw): Յունականին կարգը թուական արժէքի տեսակէտով ճշգիւ պահպանուած է:

16 նշանաձեւերու անայլայլ փոխառութիւնը յունական այբուբենէն դիւրաւ պիտի մեկնուի եթէ նկատի առնենք որ գրերը յօրինուած են յունական միջավայրի մէջ, այն տեղ հաստատուած Գոթերու համար:

Գոթերէն Այբուբենի պատկերն է հետեւեալը[49] (տե՛ս էջ 382):

Այս այբուբենէն ես նկատողութեան պիտի առնեմ այն նշանագիրներն միայն, որոնք ո եւ է կերպով կը խոտորին յունական օրինակէն եւ կամ բոլորովին ինքնակաց են, այս ինքն այդ տառերը կը պակսին յունակա-

[49] Դժբախտաբար մեր տպարանը չունի գոթական տառերը. հնարաւոր չեղաւ նաեւ հոգալ այլուստ: Կը բաւականանամ տալ համապատկերս: Հոս ներկայացուած գոթական այբուբենը կազմուած է ճշգրիտ նմանութեամբ այն նշանագիրներու, որով գրուած է Codex argenteus:

նին մէջ: Ասոնք են. b, q, h, th, j, u, r, s, f, hw, o.

Գերմանագէտները կը միտին h, j, r, s եւ f գրերը լատինական այբուբենէ փոխառութիւն համարել. ուրիշներ կը պնդեն, թէ u, o, th եւ j ռուն կոչուած «հին գերմանական» նշանագիրներէ փոխ առնուած են: Կան եւ ոմանք, որոնք բացարձակապէս կը ժխտեն անոնց ռունէ կամ լատիններէն ծագումը: Այս խնդրոյ շուրջը պիտի չուզեմ պայքարիլ եւ ոչ ալ խմբաւորութեանց բաժնել թեր եւ դէմ տեսակէտները պաշտպանողները[50]: Այս տեղ յառաջ պիտի բերեմ W. Braune-ի հակիրճ տողերը (իր «Գոթերէն քերականութիւնը» շատ տարածուած գործին ԺԱ. տպագրութեան սկիզբը), զորոնք կը համարիմ արտայայտութիւն տիրող գերման ըմբռնումի. «Գոթերէն լեզուի յիշատակարանները աւանդուած են մեզի այբուբենով մը, որուն հնարողն յոյն եկեղեցական պատմիչները Վուլֆիլա կ՚անուանեն: Բայց գոթական այբուբենը բոլորովին նոր ստեղծագործութիւն չէ, այլ յունական այբուբենի եւ հայրենի ռուն այբուբենի հիման վրայ յօրինուած է: Նշանագիրներէն շատերը յունա-

[50] J. Zacher, Das gotische Alphabet Vulfilas und das Runenalphabet, Leipzig 1855. L. Wimmer, Die Runenschrift, Berlin 1887, S. 259—274. W. Luft, Studien zu den ältesten germanischen Alphabeten, Gütersloh 1898, E. H. Mensel, Zum gotischen Alphabet: Modern Philology 1 (1903/4) 457—468. O. von Friesen, Gotische Schrift: Hoops, Reallexikon, 2, S. 306—308 եւ այլն:

| | | | |
|---|---|---|---|
| *a* | 𐌰 | *A* | 1 Ա |
| *b* | 𐌱 | *B* | 2 Բ |
| *g* | 𐌲 | *Γ* | 3 Գ |
| *d* | 𐌳 | *Δ* | 4 Դ |
| *e* | 𐌴 | *E* | 5 Ե |
| *q* | 𐌵 | *Vau* | 6 Կ |
| *z* | 𐌶 | *Z* | 7 Զ |
| *h* | 𐌷 | *H* | 8 Ը |
| *þ* | 𐌸 | *Θ* | 9 Թ |
| *i* | 𐌹 𐌹̈ | *I* | 10 Ի |
| *k* | 𐌺 | *K* | 20 Կ. Ք. |
| *l* | 𐌻 | *Λ* | 30 Լ |
| *m* | 𐌼 | *M* | 40 Մ |
| *n* | 𐌽 | *N* | 50 Ն |

| | | | | |
|---|---|---|---|---|
| *j* | 𐌾 | Ξ | 60 | ϑ |
| *u* | 𐌿 | O | 70 | Пh |
| *p* | 𐍀 | Π | 80 | ዋ |
| *q* | 𐍁 | Koppa | 90 | ղ |
| *r* | 𐍂 | P | 100 | ռ (Ր) |
| *s* | 𐍃 | C | 200 | Ս |
| *t* | 𐍄 | T | 300 | Տ |
| *v* | 𐍅 | Y | 400 | Ի (Կ) |
| *f* | 𐍆 | Φ | 500 | Փ |
| *χ* | 𐍇 | X | 600 | Ք |
| *ƕ* | 𐍈 | Ψ | 700 | ՀԿ |
| *o* | 𐍉 | Ω | 800 | ՈԿ |
| ↑ | ↑ | ↑ Sampi | 900 | Ջ |

կան այլփաբետէն առնուած են, ասոր հետ նաեւ գրերու յաջորդութիւնն եւ թուական արժէքը: Ռուն-այլփաբետէն ուղղակի առնուած են չորս նշանագիրներ (u, o, th, j), ուրիշ նշանագիրներ յեցած են ռուն-այլփաբետի վրայ: Պահուած են նաեւ յէականս ռուներու հին անունները իբրեւ գոթական գրերու անուանակոչութիւն: Լատինական այլփաբետի ազդեցութիւնը կը տեսնուի, թերեւս բացի q նշանագրէն, միայն ըստ երեւութին՝ հոն, ուր արդէն ռուն-նշանագիրները լատիներէն տառերուն մերձաւոր են[51]»:

19.

Յիշեալ 11 նորակերտ նշանագիրները քննութեան կ'առնեմ մի առ մի.

b, Բ:

1. Առանց տարակուսի յն.՝ Bի այս կերպ փոփոխութիւնը պատահական չէ: Մաշտոցի ծանօթ ըլլալու էր Bի տատանումը ընդ մէջ b եւ v հնչումի, այս պատճառաւ ալ պէտք տեսած է bի նկարագիրը սակաւ ինչ ձեւափոխել վերի մասը բաց ձգելով: Հայերէնի մէջ տուած էր անոր Բ ձեւը:

Ա գ, Կ:

2. Մինչեւ այժմ Գերմանագէտներու համար առեղծուած մ'եղած է ոչ միայն նշանա-

[51] Wilhelm Braune, Gotische Grammatik, Halle, 1939, S. 1.

գրիս նկարագիրը, այլ եւ անոր հնչումը: Անկնութիւնը դժուարին պիտի չըլլար, եթէ որ գոթ այբուբէնի հայ հնարողը նկատի առնուէր: Նաեւ հոս կը տեսնենք Մեծ Վարդապետին ականջի սրութիւնը: Հայ այբուբենի մէջ զանազանած էր Մաշտոց Գ, Կ եւ Ք. այսպէս նաեւ գոթերէնի մէջ զգացած է g, q եւ k (եւ x)· g եւ k նոյնութեամբ փոխ առած է յունականէն· իսկ qի համար դոյգն ձեւափոխութեամբ առած է հայկական Կ (որ ծագած է յն· Kէն), երկու սրունքները հաւասար գծի վրայ բերելով իբրեւ 𐌵: Նոյն հնչումը գտած է նաեւ Վրացերէնի մէջ, որուն համար առած է, նոյնպէս հայերէնի նմանութեամբ Կ· մինչ գոթերէնի թուական արժէքն է 6, հայուն եւ վրացւոյն՝ 60:

h, h, Հ:

3· Վ· Լուֆտ կը գրէ· «Այն միջոցին յունարէնը h հնչիւնը չունէր այլ եւս եւ գլխատառ ձեռագիրներն ալ սովորաբար չէին գործածեր ատոր համար որ եւ է նշան: Նաեւ լատիներէնը բառասկիզբին չունէր h հնչիւնը: Բայց ունէին անոնք տակաւին հագի նշան մը, որ կանոնաւորապէս կը գործածուէր ձեռագիրներու եւ գիտական քերականական գրուածքներու մէջ իբրեւ հագային ձայն: Ուստի Վուլֆիլա հոս գտաւ իր hի համար նշանաձեւ մը: Բայց թէ այն բառասկզբին ամբողջովին համաձա՞յն էր լատինականին, կարելի չէ ի յառաջագունէ հաս-

տատել եւ նաեւ ապացուցանել» (էջ 92) : Գոթական 𐌷ի եւ յունական Hի թուական արժէքն է 8. այս կէտը թոյլ կու տայ գոթականին կախումը յունականէ՛ն ենթադրել : Մաշտոց յունական Hէն կազմեց Հայերէն է ē (7) եւ Ը ə (8), եւ դարձեալ վրական Ⴡ ē (8) գրերը. իսկ գոթականին համար անկէ ձեւեց 𐌷, այնու որ երկրորդ սինակի վերի կէսը ջնջեց եւ այսպէս ստացաւ 𐌷 : Մինչ յն. H յետոյ բոլորգիրի մէջ վերածուեցաւ ղի, նոյնպէս հին լատ. H գլխագիրն եղաւ 𐌷. անդին գոթական 𐌷 ի սկզբանէ անտի յօրինուած էր իբրեւ գլխագիր : Ուստի աւելորդ է հոս լատինական 𐌷ի նմանութիւնը տեսնել :

𐌸 ' th, Թ

4. Գոթական thի արտաքին չեղումը յունական Θ էն մոլորեցուցիչ է : Մաշտոց յունականին ատամնաշչական հնչիւնէն տարբեր, հայերէն Թին նմանահնչիւն գտած է գոթական th, զոր ձեւած է յն. Θ ի ձեւափոխութեամբ : Մինչ հայերէնի համար անկէ ստեղծած է Թ եւ վրացերէնի համար Ⴇ, գոթականին համար ձեւակերպած է երրորդ տարբերակ մը, այնու որ հակթաձեւ բոլորակին վերի մասը բացած է եւ հորիզոնական գիծը այս բացուածքէն ուղղաձիգ իջեցուցած է : Երեք լեզուներուս մէջ ալ հնչիւնը

---

[1] Նշանաձեւս նոյն չէ գոթականին հետ, այլ միայն նման. եռաժանիին երկու ծայրերը պէտք է միտին բոլորաձեւ դէպի միջին ժանիքը :

նոյն է. խակ թուական արժէքը չորսին մէջ ալ 9 է: Այս տեղ կարող ենք զարմանալ արուեստագէտ Վարպետին հանճարին վրայ, որ գիտցած է այնպէս ճարտարութեամբ մէկ գրէն երեք նորաձեւ գրեր բղխեցնել: Այս թէն յառաջագայած է նաեւ Հայերէն Ծ գիրը:

## 𝒢[2] j, Յ

5. Նշանագիրս ըստ կարգին գետեղուած է յն. Ξ (60) գրին փոխարէն, որուն հետ սակայն չունի որ եւ է ձայնական աղերս: Գերմանագէտները կը համարին, թէ լատ. Gի փոխառութիւնն է, նկատելով որ նոյնը գերման բարբառներու մէջ նաեւ j հնչիւնը ունի (gut, jut): Թուական արժէքի հաւասարութիւնը յունականին հետ կրնայ ենթադրել տալ, որ նշանագիրս Ξի ձեւափոխութիւնն ըլլայ, այսինքն երկու հորիզոնական գծիկները բոլորուած եւ իրարու ագուցուած ըլլան: Բայց գայս հաւանական չեմ գտներ: Նկատի առնելով, որ անոր հնչիւնն եւ կիրառութիւնը նոյն է Հայերէն Յ գրին հետ, չեմ տարակուսիր, թէ Մաշտոց իր այս սիգորայն, որ է գօտ եւ կապ, որուն գիտին համար այնքան հոգ տարած էր, գործածած ըլլայ գոթականին համար ալ: Նշանագիրս Յ իր ծագումն ունի յն. (ı) էն եւ նպատակ ունի ձայնաւորէ յառաջ եւ ետքը ձայնը եր—

[2] Գոթերէնի մէջ կիսաբոլորը գերմ. Gի նման, որուն ստորին աւարտը դէպի ձախ առ ի չեղ կախուած է նման Հայ. Կի վերջաւորութեան (տե՛ս պատկեր 1):

*կարել կամ անոր կիսաձայն* յ*ով տեւողութիւն տալ (հմմտ.* այս = aïs *եւ այլն)։ Նշանաձեւս վրական այբուբենի մէջ եղած է* Տ, *գոթերէն* յ *կարելի է վրականիս շրջուած ձեւը նկատել. ունի նմանութիւն նաեւ հայ.* Ց *գրին հետ գլխիվայր դէպի աջ շրջուած։ Ամբողջի վրայ կը տեսնուի Մաշտոցի ձեւակերպող ձեռքը։ Հայ.* Յ*ի եւ լատ.* յ*ի նմանութիւնը պատահական է։ Գործածութեան համար համեմատէ յն.* Ἀχαΐα, *հյ. Աքայա, գոթ.* Akaja, Ἰούδας, *Յուդաս,* Judas *եւն,* stôja. *հմմտ. խոյակ. Գոթերէնի մէջ միայն ձայնաւորներէ յառաջ գործածուած է (հմմտ.* Braune, *էջ* 28—29)։

## Ո u, *Ու*։

6. *Գերմանագէտները անըմբռնելի մնացած է, թէ ինչպէս Վուլֆիլա, որ քաջ լատիներէն գիտէր, թողլով լատ.* U,· *նոյն հնչիւնին համար լատ.* Ռ*ի նման նշանաձեւս առած է։ Եւ որովհետեւ այս նշանաձեւս նաեւ ռուն գրերու մէջ կը տեսնուի, ուստի համարած են թէ այն հին գերմանական* Ո *ն եղած է, հետեւաբար ռունական այբուբենէն փոխառութիւն է։ Բայց մենք հոս ալ յայտնաբարբառ վկայ մ՚ունինք, թէ գոթական այփաբետի հնարողին անծանօթ մնացած է լատիներէնը, այլապէս* զ *հնչման համար լատ.* Ս *նշանաձեւն ընտրած պիտի ըլլար, եւ ոչ ալ* u *հնչման համար լատ. փոքր* Ռ*ի նմանա-*

ձեւը: Մաշտոց է հնարողը, որ թէեւ հայերէն եւ վրացերէն u հնչման համար յն. ου երկբարբառն առաւ իբրեւ «ու», բայց հնչիւնով աղքատ գոթերէն այփաբետին հարկաւոր համարեցաւ առանձին նշանագիր մը տալ, որ ոչ այլ ինչ է, բայց եթէ հայերէն «ու»ի առաջին տառը՝ Ո, ծագած յն. Ս էն:

## R r, Ռ:

7. Նշանագիրս շատ նման է լատ. Rի, այս պատճառաւ ալ գերմանագէտները լատիներէնէ փոխառութիւն համարեցան: Մաշտոց յն. Ρ տկար գտած է անշուշտ գոթ. r հնչման համար, եւ դիմած է անոր ձեւափոխումի: Հնչումի այս զանազանութիւնը նկատած էր Մաշտոց վաղ իսկ, այն ժամանակ արդէն, երբ կը պատրաստէր հայկական այբուբենը. նա գտած էր հայերէնի մէջ տկար եւ ուժեղ r հնչիւններ. առաջինին համար փոխ առած է յն. Ρ իբր Ր, իսկ երկրորդին համար հնարած է նոր նշանագիր մը՝ Ռ, որ լոկ հայ. Րի կրկնումն է իբր «Րր», որուն թուական արժէքն է 1000 (յն. Ρ եւ գոթ. r 100): Այս «ռ» հնչիւնը ունի նաեւ գոթ. rը, ինչպէս եւ լատ. Rը: Ռ իր կարգին նմանութիւն կ'երեւցնէ լատ. Rի հետ, այսպէս նաեւ գոթ. r, զոր զուգադիպութիւն կը համարիմ. թերեւս նաեւ լատ. R ծագումով յն. Ρ ի կրկնագրութիւնն ըլլայ:

## 𝔖 s, Ս :

8· Նաեւ այս նշանագրի ծագումը լատիներէնէ կը համարին Գերմանագէտները. չեղումը յունարէնէ արտասանութեան տարբերութեան մէջ փնտռելու է: Յունական համապատասխան տառն է C: Լատիներէնէ փոխառութիւնը՝ հակառակ արտաքին մեծ նմանութեան, կը թուի ինձ թէ խնդրական համարելու է նաեւ հոս: Մաշտոցի ականջը ճշդիւ զանազանած է յունարէն Cի տկար եւ գոթերէն Sի ուժեղ շչիւնը, ինչպէս կանխապէս նկատած էր նոյնը հայ հնչման համար: Այն սկզբունքով, որով կազմած էր հայ. Ռ նշանագիրը, ընթացած է նաեւ հայ. Ս եւ գոթ. S նշանագիրներու յօրինման համար, որոնք պարզապէս կրկնագրութիւններ են յն. C ի, հայերէնի մէջ հանդիպակադրութեամբ (c ↄ) եւ գոթականին մէջ տակէ տակ (c/ↄ) զետեղմամբ: Թերեւս նաեւ լատինական S նոյն ծագումն ունի: Յն. եւ գոթ. Sի թուական արժէքն է 200, հայ. Սի՝ 2000:

## 𝔉 f, Ֆ (փ) :

9· Նշանագիրս Գերմանագէտները լատ. F (f) տառի «նմանութեամբ» կազմուած կը համարին: Ըստ կարգին կը համապատասխանէ յն. Φ նշանագրին՝ 500 թուական արժէքով: Այս հնչիւնը կը պակսէր հայերէնի մէջ, անոր տեղ ունէր «փ» հնչիւնը, որուն

*համար փոխ առաւ Մաշտոց յունականը Φ ձեւով։ Գոթական ինչպէս* th, *նոյնպէս* f *աւելի ուժեղ էր քան յունական* φ *այս պատճառաւ պէտք է ձեւափոխուէր, որ կատարուեցաւ հայերէն* Փ*ի ձախակողմեան ըլթակի տեղափոխութեամբ աջ կողմը, ուր հաստատուեցաւ աջակողմեան ըլթակի վերեւ, նման Հայ. Բ գրի, միայն ձողիկին վերի մասը աւելի երկարած։ Այսպիսի նորաձեւ նշանագիրներ ձուլել յատուկ է Մաշտոցի արուեստանոցին. նոյնպէս ձեւած էր յն. Մ էն Հայ.* Մ *ձախակողմեան թեւը ձողիկին տարբեր ագուցաներով։ Հոս տոյգ է, կայ լատին* f*ի հետ փոքր նմանութիւն, բայց հաւանօրէն զուգադիպութեամբ։*

Θ hw, *Հվ։*

10. *Այս նորանշան նշանագիրը այփաբետի կարգին մէջ կը համապատասխանէ յն. Ճ ի, թուական արժէքով այ* 700: *Յունական նշանագրին հնչիւնը երկբաղաձայն է* (ps), *նոյնպէս գոթականը կրկնաձայն։ Այս կրկին նմանութիւնները կը յորդորեն* hw*ի մէջ Ճ ի ձեւափոխութիւնը տեսնել, ուր պատնաձեւ մասը ենթարկուած է բոլորակի, իսկ ուղղաձիգ գիծը վերածուած է զաղափարական կէտի։ Այսպիսի կրկնաձայներ կազմած է Մաշտոց նաեւ վրացերէն այբուբենի մէջ, մէկն է՝* Կ *կը. եւ միւսն յն. Ճ էն* Ւ *ին* (7000) *իբրեւ երկժանի։*

Զ օ, Ո։

11․ Գերմանագէտները այս նշանաձեւը ունական այբուբենէն փոխառութիւն կը համարին։ Ըստ կարգին եւ ըստ թուական արժէքին կը համապատասխանէ յն․ Զ ի․ ծագումն ալ անկէ է թեթեւ ձեւափոխութեամբ․ նաեւ ձայնական արժէքով հաւասարակշիռ անոր։

Թէպէտ մենք պաշտպան կանգնեցանք այն տեսութեան, թէ Գոթական այփաբետի մէջ չկայ լատինական տարր, բայց եւ այնպէս չենք ուզեր ժխտած ըլլալ բացարձակապէս, թէ Մաշտոց գտնուած չըլլայ լատին այփաբետի ազդեցութեան տակ։ Գոթերը Արեւմուտքէն գաղթած էին Արեւելք․ ունէին անշուշտ իրենց մէջ լատիներէնագէտ անձինք ալ, եւ թերեւս անոնցմէ մին կամ միւսը ընկերակցած խսկ էր Բենիամինի, երբ սա կը ներկայացնէր Մաշտոցի գոթական այփաբետի հարցը։ Ի՞նչ անպատեհութիւն պիտի ըլլար, եթէ Մաշտոց ինչ ինչ նշանագիրներ, որոնց պէտք ունէր, փոխանակ ի նորոյ ձեւելու, փոխ առնէր լատիներէնէ, ի հարկին սակաւ ինչ ձեւափոխութեամբ, այսպէս r, S եւ f։ Այս հարցը կը թողում մասնագէտներու դատաստանին։

20․

Գոթերէնը մեռեալ լեզու է։ Ծանօթ է այն մեզի միայն Աստուածաշունչի գոթերէն թարգմանութեան հատակտորներէն։ Խօ–

սուած է իբրեւ բարբառ գերմանական բազմազան ցեղերու․ թէ յատկապէս ո՞ր ցեղին կը պատկանէր այդ գրաւոր լեզուն, կարելի չէ մատնանշել։ Որովհետեւ գրի առնուեցաւ այդ լեզուն Արեւելեան Հռոմէական պետութեան մէջ, իբր 420ին, իսկ այդ աշխարհամասին մէջ հաստատուած էին գոթական այլեւայլ ցեղերու բեկորներ, գաղթած արեւմուտքէն, հարկ է ենթադրել, թէ խառնուրդ մ՚ըլլայ այդ լեզուն բազմազան համացեղ բարբառներու․ այս զանգումը կատարուած է ընթացս իբր 50 եւ աւելի տարիներու։

Այս հանգամանքի մէջ որոշ դժուարութիւններ կան ճշդելու գոթական այբուբենի մէն մի հնչիւն։ Առ այս գերմանագէտները առաջնորդ ունեցած են․ 1․ Յունարէն այն նշանագիրները, որոնք անայլայլ փոխ առնուած են գոթական այբուբենի մէջ իբրեւ նոյնահնչիւն։ 2․ Յունարէնէ տառադարձուած սուրբ-գրենական բառերն ու անունները։ 3․ Լատիներէնէ փոխառութիւնները։ 4․ Գոթական անունները, որոնք լատին եւ յոյն մատենագիրներու քով յիշուած են։ Եւ ի վերջոյ գերմանախօս բարբառները ուր վերապրած են բազմաթիւ բառեր, հին գոթական ծագումէ եւ այլն։

Այժմ, երբ կ՚ապացուցուի, թէ այդ գոթական այբուբենի հեղինակը Մաշտոց է, ինքնին կը հետեւի, թէ հնչիւններուն համապատասխան նշանագիրներ տրուած են հայ Մաշտոցէն, այնպէս ինչպէս հնչած են

*անոնք իր լսողութեան ալան Բենիամին երէցի արտասանութեամբ: Մաշտոց ուսումնասիրած էր յոյն, ասորի, հայ եւ վիր, շատ հաւանօրէն նաեւ պարթեւ–պարսիկ լեզուներու ձայնադիտութիւնը: Այն նուրբ զանազանութիւնը ձայնաւոր եւ բաղաձայն հնչիւններու, զոր երեւան բերած էր հայ եւ վիր այբուբեններու մէջ, որսած էր իր ականջը, նոյնհետայն որոշելու գոթերէն լեզուի սեռհական հնչիւնները: Զանոնք այս կապի եւ կմըլանքի ենթարկելու համար, կրնանք ի յառաջագունէ մտածել, թէ հետեւած ըլլայ այն սկզբունքներու, զորոնք կիրարկած էր հայերէն եւ վրացերէն այբուբեններու մէջ «ըստ կորովի սովորութեան խրում»: Ինչպէս Կորիւն կը գրէ, ի սկզբանէ անոր Մաշտոցի մտահոգութիւն պատճառած էր «սիղոբայից», այսինքն խիտ եւ կակուղ ձայնաւորներու, կիսաձայներու եւ բաղաձայներու իրարու հանդէպ «զօդի եւ կապի» խնդիրը, ուրիշ խօսքով «վանկերու» կազմութիւնը: Յաջողեցաւ այս հարցը լուծել գիւտով չորս կիսաձայներու, որոնք են հայերէնի մէջ* ը, յ, ւ *եւ* վ:

*Այս կիսաձայներէն երկուքը* j *եւ* w *կը գտնենք նաեւ գոթական այբուբենի մէջ: Ես պիտի չուզեմ հոս լեզուաբանական եւ քերականական հարցերու մէջ թեւածում ըլլալ, պիտի բաւականանամ գրգիռ միայն տալ գերմանագէտներու, իրենց հետազօտութիւններու ժամանակ նաեւ հայ այբուբենն ի խոր–*

հուրդ հրաւիրելու, մանաւանդ այն կնճիռները լուծման ի նպաստ, ուր այլուստ անօգնական կը մնան:

Մաշտոց, երբ հայերէն եւ գոթերէն հնչիւնները համեմատութեան կը դնէր յունականին հետ եւ կը կշռէր անոնց արժէքը, հակառակ նշանագրերու անհաւասարութեան՝ բերած է զանոնք զուգակշռութեան, այն տեսակէտով որ այդ հնչիւնները լծորդ էին, լեզուական զարգացման նոյն ճանապարհին: Այս հանգամանքը կը տեսնուի յաճախ ոչ միայն այբուբեններու դասաւորութեան մէջ, այլ եւ օտար բառերու եւ անուններու տառադարձութեան մէջ, ուր ոչ թէ հնչիւններու հաւասարութիւնը չեշտուած է, այլ անոնց լծորդութիւնը վեր հանուած: Այսպէս են. ϑ = թ = th, π = պ = p, φ = փ = f, κ = կ = q, χ = ք = x եւ k եւ այլն:

Նոյնը պէտք է ըսել նաեւ ձայնաւորներու եւ երկբարբառներու մասին: Մաշտոցի ւ եւ վ եւ գոթ. w թէեւ յունական [illegible] էն ունին իրենց ծագումը, բայց ոչ իրենց տարողութիւնը, որ աւելի կշիռ ունի քան յունականը: Հայ. յ եւ գոթ. j իբրեւ կիսաձայն i ձայնաւորներէ յառաջ եւ ետքը նպատակ ունին ձայնաւորները երկարացնելու եւ երկու ձայնաւորներու ինչպէս եւ ձայնաւորի եւ բաղաձայնի մէջ զոդ ծառայելու (այա, այի, այո եւն). եւ արդէն իր ծագումը յունական [illegible] էն նոյնը կը հաստատէ: Գեղեցիկ օրինակ կ'ընծայէ առ այս յն. Ἀχαΐα անուան տառա-

դարձութիւնը՝ հայ. Աքայա եւ գոթ. Akaja, նոյնպէս Καϊάφας, Կայափա, Kajafa, ƀajops, ‘երկոքին,, եւ «Հայոց»․ tojis, ‘գործող,, եւ «պխտոյից», niujis «նոր», եւ «դո̊յս», «կոյս»: Կ՚արժէ առանձին քննութեան ենթարկել հայ. եւ գոթ. ձայնաւորները, կիսաձայնաւորները եւ երկբարբառները համեմատական դրութիւնը, որուն անդրադառնամ թերեւս ուրիշ առթիւ:

Կ՚անցնիմ հարեւանցիկ համեմատութեան դնել հայ. եւ յն. եւ գոթ. բաղաձայներէն ինչ ինչ:

B, Բ, b. ինչպէս նկատեցինք վերագոյն՝ յունարէնը ի սկզբանէ անտի կը տատանէր b եւ v հնչման միջեւ. այսպէս Iberia, Վիր–ք, Jobianos, Jovianus, յատկապէս երկու ձայնաւորներու միջեւ: Հայ. եւ գոթ. բ ունին իրենց հարազատ հնչիւնը՝ բեր–եմ, bair-an, բուրգ, baurg:

Γ, Գ, g՝ գուր, groba, բուրգ, baurg. Գաբրիէլ, Gabriel:

Δ, Դ, d՝ դուռն, daur. դուստր, dauhtar. Դեկապոլիս, Daikapaulis եւն:

Կ, q. Այս նշանագիրը, գերմանագէտք համեմատութեան մէջ կը դնեն լատ. qu հնչման հետ. վասն զի Հռոմ. ԺԶ. 23 Կուարտոս, յն. Κουᾶρτος, լտ. Quartus, գոթերէնի մէջ տառադարձուած է qartus: Բայց զի «կ» հնչիւնը կը տեսնուի qairu բառին gairu սխալագրութենէն (Braune, 64): Հա–

մեմատութեան կ'առնեմ գոթ․ qino, Հ․ կին, յն․ γυνή.

Z, Ջ, z․ Ζεβεδαῖος, Զեբեդէոս, Zaibaidaius․ ἄζυμος, azwmus, բաղարջ․ իսկ πρεσβυτέριον տառադարձուած է praizbwtairei, ուստի u գալով բէն առաջ վերածուած է զի, Հմմտ․ նաեւ Հայ․ ազբ, սկիզբ (սկսիմ), Կազրք եւ Կասպք են։

Հ, h․ երկուքն ալ նոյն h հնչումով, թէ բառասկիզբին եւ թէ բառամիջին․ Մարկ․ է․ 26 «Եւ կինն էր hեթանոս (յն․ ἑλληνίς), գոթական թարգմանութիւնն ունի նման հայուն՝ haitʻno (տես նաեւ վարը)․ այլուր յն․ 'Αβραάμ, թէ՛ հայն եւ թէ՛ գոթն ունին Աբրահամ, այսպէս նաեւ Ἰωάννης Յովհաննէս, Johannes, Հմմտ․ ըստ հնչման՝ hard (գերմ․ hart) եւ Հայ․ Հարթ։

Θ Թ, th․ տառադարձութեան մէջ՝ Ναθάν Նաթան, Nathan․ 'Ελισάβετ, Aileisabaith, Եղիսաբեթ, Հմմտ․ նաեւ գ․ thulan «համբերել» եւ Հայ․ թոյլ, թողուլ, jaththe «եւ թէ», «ալ՝ եթէ»։

K, X, Կ, Ք․ K եւ ch․ Մաշտոց յն․ χ փոխ առած էր իր այբուբենի մէջ գոթ․ K հնչման համար, որ կը համապատասխանէր յունականին, մինչ այն հայկականին մէջ կը պատասխանէր Կի․ իսկ յն․ χ փոխ առնուած էր իբրեւ X հաւանօրէն Աստուածաշունչի մէջ եւ այլուր յունական χ ճշդիւ ներկայացնելու համար․ մինչ նոյնը հայ այբուբենին մէջ առ–

նուած էր իբրեւ f: Աստուածաշունչի թարգմանիչը, սակայն, հազուադէպ անգամ հետեւած է այս կանոնին. «Քրիստոս» անունը հաւատարմօրէն տուած է միշտ Xristus, բայց Χοραζιν, Kaurazein, Քորազին, յն. πάσχα, pascha եւ paska, հ. պասքա, եւ այլն: K = Կ = x Κεφας, Kefas, Կեփաս, Καϊσαρ, kaisar, Կայսր (սեռ. կայսեր):

Π, Պ. p. Յունական անուններու տառադարձութեան մէջ ճշդիւ կը համապատասխանէ յունարէնի եւ հայերէնին. Պաւղոս, Pawlus: Գոթերէն բառերու մէջ կ՚երեւայ թէ երբեմն p հայ. փի հետ նոյն է, որ սպա անգղիերէնի մէջ անփոփոխ մնացած է, իսկ գերմաներէնի. մէջ fի վերածուած է. hilpan, helfen, օգնել, slepan, schlafen, քնանալ (հմմտ. մրափել), griepan, greifen (հմմտ. հայ. գրաւել, ունկրիւ):

Φ, φ, f. Եթէ Մաշտոց յն. φ հարկ համարեցաւ գոթերէնի համար ձեւափոխել, կը նշանակէ, թէ գոթ. f եւ յն. φ ունէին հնչման տարբերութիւն: Այս f կը տարբերէր նաեւ լատ. fէն, ինչպէս կը տեսնուի լատին մատենագիրներու գոթ. fի phով տառադարձութենէն (հմմտ. Dagalaiphus, Phoeba). ասկէ կը հետեւցնեն գերման լեզուագէտները, թէ գոթ. f կրկնաշրթնային (bilabial) եւ ոչ է շրթնատամնային (labiodental) ձայնադուրկ շչական եղած ըլլայ (Braune, 34), ուստի աւելի մօտ հայ. փի: Ուշադրաւ է,

որ Futharkի մէջ հայ. փ տառադարձուած է գոթ. fով: Օտար անուններու տառադարձութեան մէջ յն. φ թէ՛ հայ. եւ թէ՛ գոթ. թարգմանութիւնք կու տան փ = fով. հմմտ. Φίλλιππος, Փիլիպպոս, Filippus:

T, Տ, t. այսպէս Τύρος, Տիւրոս, Twra. հմմտ. նաեւ hairto, գերմ. Herz, եւ հայ. սիրտ, dauhtar, հ. դուստր, witan, հ. գիտեմ, hatjan, հ. ատեամ. Հնչիւնով նոյն են tagr, «արտասունք» եւ հայ. տաղր:

Υ, Ի, w. այսպէս ἐν Λύστροις, in Lwstrws, Լիւստրոս. Daweid, Դաւիթ, նաեւ φοινίκισσα, fwnikiska, փիւնիկ: Բառասկզբին Wadamers, լատ. Ubadamirus, Վանդալք, յն. Οὐάνδαλοι, ուստի ու հնչիւնով, նաեւ Հայոց քով Վահան, Վարդան, Վաղէս են: Բառերու մէջ գոթ. w կը համապատասխանէ հայ. վի, warmjan, ջերմ (գերմ), witan, գիտեմ են: Նշանագրիս բազմապիսի կիրառութեանց մասին աւելորդ չէ խօսիլ:

21.

Եթէ Մաշտոց Գոթերուն ալփաբետը տեսաւ, տեսաւ անշուշտ նաեւ այդ ալփաբետին պարունակած նշանագիրներու անունները: Հնութիւնը չէ պահած այդ անունները. բայց Վիեննայի Ազգային Մատենադարանի Թ. 795 ձեռագրին մէջ, որ կը բովանդակէ Ալկուինի Orthographia brevis, դատարկ թղթերու վրայ կը գտնենք (ուրի՞շ

ձեռքէ) գրուած գոթերէն այփաբետը շատ յոռի վիճակի մէջ, եւ անոր կից մէն մի նշանագրի անուանակոչութիւնը: Նոյն ձեռագրին մէջ կան նաեւ ռուն գրերու անունները: Առաջնոյն եւ երկրորդին նմանութիւնը կարելի չէ ժխտել: Փորձեր եղած են այս անունները գոթերէն բառերու օգնութեամբ մեկնել:

Գոթերէն գրերը հոս դասաւորուած են լատինական այփաբետի կարգով: Առանց վէճի մէջ մտնելու գերման գիտնոց հետ, կ՚ուզեմ պարզապէս ուշադրութիւն հրաւիրել այն հանգամանքի վրայ, որ ինչ ինչ անուններ շատ նման կը հնչեն հայ այբուբենի անուններուն: Ասոնք են.

| | | | |
|---|---|---|---|
| D | daaz | հ. | դա |
| E | eyz | „ | եչ (անգլ. ech) |
| K | kön | „ | (հիւսիս.) cen (անգլ.) հ. կէն |
| M | mam | „ | մէն |
| N | nuicz | „ | նոյ, նու |
| P | pertra | „ | պէ |
| th | thwth | „ | թո (յն. թիթա) |
| R | raeda | „ | ռա |
| T | tyz | „ | տիւն |
| Y | uuinne | „ | ւիւն (հիւն) |

22.

Աստուածաշունչի գոթերէն թարգմանութիւնը կատարուած է գոթական այբուբենի գիւտէն ետքը, ուստի ոչ յառաջ քան 420 տա-

րին: Ըստ այսմ Բենիամին երէց, որ խնդրողն եղաւ գոթական նշանագիրներուն, պէտք է նկատուի Աստուածաշունչի Թարգմանիչն եւ գոթական գրականութեան հիմնադիրը: Ան հմուտ էր անշուշտ գոթերէնի իբրեւ մայրենի լեզուի՝ ի մանկութենէ եւ յունարէնի, իբրեւ տեղական եւ դպրոցական լեզուի: Իր բանակցութիւնը Մաշտոց վարդապետի հետ եղած էր հարկաւ յունարէն, վասն զի չկայ կռուան ենթադրելու, թէ ան հայերէնագէտ եղած ըլլայ:

Բենիամին երէց ցանկացաւ ունենալ գոթերէն լեզուի համար նշանագիրներ, որպէս զի քրիստոնեայ Գոթերուն համար թարգմանէ Աստուածաշունչը գոթերէնի: Ուստի կրնանք ենթադրել, թէ Մաշտոց երբ ընձեռեց Բենիամինի գոթական աղփաբետը, միաժամանակ ըրաւ անոր թելադրանքներ թէ՛ նորագիւտ նշանագիրները մանկանց ուսուցանելու կերպին եւ թէ՛ Աստուածաշունչը թարգմանելու եղանակի մասին, յեցած այն փորձառութեան վրայ, զոր ձեռք բերած էր առթիւ հայերէն եւ վրացերէն գրերու ուսուցման եւ այդ լեզուներով կատարուած թարգմանութիւններու:

Բնականաբար Կ. Պոլսոյ շրջանակին մէջ Աստուածաշունչի թարգմանութեան համար պիտի առնուէր յունարէն այնպիսի բնագիր, որ ընդհանուր կիրառութեան մէջ էր. այդ բնագիրն էր Լուկիանեանը: Զարմանալի չէ ըստ այսմ, որ հայկական եւ գոթական թարգ-

մանութիւնները չատ կէտերու մէջ հասարակաց ընագիր կ'ենթադրեն: Կորիւն կը գրէ, որ Հայ Աստուածաշունչի համար «հաստատուն օրինակներ» բերուեցան Կ. Պոլսէն:

Թէ Բենիամին երէց առանձի՞ն ի գլուխ հանեց Աստուածաշունչի թարգմանութիւնը, կամ ունեցա՞ւ օգնականներ եւ կամ յաջողեցա՞ւ ամբողջութեամբ թարգմանել եւ ո՞ր չափ ժամանակի մէջ, հարցեր են, որոնք կը մնան առանց պատասխանի: Գոթական Աստուածաշունչը հասած է մեզի հատուածներով: Այն պարագան, որ Փիլոստորգիոսի անծանօթ մնացած են Թագաւորաց գրքերու գոթերէն թարգմանութիւնը, ցոյց կու տայ, թէ մինչեւ 425—433 տարուին չկար հրապարակի վրայ Հին եւ Նոր Կտակարանի ամբողջական թարգմանութիւնը:

Ծանօթ են հետեւեալ ձեռագիրները.

1. Codex argenteus յՈւպսալա: Ձեռագիրս գրուած ծիրանեգոյն յատակի վրայ արծաթագոյն մելանով, ունէր 330 մագաղաթեայ թուղթ, եւ կը պարունակէր չորս Աւետարանները այս կարգով. Մատթէոս, Յովհաննէս, Ղուկաս, Մարկոս: Մեզի հասած են միայն 187 թուղթ: Նմանատպութեամբ հրատարակուած՝ Codex argenteus Upsaliensis jussu senatus universitatis phototypice editus. Upsaliae 1927: Տես Պատկ. 2:

2. Codex Carolinus, կրկնագիր ձեռագիր մ'ի Walfenbüttel, որ կը բովանդակէ



Պատ. 2. Cod. arg. թղ. 5 ա (Մատթ. Զ. 9—16)։

հատակոտորներ Հռոմայեցւոց թղթի 11—15 գլուխներէն, առընթեր լատին բնագիրը։ Լուսատիպ հրտ. Hans Henning, Համբուրգ 1913։

3. Codices Ambrosiani, հինգ կրկնագիր հատակոտորներ Միլանի Ամբրոսեան Մատենադարանի մէջ, որոնցմէ թ. 1—2 կը պարունակեն հատակոտորներ Պաւղոս առաքեալի թղթերէն (95 + 77 թուղթ)։ թ. 3. հատակոտորներ Մատթ. ԻԵ—Իէ գլուխներէն (2 թուղթ)։ թ. 4. հատակոտորներ Նեեմայի Ե—Է գլուխներէն (երեք թուղթ)։ թ. 5. ութը թուղթ (երեքը Հռոմ Վատիկանեան Մատենադարանի մէջ), որոնք կը բովանդակեն Յովհաննու աւետարանի մեկնութեան մը հատակոտորները, կոչուած Skeireins aiwaggeljons thairh Johannen ըստ հրատարակութեան Massmannի (1834)։ Քննական հրատարակութիւն մը հոգաց E. Dietrich, Die Bruchstücke der Skeirens. Straßburg 1903։

4. Codex Taurinensis, չորս չատ փնասուած թուղթեր Տուրինի Համալսարանի Մատենադարանին մէջ, հատակոտորներ Գաղատացւոց եւ Կողոսացւոց թղթերէն։

5. Codex Gissensis, մագաղաթեայ թուղթ մը, բերուած Եգիպտոսէն, որ կը պահուի այժմ Giessenի Համալսարանի Մատենադարանին մէջ, հատակոտոր մըն է լատին-գոթերէն երկլեզուեան աւետարանի մը։

*Այս* 1—5 *մասերու քննական հրատարակութիւն մը տուաւ* W. Streitberg: Die gotische Bibel. 1. Teil: Der gotische Text und seine griechische Vorlage, mit Einleitung, Lesarten und Quellennachweisen, sowie den kleineren Denkmälern als Anhang. Heidelberg 1919. 2. Teil: Gotisch-griechisch-deutsches Wörterbuch. Heidelberg 1910.

*Թէպէտ այսպէս սակաւաթիւ հատակոտորներով հասած է մեզի Աստուածաշունչի գոթերէն թարգմանութիւնը, բայց եւ այնպէս վկայ են անոնք, թէ Ե· դարու առաջին կէսին գոթական գրականութեան առաջին վաստակաւորները տարած են անխոնջ եռանդով արդիւնաւոր գործունէութիւն:*

*Կը տեսնուի այդ թարգմանիչներու քով մեծ ջանք՝ յունարէն բնագիրը հաւատարմութեամբ վերածելու գոթերէնի, առանց մեղանչելու գոթերէն լեզուի ինքնայատուկ նկարագրին: Բաւական եղած է թարգմանչին մայրենի լեզուին բառագանձը, արտայայտելու համար օտար լեզուի նուրբ մտքերը որոշ յաջողութեամբ: Հազուադէպ անգամներ դիմած է ան օտար բառերու փոխառութեան: Բնականաբար, նկատի առնելով, որ գոթերէն լեզուն առաջին անգամ իբրեւ գրական լեզու հոս կիրառութեան կ՚ենթարկուի, չէր կրնար այն ամենայնիւ կատարեալ ըլլալ· այս տեսակէտէ հարկ է ներողամիտ գտնուի խիստ քննադատութիւնը:* Fr. Kauffmann, *որ գոթերէն Աստուածաշունչը*

բնագրական մանր հետազօտութեան ենթարկած է, կը յանգի այս եզրակացութեան. «Թարգմանչին մատենագրական վաստակը պէտք չէ շատ բարձր գնահատել, ինչպէս մինչեւ ցայժմ գնահատուած է»: Ինչպէս ալ ուզուի դատել տարուած աշխատութիւնը, կը մնայ այն անվիճելի ստուգութիւն, թէ Բենխամին ի գլուխ հանած է հոյակապ գործ մը, ուր խնամով հաւաքած վայրավատին ցրուած շինուածաքարերը՝ կառուցած է գոթերէն լեզուի Յուշարձան մը հրաշալի յօրինուածքով:

Այդ Յուշարձանին հիմնաքարը դրած էր Մաշտոց վարդապետ Հայոց:

Այս հատակտորներէն կը տեսնուի թէ Գոթերը Ս. Գիրքը թարգմանելէ ետքը ձեռնարկած են նաեւ Ս. Գրքի Մեկնութիւններ թարգմանել կամ յօրինել. այսպէս Յովհաննու Մեկնութիւնը: Ունինք նաեւ պատառիկ մը, որ կը բովանդակէ Տօնացոյցի մը մասը: Այս վերջինս հետաքրքրական է մանաւանդ այն տեսակէտէ, որ կը ներկայացնէ Արիանոսեան Գոթերու յատուկ Տօնացոյց մը, ուր Սուրբերու կարգին կը յիշուի ի մէջ այլոց Dauritaius aipiskaupaus, սա, ինչպէս H. Delehaye, Analecta Bollandiana, 31, էջ 277) վեր հանեց, Հերակլիայի համանուն արիանոսեան Դորոթէոս եպիսկոպոսն է, վախճանած 6 նոյ. 407: Այս կէտը ցոյց կու տայ, թէ Տօնացոյցը կազմուած ըլլալու է այս թուականէս, ճշդագոյնս 420էն ետքը:

Codex argenteus, *չքեղ գրչութեամբ գոթերէն Աւետարանը, որ Ե. դարու առաջին կէսին օրինակուած է՝ հաւանօրէն Կ. Պոլիս, ունեցած է անշուշտ ստացիչ գոթ բարձրաստիճան անձնաւորութիւն մը, որուն անունը կը թուի ինձ, թէ եղած ըլլայ կա՛մ Արդաբուր (հայրն) եւ կամ Ասպար (որդին) :*

*Ասպար, զօրավարն Արեւելեան բանակին, որ 457ին գահ հանած էր Լեւոն Ա. կայսրը եւ անոր ձեռքով իր որդին Արդաբուր Կեսար կարգած, 471ին հրամանաւ կայսեր սպանուեցաւ իր որդւոյն հետ: Այս աղէտը միաժամանակ խորտակումն էր գոթական տիրապետութեան: Զենոն Իսաւրացի իր Իսաւրեան բանակով փրկեց պետութիւնը գոթական վտանգէն:*

*Այս թուականէն ետքը թէ ինչ պայմաններու տակ ապրեցան Արեւելեան Հռոմէական պետութեան մէջ գտնուող Գոթերը, չենք գիտեր: Հաւանօրէն քայքայուեցաւ գոթական բանակը, եւ զօրքը վարատեցաւ: Յամենայն դէպս Ասպարի ժառանգները փնտռեցին ապաստանարան Արեւմուտք:*

*Այսպէս գոթական նոր գրականութիւնը, որ սկսած էր ծաղկիլ եւ պտղաբերել 420—470 տարիներուն, յանկարծահաս աղէտի մը հետեւութեամբ գտաւ իր ալ վախճանը Արեւելեան Պետութեան մէջ: Անոնք, որոնք դիմեցին Արեւմուտք, տարին անշուշտ իրենց*

Հետ նաեւ գոթերէն գրականութեան մասեր։ Գիտենք, որ Արեւմուտք կային գոթերէն գրականութիւնը սիրողներ, եւ գոթական գրերը ունեցան գերմանական ցեղերու քով ընդունելութիւն, բայց լատին լեզուի ազդեցութիւնը խափանեց անոր անդրագոյն գործածութիւնը։

---

## 12. ԳՈԹԱԿԱՆ ԱՅԲՈՒԲԵՆԻ ՎԵՐԱՊՐՈՒՄԸ ՌՈՒՆ ՆՇԱՆԱԳԻՐՆԵՐՈՒ ՄԷՋ

### "ՓՈՒԹԱՐՔ„ ԼՈՒԾՈՒԱԾ՝ ՄԱՂԹԱՆՔ ՄԸ ՀԱՅԵՐԷՆ

1.

*Տակիտոս*[1] *կը պատմէ, թէ հին Գերմանները սովորութիւն ունէին պտղատու ծառի ճիւղ մ'առնել, վրան խորհրդական գծեր գծել, ապա ցպիկ ցպիկ կտրել եւ խառն լեցնելով սպիտակ կտաւի մը վրայ վիճակ բանալ: Վիճակի թագաւորն կամ թագուհին կ'առնէր այդ ցպիկներէն երեքը, քովէ քով կը դնէր եւ անոնց նայելով գուշակութիւններ կ'ընէր: Այս ցպիկները կը կոչուէին* ռու–նա, *որուն նշանակութիւնն էր խղուըրտին կամ խորհուրդ: Իրենք Գերմանները, կ'ըսէ Տակիտոս, անգրագէտ էին* (literarum secreta viri pariter ac feminae ignorant):

*Այս* runa *բառը յետոյ կը գտնենք յատկացուած գերման ցեղերու քով տարածուած տեսակ մը նշանագիրներու, զորոնք կը գործածէին փայտագծութեան մէջ, այսինքն փայտեղէն տաղձի վրայ գծելով գրելու:*

[1] Germania, c. 19.

Վենանտիոս Փորտունատոս, որ Վերին Իտալիա ծնած՝ շատ տարիներ դեգերած է Գերմանիա եւ Գաղղիա եւ Զ. դարու վերջերը Պուատիէի եպիսկոպոս կարգուած, կը գրէ իր բարեկամ Փղաւիոսի, որ պատասխանէ իր թղթին. եւ եթէ չի կրնար լատիներէն գրել, գրէ «բարբարոսական ռունով փայտեայ տախտակի կամ ցուպի վրայ[2].

Barbara fraxineis pingatur runa tabellis,
quodque papyrus agit, virgula plana valet.

Այստեղ «Բարբարոս» որակուած են առանց տարակուսի գերմանական ցեղերը:

Հասած են մեզի բազմաթիւ այսպիսի արձանագրութիւններ փայտեայ, քարեայ եւ մետաղեայ ատաղձներու վրայ, այսպէս զարդեղէններու, զէնքերու, անօթներու, եղջերեայ ըմպանակներու, տանց դրանդիներու եւ տապանաքարերու վրայ, որոնք գտնուած են Սկանդինաւիա, Դանիա, Գերմանիա, Գաղղիա, Անգլիա եւ Բալկաններ, ուստի ընդհանրապէս գերմանաբնակ երկիրներու մէջ եւ անոնց ընթացած հետքերու վրայ: Գրուած են ռուն գրերով, շատ անգամ անիմանալի լեզուով:

Ռունական այբուբենը պահուած է մեզի ուշ ժամանակի, Թ.—Ժ. դարու ձեռագիրներու մէջ, իրարմէ քիչ շատ խոտորող նշանաձեւերով, հնչումով եւ անուններով, դասաւորուած լատինական աղփաբետի կար—

[2] Carminum lib. VII, 18.

գով։ Կայ նաեւ ուրիշ խումբ մը նշանագիրներու, անկէ այլազան դասաւորութեամբ եւ թուով առաւել եւ նուազ, զոր սովորութիւն է Ֆութարք կոչել առաջին վեց նշանագիրներու հնչումով։ Ասոնք կը տեսնուին թէ արձանագծութիւններու մէջ եւ թէ ձեռագիրներու մէջ. վերջիններս պահելով կարգը՝ տուած են առընթեր հնչիւնն եւ անուանակոչութիւնը մէն մի նշանագիրներու. այս պատճառաւ ալ «Ֆութարք» նկատուած է նոյնպէս աղփաբետ, բայց զուտ գերմանական դասաւորութեամբ։

Ռունագէտք ուզեցին այս ռուն նշանագիրներու եւ անոնցմով գծուած յիշատակարաններու զոնէ մէկ մասին մեծ հնութիւն տալ, համարելով յետ Քրիստոսի առաջին իսկ դարէն։ Նշանագիրներու ծագումը ենթադրեցին լատինական աղփաբետէն. ուրիշներ համեմատութեան դրին զանոնք հին սեմական այբուբեններու հետ. եղան նաեւ գիտուններ, որոնք տեսան անոնց վրայ յունական եւ գոթական աղփաբետներու ազդեցութիւնը։ Ներկայիս ընդհանուր տիրող կարծիքն է գերմանագէտներու եւ ռունագէտներու քով, թէ ռուները ձեւուած Բ.—Գ. դարուն լատին աղփաբետի հիման վրայ՝ զարգացած են գերմանախօս ցեղերու մէջ սեպհական նկարագրով, այնպէս որ «Վուլֆիլա» երբ կը կազմէր իր գոթական աղփաբետը յունականին վրայ յեցած, ինչ ինչ փոխառած է ռունականէն։

Ես պիտի չուզեմ այստեղ վիճաբանիլ հոյակապ ռունագէտներու եւ անուանի բանասէրներու հետ ոչ ի մասին ռունական նշանագիրներու ծագման եւ զարգացման, եւ ոչ ալ ռունական յիշատակարաններու հնութեան նկատմամբ: Ելակէտ ընտրելով ինձ այն, թէ Գոթական այբուբենի հնարիչն է Մաշտոց վարդապետ, հնարուած է այբուբենը 420ին, այդ այբուբենին մէջ նոր ձեւուած նշանագիրներէն ինչ ինչ (այսպէս Թ, Կ, Ց, Ու, Ռ եւ Փ) նոյնութեամբ կամ ձեւափոխութեամբ կը գտնուին նաեւ ռունական այբուբենի մէջ, կը համարիմ թէ ռունական այբուբենը եւ անով գրուած ռունական յիշատակարանները չեն կրնար 420էն (նոյն իսկ 500էն) յառաջ գոյութիւն ունեցած ըլլալ:

L. Wimmer, որ հոյակապ հանդիսացած է իբրեւ ռունագէտ, թէպէտ կը պնդէր իր կարեւոր աշխատութեան մէջ 1874ին, թէ ռունական յիշատակարաններէն հնագոյնը 250էն համարելու է, բայց 1887ին լոյս տեսած նոյն գործին գերմաներէն թարգմանութեան յառաջաբանին մէջ յետս կը կոչէր իր տեսութիւնը[3]. «Այժմ ոչ մի պատճառ չեմ տեսներ, հնագոյն Յիշատակարանները մօտաւորապէս մինչեւ 400 թուականը ետ չբերելու», Թէպէտ Worsaae հնախօսը առաջարկած էր դար մը եւս ետ տանելու, ուստի 500:

Ի նպաստ տեսութեանս W. Luft[4] կը պատ–

[3] Wimmer, S. X.
[4] Luft, Studien, S. 73.

ճառարանէր. «Պատահական չէ անշուշտ, որ Գ.—Դ. դարու Գոթերու մասին խօսող աղբիւրներէն, հակառակ իրենց թուական առատութեան, եւ ոչ մէկը յիշատակութիւն ըրած է, թէ գոյութիւն ունեցած են այդ շրջանին ռունական նշանագիրներ. նոյն իսկ Յորդանէս ոչ, որ ուրիշ կողմէ կը սիրէ Գոթերու հնագոյն շրջանէն ամէն տեսակ չնաշխարհիկ բաներ հրամցնել մեզի: Այն ժամանակ չկային հաւանօրէն անոնք. յամենայն դէպս այն ստոյգ է, որ անոնք իբրեւ գիր գրականութեան համար չեն գործածուած: Այն երկու կամ երեք արձանագրութիւնները, որոնք գոթերէն կը համարուին, իրենց գոյութեամբ Դ. դարէն ետքն են: Նոյն իսկ անոնց գոթերէն ըլլալը աւելի գտնուած տեղէն կը հետեւցնեն, քանի որ մինչեւ այժմ չեն կարդացուած անոնք: Ճշգրիտ տուեալ մը չենք կարող մատնանշել: Այս ռունական նշանագիրներով հասած են մեզի մէկ քանի՝ իրաց տէրը ցուցնող փայտեայ արձանագրութիւններ, թերեւս նաեւ համառօտախօս մագթանքներ. Ի վերջոյ այսպիսի նշանաձեւեր գծողներն ալ սակաւաւոր անձինք միայն եղած են: Թէպէտ շատ դժուար է մեզի հասած յիշատակարաններու վրայ յենլով գոնէ մերձաւորապէս որոշել ռուներու սկզբնաւորութեան ժամանակը, բայց եւ այնպէս կարող ենք մեծ հաւանականութեամբ ըսել, թէ ռուները առաջին անգամ Զ. եւ Է. դարուն ընդհանուր գործածութեան մէջ մտան Գո-

թերու եւ գերմանական ժողովուրդներու քով»։

Ռունական նշանագիրներու շուրջ ընդարձակ գրականութիւն կայ. կը յիշեմ հետեւեալ կարեւոր գործերը.

Ludw. F. A. Wimmer, Die Runenschrift. Aus dem Dänischen übersetzt von F. Holthausen, Berlin 1887. R. Henning, Die deutschen Runendenkmäler, Straßburg 1889. W. Luft, Studien zu den ältesten germanischen Alphabeten, Güterloh 1898. Ed. Sievers, Runen und Runeninschriften: H. Paul, Grundriß der germanischen Philologie, Bd. 1², Straßburg 1908, S. 248—262. H. Arntz, Handbuch der Runenkunde, 2. Aufl., Halle 1944. W. Krause, Die Runeninschriften im älteren Futhark, Halle 1937. Ունիմ աչքի առաջ նաեւ Karl Faulmann, Illustrierte Geschichte der Schrift, Wien 1880, S. 27—186.

2.

Ռունագէտները մեծ ուշադրութիւն դարձուցին Ֆութարքի իբրեւ «ռունական այբուբենի», վասն զի անոնք գրերու հնչիւնով եւ անուանակոչութեամբ յառաջ բերուած էին Թ.—ԺԱ. դարերու ձեռագիրներու մէջ: Եւ որովհետեւ այս «Ֆութարք» Սկանդինաւիա գտնուած արձանագրութիւններու մէջ 16, իսկ Գերմանիա եւ Անգլիա երեւան հանուած պատճէններու մէջ 24 նշա—

նագիրներէ կազմուած էին, հարց յարուցուեցաւ, թէ այս կրկին՝ համառօտ եւ ընդարձակ խումբերէն ո՞րը սկզբնականն է: Ի սկզբան, յատկապէս հիւսիսի գիտնականները առաջնոյն ի նպաստ արտայայտուեցան, բայց յետոյ ձայներու առաւելութիւնը շահեցաւ երկրորդը: Երկար քննութեան ենթարկուեցան նաեւ նշանագիրներու իրարմէ խոտորող նշանաձեւերը[5]: Ի վերջոյ վէճի առարկայ եղաւ Ֆութարքի եւ այլ նման յիշատակարաններու իրարու հետ ունեցած յեղուական աղերսը մէկ կողմէ եւ անոնց յառաջադայութիւնը միւս կողմէ: Wimmer հիւսիսային ժողովուրդի լեզուն կը տեսնէր հոն, կազմուած յընթացս շրջաններու: Բայց Gislason ուշադիր ըրաւ, որ ոչ գերմանական եւ ոչ սկանդինաւեան ցեղի կը պատկանի այն, այլ երկուքի միջեւ գտնուող տարրի մը, որ հետախաղաղ եղած է ժամանակի հոսանքէն, ողողուած է խուժող ազգերու ալիքներէն, մերձաւոր ազգակից մը ընձիւղած գոթական արմատէն (Wimmer, էջ 185):

Եթէ Ֆութարք լոկ այբուբէն կը ներկայացնէր, ի՞նչ իմաստ ունէր ապա զայն այնքան յաճախութեամբ արձանագրել, նոյն իսկ այնպիսի նուիրական տեղեր, ինչպէս է Մկրտութեան աւազանը, Եկեղեցւոյ գան-

---

[5] Այս եւ նման հարցերու շուրջը հմմտ. W. Wimmerի վերադոյն յիշուած աշխատութիւնը, յատկապէս էջ 179—258 եւ 275—283:

գակը, կամ սուրը, վահանակը, ոսկեզարդը, եղջերեայ ըմպանակը եւն եւն: Գիտունք չմերձեցան հարցին ազգագրական տեսակէտով. չյարուցին հարց, թէ իրօք «ռունական այբուբե՞ն» մը ներկայացուած է հոն, թէ ռունական նշանագիրներով որ եւ է միտք յայտնուած, օրհնութիւն, մաղթանք եւ այլն, եւ այս պատճառաւ ալ յարգուած եւ յաճախակի կիրառութեան առնուած:

Բնականաբար եթէ այս է այդ նշանագիրներու տակ թաղնուած իմաստը, գոթերէն կամ ուրիշ լեզուով, ի զուր եղած պիտի ըլլային այն երկար վէճերը, հնագրական, լեզուական եւ նման հետազօտութիւնները:

Որքան ինձ ծանօթ է, այս ուղղութեամբ առաջին անգամ մերձեցաւ Ֆութարքի յայտնի ռունագէտ եւ լեզուաքննին Sophus Bugge, որ ի մէջ այլոց հայերէնագէտ էր: Թերեւս մղուած այն գաղափարէն, թէ գոթերէն Աստուածաշունչի մէջ կը նշմարուին հայերէնի հետքեր, փորձուած է Բուգգէ լուծել Ֆութարքի գաղտնիքը հայերէնի միջնորդութեամբ: Ունիմ աչքի առաջ իր մէկ նամակը (Christiana, 16 ապրիլ 1904), ուղղուած առ Հ. Յ. Տաշեան, ուր Ֆութարքի Fut'arkgw տառախումբը փորձ կ'ընէ մեկնել հայերէնով «փութատառք», իբրեւ նշանագիրներ արագագրութեան համար. եւ hnijupzs «հիւպոդիակոնից», այսինքն նշանագիրներ յատուկ կիսասարկաւագաց. իսկ tbemlngod խումբի մէջ կը փնտռէ «դիւան»,

*«դիւանատուն» իմաստով բառ մը, այսինքն՝ նշանագիրներ դիւանի եւ ոչ եկեղեցական գրքերու մէջ գործածելու համար: Ինծ ծանօթ չէ, թէ Հ. Տաշեան ի՞նչ կարծիք յայտնած է Հայերէնագէտի ներկայացուցած այս փորձերու մասին, որոնք ի հարկէ անընդունելի պիտի նկատուէին: Այս նամակի ընթերցումը սակայն թելադրութիւն մ'եղաւ ինծ ուշի ուշով քննութեան առնելու Ֆութարքի բնագիրը, զոր գտայ* Faulmann*ի քով այլեւայլ խմբագրութիւններով, վերստուգելու համար, թէ կա՞յ իրօք հոն որ եւ է կուսուան նման ենթադրութիւններու մղելու համար: Քննութիւնս հաստատեց, թէ Հայերէնագէտ Ս. Բուգգէ արդարեւ ունեցած է զարմանալի նախազգածում եւ հիանալի հոտառութիւն, վերհանելու համար Ֆութարքի առաջին չորս տառերու մէջ հայերէն «Փութա—» բառը: Յաջորդ իրարու հետ անյարիր նշանագիրները չմորեցուցած են զինքը անսայթաք յառաջ տանելու ընթերցուածը եւ դիմած է ենթադրութիւններու: Այսպէս գաղտնիքի բանալին ձեռքը՝ գտնուած է անելի առաջ*[6]*: Նկատի պէտք է առնել եւ*

---

[6] Holger Pedersen *կենսագրականի մը մէջ, զոր գրած է Սոփուս Բուգգէի* († 8 *յուլիս* 1907) *յիշատակին, կը հաղորդէ տողերս. «Հիւսիսային Բանասէրներու Ե. ժողովին մէջ, գումարուած* 1898 *օգոստ. ի Քրիստիանիա, կարդալով բանախօսութիւն մը, այն կարծիքը յայտնեց թէ Գերմանական հնագոյն ռուն ալփաբետը կրած է հայկական ազդեցութիւն. այս նկատումը տես* Forhandlinger paa det feinte nordiske Filologmöde i Kristiana, Kristiania 1899, *էջ* 5 *եւ*

հետեւեալ պարագաները· Հայերէնագէտը կորսնցուցած էր աչքի լոյսը· նաեւ իր հայերէնագիտութիւնը չափաւոր էր, անբաւական նման առնչուածներ լուծելու, յատկապէս այսպիսի չարատանջ բնագրէ: Երախտապարտ եմ իրեն, որ իր փորձով գրգիռ եղաւ ինձ, ձեռնարկելու բազմադարեան գաղտնիքիս լուծման, թէեւ ոչ առանց աշխատանքի, բայց, ինչպէս կը կարծեմ, ամենայն յաջողութեամբ: «Փութարք» նախնաբար գրուած գոթերէն նշանագիրներով՝ կը բովանդակէ հայերէն տողերս·

## ՓՈՒԹԱՑԱՐՈՒՔ ԱՒՐՀՆԵԼ ՔՐԻՍՏՈՍ ՏԷՐ ԷՄԱՆՈՒԷԼ ԸՆԴ ՄԵԶ ԱՍՏՈՒԱԾ ՅԱՒԻՏԵԱՆՍ ՅԱՒԻՏԵՆԻՑ

3·

Ինչպէս վերադոյն ակնարկեցի, Ֆութարքը հասած է մեզի Ընդարձակ եւ Համառօտ օրինակներով: Համառօտը 16 նշանա—

չար· եւ Բուգգէի մէկ նամակը առ Otto von Friesen ի Om runskriftens härköst, Upsala 1904, էջ I—II: Բուգգէ իր Norges Indskriften med de oeldre Runer գործքին մէջ անգամ մ'եւս այս խնդրոյն կը դառնար, բայց այն տետրակը (1905), որուն վրայ է խօսքը, ճիշդ հոն կը դադրի, ուր հայ ազդեցութիւնը պիտի ցուցուէր»: Պեդերսէն այս ենթադրութիւնը տարակուսական՝ կը դնէր (Հանդ. Ամս. 21, 1907, էջ 308):

գիրներով տարածուած է հիւսիսային երկիրներու մէջ, անոնց նուիրուած են հոն նաեւ երկու տաղեր: Ընդարձակը 24 նշանագիրներով կը տեսնուի Գերմանիա. Սանկտ Գալէնի ձեռագիրն ունի 28, ուրիշ մը՝ 42, Իսիդորի ձեռագրին մէջ իբր 29, երեք անգլոսաքսոնական ձեռագիրներէն մին 33, երկրորդը՝ 34 եւ երրորդը 24 նշանագիրներ: Hinckesի հրատարակած Ֆութարքներէն առաջնոյն ընկերացած է տաղ մը, ուր մէն մի նշանագրի յատկացուած է քառեակ մը, այժմ պահուած 29 քառեակ: Այս անհաւասար թուերը ցոյց կու տան, որ սկզբնական օրինակը, որ հաւանօրէն իբր 50 նշանագիր կը պարունակէր, կրճատուած է դարերու ընթացքին օրինակողներու կողմէ հաւանօրէն տեղւոյ անձկութեան պատճառաւ: Այդպիսի օրինակներէն մին 16 նշանագրով հասած է Սկանդինաւիա, ուրիշ մը՝ 24 նշանագրով՝ Գերմանիա. աւելի ճոխ եղած են Անգղիա տարածուած օրինակները: Կան նաեւ օրինակներ, որոնք սկիզբէն եւ վերջէն քաղուած քանի մը նշանագիրներ կը պարունակեն. կան եւ այնպիսիներ, որոնք աջէն ձախ գրուած են:

Սկզբնագիր օրինակը, ինչպէս ինձ կը թուի, գրուած էր գոթերէն տառերով մագաղաթի վրայ, նոյն ինքն գոթական այբուբենին հնարող Մաշտոց վարդապետի ձեռքով: Բնագրին լեզուն եղած է հայերէն: Այս գոթերէն գրերով գրուած հայերէն բնագիրը

բնականաբար գաղտնիք պիտի մնար Գոթերու. այս պատճառաւ ալ արտագրուած է այն՝ ձեռքէ ձեռք առանց հասկնալու, իբրեւ խորհրդական գաղափարագիրներ. ապա երբ փայտեայ, մետաղեայ եւ քարեայ առարկաներու վրայ գծուեցան անոնք, ինչպէս գոթական նշանագիրները ենթարկուեցան ձեւափոխութեան, նաեւ բնագիրը տուժեց իր ամբողջութենէն անկման գրերու կամ վրիպակ ընթերցմամբ: Աղաւաղումը կատարեալ եղաւ, երբ Ֆութարքը նկատուեցաւ ռունական այբուբեն: Մէկ կամ միւս նշանագրի յաճախակի կրկնումները կամ ջնջուած են եւ կամ ձեւափոխուած, ինչ որ կը դժուարացնէ բնագրին վերականգնումը համեմատութեամբ օրինակներու, որոնք ուշ ժամանակէ են, արդէն աղճատուած գաղափարէ արտագրուած:

Հակառակ օրինակներու կրած աղաւաղման հնարաւոր եղաւ վերականգնել այն տեղ թարգմանուած հայերէն բնագիրը իր ամբողջութեան մէջ: Հայ բնագիրը ունեցած է իր մէջ չորս նուիրական անուն (nomina sacra), որոնք գրուած են պատուով. ասոնք են ՔՍ, ՏՐ, ԷՄՆ (էմանուէլ), ԱԾ: Հայերէն Ե գիրը անգամ մը ներկայացուած է երկգիր՝ ij, իսկ «ընդ» յն. γγ հնչման համապատասխանող ing, d գրի առջեւ եղած ind. ինկած են տեղ տեղ գրեր. ուրիշ տեղեր վրիպակ գրուած, դարձեալ կան նշանագիրներ, որոնց

*հնչիւնը չէ ճշդուած: Այս տեղիքները կարելի է վերականգնել յեցած հայերէն ընթերցուածի վրայ: Շատ աղաւաղուած եւ սակաւաթիւ (գոնէ ինձ մատչելի) օրինակներու մէջ պահուած են 28—30 նշանագիրներ: Կը զետեղեմ այս տեղ նախ վերակազմուած հայերէն ընագիրը, ապա անոր ներքեւ նոյն օրինակներու ընթերցուածը լատինական տառերով (տես պատկերը):*

ᚠ ᚢ ᚦ ᚨ ᚱ ᚲ ᚷ ᚹ ᚺ ᚾ ᛁ ᛃ ᛇ
F U Th A R C(K) G W H N I Jod E?Hy?
ᛈ ᛉ ᛊ ᛏ ᛒ ᛖ ᛗ ᛚ ᛜ ᛟ ᛞ
P? Z S T B E M L NG O D

Ֆուբարք:

*Թ.* 5, 6, 8 *դուրս ինկած են,* a *եւ* u *գործածուած էին արդէն անգամ մը:*

*Թ. 10, որ* x *ձեւն ունի, մեկնուած է* g. *կամ* a*ի աղաւաղումն է եւ կամ անոր տեղ, որ արդէն գործածուած էր, ուրիշ գիր դրուած:*

*Թ. 12 ընագրի մէջ լատ.* P *գրի նման, բայց բոլորակը անկխնաւոր. զոր կը համարիմ կամ ուուն* ᚱ (r)*ի սխալագրութիւնը եւ կամ դիտմամբ ձեւափոխուած, վասն զի* r *գործածուած էր անգամ մը* (*Թ.* 7):

*Թ. 15 ընագիրը այսպէս երկու գիր է՝* ᛇ, *որ կը մեկնուի* ij, *ուստի ճշդիւ Հայ. Ե տառին հնչիւնը:*

*Թ. 16 ընագիրն ունի Հայ. Մ տառի նման աջ եւ ձախ առ ի չեղ գծիկներով նշանաձեւ մը, որուն նշանակութիւնը չէ մեկնուած. եթէ ձախակողմեան գծիկը ջնջենք, կը ստանանք ուուն* ᛚ (l). *Հաւանօրէն սխալագծութիւն:*

*Թ. 17 ընագրի մէջ յորսայս դարձած* M, *զոր կասկածանօք կ՚ուզուի* p *կարդալ, կը համարիմ զոթ.-յն.* Z*ի մէկ սխալաձեւը:*

*Թ. 18 ընագրի մէջ ուուն* ᛉ *ի նման վերի եւ վարի ծայրերը եռաժանիներով նշանաձեւ մը, զոր կը մեկնեն* z. *ես կ՚ենթադրեմ զոթ.* X (K) *տառի նորաձեւութիւնը, ուստի համազօր Հայ. Քի:*

*Թ. 21 ընագիրը ունի ուուն* ᛒ (b), *ուանց տարակուսի սխալագրութիւնը ուուն*

R (r) *նշանագրին. r գործածուած էր Թ.* 7 (*հմմտ. Թ.* 12)։

*Թ.* 25—27 *ընագրին մէջ երկու կիսաբոլորակ, որոնցմէ մին դէպի աջ կը նայի եւ միւսը անոր հանգուցուած՝ դէպի ձախ դարձած է. ռունագէտք կը կարդան* (i)n(g), *ուստի հոս իրր* ind = ənd։

28—50 Hickes*ի հրատարակած անգլո-սաքսոնական տողին մէջ*[7], *որուն վերջին մասը աղճատում կրած է, ունի նշանագիրները* o (*այլք* oe, d, m), m (*այլք* o, oe), ac (a), oesc (?) (*հայ. ծ*), yr (j), tis (t), iolx (x), ston (s), gar (j), calc (?), z։ *Ընթանալով այս մաշած հետքերով կը վերականգնեմ վերջին պարբերութիւնը.* «Մեզ ա(*ստուա*)ծ. յաւիտեանս յաւիտենից»։

*Սկզբնագրին մէջ գոթերէն այբուբենի* 25 *նշանագիրներէն* 19 *մէկ կամ աւելի թուով գործածուած են. դուրս մնացած են* b, (g), q, p, o *եւ* hw *գրերը։ Թէ ի՞նչպէս տառադարձուած էին ը, ծ եւ ց գրերը, չեմ կրնար ճշդիւ ըսել, բայց կ'երեւայ թէ եղած են՝ ց* = z, *ծ* = s, *իսկ ը* = i *կամ* j։

4.

*«Ցուլթարքի» գծութիւնը ռուն գրերով, եւ այս նշանագիրներու սերտ աղերսը գոթական ալփաբետի հետ թոյլ կու տան մեզի անոր հեղինակը անուանելու Մաշտոց, որ*

---

[6] Faulmann, 179.

*հնարիչն էր եղած գոթական այբուբենին։ Հայերէն բնագրի դասական կնիքը աներկբայ կը հաստատէ մեր հաւաստումը։ Առիթը, որ յորդորած է Մաշտոց վարդապետը գրելու տողերս, ընծայած է անշուշտ Բենիամին երէց։ Կը համարիմ, թէ երբ Մաշտոց կատարեց ալան երէցի խնդիրքը, ընձեռեց անոր գոթական այբուբենը, Բենիամին մեկնելէ յառաջ խնդրած ըլլայ Վարդապետէն օրհնութեան գիրը նոյն նորագիւտ նշանագիրներով եւ Մաշտոց տուած ըլլայ ինքնագիր, նորագիւտ գոթական տառերով այս թանկագին տողերս իբրեւ մաղթանք նորոգատուր այբուբենի բարեվայելումի եւ նոր-սկիզբն գրականութեան դէպի բարձրական նպատակ յառաջադէմ բարգաւաճումի — «փութացարուք օրհնել զՔրիստոս» բանիւ եւ գրով։*

*Մաղթանքս միաժամանակ խրախոյս կը կարդայ Գոթերուն «օրհնել զՔրիստոս Տէր էմմանուէլ ընդ մեզ Աստուած». այսինքն դաւանիլ զՔրիստոս հաւասար եւ համագոյակից Հօր, ձայնակցութեամբ կաթողիկէ Եկեղեցւոյ. ուստի կոչ մը ուղղուած արիանոսեան Գոթերու։*

*Մաղթանքս գրուած էր հայերէն՝ գոթական տառերով. ուստի այն թէեւ ըստ իմաստին անմատչելի պիտի մնար Գոթերուն, բայց գիտէին անոնք թէ բղխած է բարեգործ սրտէ եւ գրի առնուած սուրբ Վարդապետէ իբրեւ առաջին գրուածք նորատուր գոթերէն*

*գրերով, իբրեւ հին գոթական գրականութեան: Եւ գոթ ժողովուրդը երախտագէտ սրտով ընդունեցաւ զայն իբրեւ թանկագին ընծայ եւ նուիրական յիշատակ: Բազմացուց զայն պնակիտներու վրայ, փայտեայ կամ մետաղեայ, եւ կրեց իր սրտի մօտ իբրեւ պահպանակ, կգարթ եւ համայիլ, ամենազօր ընդդէմ երեւելի եւ աներեւոյթ թշնամիներու: Պահպանագիրս իր անմատչելի բնագրով ընդունելութիւն գտաւ թէ քրիստոնեայ եւ թէ հեթանոս Գոթերու քով. եւ անոնց ընթացած հետքով տարածուեցաւ աշխարհէ աշխարհ, դարէ դար իբրեւ ազգային աւանդ, նուիրական յիշատակարան:*

*Ֆութարքի օրինակ մը, դրոշմուած թիթեղեայ դրամի* (Brakeat) *մը վրայ, պահուած ի* Vadstena, *Թ.* 22 (Krause, *էջ* 433), *ունի այսպիսի սկսուած մը, անծանօթ այլուստ.*

## TUWA TUWA

*Եթէ ուզենք հայերէնով մեկնել, նկատի պիտի առնենք* տամ *բային կրաւորական, կատարեալ երրորդ դէմքը·*

## ՏՈՒԱՅ ՏՈՒԱՅ

*այսինքն «տրուեցայ տրուեցայ»: Ընթերցուածքս Ֆութարքի յարաբերութեամբ իմաստ մը պիտի տայ, եթէ նկատենք զայն*

դիմառնական բացականչութիւն մը գոթերէն գրերու, ուղղուած Գոթերուն. այս ինքն.

«Տուայ տուայ. փութացարուք օրհնել զՔրիստոս Տէր Էմմանուէլ Աստուած ընդ մեզ» եւն: Ես յօրինուեցայ եւ տրուեցայ Ձեզի. Դուք փութացէք օրհնել զՔրիստոս եւն:

Ցուլթարքի տարածումը կարող է ցոյց տալ մեզի Արեւելեան Գոթերու ընթացած ճանապարհը 420էն ետքը: Գոթ ժողովուրդը մնաց Արեւելեան Հռոմէական պետութեան մէջ ցորքան գոյութիւն ունէր հոն գոթական բանակը: 471ին, երբ Ասպար եւ Արդաբուր, գոթական բանակին հզօր ներկայացուցիչները, սպանուեցան Լեւոն Ա. կայսեր հրամանաւ եւ Իսաւրեան զօրաց հրամանատար Զենոնի գործադրութեամբ, լուծուեցաւ գոթական բանակը. քիչ յետոյ (474) երբ Զենոն կայսերական գահը բազմեցաւ, անշուշտ Արեւմուտք ապաստան փնտռեց գոթ ժողովուրդը: Անոնց մէկ մասը պէտք է միացած ըլլայ Անգլեւսաքսոնական ցեղախումբին, ուրիշ մաս մը Գերմանիա հաստատուած եւ դարձեալ ուրիշներ աւելի հիւսիս, իրենց նախնեաց բուն հայրենիքը յառաջացած: Անոնք տարին «Ցուլթարքը» իրենց հետ, իրենց գէնքերու, իրենց զարդեղէններու եւ անօթներու վրայ: Այս տեսակէտէ կ'արդարանայ Gislasonի տեսութիւնը, զոր յիշատակեցինք վերագոյն:

5.

Հայ–գոթական յարաբերութիւնը իր արմատն ձգած էր 420էն յառաջ: «Բարբարոսաց բանակը», ինչպէս տեսանք վերագոյն, գոյութիւն ունէր Արեւելեան Պետութեան մէջ արդէն Դ. դարէն: Հայաստանի հարաւակողման նահանգները կցուած էին Հռոմէական Պետութեան 297ին: Իսկ Եկեղեաց եւ Բարձր Հայք գաւառները անցան Պետութեան 385ին: Այս նահանգներէն անշուշտ մեծ թուով Հայեր առնուեցան զինուորական ծառայութեան Դ. եւ Ե. դարերուն, որոնք ծառայեցին նաեւ կայսերական բանակին մէջ, Գոթերու հետ եւ գոթ զօրավարներու հրամանին տակ: Արկադիոսի օրով Եւտրոպիոս, ազգով հայ, ազդեցիկ դիրք գրաւած էր արքունիքի մէջ: 420ին, երբ Մաշտոց Կ.Պոլիս կը գտնուէր, փայլեց նաեւ Իշխանաց հիւրասիրութիւնը. անոնց մէջ կային անշուշտ նաեւ հայեր, զինուորական եւ քաղաքական ծառայութեան մէջ: Անոնք էին հաւանօրէն, որ ծանօթացուցին Մաշտոցի անձը եւ գործերը Գոթերուն: Բանակի մէջ գրոնուած Հայերը քրիստոնեայ էին, հայերէնախօս, յունարէնագէտ, հաւանօրէն նաեւ գոթերէնածանօթ:

Մաշտոց Կ.Պոլսէն մեկնելէ ետքը առիթ ունեցաւ այցելել «գաշակերտելովք», խմանալու համար թէ ինչպէս կ'ընթանայ իր Գոթերու նորաբոյս գրականութիւնը: Բայց ան–

չուշտ չմոռցուաւ գանոնք: Երբ իր աշակերտներէն Յոհան եւ Եզնիկ (430) եւ Ղեւոնդ եւ Կորիւն (436) Կ. Պոլիս ուղարկուեցան, յանձնարարեց անչուշտ գանոնք Բենխամին երէցին: Դժբախտաբար այս կէտերը ենթադրութիւն միայն կը մնան. վասն զի չունինք մեր ձեռքը ճշգրիտ տեղեկութիւններ:

Ս. Բուգգէ[8] կը համարէր, թէ Գոթերու առաջին հանդիպումը Հայոց հետ Գամիրք եղած ըլլայ, ուր արշաւած էին 267ին. ուստի անոնցմէ տարուած գերիներու թուին մէջ Հայեր ալ եղած ըլլալու են: Այս ենթադրութեամբ փնտռած էր հայկական հետքեր գոթերէն Աստուածաշունչի մէջ, այն ժամանակի ըմբռնումով՝ թարգմանուած 370ին: Իր գտած բառերը սակայն, բացի մէկէն, չեն չնչեր համոզում, թէ հակառակ նմանութեան՝ փոխառութիւն ըլլան հայերէնէ: Իսկ այն մէկը, որուն հարկ է ուշադրութիւն դարձնել, է haithno, գործածուած մէկ անգամ Մարկ. է. 26, իբրեւ թարգմանութիւն յն. ἑλλενίς բառին (որ է «հելլէն»), որ նաեւ հայերէնի մէջ թարգմանուած է «հեթանոս» բառով: Նմանութիւնը չենք կրնար պատահական համարել: Հայերէնը կ՚ենթադրէ յն. ἔθνος «ազգ» բառը, փոխ առնուած հաւանօրէն ասորերէնի միջնորդութեամբ: Գո-

[8] Sophus Bugge, Über den Einfluß der armenischen Sprache auf die gotische: Indogermanische Forschungen V (1893), 168—180 = Թարգմ. Հանդ. Ամս. 9 (1894), 227—231, 259—261:

թերէնի haithno կ'ենթադրէ նոյնպէս յն. ἔθνος, տի անկումը կարելի է յաջորդ saurinissa (սառրի) բառին տի վերագրել: Հարց է հայերէնի՞ թէ սառրերէնի միջնորդութեամբ անցած է բառս Գոթերու: Գերմանագէտները կը միտին առաւել չափով գերմանական բնիկ բառ համարիլ[9]:

[9] Հմմտ. Braune, էջ 15—16:

## Resumé

**1. Zur 15. Jahrhundertwende der armenischen Bibelübersetzung.** S. 1—8.

**2. Die historischen Quellen zur Periode 380—450 n. Chr.** (Kurze Übersicht.) S. 9—20.

Der Darstellung der historisch-literarischen Begebenheiten dieser Periode schickt der Verf. eine Übersicht voraus, worin die echten und nichtechten sowie die wenig beachteten Quellen hervorgehoben werden.

1. Koriun, einer der jüngeren Schüler Maštoçs, welcher um 436 in Begleitung von Leontius nach Konstantinopel gesandt wurde, um Proklus die Antwort des armenischen Katholikos zu überbringen, hat um 443 eine Biographie des Meisters verfaßt. Seine Mitteilungen sind in allen Einzelheiten wahrheitsgemäß, daher glaubwürdig. Obwohl im ganzen Werke die chronologischen Angaben sehr dürftig sind, läßt uns doch der Biograph in den wichtigsten Momenten nicht im Stich. Sehr mangelhaft ist dagegen die handschriftliche Überlieferung des Textes. Um ihn richtig verstehen zu können, ist man genötigt, manche Stellen erst philologisch zu rekonstruieren. Das Werk weist auch einige Blätterumstellungen auf. [Diesbezüglich vgl. die kritische Ausgabe des Textes in Handes Amsorya, 1949.]

2. Die Königsliste der armenischen, persischen und römischen Herrscher, die Sebios in der Einleitung seines Geschichtswerkes in widerspruchsvoller Unordnung ausführt, stellte

ursprünglich eine Gruppe von in drei bzw. vier Kolonnen eingeteilten chronologischen Tafeln dar, worin sich die Reihenfolge und Regierungsantrittsjahre der drei angegebenen Reiche gegenüberstanden. Dem Verf. ist es gelungen, diese Tafeln chronologisch herzustellen. Die Abfassungszeit dieser chronologischen Tafeln fällt um 415. Der Verf. benützt sie hier für die Zeitspanne 380—409. [Vgl. dazu Handes Amsorya, 1938, S. 9—55, 129—172.]

3. Des Priesters Eznik Darstellung der Reihenfolge der armenischen Könige und Patriarchen von Tiridates bis zu Artašes und von Gregor bis zu Sahak, verfaßt um 428. Ursprünglich war sie in zwei Kolonnen eingeteilt, worin die Könige und die Patriarchen chronologisch gegenüberstanden. [Vgl. Handes Amsorya, 1937, S. 517—532.]

4. Pseudo-Lazar von P'arpi. Das erste Buch des Geschichtswerkes von Lazar ist eine Fälschung aus dem ersten Dezennium des 8. Jahrhunderts, wahrscheinlich ein Machwerk des Priesters Chosrow, dem eine Geschichte des hl. Sahak zugeschrieben wird. Der Verf. verspricht, seine Argumente zu dieser Feststellung anderswo aufzubieten.

5. Διήγησις lehnte sich im wesentlichen an Eznik und Ps.-Lazar an.

6. Moses Chorenaçi, um 820, benützt nach seiner üblichen Art Faustus, Eznik, Koriun und Ps.-Lazar. Seine Angaben entbehren jeder Glaubwürdigkeit.

7. Korium in verkürzter Redaktion steht unter M. Chorenaçis Einfluß. Zur Textherstellung des Koriuns sind die Lesarten dieser Redaktion sehr wertvoll.

3. **Die politischen Verhältnisse Armeniens in den Jahren 380—450 n. Chr.** S. 21—36.

Im Jahre 380 hatte Manuel der Mamikonier den König Warazdat aus Armenien vertrieben und die Gewalt an sich gerissen. Er hielt die Königin Zarmanducht (des Königs Pap Gemahlin) und ihre Söhne Aršak und Walaršak in königlichen Ehren. Da er sich durch diese Tat von seiten des Kaisers Feindseligkeiten zugezogen hatte, verbündete er sich mit dem Großkönig, der ihm den Marzpan Suren mit 10.000 Soldaten zuschickte. Ein Verdacht veranlaßte ihn, Marzpans Armee zu überfallen und sie zu vernichten. Die Folge davon war eine Periode von Kämpfen zwischen Persien und Armenien. Um 384 krönte Manuel den Aršak zum König und den Walaršak zum Vizekönig und stellte sie unter die Obhut des Kaisers Theodosius I. Kurz nachher starb Manuel. Nach seinem Tode wurde die Eintracht unter den Nacharars erschüttert. Ein Teil derselben neigte sich zur persischen Orientation. Sie verlangten vom Großkönig einen anderen König und er krönte den Chosrow aus der Arsakidendynastie und sandte ihn an der Spitze einer Armee nach Armenien. König Aršak zog sich angesichts der vorrückenden Armee an die römische Grenze zurück und bat um den Schutz des Kaisers. Die persische Streitmacht bezog ihr Hauptquartier in Ayrarat und die der Römer in Ekelesene. Keiner der beiden Teile wollte den Krieg. Die Gesandten beider Parteien kamen schließlich dahin überein, daß Armenien unter zwei Rivalen aufgeteilt würde (um 385). König Chosrow unter dem persischen Mandate bekam vier Fünftel und König Aršak unter dem römischen Mandate das eine Fünftel Armeniens.

Chosrow (384/5—386/7) starb nach einer Regierungsdauer von drei Jahren. Die Gewalt ging an den Statthalter Artawan über (387/8—400/401). in Römisch-Armenien scheint Aršak ebenfalls eine kurze Zeit regiert zu haben. Nach seinem Tode verwalteten das Land die comes Armeniae.

In Persisch-Armenien bestieg nach einem Interregnum von 12 Jahren den arsakidischen Thron König Wramšapuh (401—408/409). Nach seinem Tode folgte wieder ein Interregnum von 12 Jahren, dann erst regierte König Artašes (Sohn des Wramšapuh). Seine Regierungsdauer wird von Ps.-Lazar mit 6 Jahren angegeben, welche zwischen 421/2—426/7 fallen. Alles, was Ps.-Lazar und der ihm folgende Moses Chorenaçi von der Lebensweise des Königs und seinem Sturz vom Throne zu erzählen wissen, ist aus der Luft gegriffen. Mit seinem Tode wurde das Königreich Armenien aus der Dynastie der Arsakiden aufgehoben. Es folgten Statthalter. Unter den Statthaltern wurde der Siunier Wasak berühmt; er tritt, mit dieser Würde bekleidet, schon im Jahre 444 auf. Er hegte sogar die Hoffnung, auch die Königskrone zu erwerben, was ihm jedoch nicht gelang.

### 4. Sahak der Große, Katholikos der Armenier.
S. 37—94.

Sahak, ein Sohn des hl. Nerses, geboren um 338, war der letzte Sproß aus dem Geschlechte des hl. Gregor. Sein Lebenslauf bis zum Jahre 386 ist uns unbekannt. Wahrscheinlich hat auch er, wie sein Vater, die Erziehung in Kaisareia genossen. Er war der griechischen Sprache mächtig. Als noch sein Vater am Leben war, wurde er verheiratet; dieser Ehe entsproß eine einzige Tochter, die sich mit einem Mamikonier (Hama-

zasp) verheiratete. Sie schenkte drei Söhnen das Leben: Wardan, Hmayak und Hamazaspean. Sahak war ungefähr 35 Jahre alt, als sein Vater durch Vergiftung starb (373). Ihm folgte Yusik, obwohl das Recht dem Sahak selbst zustand. Erst nach 15 Jahren bestieg Sahak den Thron seiner Vorfahren (386/7). Armenien war aufgeteilt. Unter dem persischen Statthalter Arawan hatte die Nation einen klugen Hirten notwendig, der fähig wäre, die Interessen sämtlicher Nacharars in Einklang zu bringen und sie dem Willen des Perserkönigs gefügig zu machen. Seine Weitsicht brachte Armenien einen fünfzigjährigen Frieden ein, der zur kulturellen Entwicklung des Landes überaus wertvoll war. Sahak organisierte die Kirche; er erwarb den Maštoç für den Dienst der Kirche (391), der die Schrift für die armenische Sprache erfand und somit die Grundsteine der armenischen Literatur legte (407/8). Er befaßte sich hauptsächlich mit der Übersetzung der Heiligen Schrift, zu der er auch die anderen anleitete. Auf seinen Wink missionierte Maštoç die nordwestlichen Provinzen, Albanien und Georgien mitinbegriffen, und visitierte Römisch-Armenien.

Um 420/21 reiste Sahak nach Persien, um mit dem Großkönig die Bedürfnisse Armeniens zu besprechen. Bei dieser Gelegenheit legte er seine Fürsprache bei Jazdegerd I. zugunsten der verfolgten persischen Christen ein.

Als Maštoç von Römisch-Armenien zurückkam, unternahmen es er und Sahak, die nationale Literatur intensiver zu fördern. Zu diesem Zwecke sandten sie zwei Übersetzer nach Edessa, um die syrischen Väterwerke ins Armenische zu übertragen (um 428).

Wahrscheinlich waren sie noch in Edessa, als Rabbula nach dem Ephesinum gegen die Schriften des Theodor von Mopsuestia den Kampf erklärte. Rabbulas Anregung an Akakius von Melitene, daß er die Armenier ermahne, vor Theodors Schriften auf der Hut zu sein, hatte ohne Zweifel einen Grund. Theodor war ein Freund des Maštoç, auf dessen Verlangen er seine Schrift gegen die Magier verfaßt hatte. Wie diese, so konnten auch andere Schriften Theodors ins Armenische übertragen worden sein. Akakius hat gerne Rabbulas Anregung Folge geleistet. Es sind von ihm zwei Briefe erhalten, deren einer an Katholikos Sahak in Persisch-Armenien adressiert ist, und der zweite an die Nacharars in Römisch-Armenien. Indem er im ersteren der Befürchtung Ausdruck gibt, die Nestorianer dürften vielleicht in Armenien eingedrungen sein, weiß er im zweiten schon ganz genau, daß die Schriften Theodors von den nestorianisch Gesinnten dort verbreitet werden, und ermahnt im Hinblick auf Ephesinum, denselben kein Gehör zu schenken. Dagegen protestierten die Bischöfe Kilikiens, indem sie Rabbula (und Akakius) eine geheime Feindseligkeit gegen Theodor zuschrieben. Dieser Umstand brachte die Armenier im Römerreich in Verwirrung. Es scheint, daß der Katholikos darauf den Übersetzern in Edessa die Anweisung gab, sich unverzüglich nach Römisch-Armenien zu begeben und der Sache nachzugehen. Es wurde hier eine Synode einberufen. Die Bischöfe kamen überein, die Frage dem Proklus zu unterbreiten; er sollte Bescheid sagen, bei welchem von beiden, ob bei Theodor oder bei Akakius, die Wahrheit sei. Die Überbringer des Schreibens an Proklus waren wahrscheinlich Josef und Eznik. Gelegent-

lich schrieb Proklus seinen berühmten Tomus an die Römisch-Armenier. Ein Exemplar davon gelangte auch an Katholikos Sahak. Hier spielte Josef wahrscheinlich die Mittlerrolle; Eznik blieb in Konstantinopel zwecks Beherrschung der griechischen Sprache. Es sind uns Bruchstücke eines Briefes über Christologie erhalten, den Eznik von Konstantinopel aus Maštoç geschrieben hatte. Sahak beantwortete die Schreiben des Akakius und Proklus. Leontius und Koriun überbrachten sie an die Adressaten (436). Innozenz von Maronie, welcher den Streitfall eingehend erörtert, hat, wie es scheint, die beiden Botschaften in einem vereinigt, indem er den Leontius und Abellius (var. Abelius, Aberius) zu der ersten Gesandtschaft zählt. ABERIUM des Textes dürfte eine Korruption des Namens KORIUM bzw. KORIUN gewesen sein.

Die armenischen Gesandten nahmen bei der Heimreise griechische Bibelexemplare mit. Auf Grund dieser unternahm es dann Sahak, mit Hilfe Ezniks den Text der armenischen Bibelübersetzung zu rekonstruieren.

Nach der Aussage der Späteren soll Sahak mehrere Kirchen und Kapellen gebaut bzw. renoviert haben.

Seine letzten Jahre verbrachte Sahak im Dorfe Blur in Bagrewand. Er starb dortselbst im hohen Alter (von ungefähr 100 Jahren) am 7. September 438 [richtiger: 439] und wurde in Aštišat (Taraun) begraben.

Die literarische Tätigkeit Sahaks galt hauptsächlich der Übersetzung der Heiligen Schrift. Die Briefe an Akakius von Melitene und Proklus von Konstantinopel wurden schon erwähnt. Der Verf. versucht zu beweisen, daß Sahak auch der

Bearbeiter der unter dem Namen Faustus von Byzand erhaltenen Geschichte Armeniens sei. *Φαῦστος ὁ Βυζάντος* selbst, der ein Gewährsmann des hl. Nerses war, dürfte eine Chronologie in griechischer Sprache verfaßt haben, die dann Sahak bei seiner Arbeit zum Leitfaden gedient haben sollte.

Dem berühmten Katholikos sind außerdem manche Schriften zugeschrieben, die inhaltlich sowie sprachlich einem späteren Zeitalter angehören: Kanones [vgl. Handes Amsorya, 1946, S. 48 ff., 1947, S. 1 ff.], Meßliturgie, Brevier, Rituele, Kalender und eine Vision [vgl. Handes Amsorya, 1936, S. 467 ff., 1937, S. 48 ff.].

**5. Der hl. Maschtotz.** S. 95—173.

Maštoç wurde etwa um 361 zu Haçikk' in der Provinz Taraun geboren. Sein Vater Wardan ist wahrscheinlich mit Wrik, dem unehelichen Sohne des Pap, Neffen des hl. Nerses, identisch. In seinen jungen Jahren genoß Maštoç eine hellenistische Bildung, wahrscheinlich in Antiochien, wo er den Priester Theodor, den späteren Bischof von Mopsuestia, kennenlernte. Nachher kam er nach Wałaršapat, wo er unter dem Statthalter Arawan in den Militärdienst eintrat. Durch die Lesung der Heiligen Schrift aufgeklärt, legte er die Militärtracht ab und widmete sich dem Dienste Christi (392/3). Sahak gab ihm die Priesterweihe. Um diese Zeit schrieb der Priester Theodor von Antiochien seine an Maštoç (Mastubios) gerichtete Schrift gegen die Magier. Maštoç sammelte Gleichgesinnte um sich und unternahm eine Missionsreise in die entferntesten Provinzen Armeniens. Im Gau Golt'n sah er ein, daß, ohne das

Volk in der einheimischen Literatur zu unterrichten und es mit der Heiligen Schrift vertraut zu machen, alle seine Bemühungen fruchtlos sein würden. Er kehrte nach Wałaršapat zurück, um mit dem Katholikos Sahak über die Möglichkeit der Verwirklichung seiner Gedanken zu beraten. Zuerst sollten Schriftzeichen für die armenische Sprache beschafft werden. Die vom syrischen Bischof Daniel vorgelegten Schriften waren dem Zwecke nicht entsprechend (406/7). Maštoç mußte sich in Begleitung seiner Mitarbeiter sowie einer Gruppe junger Schüler nach Mesopotamien begeben. In Amida beim Bischof Akakius und in Edessa beim Bischof Pakida (im Texte: Babilas) ließ er die jungen Schüler zu Studien der griechischen und syrischen Sprache zurück und er selbst ging mit seinen beiden Mitarbeitern Josef und Johann seinem Vorhaben nach. Es gelang ihm, 36 Buchstaben für die armenische Sprache herzustellen. Von dort begab er sich nach Samosata, wo ein berühmter Kalligraph namens Rufinus (im Texte: Hrup'anos) zu Hause war. Dieser gab den Buchstaben die bestmögliche graphische Ausgestaltung. Versuchsweise wurden die Sprüche Salomons ins Armenische übersetzt und Rufinus schrieb sie auf Pergament nieder. Die zwei Mitarbeiter Maštoç' lernten dabei die Schreibkunst. Sie verließen darauf die Stadt und kehrten über Edessa—Amida heim (407/408). Zwei Jahre hindurch widmete sich Maštoç der Lehrtätigkeit. Die Jugend befaßte sich fleißig mit der Literatur. Es entwickelte sich eine rege Tätigkeit im literarischen Bereiche. Nach einiger Zeit unternahm Maštoç eine Missionsreise nach Golt'n—Siunik'—Ałuank' und Balasakan. Er eröffnete überall Schulen, lehrte die Jugend, errichtete Klöster und

verkündete die christliche Lehre. Der albanische Bischof gab seine Einwilligung zur Einführung der armenischen Bibelübersetzung in seinem Lande. Von Albanien kam Maštoç über Gardmank' [und Tp'ilisi] nach Georgien. Er hatte vorgesorgt, für die georgische Sprache passende Schriftzeichen zu erfinden. Die Georgier stellten ihm alle Mittel zur Verfügung, um diese Schriften dem Volke zugänglich zu machen. Nach glücklicher Beendigung der Reise kehrte er nach Armenien zurück, um Sahak über seine Erfolge zu berichten. Nach einiger Zeit besuchte er Georgien zum zweitenmal; auf dem Rückwege kam er nach Taširk'.

Der Früchte der neuerstandenen Literatur war Römisch-Armenien noch nicht teilhaftig geworden. Im Auftrag des Katholikos Sahak unternahm Maštoç eine Visitation auch dieses Teiles Armeniens. Anatolius, magister militum per orientem, empfing ihn und seine Begleitung in Ehren, mußte aber hinsichtlich der Entfaltung der Missionstätigkeit vorerst die Bewilligung des Kaisers einholen. Theodosius II. wünschte den Missionär des Nordens persönlich kennenzulernen. Maštoç ließ sein Gefolge in Melitene und fuhr in Begleitung des Bischofs von Derjan und einiger Schüler über Antiochien (der Text ist hier korrumpiert) nach Konstantinopel. Der Kaiser sowie der Patriarch Attikus bereiteten ihm einen freundlichen Empfang. Bis zu Ostern (420?) weilte er in der Residenzstadt. Der Kaiser gewährte ihm alle seine Wünsche. Er durfte in Römisch-Armenien auf Staatskosten Schulen eröffnen und die Jugend in der einheimischen Sprache unterrichten, die Irrlehre der Borborianer bekämpfen und die kirchlichen Angelegenheiten regeln. Er

wurde hiebei von Anatolius tatkräftig unterstützt.

Bevor Maštoç Konstantinopel verlassen hatte, kam ein Priester namens Beniamen, nach der Nationalität ein Aluan, zu ihm und bat ihn um Schaffung geeigneter Schriftzeichen für seine barbarische Sprache. Maštoç stellte den Bittsteller zufrieden. Unter Aluanen sind hier die Alanen bzw. die Goten gemeint, die um diese Zeit im Dienste der Oströmer standen (siehe unten § 11).

Als Maštoç in Römisch-Armenien alles glücklich erledigt hatte, kehrte er nach Armenien heim. Von da an blieb er im Lande und widmete seine Kräfte dem Gedeihen der einheimischen Literatur und der geistigen Entwicklung des Volkes. Er starb am 17. Februar 439 [richtiger: 16. II. 440] in Walaršapat und seine sterblichen Überreste wurden in Ošakan begraben.

Maštoç hatte seinen Anteil an der Bibelübersetzung. Nach Koriuns Zeugnis hatte er mehrere Briefe verfaßt, die uns leider nicht erhalten sind. Eine Sammlung von mehreren Homilien, die Koriun gelesen hat, ist unter dem Titel: „Lehre des hl. Gregors, des Erleuchters" bei Agathangelos erhalten. Der Verf. vertritt hier die Ansicht von P. B. Sargissian. Vetters Behauptung, daß diese Homilien mit denen von Y a č a c h a p a t u m identisch seien, ist unhaltbar. Es werden dem Meister noch andere Homilien und Gebete zugeschrieben, die doch eine nähere Untersuchung erheischen.

**6. Die Schüler Maschtotz'.** S. 175—198.

Daß es in Armenien schon im 4. Jahrhundert Schulen gab, bezeugt Faustus (III, 3). Da aber die armenische Sprache noch kein eigenes Alpha-

bet besaß, so mußten diese Schulen ihre Schulbücher in griechischer bzw. syrischer Sprache haben, und zwar in elementaren Stufen. Für höhere Bildung durften die Jungen im Ausland die griechischen oder syrischen Schulen besuchen. Gregor von Nazianz berichtet, daß einige seiner Mitschüler in Athen Armenier waren. Ohne Zweifel zählte auch die sogenannte Persische Schule in Edessa unter den Studenten auch Armenier. Als im Jahre 406 Machtotz in Mesopotamien ankam, hatte er eine Anzahl von Jungen bei sich, die er in Amida und Edessa unterbrachte, damit sie im Griechischen und Syrischen unterrichtet werden.

In Mesopotamien glückte es dem Meister, das armenische Alphabet zustande zu bringen. Von da an rechnet die armenische Literatur ihre Anfänge. Es entwickelte sich in Armenien eine rege Schultätigkeit unter der weisen Leitung von Maschtotz. Im allgemeinen werden die Absolventen dieser Schulen, die zu Lebzeiten des Meisters aus ihnen hervorgingen, als „Schüler des hl. Maschtotz und Sahak" betrachtet. Der Verf. unterscheidet vier Klassen. Nicht alle zeichneten sich als Schriftsteller aus, aber alle förderten Hand in Hand die armenische Literatur entweder als Übersetzer bzw. Schriftsteller oder als Lehrer und Kopisten.

Die reiche Übersetzungsliteratur, in klassischer Sprache durchgeführt, ist uns anonym erhalten. Als Übersetzer sind Johann und Josef benannt, die Mitarbeiter Maschtotz' (1. Klasse) und Eznik (2. Klasse), welcher zugleich der Verfasser der Widerlegung der Sekten ist. Als Biograph zeichnete sich Koriun aus (3. Klasse).

7. **Die armenische Übersetzung der Heiligen Schrift.** S. 199—220.

Der Hauptbeweggrund, der den hl. Maštoç veranlaßte, die armenische Schrift zu erfinden, war, die Heilige Schrift in einheimischer Sprache dem Volke zugänglich zu machen. Dementsprechend wurden als erstes Buch die Sprüche Salomons ins Armenische übersetzt. Dies sollte zugleich den Lernenden als Lesebuch dienen. Es folgten die anderen Bücher des Alten und Neuen Testaments, die in der Zwischenzeit 408—414 fast vollständig übersetzt wurden. Dies ist aus Koriuns Angaben ersichtlich. Diese Übersetzung wurde dann auch in Albanien eingeführt.

Den größten Teil der Übersetzung haben ohne Zweifel Sahak und Maštoç durchgeführt; daran beteiligten sich aber auch die ältesten Schüler. Als Vorlage diente ihnen die griechische Septuaginta. Die erste eilfertige Übersetzung wurde nachher textgetreu und sprachlich verbessert. Einige Bücher, wie Sprüche, Ecclesiasticus, das Hohelied und Buch der Weisheit sowie die Weisheit Sirach's sind uns sowohl in ursprünglicher Übersetzung wie auch in verbessertem Texte erhalten.

Eine gründliche Revision fand die Übersetzung erst nach dem Jahre 436, als aus Konstantinopel neue Vorlagen gebracht wurden. Über die Beschaffenheit dieser Vorlagen gibt uns cod. arm. 193 Etschmiadzin folgenden Aufschluß: „Dieses Exemplar wurde nach den alexandrinischen und jerusalemischen Handschriften sowie der Tetrapla von Origines verbessert. Die zwölf Propheten wurden nach den 72 Übersetzern geschrieben." Das Antiochenische (Lukianische) ist dabei nicht erwähnt, wahrscheinlich deshalb, weil es zur Vor-

lage der Übersetzung genommen worden war. Es ist kein Grund, eine syrische Vorlage vorauszusetzen, obwohl einige Bücher, wie z. B. Paralipomenon I, II, auch aus dem Syrischen übersetzt worden waren.

Die Übersetzung ist eine wortgetreue. Es wurde jedoch den Eigenschaften der armenischen Sprache Rechnung getragen. Eine elegante, formvollendete Sprache durchweht alle Bücher des Alten und Neuen Testamentes.

### 8. Eznik von Kolb, Brief an Maschtotz.
S. 221—225.

Während des Konziliums von Ephesus war Eznik in Konstantinopel mit Übersetzungen der griechischen Kirchenväter beschäftigt. Um diese Zeit herum soll er den Brief an Maschtotz geschrieben haben, der uns in Fragmenten überliefert ist. Der Verf. gibt davon vier Bruchstücke.

### 9. Die Erfindung des armenischen Alphabets.
S. 227—270.

Es sind keine Anhaltspunkte vorhanden, um zu beweisen, daß die Armenier vor 406 n. Chr. ein Alphabet für ihre Sprache gehabt haben. Das armenische Alphabet wurde erst im Jahre 407/8 durch Maschtotz in Edessa erfunden und in Samosata durch den Kaligraphen Rufinus ausgestaltet (siehe oben S. 439).

Zur Vorlage diente seinem Alphabet das Griechische und er trachtete, demselben treu zu bleiben. Die armenische Sprache war reich an Lauten. Maschtotz wiedergab dieselben in

36 Buchstaben. 20 davon wurden dem Griechischen, 4 vom Syrischen entnommen und 12 nach griechischen Vorlagen umgestaltet. Die charakteristischen Striche der Vorlagen sind beibehalten, die äußeren Gestalten aber ziemlich umgeändert, „nationalisiert" wurden, alles in Unzialschrift.

Dem syrischen Alphabet sind entlehnt:

| | | | |
|---|---|---|---|
| ﾄ (20) | Ļ (30) | ꝁ (40) | ɣ (50) |
| ـ | ⸜ | ـ | ڈ |

Die syr. ـ und ـ sind an Stangen befestigt, um sie der Unzialgröße anzupassen.

Dem Griechischen sind entlehnt:

| | | | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| U. | ß· | ꝗ· | ꝓ· | ȶ | Ձ | ȶ· | Ꞁ. | ϸ· | կ | Ղ. | Մ |
| Α | Β | Γ | Δ | Ε | Ζ | Η | Η | Θ | Κ | Λ | Μ |
| Ն | Ո | ꝗ[1] | U[2] | Վ. | Տ | ꞅ | Փ | ·ß | | | |
| Ν | Ο | Π | Σ | Υ | Τ | Ρ | Φ | Χ | | | |

Nach griechischen Vorlagen sind entstanden:

| | | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| ժ· | ; | Ձ | Ճ | Ց | Շ[3] | Ջ | Ջ | Ռ·[4] | Ց[5] | ȶ· |
| Θ | Κ | Κ | Λ | Ω | Ξ | Ο | Ϙ | Ρ | Τ | Υ |

---

[1] Wahrscheinlich Π an einem Stabe angehängt.

[2] Wahrscheinlich eine Ligatur von zwei CϽ.

[3] Vgl. ΑΡΤΑΞΑΤΑ. ՍՐՏՍՇՍՏ

[4] Ligatur von zwei ꞅ (gr. ϱ) ꞅ.

[5] Wahrscheinlich eine Ligatur von T + C.

Diese Nebenformen sind in der Reihe des Alphabets den Vorlagen nachgefolgt: ȶ· (H) Ꞁ. ϸ· (Θ) ժ·. կ (K) ;, Ձ. Ղ. (Λ) Ճ, Ո (O) Ջ. Տ (T) [Ρ] Ց

Die gleichlautenden ռ und ր, վ und ւ sind wahrscheinlich voneinander entfernt, damit die Verwechslung vermieden wird.

**10. Die Erfindung des georgischen Alphabets.**
S. 271—293.

Die georgischen Annalen behaupten, daß den Georgiern das Alphabet König P'arnavaz gegeben habe. Diesen Passus der mythischen Vorzeit kennt die armenische Übersetzung (13. Jahrhundert) der Annalen nicht; ist auch anderwärts nicht beweisbar.

Der einzige, der von der Erfindung des georgischen Alphabets spricht, ist Koriun, der Biograph Maschtotz'. Seine Glaubwürdigkeit liegt außer Zweifel. Als Maschtotz um 415 Georgien besuchen wollte, machte er für die georgische Sprache ein eigenes Alphabet mit 36 Buchstaben und stellte sich damit dem König Bakur und dem Bischof Moses vor. Das Alphabet fand den Beifall des Königs.

Bei der Herstellung des Alphabets hatte Maschtotz die armenischen und griechischen Alphabete vor Augen. Die Reihenfolge der Buchstaben ist in drei Einheiten (1—27) dem Griechischen gleich. Die vierte Einheit enthält die Buchstaben, die dem Griechischen fehlten. Den Schriftzeichen hat meistens das Armenische zur Vorlage gedient, ohne die Lautwerte in Betracht zu ziehen, in Abweichungen gilt das Griechische als Vorlage (vgl. die Tabelle S. 278—282).

**11. Die Erfindung des alano-gotischen Alphabets [1].**
S. 295—408.

Die Massageten am Aralsee traten in der Geschichte des 1. Jahrhunderts v. Chr. als Alanen hervor, ihr Name aber blieb lange Zeit als Sammelname für die skytischen Völker, die im Laufe der ersten fünf Jahrhunderte im kaukasischen Norden erschienen sind. Eine Niederlassung der Alanomassageten finden wir schon im 1. Jahrhundert n. Chr. zwischen dem Kaspischen Meere und Araxes, unter einem König arsakidischer Herkunft. Die Verwandtschaft des alanischen Königshauses mit dem armenischen läßt das Satheniklied des armenischen Volksepos voraussetzen. Das armenische Königshaus selbst war arsakidisch. Als König Khosrow II. das geköpfte Haupt des alanomassagetischen Königs Sanessan (um 270) vor sich sah, beweinte er den Tod seines „Bruders". Im Jahre 74 n. Chr. verheerten die skythischen Alanen Medien und Armenien; ihnen trat Tiridates I. entgegen.

Gegen Ende des 3. Jahrhunderts eroberten die Hunnen das Alanenreich. Die Überlebenden mußten sich dem Sieger anschließen und mit ihm gegen die römischen Grenzen ziehen. Die Goten wurden geschlagen. Später, als sich die Hunnen vor der Übermacht der germanischen Stämme auflösten, gingen die Alanen zu den Goten und Vandalen über und wurden ihrem Einfluß unterworfen. Sie eigneten sich das Gotische an. In Italien dien-

[1] Erschienen in Handes Amsorya, 62 (1948), 321—341, 449—496 (Res. 441—443, 621—632), unter dem Titel: Der Ursprung des gotischen Alphabets. Ist der Erfinder Wulfila, Chorbischof der Goten, oder Maschtotz, Chorbischof der Armenier?

ten sie im römischen Heere als Söldner. Man sagt, daß Kaiser Gratian die Alanen gerne gehabt hat, weil sie nach Ammianus im Vergleich mit den Hunnen mehr zivilisiert waren (§ 8).

Um die nordkaukasischen Völker im Zaume zu halten, haben die Arsakiden, nachher die Sassaniden und Römer, an den Übergangspässen des Kaukasus Tore angelegt und durch Befestigungen geschützt. Diese Tore wurden nach den Völkern benannt, die von Zeit zu Zeit die Tore zu durchbrechen drohten und die Kulturländer Medien, Armenien und Kleinasien verheerten, was ihnen auch hie und da gelang. Die Araber nannten diese Pässe Darial und Derbend, die früher einfach nach den Kaspiern, Hyrkaniern (Wiroi Pahak), Alanen und Hunnen benannt wurden. Das Alanentor wird öfters bei den römischen und armenischen Quellen Tor der Albanier (arm. Alouanen) genannt, was eine Verwechslung beider Völker, der Alanen (jenseits und diesseits des Tores) und Albanier (zwischen Kura und Araxes), voraussetzt. In diesem Sinne ist auch die Stelle bei Lazar P'arpetzi zu verstehen, wo von einem königlichen Prinzen, dem Alouanen Wahan, die Rede ist, dem die Armenier die Wache des Tores anvertrauten. Dieser Alouane konnte nur einer von den Alanen sein, deren Königreich sich bis in die Nähe des Tores erstreckte. Im Jahre 576 war Sarasios, König der Alanen am Kaukasus, ein Freund der Römer. Diese Beispiele genügen zur Behauptung, daß die beiden Stellen bei Koriun als *աղուան* (alouan) und *աղուաներէն* (alouanisch) im Sinne von *աղան* (alane) und *աղաներէն* (alanisch), in extenso „Gote" und „gotisch" zu verstehen sind (§ 9—10).

